bind 2 in 1

ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ԼԶ.

# ՀԱՅՔ

# Ի ԶՄԻՒՌՆԻԱ ԵՒ Ի ՇՐՋԱԿԱՅՍ

---

ՀԱՏՈՐ Ա.

## ԶՄԻՒՌՆԻԱ ԵՒ ՀԱՅՔ

ՀԵՏԱԶՕՏՈՒԹԻՒՆ

ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԵԱՆՑ ԵՒ ՑԻՇԱՏԱԿԱՐԱՆԱՑ

ԳՐԵՑ

Հ. ՅԱԿՈԲ Վ. ՔՕՍԵԱՆ

Ի ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ

---

*53 ՊԱՏԿԵՐՕՎ*

---



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1899.

ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ԼԱ.

# ՀԱՅՔ Ի ԶՄԻՒՌՆԻԱ ԵՒ Ի ՇՐՋԱԿԱՅՍ

---

ՀԱՏՈՐ ԱՌԱՋԻՆ

# ԶՄԻՒՌՆԻԱ ԵՒ ՀԱՅՔ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1899.

# ՀԱՅՔ

# Ի ԶՄԻՒՌՆԻԱ ԵՒ Ի ՇՐՋԱԿԱՅՍ

---

ՀԱՏՈՐ Ա.

## ԶՄԻՒՌՆԻԱ ԵՒ ՀԱՅՔ

ՀԵՏԱԶՕՏՈՒԹԻՒՆ

ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԵԱՆՑ ԵՒ ՑԻՇԱՏԱԿԱՐԱՆԱՑ

ԳՐԵՑ

Հ. ՅԱԿՈԲ Վ. ՔՕՍԵԱՆ

Ի ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ

---

*53 ՊԱՏԿԵՐՕՎ*

---



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1899.

ՔԵԶ

ՅՈՎՍԷՓԱՅ

ԱԶՆԻՒ ՊԱՅԱԶԱՏԻԴ

ՏՈՀՄԻՆ

ԵՈՒՍՈՒՓԵԱՆՑ

ԵՒ

ԲԱՐԵՐԱՐԻԴ

ՆՈՒԻՐԵՄՔ ԶԵՐԿԱՍԻՐՈՒԹԻՒՆՍ

ԶԱՅՍ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ.

Ժամանակն անգամ կը ջնջէ մարմարիոն քարերու խորափոր քանդակներն եւ կ'անհետացընէ տարիներու եւ դարերու արձանագրութիւններն՝ մատնելով իսպառ մոռացութեան՝ վեհ, մեծահոգի եւ գործունեայ անձանց յիշատակն եւ անունները:

Յոնիական ծովուն ափանց վրայ ժպտող եւ ի հնումն թէ կրօնական եւ թէ քաղաքական տեսակէտով նշանաւոր հռչակուած քաղքին՝ Զմիւռնիոյ՝ Ազգային օրինասէր, մարդասէր եւ գործունեայ կենաց օրինակ թողուցած գործառնութիւններն ու անհատական անձանց անունն կենդանացընելու եւ ապագայ սերնդոց աւանդելու նպատակաւ ձեռնարկեցինք այս երկասիրութեան:

Նոր եւ ինքնահնար բաներ չեն գրքիս մէջ պարունակուածներն, այլ հոս հոն հրատարակուածներն ի մի ամփոփած ենք, աստին անդին գտնուած արձանագրութիւններն ի մի ժողոված եւ հնութեան հատակտորները կորստեան ժանիքներէն ազատել ջանացած ենք:

Անտարակոյս բանասէրք շատ բան մանրակրկիտ քննութեամբ ներկայացուած տեսնել կարեւոր պիտի դատին, զոր կը բաղձայինք ընել եւ մենք, սակայն ժամանակն եւ պարագաները մեր այս բաղձանաց չափ եւ սահման դնելով՝ անոնց վրայ միայն ընդհանուր գաղափար մը տալ բաւական համարեցանք:

Մեզի հետազօտութեան նիւթ եղած առարկանիս չսկսած՝ Զմիւռնիոյ քաղքին վրայ ընդհանուր տեղեկութիւն մը տալ պատշաճ տեսնելով, հնախօս պատմագրաց ըսածներուն վրայ հիմնեալ, երեք գլխոյ մէջ Զմիւռնիոյ անցեալն եւ ներկան համառօտիւ յիշատակելէն յետոյ՝ սկսած ենք մեր բուն նիւթին:

Ը

*Կը յայտնենք մեր շնորհակալիքն՝ այն ամէն ազնիւ անձանց, որոնք գրաւոր կամ բերանացի տեղեկութիւններ հաղորդելով եւ կամ ուրիշ որ եւ իցէ ձեռնտուութեամբ նպաստեցին մեր աշխատութեան:*

*Կը յուսանք ի վերջոյ որ գրասէր անձանց խումբը հաճ աչք մը կը դարձընէ գործոյս վրայ, եւ մեր ամենափոքր ջանքը պսակուած կ'ըլլայ, եթէ գործս իւր սեռին եւ տեսակին մէջ ուրիշ մեծամեծներու եւ հետզհետէ նորագոյններու հրատարակման գրգիռ մ'ըլլայ եւ անոնց մէջ ներկայացուած ուղղամիտ, յառաջադիմասէր եւ պատուական անձանց կեանքը շատերու օրինակ հանդիսանայ:*

*Զմիւռնիա, 1/13 Յունուար 1899:*

*ՀԵՂԻՆԱԿՆ*



# ՑԱՆԿ

ԺԲ





# ԶՄԻՒՌՆԻԱ ԵՒ ՀԱՅՔ

## ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

*Պատմական ակնարկ Զմիւռնիոյ առաջին, երկրորդ եւ երրորդ շինութեան վրայ:*

Ա. Նշանաւոր դարաւոր քաղաքներու նախնական հիմնարկութիւնն եթէ գտնել աշխատինք, շատերունը մութ ու դիցաբանական զրոյցներով խառն կը գտնենք. կը տեսնենք որ անստոյգ ժամանակէ մը սկսելով՝ դարէ դար երթալով աւելի լուսաւորուած, ստուգուած, նախնական դիցաբանական անունը փոխած եւ նշանաւոր քաջ յաղթողի, դիւցազնի մ'անուամբ նորոգուած են: Նմանապէս եթէ Զմիւռնիոյ հիմնարկութեան ու նախկին շինութեան վրայ եղած պատմութիւններն եւ պատմագիրները թերթելու ըլլանք, կը տեսնենք որ սկիզբն անորոշ է եւ դիցաբանական վէպերով խառն. դարձեալ չէ թէ միայն մէկ անգամ, այլ քանիցս կործանած եւ նորոգուած է. ոչ միայն անունն՝ այլ իւր տեղն իսկ փոխուած է:

Զմիւռնիոյ քաղաքին նախկին հիմնարկութեան թուականը կը հասնի ԺԵ դար նախ քան զՔրիստոս: Քաղաքիս հնութեան վրայ խօսող մատենագիրք ու հնախոյզ պատմագիրք միաբան չեն ճշգրիտ եւ որոշ թուական մը նշանակելու. սակայն ընդհանրապէս այս հնախօսաց[1] ամէնուն

[1] Tacite, Aristide, Etienne de Byzance, Strabon, Pausanias.

կարծիքն եւ ցուցումները յայն կը յանգին, թէ 1410—1370ի միջոցները Ն. ք. Ք. առաջին անգամ այս կողմերը քաղաք մը շինուած է։

Այս հնախօսաց ամէնն ալ կ'ընդունին Սիպիլ[1] (Sipyle) լերանց շղթային վրայ շինուած քաղաք մը։ Արիստիդէս[2] կ'ըսէ թէ Զմիւռնիոյ "Ամենահին քաղաքը Սիպիլ լերան վրայ հաստատուեցաւ, որ եղաւ օթեւան չաստուածոց եւ Կուռէտից[3] խմբին (Curètes). եւ ի սկզբան անդ տեղն այնչափ հաճելի եղաւ չաստուածոց որ բանաստեղծք կը պատմեն, թէ չաստուածները դիւցազանց հետ խառն՝ հոն խնճոյքներ եւ հացկերոյթներ կ'ընէին։„

Տանտաղոս Լիւդիոյ թագաւորն Զմիւռնիոյ առաջին հիմնարկողը կը համարուի, որ ի սկզբան անդ քաղաքը Նաւլօխօն[4] (Ναύλοχον) անուանած է։ Այս Սիպիլ լերան վրայ շինուած քաղաքը՝ հնախօսաց տուած մեկնութեանց համաձայն, այժմ Պայրագլը ըսուած գիւղին կողմերն էր, ուր հնախոյզ անձինք[5] գտած են դարերու յիշատակը ծածկող աւերակներու մնացորդները եւ մատնանիշ ըրած հին քաղաքին տեղը։

Առաջին անգամ կառուցուած եւ Նաւլօխօն ըսուած Զմիւռնիոյ նախնական քաղաքը զարհուրելի երկրաշարժէ մը տակնուվրայ եղած կը պատ-

---

1 Սիպիլ (Sipyle) փոքր Ասիոյ լեռներէն մին է, որ ի նախնումն Hermus, այժմ Sarabat կամ Kedus ըսուած գետին հարաւային կողմէն կ'երկննայ դէպ ի Զմիւռնիոյ ծովախորշը։

2 Aelius Aristide, Oeuv. compl. Ed. Dindorf.

3 Կուռէտք (Curètes) Արամազդայ պաշտօն մատուցանող քուրմեր էին։

4 Նաւլօխօն (Ναύλοχον) կը նշանակէ կայան, նաւակայք, նաւահանգիստ։

5 Pockocke, Chandler, M. Ch. Texier, M. W Hamilton.



ԶՄԻՒՌՆԻՈՅ ԾՈՎԱԽՈՐՇԸ։

3

մեն վերոյիշեալ մատենագիրք. ի մէջ այլոց Արիստոտէլ[1] կ՚ըսէ, թէ "Երկրաշարժ մը Սիպիլ լերան վրայ կառուցուածները տակնուվրայ ըրաւ:" Նոյնպէս Ստրաբոն[2] կը հաստատէ ըսելով թէ "Ինչ որ Սիպիլ լերան եւ անոր կործանման համար կը պատմուի, առակաց կարգը դասելու չէ:" Դարձեալ Պլինիոս[3] եւ Պաւսանիաս[4] կը յիշեն այս արկածը:

Բ. Զմիւռնիոյ նախկին քաղաքն այսպէս առաջին անգամ կործանուելէն ետքն՝ երկրորդ անգամ վերաշինութեան տեղն եւ անունն ալ փոխուած կը գտնենք: Քաղաքիս երկրորդ շինութեան տեղն աւելի որոշ եւ յայտնի կը դնեն առջեւնիս վերոյիշեալ պատմագիրք: Ստրաբոն[5] կ՚ըսէ, "Ալազոմէնէ Զմիւռնիա գալու ճամբուն վրայ՝ Ապողոնի տաճար մը կայ եւ տաք բաղանիքներ, Զմիւռնիոյ (այժմեան) խորշն ու քաղաքը, եւ անմիջապէս յետոյ ուրիշ ծովախորշ մը, ուր էր նախկին Զմիւռնիան, քսան վտաւան հեռու այժմեան քաղաքէն:" Ստրաբոնի ըսած վայրը եւ ծովախորշն ուրիշ չի կրնար ըլլալ, բայց եթէ այժմեան Հալքապունարի կողմը տեսնուած ծովախորշը. ուստի ամենայն ստուգութեամբ կրնանք ըսել, թէ Հալքապունարի եւ Թէփէճիքլի կողմերն էր երկրորդ Զմիւռնիան: Այն կողմերը գտնուած այնչափ անչափ աւերակներն՝ այլ եւս տարակուսի տակ չեն թողուր Ստրաբոնի ըսածը: Սպոն[6] կը ցուցընէ, թէ Անահտայ բաղանեաց (Baine de

---

1 Aristote (Météorol. II, 8).

2 Strabon (XII, 8, § 18).

3 Pline (II, 93, V, 31).

4 Pausanias, (VII, 24).

5 Strabon (XIV, 1, § 4).

6 Spon (vog. au Lev. t. I, p. 308). 1689ին ըրած է ճանապարհորդութիւնը:

Diane) քովերը աւերակներ կան։ Տուռնըֆոր[1] կը պատմէ, թէ Անահտայ բաղանեաց շուրջերը մարմարեայ գործուածներու սքանչելի բեկորներ կան։ Պօքօք[2] կը հաստատէ, թէ “Անահտայ բաղանեաց ճիշդ քովը կը տեսնուին արտաքոյ կարգի հին աւերակներ, կամարներ, որոնք հաւանականաբար նոյն բաղանեաց մասը կը կազմէին. եւ այս տեղէն մինչեւ քաղաքն աւերակներ միայն կը տեսնուին։„

Վերոյիշեալ հնախոյզ մատենագիրներէ զատ՝ վերջին տարիներու մէջ եղան անձինքներ, որոնք այս կողմերն այց ելլելով հնութեան մնացորդները յերեւան հանեցին։ Մ. Ստորարի (M. Storari) կ՚ըսէ, թէ երբ 1847ին Անահտայ բաղանեաց տեղւոյն վրայ թղթի գործատուն մը շինելու համար հիմ կը դրուէր, եւ հոն գտնուած ջրոյ աւազանը մաքրելու եւ նորոգելու համար՝ ջրոյ ակունքը գոցել կ՚աշխատէին, Անահտայ արձան մը գտնուեցաւ, ասկէ զատ՝ Աստղկան (Venus) գլուխ մը, միւսիոն քարերով զարդարուած թաղար եւ ծաղիկ, խոյակներ, պատուանդաններ, գլուխներ ու բազուկներ՝ կիսակատար եւ ապականած։ Կարաւանի կամուրջին աջ կողմը 1848ին մարմարեայ առիւծ մը գտնուեցաւ։ Թէփէճիկի կողմերը 1864ին միւսիոն (մոզայիգ) քարէ գործուածներ գետնի տակէ հանուեցան։ Վերոյիշեալ կամուրջին կողմը՝ տաճկական գերեզմանոցի մէջ՝ բազմաթիւ են հին մարմարեայ քարերու կտորներ եւ զարդերու մասեր։ Շատ յառաջ չերթանք եւ մոռացութեան կարգը դասուած տարիները չքննենք. բաւական է միայն 1897ին գտնուած քանդակաքարերը յիշել, որոնք

---

1 Tournefort (ouv., etl. c. p. 388), Voyage du Levant, 1700ին։

2 Pockocke (ouv., etl. c. p. 22), Description de l'orient. Lond. 1742.

բնականապէս հնագոյն շէնքերու եւ զարդերու մաս մը կը կազմէին։ Գիտէ Զմիւռնացին որ այս թուականին՝ Հալքապունարի կողմերէն քաղքին բնակչաց խմելու մաքուր ջուր մատակարարելու համար՝ բազմաթիւ գործաւորներ կ՚աշխատէին այն կողմերը։ Երբ մեծ աւազանը նորոգելու համար ջրոյ ակունքը գոցել կը ճգնէին, բաւական խորունկ՝ գետնին տակ ծածկուած գտան մարմարակուռ առիւծ մը եւ միւսին քարերով զարդարուած զանազան կտորներ։ Կան անտարակոյս նախկին դարերը յիշեցընող եւ գետնին խորքերը թաղուած ուրիշ քանդակներ ալ, զորոնք ժամանակը յերեւան պիտի հանէ։ Ժամանակ ժամանակ գտնուած հնութեան այս անդին յիշատակները, մատենագրաց ըսածին հետ միացած, բաւական են ապացուցանելու Հալքապունարի կողմերը շինուած երկրորդ Զմիւռնիան։

Սակայն եթէ հետաքրքրութեան համար գիտնալ ուզենք Զմիւռնիոյ երկրորդ անգամ շինութեան թուականն եւ հիմնարկողները, ստուգիւ ճշգրիտ թիւ մը եւ որոշ հիմնարկողներ պիտի չկարենանք գտնել, որովհետեւ կարծիքները զանազան են այս նկատմամբ. այսու ամենայնիւ մերձաւորապէս թուական մը կրնանք նշանակել։

Հերոդոտոս[1] կամ այն անձն՝ որ իր անուան տակ Հոմերոսի կեանքը գրած է, Զմիւռնիոյ հիմնարկութիւնը Թեսէոսի[2] (Thésée) կ՚ընծայէ, որ

---

1 Hérodote, Vie d'Homère.

2 Թեսէոս՝ յոյն դիւցազն, Ժերորդ թագաւոր Աթենացւոց եւ Եգէոս թագաւորին որդին, ծնած է ԺԲ դարու մէջ Ն. ք. Ք.։ Թեսէոս գրեթէ դիւցազնական դարու ամէն արշաւանաց մասնակցած է։ Ամազոններու դէմ իսկ կռուած է։ Իր մնացորդներն ի վերջոյ Աթէնք փոխադրուելով՝ քաղաքն իւր դիւցազին համար տաճար մը կանգնած է եւ զինքը կիսադից կարգը դասած։ (Dictionnaire de Biographie et d'Histoire, Par Ch. Dezobry, Th.

իւր կնոջը համար յիշատակ մը կանգնել ուզելով, հիմնարկած քաղաքին անունը կնոջն անուամբ Զմիւռնիա յորջորջեց: Կան նաեւ հաստատողներ եւ ըսողներ, թէ Ամազոններն[1] այս տեղերուն տիրած եւ իրենցմէ մէկուն անուամբ Զմիւռնիա անուանած են քաղաքը: Երրորդ կարծիքն ալ կ'ըսէ, թէ Թեսէոս Ամազոններու յաղթելով, Ամազոն - Զմիւռնիոյ, այսինքն անոնցմէ մէկուն հետ, որ Զմիւռնիա կ'անուանուէր, ամուսնացած է եւ ի դարձին հաստատած ըլլայ գիւղեր եւ իւր կնոջ անուամբ Զմիւռնիա անուանած:

Այս կարծեաց մին կամ միւսն ընդունելով՝ Զմիւռնիոյ երկրորդ շինութեան թուականը կրնանք դնել 1362—1232 միջոցները Ն. Ք. Ք.:

Գ. Յիշատակաց արժանի հնագոյն աւերակաց թանկագին կտորները, որոնք ժամանակ ժամանակ գտնուած են եւ կը գտնուին, երկրորդ Զմիւռնիոյ շինութեան տեղը կը ցուցընեն մեզի: Զմիւռնիան այժմ կը տեսնենք ուրիշ տեղ մը. ուրեմն քաղաքն ունեցած է երրորդ շինութիւն մըն ալ, եւ այս՝ երրորդ տեղւոյ մը վրայ: Եթէ այս երրորդ հիմնարկութեան սկիզբն որոշ գիտնալ ուզենք,

Bachelet. Paris 1857.) Տես նաեւ Ընդհանուր Պատմութիւն, Հ. Ն. Վ. Աւգերեան, Վիեննա 1861, երես 142:

[1] Ամազոններն (Amazones) են ժողովուրդ խորհրդաւոր կանանց, պատերազմող եւ յաղթող: Երկու տեսակ ժողովուրդ կամ երկու ցեղ Ամազոններու կը զանազանուի, արեւելեան կամ ասիական եւ արեւմտեան կամ ափրիկեան: Ասիական Ամազոններն աւելի նշանաւոր եւ համբաւաւոր են քան ափրիկեանները. իրենց պատմութեան գլխաւոր դէպքերն են ի մէջ այլոց Թեսէոսի դէմ մարտը, Տրովական (Troie) պատերազմը, որուն մէջ Տրովացւոց կողմը բռնած են: Զմիւռնիոյ, Եփեսոսի եւ այլեւայլ քաղաքներու հիմնարկող կը համարուին: Կ'ըսեն թէ իրենց աջկանց աջ ծիծերը կ'այրէին, որպէս զի աւելի դիւրութեամբ աղեղ կարենան գործածել: Վահան մը կը կրէին մահիկի ձեւով: Տես վերոյիշեալ բառագիրքը:

չենք կրնար մեր հետաքրքրութիւնը յագեցընել, որովհետեւ պատմագիրք չեն համարձակիր որոշ անձինքներու տալ այս հիմնարկութիւնն եւ հաստատել. ոմանք Աղեքսանդրի կամ իւր յաջորդաց, ոմանք ալ Լելեգեանց[1] (Léléges) կու տան այս մեծ պատիւը։ Քաղենք համառօտիւ պատմագրաց ըսածները։ Աղեքսանդր Մեծ՝ Յունաց ոխերիմ թշնամիներէն՝ Պարսիցմէ ոխ լուծելու եւ իւր յաղթական դրօշը մինչեւ անդամ Պարսից երկրին վրայ ծփացընելու մտածութեամբ, Ասիա անցած ատենը, պատգամի մը համաձայն, Պագոս (Pagus) լերան վրայ քաղաք մը շինեց։ Այս քաղաքը կէս մը լերան վրայ, կէս մ'ալ ստորոտը դաշտագետնոյն վրայ՝ ծովուն մօտ շինած է, ինչպէս կ'ըսեն Պլինիոս[2], Պաւսանիաս[3], Արիստիդէս[4]։

Սակայն Աղեքսանդրի՝ Պագոս լերան վրայ շինած քաղաքը նոր չէր. որովհետեւ Աղեքսանդրէ յառաջ կային Պագոս լերան վրայ աւերակներ, ըստ հետեւորդի ժամանակ մը բնակութեան տեղի էր հոն եւ Աղեքսանդր վերանորոգեց այն կողմերը։ Պագոս լերան վրայ գտնուած են աւերակներ, որոնց շինութեան սկիզբն Աղեքսանդրէ շատ յառաջ կը համարուի։ Այս աւերակաց ձեւը հնախօսներէն[5] „Pseudisodomum“ կ'անուանուի. ինչպէս Շանդլէր[6] եւ Համիլտոն[7] եւս այս կողմերն այցելութեան ելլելով հաստատած են, թէ այս աւերակաց շինութեան ձեւն է Pseudisodomum.

---

1 Լելեգեանք են Փոքր Ասիոյ նախկին յունացեղ ժողովրդոցմէ մին։

2 Pline (l, V, c. 31).

3 Pausanias (VII, 5).

4 Aristide (oeuv. t. I. p. 431, 436, 440, 763. Ed. Dindorf).

5 Vitruve (II, 8, § 6). Pline (XXXVI, 51).

6 Chandler (oeuv. p. 139).

7 Hamilton (oeuv. t. I. p. 53).

ճարտարապետական այս ձեւն Աղեքսանդրէ շատ յառաջ գործածուած ձեւն էր, եւ Աղեքսանդրի ժամանակն արդէն բոլորովին անգործածական եղած էր։ Հռոմայեցւոց կայսրութեան ժամանակ Isodomum ըսուած ճարտարապետական ձեւը կը գործածուէր։

Պաւսանիասի[1] մէկ խօսքն անգամ բաւական է ցուցընելու թէ Աղեքսանդրէ յառաջ Պագոս լերան վրայ աւերակներ կային։ Այս պատմագիրը կ'ըսէ. "Աղեքսանդր Պագոս լերան վրայ խուզարկութիւններ ընելով, կ'ըսեն, Նեմէսիսի (Némésis) տաճարին առջեւն եկաւ, երբ իր խուզարկութիւններէն կը դառնար։„ Սոյն աւերակաց հիմնարկողներն են Լելեգեանք, ինչպէս կը հաստատէ Ստրաբոն[2] Ասիայի հնութիւնները հետազօտող գիտնականը։ Երբ յոնիական ժողովուրդը, կ'ըսէ այս գիտնականը, "Եփեսոսէ դէպ ի այս կողմերն եկաւ, Մելէսի քով, Անահտայ Բաղանեաց մերձ՝ բնակութիւնն հաստատելու, գտաւ հոն զԼելեգեանք, որոնք տեղւոյն այն կողմը բնակութիւններ հաստատած էին, ուր է այժմ Զմիւռնիան։„ Պագոս լերան վրայ եղած աւերակաց մէկ մասին նախնական թուականը կ'ելլէ կը հասնի մինչեւ ԺԱ դարու սկիզբները Ն. Ք. Ք.։ Ըստ հետեւորդի՝ պէտք ենք ըսել, թէ Աղեքսանդր եղաւ վերանորոգիչ Պագոս լերան վրայ գտնուած հիմնարկութեանց, որ եւ հին Զմիւռնիոյ աջն ու ձախը գտնուող աւաններու մէջ բնակող ժողովուրդը հոն ժողովեց, որոնք պատգամի մը համաձայն, որ կ'ըսէր, թէ "Անոնք որ Պագոս պիտի բնակին, սուրբ Մելէսի դիմացը, երիցս եւ չորիցս երջանիկ պիտի ըլլան[3]„ թողուցին իրենց բնակավայրերն եւ եկան հաստատուեցան

1 Pausanias (VII, 5).
2 Strabon (XIV, 1, § 4).
3 Pausanias (VII, 5).

Պագոսի վրայ, թէպէտ եւ Ստրաբոն[1] Աղեքսանդրի յաջորդաց, այսինքն Անտիգոնոսի եւ Լիւսիմաքոսի կու տայ Զմիւռնիոյ վերանորոգման պատիւը, բայց տեղւոյն նկատմամբ կը միաբանի ուրիշ պատմագրաց հետ։

Ըստ հետեւորդի Պագոս լերան վրայ Աղեքսանդրի կամ իւր յաջորդաց վերանորոգած Զմիւռնիան 2100 տարիէ աւելի կանգուն մնացած է իւր տեղը եւ միայն երբեմն երբեմն պատահած քաղաքական պատերազմներէ, սաստիկ երկրաշարժներէ, աւերիչ հրդեհներէ փոփոխութիւններ կրած է, հնագոյն շէնքերու տեղ նորեր են կառուցուած։ Աղեքսանդրի մահուանէն ետքն Անտիգոնոս իւր աթոռը Զմիւռնիա հաստատեց։ Այս ժամանակները Զմիւռնիոյ վիճակը շատ ծաղկեալ կը գտնենք պատմութեանց մէջ։ Վաճառականութիւնը, արուեստները, հասարակաց եւ առանձնականաց շէնքերը, բնակչաց մարդավարութիւնը եւ քաղաքականութիւնը կատարեալ աստիճանի հասած կը կարդանք։ Տաճարները, ամէն տեսակ գիտութեանց, բայց առանձինն բժշկականութեան դպրոցները, բաղանիքները, կամարակապ սրահները, սալայատակ փողոցները, թաղերու գեղեցիկ բաժանումը, թատրոնները, գրատուններն եւն կատարեալ աստիճանի գեղեցկութեան մը հասած էին։ Ասոր համար նոյն իսկ Ստրաբոն[2] երբ տեսաւ Զմիւռնիան՝ ստիպուեցաւ ըսել թէ “այս քաղաքը ամենագեղեցիկն էր„ իւր տեսած քաղաքաց մէջ։ Իւր այս փառաւորութեան յիշատակները, հնադրամները, քանդակակերպ քարերը կը տեսնուին Եւրոպայի թանգարաններու մէջ, որոնք յընթացս ժամանակաց հոն փոխադրուած եւ պահուած են, ի մասնաւորի Օքսֆորդի թանգարանին մէջ գրա-

---

1 Strabon (Liv. XIV).

2 Strabon (1, XIV, c. I. 37).

նուած մարմարիոնները գեղեցիկ գրութիւններ կը բովանդակեն Զմիւռնիոյ վրայ։ Հռոմայեցւոց կայսրները միշտ աշխատած են Զմիւռնիան ծաղկեալ վիճակի մէջ պահելու եւ զանազան անուններով պատուած են[1]։ Այսպիսի վիճակի մը մէջ էր Զմիւռնիան, երբ Քրիստոսի 177 թուականին զարհուրելի երկրաշարժէ մը տակն ու վրայ եղաւ։ Սակայն Մարկոս Աւրեղիոս (161—180) վերստին ծաղկեցընելու հոգ տարաւ։ Դարեր անցուց Զմիւռնիան Հռոմայեցւոց կայսրութեան ներքեւ. Հուսկ ուրեմն 1084ին Tzachas[2] տաճիկ ծովահէնն իր ընկերներէն թագաւոր անուանուելով, յարձակմամբ առաւ Զմիւռնիան. սակայն չկրցաւ երկայն իշխել։ Ալէքս Կոմնենոսի ժամանակ Զմիւռնիան վերստին ազատեցաւ[3] (1097)։

Այս ժամանակները սկսած էր Փոքր Ասիա աւերակներով ծածկուիլ. Զմիւռնիան եւս կորսնցուցած էր իւր յիշատակելի փառաւորութիւնները[4]։ Քիչ մը յետոյ (1332) Ամուր Զմիւռնիոյ տիրած եւ իբր կառավար քաղքին՝ կը գտնենք[5]։ Ասոր ժամանակ Ռոդոսի Ասպետները Զմիւռնիոյ ծոցը մտնելով, ծովուն քով կառուցուած դղեակն առին եւ տիրեցին եւ քաղքին մէկ մասին վրայ տէր եղան[6]։ Այսպէս գրեթէ 50 տարւոյ չափ մաս մը Տաճկաց եւ մաս մ՚ալ Ասպետաց իշխանութեան տակ մնաց Զմիւռնիան։ Սուլթան Մուրատ՝ Ասպետաց դէմ ելլելով դղեակը պաշարեց, բայց չկրնալով տիրել, ետ քաշուեցաւ[7]։

1 Barthélemy (oeuv. p. 26). Encyclop. (art. Smyr. p. 187). C. F. Wheler (p. 243). Eckhel (t. II, p. 544). Spon (t. III, 1. part. p. 184).

2 Slaars (p. 30, § XIII. Smyrne 1868).

3 Le Beau (Vol. XV, 357). Gibbon (c. 59).

4 Chandler (oeuv. t. I. 132).

5 De Hammer (Hist. de l'Emp. Ott, 1, IV).

6 Hist. des Cortusi (1, VIII. c. 16).

7 Pierre de Loubeau (La Méditerannée).

Հուսկ ուրեմն (1402) նշանաւոր Լէնկթիմուր[1] (Tamerlan) Փոքր Ասիան քանդած կործանած ժամանակ, երբ լսեց որ Զմիւռնիան երկու իշխանութեանց բաժնուած է, իր Հրոս մոնկոլներով Հասաւ, քաղաքը պաշարեց եւ երեք կողմանէ յարձակելով տիրեց ամբողջ քաղաքին եւ Հարթ յատակ ըրաւ նշանաւոր շէնքերը։ Ռոդոսի Ասպետները ստիպեց Հեռանալ քաղքէն եւ ծովախորշէն[2]։ Լէնկթիմուր Հազարաւոր բանտարկելոց գլուխները կտրելով, իբր իւր յաղթութեան յիշատակ, աշտարակ մը կանգնեց, ամէն երկու քարի մէջտեղը գլխատուած մարդիկներու գանկերէն տեղաւորելով[3]։ Լէնկթիմուր Զմիւռնիայէն մեկնելով, իշխանութիւնը յանձնեց Քինէյիտի (Kinéit), որ սակայն չկրցաւ երկայն վայելել այս տեղը, որովՀետեւ Սուլթան Մուրատ Բ. (1424) Քինէյիտը վռնտելով ուրիշ կառավար մը դրաւ Զմիւռնիոյ վրայ։

Այս ժամանակէն սկսեալ մինչեւ ցայսօրս, Զմիւռնիա մնաց միշտ Օսմանեան կառավարութեան ներքեւ եւ սկսաւ վերստին ծաղկիլ[4]։ Թէպէտեւ 1694ին, ԱՀմէտ Բ.ի կառավարութեան ժամանակ, Վենետիկի իշխանները նաւատորմիղով ուզեցին պաշարել քաղաքը, բայց Եւրոպական Հիւպատոսներու միջամտութեամբ մեկնեցան ծովախորշէն, առանց բան մ'ընելու[5]։ Ունեցաւ այն ժամանակ ժամանակ պատաՀած ներքին խռովութիւններ, ինչպէս (1736) Սարիմբէօղլույի (Sarim-

---

1 Լէնկթիմուր (Tamerlan, Timour-Leng) նշանաւոր աշխարՀակալ թաթարը ծնած է Քէշ (Kech) 1336ին Սամարղանդի մօտ եւ Ճինկիս խանի տնէն է։

2 A. Mazas: Les Hommes illustres de l'Orient (t. II. p. 303).

3 Ducas (1, 17, p. 40—41). Mazas (p. 304, 305)։

4 Chandler (oeuv. p. 135).

5 Dém. Cantém. (Hist. Ott, 1, IV, 47).



ՊԱԴՈՍ ԼԵՌՆԱԲԼՐԱԿԻՆ ՎՐԱՅ Դ. ԴԱՐՈՒՆ ԿԱՌՈՒՑՈՒԱԾ ԲԵՐԴԻՆ ՄՆԱՑՈՐԴՆԵՐԸ:

péoglou) եւ ուրիշ կոտորածներ, բայց ասոնցմէ այնչափ մեծ հետեւութիւն մը յառաջ չեկաւ Զմիւռնիոյ համար։

Մինչեւ ցայս վայր ըսուածներէն կը տեսնուին հինաւուրց քաղաքիս ունեցած փոփոխութիւնները։ Եթէ ներկայիս մենք եւս ուզենք տեսնել վերոյիշեալ մատենագրաց եւ հնախօսաց յայտնած դարերու եւ տարիներու հնութեան սքանչելի յիշատակները, ստուգիւ չենք կրնար գտնել. աւերիչ եւ ապականիչ ձեռքերէ զատ՝ երկրաշարժը քանիցս տակն ու վրայ ըրած է քաղաքը։ Աւերակաց մնացորդներն ալ ուրիշ շէնքերու շինութեան գործածուած են, ինչպէս բաղանիքներու եւ խաներու, ի մէջ այլոց նախկին պազարը, Պէզէսթէնը որ 1675ին տակաւին շինութեան մէջ էր, Վէզիր խանը եւ ուրիշ խաներ շինուած են հնութեան պատկանող քարերով։ Կան տեղ տեղ պարտէզներու մէջ, հոս հոն պատերու մէջ խոյակներ, պատուանդաններ, սեան կտորներ, խորափոր եւ բարձրաքանդակ զարդեր, որոնք հնութեան ձեռաց գործուածքներն են։ Այսպէս ցիր ու ցան եղած կտորներէն զատ՝ գլխաւորաբար կան տակաւին այսօրս Պագոս[1] լերան վրայ աւերակներ, որոնցմէ մաս մը շատ հին, մաս մը Աղեքսանդրի ժամանակէն եւ մաս մ'ալ յետագայ տարիներէն մնացած են։ Շէնքերու համար հիմեր փորուած ժամանակ կը գտնուին նաեւ երբեմն երբեմն հնագոյն գործուած քարերու կտորներ։ Կան նաեւ բազմաթիւ մասեր Եւրոպական թանգարանաց մէջ փոխադրուած եւ պահուած, որոնք կորստեան ժանիքներէն եւ քանդիչ ապականիչ ձեռքերէ ազատած՝ պիտի պատմեն ապագայ տարիներու՝ Զմիւռնիոյ ունեցած փառքը։

---

1 Պագոս լեռը տեղացիներէն Գատիֆէ Գալէսի կամ Գատիֆէ տաղը եւս կ'անուանուի։

Պատմական տեսակէտով այս 3000 տարուան քաղքին վրայ համառօտ գաղափար մը կազմելէն ետքը՝ դառնանք ակնարկ մ'ալ նետենք իւր այժմեան դիրքին վրայ։

---

## ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

*Զմիւռնիոյ տեսքը, փողոցները, տները, ծովեզերեայ քարափանց վրայ տեսարաններ, գաղթականութիւնները եւ վաճառականութիւնը:*

Ա. Լամարդին Զմիւռնիան արեւելքի աստղը կ'անուանէ, որ եւ բանաստեղծութեանց մէջ յոնիական ծովուն թագուհին կը յորջորջուի։

Զմիւռնիոյ ծովախորշն աւելի սիրուն եւ գեղեցիկ է, քան Մարսիլիայի, Ճենովայի, Նապոլիի խորշերը, կ'ըսէ Պիեր դը Լուբօ[1], ականատես բազմաթիւ անձանց տուած տեղեկութեանց վրայ հիմնեալ։ Երբ նաւ մ'այս խորշին մէջ կը մտնէ, յարկին վրայ գտնուող օտարական ճանապարհորդը, որ անհամբերութեամբ կը սպասէ նոր քաղաք մը տեսնելու, վեր վար ելլելով իջնալով՝ աջ ու ձախ հետաքրքրական նայուածք նետած ժամանակ, վերջապէս կը նշմարէ հեռուն կարգ մը բլրակներու վրայ եւ անոնց ստորոտը շինուած Զմիւռնիոյ քաղքին շէնքերը, երկայն կարգի մը վրայ ճերմակ տները, մզկիթներու գմբեթներն ու աշտարակները։ Քիչ մ'աւելի քաղքին մօտեցած ժամանակ՝ կը տեսնէ ցած, խառնաշփոթ ու գոյնզգոյն տներուն վրայ տիրող եկեղեցիներու գմբեթաւոր յարկերը, զանգակաւոր բարձր աշտարակներն եւ նշանաւոր շէնքերը։ Իսկ երբ նաւը բոլորովին կը մերձենայ նաւահանգստին, միայն կարգ մը շէնքեր կը տեսնուին, որոնք ծովեզերեայ քարափանց վրայ

---

1 Pierre de Loubeau (La Méditerannée Pittoresque).

վերէն վար շինուած, գեղեցիկ տեսարան մը, եւրոպական քաղաքի մը տեսքը կ'ընծայեն նաւուն յարկին վրայ կեցող հետաքրքիր աչքերուն։

Բաց՝ խորշին մէջտեղէն՝ Զմիւռնիոյ շուրջն ակնարկ մը նետելով՝ կը տեսնենք քաղաքին ետեւի կողմը՝ հոս հոն նոճիի (cyprès) մշտադալար անտառակներ, որոնց կռնակը բարձրացած է Պագոս լեռնաբլրակն իւր աւերակներով։ Հարաւակողմը, դէպ ի Եփեսոս կը տարածուին հարուստ արգասաւոր դաշտագետիններ, որոնց վրայ կ'արծես թէ կ'իշխէ կրկնագագաթ եւ "Երկու Եղբարք" (Իքի գարտաշլար) ըսուած լեռը։ Հիւսիսային կողմը կը տեսնուին Սիպիլ լերանց շարքը, Գորտելիօ ցած եւ Պայրաքլը բարձր գիւղերն եւ ամառնային ուրիշ բնակավայրեր։ Իսկ հիւսիս-արեւելեան կողմը կը տեսնուին Պուռնապատ եւ Հաճըլար գիւղերուն ձորերն ու ծործորները։ Զմիւռնիոյ ծովն եւ երկինքն անոյշ կապուտակ են, օդն այնպէս մաքուր եւ յստակ է որ խորշին արեւմտեան կողմը՝ հեռուն եւ շուրջը բարձրացած լեռները կ'երեւան մօտ եւ անշփոթ։

Արեւելեան քաղաքներու մեծագոյն մասին նման՝ Զմիւռնիա ալ կրկին տեսք ունի. հեռուէն դիտելով պալատներու եւ շքեղ ապարանքներու բովանդակութիւն մը կ'երեւայ։ Խորշէն ներս մտած եւ քաղաքին վրայ նայուածք մը նետած ատեննիս՝ կախարդական տեսք մ'ունի կարծես, նա մանաւանդ երբ մարը մտնող արեգակն իր վերջին հրաշէկ ճառագայթները ձգած ըլլայ՝ բլրակներուն բարձանց վրայ աստիճանաբար շինուած տներուն, հազար ու մէկ ճառագայթներ, գոյնզգոյն ցոլացումներ ու շողշողուն կայծեր կը տեսնուին անոնց պատուհաններուն թափանցիկ ապակիներէն եւ երբեմն ալ հրաշէկ բոյներու մէջ ծածկուած կ'երեւան ամբողջ տները։ Այս շքեղ տեսարանները զմայլման մէջ կը ձգեն հեռուէն դիտողը,

բայց երբ մարդս ոտքը գետինը դնէ եւ դէպ ի այն պալատակերպ տներուն կողմը, այն փողոցներր մտնէ, զմայլումը բոլորովին կը փարատի, փողոցները նեղ եւ անմաքուր կը տեսնուին, տեսարանը կը փոխուի, հեռուէն ստացուած գաղափարն ալ կը կորսուի։

Բ. Պագոսի բարձանց վրայ եղած Նախկին ծաղկեալ քաղքին տեղը կան այժմ միայն կամարներու եւ աւերակաց մնացորդներ եւ ցիրուցան շինուած նորագոյն տնակներ եւ խրճիթներ, իսկ բուն քաղաքը շինուած է, ինչպէս կը տեսնենք, Պագոսի կողերուն վրայ եւ ստորոտը։ Ստորոտը կառուցուած տներուն տեղը այսօրուան օրս կրկին անգամ ընդարձակուած է, ժամանակ ժամանակ ծովը լեցուած, ի մասնաւորի 1880 ծովեզերեայ քարափունքը շինուելէ յետոյ քաղաքն ալ մեծապէս փոխուած է։ (Քարափը 1868ին սկսաւ եւ 1880 լմնցաւ)։ Ծովեզերրաց սալայատակ ափունքէն եւ ասոր հետ զուգահեռական եղող կրկին փողոցներէն, ինչպէս նաեւ քանի մը անցուդարձի աւելի ենթակայ կամ բանուկ փողոցներէն զատ, ընդհանրապէս միւս փողոցները նեղ եւ շատ գէշ յատակ ունին, այսպիսի փողոցներու վրայ քալել չգիտցողը մեծ զգուշութեամբ պէտք է քայլերը փոխել, որ չըլլայ թէ խորտուբորտ քարերուն վրայ կոխած ատեն ոտից մատուըները ցաւցընէ։ Թէպէտ եւ վերջին տարիներուս մէջ քաղաքապետութեան կողմանէ մեծ հոգ տարուեցաւ անհարթ փողոցներու շինութեան համար եւ բաւական թուով փողոցներ ալ սալայատակ շինուեցան, բայց կան տակաւին թաղեր, գլխաւորաբար տաճկաց եւ հրէից թաղերն, որոնց փողոցները շինութեան մեծ պէտք ունին. ասոնցմէ զատ նոյն իսկ եւրոպացւոց բնակած թաղերուն կողմերը եւ կամ թէ ըսեմ մաքուր եւ. բանուկ փողոցի մը աջն ու ձախը կը գտնուին այնպիսի երկրորդական փողոցներ ալ,

վերէն վար շինուած, գեղեցիկ տեսարան մը, եւրոպական քաղքի մը տեսքը կ'ընծայեն Նաւուն յարկին վրայ կեցող հետաքրքիր աչքերուն։

Բայց՝ խորշին մէջտեղէն՝ Զմիւռնիոյ շուրջն ակնարկ մը նետելով՝ կը տեսնենք քաղքին ետեւի կողմը՝ հոս հոն նոճիի (cyprès) մշտադալար անտառակներ, որոնց կռնակը բարձրացած է Պագոս լեռնաբլրակն իւր աւերակներով։ Հարաւակողմը, դէպ ի Եփեսոս կը տարածուին հարուստ արգասաւոր դաշտագետիններ, որոնց վրայ կ'արծես թէ կ'իշխէ կրկնագագաթ եւ "Երկու Եղբարք" (Իքի գարտաշլար) ըսուած լեռը։ Հիւսիսային կողմը կը տեսնուին Սիպիլ լերանց շարքը, Գորտելիօ ցած եւ Պայրաքլը բարձր գիւղերն եւ ամառնային ուրիշ բնակավայրեր։ Իսկ հիւսիս-արեւելեան կողմը կը տեսնուին Պուռնապատ եւ Հաճըլար գիւղերուն ձորերն ու ծործորները։ Զմիւռնիոյ ծովն եւ երկինքն անոյշ կապուտակ են, օդն այնպէս մաքուր եւ յստակ է որ խորշին արեւմտեան կողմը՝ հեռուն եւ շուրջը բարձրացած լեռները կ'երեւան մօտ եւ անշփոթ։

Արեւելեան քաղաքներու մեծագոյն մասին նման՝ Զմիւռնիա ալ կրկին տեսք ունի. հեռուէն դիտելով պալատներու եւ շքեղ ապարանքներու բովանդակութիւն մը կ'երեւայ։ Խորշէն ներս մտած եւ քաղքին վրայ նայուածք մը նետած ատեննիս՝ կախարդական տեսք մ'ունի կարծես, նա մանաւանդ երբ մարը մտնող արեգակն իր վերջին հրաշէկ ճառագայթները ձգած ըլլայ՝ բլրակներուն բարձանց վրայ աստիճանաբար շինուած տներուն, հազար ու մէկ ճառագայթներ, գոյնզգոյն ցոլացումներ ու շողշողուն կայծեր կը տեսնուին անոնց պատուհաններուն թափանցիկ ապակիներէն եւ երբեմն ալ հրաշէկ բոցերու մէջ ծածկուած կ'երեւան ամբողջ տները։ Այս շքեղ տեսարանները զմայլման մէջ կը ձգեն հեռուէն դիտողը,

բայց երբ մարդս ոտքը դետինը դնէ եւ դէպ ի այն պալատակերպ տներուն կողմը, այն փողոցները մտնէ, զմայլումը բոլորովին կը փարատի, փողոցները նեղ եւ անմաքուր կը տեսնուին, տեսարանը կը փոխուի, հեռուէն ստացուած գաղափարն ալ կը կորսուի։

Բ. Պագոսի բարձանց վրայ եղած նախկին ծաղկեալ քաղաքին տեղը կան այժմ միայն կամարներու եւ աւերակաց մնացորդներ եւ ցիրուցան շինուած նորագոյն տնակներ եւ խրճիթներ, իսկ բուն քաղաքը շինուած է, ինչպէս կը տեսնենք, Պագոսի կողերուն վրայ եւ ստորոտը։ Ստորոտը կառուցուած տներուն տեղը այսօրուան օրս կրկին անգամ ընդարձակուած է, ժամանակ ժամանակ ծովը լեցուած, ի մասնաւորի 1880 ծովեզերեայ քարափունքը շինուելէ յետոյ քաղաքն ալ մեծապէս փոխուած է։ (Քարափը 1868ին սկսաւ եւ 1880 լմնցաւ)։ Ծովեզերաց սալայատակ ափունքէն եւ ասոր հետ զուգահեռական եղող կրկին փողոցներէն, ինչպէս նաեւ քանի մը անցուդարձի աւելի ենթակայ կամ բանուկ փողոցներէն զատ, ընդհանրապէս միւս փողոցները նեղ եւ շատ դէշ յատակ ունին, այսպիսի փողոցներու վրայ քալել չգիտցողը մեծ զգուշութեամբ պէտք է քայլերը փոխել, որ չըլլայ թէ խորտուբորտ քարերուն վրայ կոխած ատեն ոտից մատուըները ցաւցընէ։ Թէպէտ եւ վերջին տարիներուս մէջ քաղաքապետութեան կողմանէ մեծ հոգ տարուեցաւ անհարթ փողոցներու շինութեան համար եւ բաւական թուով փողոցներ ալ սալայատակ շինուեցան, բայց կան տակաւին թաղեր, գլխաւորաբար տաճկաց եւ հրէից թաղերն, որոնց փողոցները շինութեան մեծ պէտք ունին. ասոնցմէ զատ նոյն իսկ եւրոպացւոց բնակած թաղերուն կողմերը եւ կամ թէ ըսեմ մաքուր եւ բանուկ փողոցի մը աջն ու ձախը կը գտնուին այնպիսի երկրորդական փողոցներ ալ,

որոնք իրենց նեղութեան, խորտուբորտութեան եւ ի մասնաւորի անմաքրութեան համար պատիւ չեն բերեր քաղքին։ Փողոցներն անկարգ են, զուգահեռական կրկին փողոցներէն եւ Հայոց Թաղի փողոցներու կանոնաւոր բաժանումներէն զատ՝ մնացած Թաղերու փողոցները խառնաշփոթ եւ ծուռ են։

Զմիւռնիոյ շէնքերն ընդհանրապէս կրկնայարկ են, շատ քիչ կը տեսնուին երեք չորս դատիկոն ունեցող տներ։ Տան մը շինութեան ներկայ եղողը կրնայ ընդհանուր գաղափար մ՚ունենալ քաղքին շինուածոց վրայ։ Տան հիմունքը դնելէ ետքն՝ այն հիմանց վրայ կը շինուի տան կմախքը փայտէ. խաչաձեւ զուգահեռական գերաններով ամբողջ տունը շինելէ ետքն՝ այս գերանները կ՚առնուին քարերու, աղիւսներու եւ ծեփերու մէջ. փայտերը կը ծածկուին, տունը քարաշէն կը դառնայ։ Զմիւռնիոյ ճարտարապետութեան այս կերպն եւ տներու ցած ըլլալն անոր համար է, որպէս զի բնութեան հարուածոց՝ երկրաշարժի ցնցումներուն դէմ դնել եւ դիմանալ կարենան։ Նորակառոյց շէնքերն ունին այժմ երկաթեայ ձողեր իրենց պատերուն եւ դատիկոններու ձեղուններուն մէջ։

Քաղքին ամենաշքեղ շէնքերը կը գտնուին ընդհանրապէս քարափանց վրայ եւ "Փրանկաց" ըսուած փողոցին մէջ։ Քարափանց վրայ շինուած շէնքերուն մէջ առաջին տեղին կը բռնէ Ս. Սպարթալեանի ամբողջ մարմարաշէն ճակատով փառաւոր բնակարանը, եւ ուրիշ հասարակաց շէնքեր։

Գ. Նորեկ եւրոպացի ճանապարհորդ մը, որ բնաւ արեւելեան քաղաքաց վրայ գաղափար չունի, նաւէն դուրս ելած եւ ոտքը ցամաք կոխած վայրկենին, զարմանալի տեսարաններ բացուած կը տեսնէ առջեւն. այնպիսի տեսարաններ որոնք ապշութեան մէջ կը ձգեն զինքը։ Երկայն շարք

մ'ուղտերու քարափանց վրայ, խառնիճաղանճ ամբոխին մէջէն կ'երթան դէպ ի վեր, ուրիշ շարք մը կու գայ վերէն, օրն ի բուն շարժման մէջ են տաք կլիմայի բեռնաբարձ այս անասունները, բոժոժներով եւ զանգակներով զարդարուած, ոմանք ծանրաբեռն բեռնաւորուած՝ հանդարտաքայլ յառաջ կը շարժին, ոմանք բեռներէն թեթեւցած քիչ մ'աւելի շուտով կը քալեն, որոնց առջեւէն կ'երթայ սովորաբար իշուկ մը, վրան ալ կքած ընդհանրապէս սեւամորթ ուղտապանը, որ յոգնութենէն կէս մը կը մրափէ։

Առաջին անգամ այս ուղտերու շարքը տեսնողը կ'ապշի կը մնայ. քարափանց վրայ կը տեսնուին Եւրոպացիներ, որոնք հետաքրքրութեամբ միտ կը դնեն այս անասնոց քայլերուն, երկայն վզերուն, զարդարանքներուն՝ բոժոժներուն, երբ մանաւանդ "ըմբիշ" (փէհլիվան) ըսուած ուղտը տեսնեն, որուն ոտքէն մինչեւ գլուխը զանգակիկներ կախուած, ճերմակ փրփուրը բերանը պատած, ահագին շառաչիւնով բարձրագլուխ կ'երթայ շարքին առջեւէն։ Քարափանց վրայ եթէ քանի մը վայրկեան վեր վար քայլերնիս փոխելու ըլլանք՝ ուրիշ տեսարան մը կը տեսնենք. ամէն ազգէ նաւաստիներ, Եւրոպացիներ իրենց զգեստովը, տեղացին հազար տեսակ զգեստներու տակ, վաճառականը, գործակատարը, գրագիրը, վհուկները, զանազան տիպերով խառնիճաղանճը, ոմանք դանդաղաքայլ, ոմանք հապճեպով կը քալեն, ոմանք նստած, ոմանք ոտքի վրայ խառն ի խուռն անցուդարձը կը դիտեն։ Այս տեսարանները՝ որ արեւելեան քաղաքաց շատերուն յատուկ են, կը շլացընեն օտարին աչքերը եւ կը զուարճացընեն Զմիւռնիոյ այցելուները։

Դ. Զմիւռնիա Բաբելոնի խառնակութեան ճշմարիտ պատկերն է. ամէն տեսակ լեզու՝ տեսակ տեսակ շեշտերու տակ կը լսուի։ Կան բաւական

թուով զանազան հասարակութիւններ, որոնք իրենց սեպհական լեզուն կը գործածեն։ Գաղղիական եւ անգղիական գաղթականութեանց քով կը գտնուի հոլանդական գաղթականութիւնն որ ընդհանրապէս անգղիերէն կը խօսի։ Իտալացիք, որոնք միւս գաղթականութիւններէն աւելի բազմաթիւ են, այնպիսի խօսակցութիւն մ'ունին, որ աւելի մալթեզի լեզուին կը նմանի։ Գերմանացի եւ աւստրիացի աննշան թուով գաղթականութիւնները պահած են իրենց լեզուն։ Աւելի բազմաթիւ են պեղոպոնեսցի եւ կղզեցի յոյներն որոնք պահած են իրենց յատուկ լեզուն։ Հայեր՝ որոնք իրենց խօսակցութեան կերպիւ կը տարբերին Պոլսոյ հայերէն։ Սլաւներ՝ որոնք կը խօսին սերպերէն։ Հրեաներ իրենց օտար խօսակցութեամբ, կէսը սպաներէն եւ կէսը իտալերէն։ Տաճիկը, Պարսիկը, Քուրդը, Թաթարը, Գնչուն, ասոնք ալ զանազան շեշտերով եւ լեզուներով։ Բայց ընդհանրապէս քաղքին առուտուրի լեզուն յունարէն է. կը տեսնուին փողոցներու մէջ, ձեռքի վրայ առուտուր ընողներ, մրգավաճառներ, փերեզակներ եւն հայեր, հրեաներ, տաճիկներ, որոնք յունարէն կը խօսին անճոռնի շեշտերով, յունարէն կը կանչեն՝ գնողներ գտնելու համար։ Իսկ Եւրոպայի հետ եղած վաճառականական թղթակցութիւնն այն երկրին լեզուաւը կ'ըլլայ, որուն հետ կը թղթակցի վաճառականը։

Ե. Վաճառականական տեսակէտով եթէ նկատելու ըլլանք Զմիւռնիան, սա ընդհանուր հետեւութիւնը կրնանք քաղել։ Օսմանեան իշխանութեան տակ գտնուող նաւահանգիստ քաղաքներուն մէջէն ամենէն աւելի Զմիւռնիա վայելած է եւ կը վայելէ վաճառականութեան պտուղները։ Զմիւռնիոյ դիրքը՝ զինքը կենդրոնական մթերանոցի վայր կ'ընէ արեւելցիներուն՝ Արեւելքի եւ Արեւմուտքի մէջ հաստատուած տուր եւ առի

յառաջադիմութեան համար։ Շարդէն [1], որ 1672ին քաղաքս եկած է, նոյն ժամանակն Եւրոպայի Զմիւռնիոյ հետ ըրած վաճառականութիւնը հետաքրքրական եւ սքանչելի կերպով ստորագրած է իր "Ճանապարհորդութիւն Պարսկաստան եւ ուրիշ արեւելեան տեղերը" անուն գրքին մէջ։ Եւրոպայի եւ Ասիայի վաճառքներու եւ բերքերու փոփոխութեան նաւահանգիստն ըլլալու պատիւը կը կրէ Զմիւռնիա։ Այս համար տասնեօթներորդ եւ տասնութերորդ դարերու մէջ, նոյն իսկ տասնուիններորդ դարուս սկիզբները, երկայն շարք մը ուղտերու միշտ շարժման մէջ էր, Փոքր Ասիոյ ներքին կողմերէն կու գար՝ բեռնաւորուած մետաքս, համեմունք եւ պտուղ, եւ կ'անցնէր Զմիւռնիոյ կարաւանի կամուրջ (Pont des Caravans) ըսուած նշանաւոր կամուրջէն, որ քաղքին դուռը կը համարուէր, եւ կը դառնար նոյն ճամբով՝ բեռնաւորուած Լոնտի, Վենետիկի եւ Մարսիլիայի վաճառքներով [2]։

Բայց Հնդկաստանի, Չինի եւ Ճաբոնի հետ եղած վաճառականութեան ծաւալումն՝ Արեւելքի մթերանոցն եղող Զմիւռնիոյ միակ անունը ջնջեցին. նախ Աղեքսանդրիա եւ յետոյ Պորտ-Սայդ (Port-Said) մեծ անիրաւութիւն հասցուցին Զմիւռնիոյ։ Սուէզի պարանոցի բացումը զգալի վնասներու պատճառ եղաւ վաճառականութեան այս կեդրոնին։ Թէպէտ եւ ստուգիւ Զմիւռնիա չունի այժմ իր նախկին նշանաւոր առեւտուրի համբաւը, սակայն դարձեալ ներկայիս մեծ դեր կը խաղայ Փոքր Ասիոյ ներքին քաղաքաց բերքերուն արտածութեան եւ Եւրոպական վաճառքներու ներածութեան գործոյն մէջ։

1 Chardin (Voyages en Perse et autres lieux de l'Orient. t. I, p. 6 et suiv. Ed. 1811).

2 Spon (t. I. 311). Turnefort (l. c. p. 372).

Երկրին սննդարար բերքերն են սքանչելի եւ տեսակ տեսակ խաղող, ի մասնաւորի անկուտ խաղողն, Նշանաւոր Նուռ, համեղաճաշակ Թուզ, մեծկակ շամիչ, զուարթարար եւ զօրացուցիչ գինի, բալ, քաղցրահամ նարինջ եւ ուրիշ պտուղներ. ցորեն, գարի, ձիթապտուղ, բակլայ, որոնցմէ ոմանք Եւրոպայի եւ Ամերիկայի հետ եղած վաճառականութեան գլխաւոր նիւթերն են, ինչպէս նաեւ ափիոնը, բամբակը, խոզկաղինը, եւն: Իսկ Եւրոպայի մեծ տէրութեանց վաճառքներէն ինքը կ'առնու ընդհանրապէս Անգղիայէն ծաղկեայ կերպասներ, կտաւեղէններ. Գաղղիայէն զարդի ազնիւ նիւթեր, կերպասեղէններ. Գերմանիայէն եւ Աւստրիայէն ապակեղէններ, պատրաստ զգեստներ եւն: Այսպէս թէ հին եւ թէ նոր աշխարհի հետ յարաբերութեան մէջ կը գտնենք Զմիւռնիան:

---

## ԳԼՈՒԽ ԵՐՐՈՐԴ

*Զմիւռնիոյ երկրաշարժները, հրդեհները եւ զուարճալիքը:*

Ա. Ըսինք վերն որ Զմիւռնիոյ օդը մաքուր է, սակայն իւր այս մաքուր օդին եւ ջինջ երկնքին տակն ունեցած է եւ կ'ունենայ ճարակող հիւանդութիւններ եւ բնութեան դառն հարուածներ: Երկրաշարժն անպակաս է, գրեթէ ամէն տարի յանկարծօրէն ցնցումներ կ'ունենայ քաղաքը, բայց բարեբախտաբար այս ցնցումները տկար են եւ ծանր հետեւութիւններ չեն ունենար: Քաղքին շէնքերն ալ այնպիսի կերպով շինուած են, որ կարող կ'ըլլան այս ցնցումներուն դէմ դնել: Եւրոպացի ճանապարհորդներ խօսած են Զմիւռնիոյ սաստիկ երկրաշարժներուն վրայ. ի մէջ այլոց Պոքոք[1], որ 1739ին Զմիւռնիա անցած էր, նոյն

1 Pockocke (Descript. de l'Or.).

տարւոյ մէջ պատահած երկրաշարժին վրայ խօսքը դարձընելով կ'ըսէ. “Քանիցս սաստիկ երկրաշարժներ այս քաղաքը հիմնայատակ ըրած են. սակայն 1739 տարւոյն Ապրիլի մէջ պատահածն ամենասաստիկն եւ սոսկալին էր։ Բազմաթիւ տներ կործանեցան եւ բնակիչներ աւերակաց տակ ճմլուեցան. մէկ խօսքով չմնաց չէնք մ'որ վնասուած չըլլար, երկիւղն եւ սարսափն այնչափ եւ այնպէս ընդհանուր էր, որ բնակիչք ամբողջ ամառը պարտէզներու մէջ անցուցին. շատերն ալ իրենց տեղն ու տունը թող տալով, ուրիշ տեղեր փոխադրեցին գործքերնին։„ Լսենք ուրիշ պատմագրի մը ըսածն. Սպոն (Spon) որ 1675ին Զմիւռնիոյ այցելութեան եկած է, կը գրէ թէ այս քաղաքը վեց անգամ զարհուրելի կերպով երկրաշարժէն ցնցումներ կրած է։ Սպոնի ըսածէն զատ ունեցած է սոսկալի շարժեր, որոնց մէջ նշանաւոր է 1688ին պատահածն եւ միեւնոյն ժամանակ տեղի ունեցած սոսկալի հրդեհը։ Այս դժբախտ պատահարաց մանրամասն տեղեկութիւնները պահուած են Զմիւռնիոյ Գաղղիական հիւպատոսարանի դիւանատան մէջ, ուսկից Սլարս[1] առնլով կը դնէ իր մէկ աշխատասիրութեան մէջ, որմէ կը քաղենք հետեւեալները՝ պատահած դժբախտութեանց վրայ համառօտ գաղափար մը տալու համար։ Սոյն սարսափելի հարուածին գրեթէ քաղքին տներուն երրորդ մասը կործանեցաւ, տասնուչորս հազար հոգի իրենց կեանքը աւերակաց մէջ կորսնցուցին։ Միեւնոյն ժամանակ տնէ մը կրակ ելլելով ամէն կողմ տարածուեցաւ եւ երկրաշարժէն ազատ մնացած տեղերն ապականեց։ Սոսկալի հուրը Փրանկաց փողոցը վերէն վար ճարակելով՝ հասաւ մինչեւ Հայոց թաղը։ Կրակը շուկան ալ տարածուելով՝ այրեց ու լափեց գրեթէ քաղքին կէսը։ Կաթողի-

---

1 Slaars (Etude sur Smyrne 1868).

կեայց երեք եկեղեցիները, Կապուչիններու (կրկնակնգղաւոր), Յիսուսեանց եւ Փրանկիսկեանց (միակնգղաւոր) եկեղեցիներն ամբողջովին այրեցան եւ կործանեցան: Յունաց մեծ եկեղեցին բոլորովին հրոյ ճարակ եղաւ: Հայոց միակ եկեղեցին ամբողջովին այրեցաւ եւ փլաւ: Տանեօթը մեծ մզկիթներէն միայն երեքը կանգուն մնացին, անոնք ալ վնասուած: Բնակելի տուն չմնաց: Երկրաշարժին առաջին ցնցումին գետինը բացուելով՝ սեւ ջուր դուրս ժայթքեց, որ կարծես կը պըճպըճար եւ կ՚եռար եւ անտանելի ժանտահոտութիւն մ՚ունէր: Երկրին սոյն պատռուածներուն վրայ անկենդան ձկեր մնացած էին, որոնք կարծել կու տային թէ այս ջուրը ծովէն եկած ըլլայ: Սեվտիքէօյի կողմերն աղբիւրներու ակունքներ ցամքեցան եւ ուրիշ նորեր բացուեցան. այս աղբիւրներէն մին միայն կրնար երկու աղօրիք դարձընել:

Դժբախտութիւնը մեծ եւ անչափ էր, սակայն ցերեկ ատեն պատահելուն համար՝ բախտ կը համարուէր. եթէ խորին գիշերուան մէջ տեղի ունենար, քաղքին բնակչաց մեծագոյն մասը փլատակաց տակ պիտի թաղուէր: Վաճառականութիւնը դադրեցաւ, հազիւ քիչ մը ապրանք մնացած էր քաղքին մէջ. երկրաշարժէն եւ կրակէ ազատ մնացածներն ալ կողոպտուեցան: Շարժը Յուլիսի 11էն սկսեալ մինչեւ նոյն ամսոյն 31երորդ օրն՝ ամէն օր գրեթէ ցնցումներ կու տար. կրակը դեռ կը մխէր Յուլիսի վերջերը:

Ճիշդ դար մը յետոյ, այսինքն 1778ին, եւ միեւնոյն ամսուան՝ Յուլիսի երեքին դարձեալ երկրաշարժը տակն ու վրայ ըրած է Զմիւռնիա քաղաքը: Այս աղէտաւոր դէպքին վրայ եղած գրութիւններէն կը քաղենք հետեւեալները: Կէս գիշերէն ետքը՝ յանկարծական սոսկալի ցնցում մը քաղքին լռիկ մնջիկ հանգստութեան մէջ եղող բնակիչներն ոտք կը հանէ, որոնք իրենց

ձեռքն եկածը վրանին առնելով՝ իրենց սիրելի կեանքը փրկելու ազատելու համար՝ բաց տեղեր կը փութան: Երկրաշարժը քար քարի վրայ չէ թողուցած. սոսկումն ու սարսափն այնպէս մեծ եղած է, որ բնակիչները գիւղերն ապաստանած են, որով քաղաքն անապատ մը դարձած է: Ի լրումն այս մեծ թշուառութեան՝ նոյն օրն ըստ պատահման յոյնի մը տնէն կրակ ելլելով եւ հիւսիսային հովէն վայրկենի մը մէջ հոս հոն տարածուելով՝ անթիւ տներ այրած է: Ապականիչ կրակը մարող չկար. սաստկաշունչ եւ հրաբորբոք հովն ու երկրին սաստիկ եւ անդադար ցնցումներն այնպիսի սոսկում կը ձգէին սրտերու մէջ, որ մարդիկ աւելի կ'ընտրէին փախչիլ, թող տալով կրակին՝ այրելու լափելու ըստ իւր վայրագութեան, քան սպասել հոն եւ բնութեան հարուածոց դէմ կռուիլ: Քսանէն աւելի խաներ, գրեթէ ամէնն ալ քարաշէն, հրոյ ճարակ եղան: Գաղղիական, Անգղիական, Վենետիկի, Նապոլիի եւն հիւպատոսարաններն այրեցան, հուսկ ուրեմն ինչ որ կրակէն ազատած էր, գողցուեցաւ ու կողոպտուեցաւ, ինչպէս միշտ կը պատահի:

Երկրաշարժի ատեն հանդիպած հրդեհներէն զատ՝ պատահած են նաեւ երբեմն երբեմն կրակներ, որոնք ամբողջ թաղեր ու հարիւրաւոր տներ մոխիր դարձուցած են: Լաւ կը յիշեն տեղացիք 1845ին աւերիչ հրդեհն, որ անթիւ տներ եւ խանութներ այրած լափած է եւ հարիւրաւոր ընտանեաց տէր մարդիկներ մոխրոյ վրայ նստեցուցած:

Բ. Այս կրկնապատիկ աղէտներէն զատ՝ ունեցած է Զմիւռնիա երրորդ հարուած մ'ալ, այինքն հիւանդութիւնը: Ալեւոր Զմիւռնացւոյ մը եթէ այս նկատմամբ հարցնելու ըլլանք, շատ ճարակող հիւանդութիւններ տեսած է քաղաքը, կ'ըսէ: Այն տարիներուն մէջ երբ ժանտախտը բովանդակ Եւրոպայի սոսկում կը պատճառէր,

Զմիւռնիա այս մահաբեր եւ քստմնելի հիւանդութեան գլխաւոր վայրը նկատուած էր։ Մ. Տանկուան[1] որ 1812ին սկիզբները Զմիւռնիա կը գտնուէր, չորս տարի ետքն իւր ճանապարհորդութիւնը հրատարակելով կ'ըսէ. “երկու աղէտք եւ արկած՝ երկրաշարժն ու ժանտախտը միշտ տառապանաց մէջ կը ձգեն այս քաղաքը. վերջինը սովորաբար Կ. Պոլսէն կամ Եգիպտոսէն եկող նաւերը կը բերեն հետերնին եւ կամ Փոքր Ասիոյ կարաւանը կը հաղորդէ բնակչաց։ Երբ 1812ին ժանտը գրեթէ բովանդակ Օսմանեան Պետութեան մէջ սոսկալի աւերներ կ'ընէր, 45 հազարէն աւելի մարդու կեանքը կողոպտեց Զմիւռնիոյ մէջ։„ Ականատես ծերեր կը պատմեն թէ այն տարիները Զմիւռնիոյ փողոցներուն մէջ անգամ խոտ բուսած էր. ա՛յնչափ ամայի դարձած էր քաղաքը։ Մ. Բիւլառ[2] գաղղիացի բժիշկն որ 1837ին Զմիւռնիա անցած էր՝ ժանտը ուսումնասիրելու համար, տխուր էջերով կը ներկայացընէ քաղքին այս արկածն՝ իւր “Արեւելեան ժանտ„ անուն հրատարակութեան մէջ։

Այն անցեալ դժբախտ տարիները տեսնող ալեւորները կը պատմեն, թէ ժանտախտն երեւնալուն պէս, քաղքին բոլոր կատուները սպաննելու ետեւէ կ'ըլլային մարդիկ։ Ժանտախտը կ'ըսէին շօշափմամբ կ'անցնի մէկուն մէկալին եւ որովհետեւ կատուներն ամէն տուն, ամէն ծակ կը մտնեն կ'ելլեն, կը շփուին ու կը քսուին, հիւանդութեան սերմն ալ տեղէ տեղ կը փոխադրեն. ուստի՝ առաջին գործքերնին կ'ըլլար զանոնք մէջտեղէն վերցընել։ Շփումէ ազատ մնալու համար՝ շատերը տուներնին քաշուած, իրարու հետ տեսնուելու հաղորդակցութիւննին անգամ կտրած էին. բայց այսպիսի կեանք մը միայն առատ ստակի տէր եղողը կրնար

1 M. Tancoigne (Voyage a Smyrne 1817).

2 M. A. F. Bulard de Méru (de la peste orientale).

անցընել։ Իսկ անոնք՝ որոնք ստիպուած էին վաճառատուն երթալ, գործքերնուն գլուխն անցած շահերնուն նայիլ, ուրիշ միջոց մը բռնած էին, այսինքն իշու վրայ նստելով՝ առաջնորդ մը կ'առնուին, որ առջեւէն կ'երթար եւ գաւազանով կը հեռացընէր դիմացն ելլողն եւ շփումէ հեռու կը պահէր իշու վրայ նստողն. այսպիսի զգուշութեամբ ժանտախտը (Peste noire) չէ ունեցած իր սոսկալի հետեւութիւնը՝ գոնէ հարուստներու համար։ Տասնեակ տարիներէ ի վեր չէ երեւցած այս զարհուրելի ախտը, սակայն մաղձայոյզն եւ ուրիշ հիւանդութիւններ երբեմն երբեմն հոգերու մէջ կը ձգեն Զմիւռնացին եւ գիւղերը կամ այլուր փախչելու կը ստիպեն բնակիչները։

Գ. Ինչպէս ամէն քաղաք, նոյնպէս Զմիւռնիա ալ ունեցած է եւ ունի իւր զուարճալիքը։ Եղած է ժամանակ մ'որ Զմիւռնիա իւր մէջն եղած որեւիցէ բանի մը տեղափոխութեան համար միայն էշը գործածած է։ Քիչ մը ստակի տէր եւ ի վիճակի եղողը կը պահէր էշ մը եւ ունէր իշապան մը։ Վաճառականք իրենց գործքին կ'երթային իշու վրայ նստած, կանայք բաղնիք իշով, տղաք դպրատուն իշուկներով. հետի երթալը պատուոյ հակառակ էր, եւ որովհետեւ փողոցները նեղ էին եւ կարելի չէր գործածել ուրիշ միջոցներ, ուստի եւ ազնուականք կը շրջէին իշով։ Իշապանք առանձինն ընկերութիւն մը կազմած էին եւ թոյլ չէին տար ուրիշի մը՝ էշ վարելու։ Այս իշապանք զարմանալի կերպով ունէին դիւրութիւն մը օտար լեզուի բառերը մտքերնին պահելու. սակայն իրենց այս գիտութիւնը քանի մը բառէ անդին չէր անցներ. շատերը կը գիտնային քանի մը բառ անգղ. գաղ. իտալ. աւելին սորվելու պէտք չունէին։

Բայց հիմայ Զմիւռնիոյ իշապաններու բանուկ եւ գեղեցիկ ժամանակն անցած է, փողոցներն

աւելի ընդարձակուած ու երկձի շքեղ կառքերը հասարակ եղած են. իրենք զիրենք յարգող տիկնայք եւ վաճառականք չեն նստիր իշու վրայ. ինչպէս շատ մը բաներու մէջ, նոյնպէս ասոր մէջն ալ Արեւմտեան սովորութիւնը յաղթած է Արեւելեանին։ Բայց կան տակաւին էշերու գործածութեան հետեւանքը, ինչպէս երբ բաւական թուով զբօսաշրջիկներու խումբ մը Զմիւռնիա այցելութեան գայ, կամ պատերազմական նաւեր մտնեն իւր խորշին մէջ, իսկոյն իշապանները կ՚աճապարեն քարափանց վրայ, այն օտար հիւրերն իրենց էշերուն վրայ նստեցուցած շրջագայութեան տանելու։ Այսպիսի ժամանակի մը հանդիպիլը շատ զուարճալի է. ծովեզերեայ քարափանց վրայ՝ հոս հոն գունդագունդ էշեր կը տեսնուին իրենց վարիչներով, որոնք եթէ տակաւին չեն գտած զմէկը, անկիւն մը քաշուած, ժամերով անցուդարձը դիտելու ետեւէ կ՚ըլլան, բայց երբ քանի մը օտարականներու կամ նաւաստիներու մերձենալը կը տեսնեն՝ էշերու սանձերէն քաշքշելով անոնց առջեւը կը նետուին, կը պոռան կը կանչեն, զիրար կը հրեն ու կը հրմշտկեն, կարծես զիրար պիտի խղդեն. բայց երբ օտարականը իւր ընտրութիւնն ընելով կը նստի իշուն վրայ եւ երկու քայլ կը հեռանայ, իշապաններու կռիւն ու աղաղակն ալ կը դադրի, երկու կամ աւելի հակառակորդք դարձեալ կ՚ըլլան իրարու բարեկամ, բայց իրենց ոխը, բարկութիւնը անասուններէն կ՚առնուն, խթելով մղելով դարձեալ կը քաշուին անկիւն մը եւ ուրիշի կը սպասեն։

# ԳԼՈՒԽ ՉՈՐՐՈՐԴ

*Հայք ի Զմիւռնիա:*

[illegible]նութեան յիշատակները հետազօտել այնչափ աւելի հետաքրքրական եւ քաղցր է, որչափ որ քննողը սերտ եւ անձուկ կապերով կապուած է անոնց հետ, որչափ որ, ըսենք, քննողին հետազօտութեան նիւթ ըրած առարկան կը պատկանի իր ազգին, իր նախնեաց անցելոյն եւ ներկային։ Թէ ինչ հետաքրքրութիւն եւ ինչպիսի բաղձանք ունէինք եւ մենք գիտնալ տեղւոյս ազգայնոց անցեալն եւ ներկան, աւելորդ է հոս յիշել։ Մեր այս վախճանին հասնելու համար՝ կրկին տարիներէ ի վեր ձեռնամուխ եղած էինք քննել յիշատակարանները, հոս հոն դիմել ու տեղեկութիւններ եւ ծանօթութիւններ քաղել։ Թէպէտ եւ բաց ի գերեզմանաքարերէ չկրցանք գտնել աւելի հնագոյն արձանագրութիւններ, որոնցմէ կարենայինք աւելի լուսաւոր եւ ընդարձակ տեղեկութիւն քաղել՝ անցելոյն նկատմամբ. այսու ամենայնիւ այս գերեզմանաքարերու վրայ քանդակուած յիշատակագրութիւնները, պատմութեան եւ աւանդութեան հետ միացընելով, գոհացուցիչ գաղափար մը կրնանք ունենալ Զմիւռնիոյ Հայոց վրայ։

Ներկան հետազօտել աւելի դիւրին է եւ աղբիւրներն առատ։ Ներկային վրայ ճշգրիտ ծանօթութիւններ ունենալու համար՝ դիմեցինք Հայոց Առաջնորդարանն, ազգային կարեւոր հաստատութեանց նախորդ եւ ներկայ տեսչութեանց եւ տարիներու շրջաններ անցուցած ալեւոր հայուն, որոնց տուած տեղեկութեանց հետ միացուցինք եւ մեր անձնական քննութեամբ հաւաքած դիտողութիւնները։ Շնորհակալութեամբ կը յիշենք հոս զՄեծ. Սարգիս Էֆ. Պալապանեան, Հայոց Առաջնորդարանին առաջին քարտուղարն, որ մեր ամէն հարցմանց տուած տեղեկութիւններովը ձեռնտու եղաւ աշխատութեանս։ Ինչպէս Եւրոպացի ճա-

նապարհորդներ[1], որոնց անուններն ալ մի առ մի յիշել զանց կ'առնունք, նոյնպէս եւ տեղացի օտարազգի անձինքներ երբեմն երբեմն Զմիւռնիոյ վրայ նկարագրութիւն ըրած էջերնուն մէջ՝ քանի մը տող ալ նուիրած են տեղւոյս Հայոց. բայց ատոնցմէ ոմանք հարեւանցի, ոմանք շատ համառօտ եւ ոմանք ալ անճիշդ տեղեկութիւններ տուած են։ Ասոնցմէ միայն Պ. Սլարս[2] իւր յունարէնէ գաղղիերէնի թարգմանած երկասիրութեան յաւելուածին մէջ՝ մասնաւոր գլուխ մը նուիրած է Հայոց եւ կը խօսի իւր ժամանակին Հայոց ունեցած վիճակին վրայ։ Ազգայիններէ եւս մասնական գրութիւններ յաճախ հրատարակուած կը գտնենք, թէ՛ տեղական (Արշալոյս Արարատեանի եւ Արեւելեան Մամլոյ) եւ թէ՛ այլուր հրատարակուած թերթերու մէջ։ Ի մասնաւորի Թ. Ճերմակեան գեղեցիկ ծանօթութիւններ տուած է Հայոց վրայ՝ Հանդէս Ամսօրէի 1890 տարւոյ համարներուն մէջ[3]։ Վերոյիշեալ երկու անձանց գրութիւններէն թէպէտեւ վերջինն իւր աւելի կատարեալ եւ մասնական տեղեկութիւններովը կը գերազանցէ զառաջինը, բայց յէականս կը միաբանին իրարու հետ։ Մինն ազգային եւ միւսն օտարական. հետաքրքրական է լսել օտարականին Հայոց վրայ ունեցած գաղափարը, ուստի մենք ալ նախ յառաջ կը բերենք Պ. Սլարսի գրութիւնն եւ ապա կը յաւելունք մեր դիտողութիւնները։ Սակայն մի անգամ ընդ միշտ կը յիշատակենք հոս, թէ Սլարսի գրութիւնն անկէ 30 տարի յառաջ հրատարակուած է, որմէ ետքն եղած փոփոխութիւնները չկան բնականապէս հեղինակին տողերուն մէջ։

---

1 Tavernier, M. V. de Saint Martin, Descr. de l'Asie-Min. 1631. M. Tancoigne, Voyage à Smyrne, 1817. M. Shepherd, Oriental Year Book for 1857.

2 Bonaventure F. Slaars. Etude sur Smyrne, 1868.

3 "Հանդէս Ամսօրեայ" 1890, էջ 81, 106, 134, 183.

## Պ. Աշարուի

### Զմիւռնիոյ հայոց ու անոնց հաստատութեանց վրայ տուած ծանօթութիւնները:

"Հայոց Զմիւռնիա գաղթականութեան թուականն՝ ըստ ամենայն հաւանականութեան՝ կ'ելլէ կը հասնի մինչեւ Ռուբէննեանց թագաւորութեան անկումը։ Այն ժամանակն, երբ իբր երեսուն հազար ընտանիք անցան Կիպրոս, Ռոդոս, Կրետէ եւ ուսկից տարածուեցան նաեւ Իտալիա։ Այս գաղթականութիւնը հինգ դար յառաջ տեղի ունեցած է, որովհետեւ Ռուբէննեանց թագաւորութեան անկումը պատահեցաւ 1375ին, երբ Լեւոն Զ. Եգիպտոս տարուեցաւ բանտարկեալ։ Լեւոն վախճանեցաւ Փարիզ 1393ին։

"Հայոց Զմիւռնիա գաղթականութեան իբր երկրորդ թուական կրնայ նշանակուիլ այն դարը՝ յորում Շահ-Աբբաս, Օսմանեանց դէպ ի Ատրպատական արշաւանքը խափանելու համար, յղացաւ աղէտալից գաղափար մը եւ գործադրեց. 1604ին Երասխեան դաշտավայրն աւրելով այրելով անապատ դարձուց։ Այս թուականին քսանուհինգ հազար ընտանիք հարկադրեցան թողուլ իրենց բնակավայրն եւ գաղթել օտար երկիրներ։

"Հայոց Զմիւռնիա գաղթականութեան թուականն աւելի ԺԴերորդ դարու վերջերը, քան թէ ԺԷերորդ դարու սկիզբները դնելուս պատճառն այս է. ԺԴերորդ դարու մէջ՝ գաղթականութիւնը Պոսփորի ափունքէն անցնելով՝ դէպ ի Արքիպեղագոսի մեծ կղզիներն եւ Իտալիա դիմեց. մինչդեռ ԺԷրորդ դարու մէջ՝ գաղթականութիւնը դէպ ի Սպահան, Շիրազ, Համատան եւ Աֆղանիստան քայլերն առաւ եւ ուսկից տարածուեցաւ Արեւելեան Հնդկաստան, Չինաստան, Մալաքայի թերակղզին եւ Սումատրա։

"Հայք Ջմիւռնիա հաստատուելով կառուցին մատուռ մը, որուն կից ունէին գերեզմանոց մը։ Դեռ այս օրս կը տեսնուին նոյն մատրան վայրն եւ գերեզմանոցին ցանկերը՝ Տաճկաց թաղին ճիշդ քովը։ Հայոց եկեղեցւոյն [այժմեան] մեծ գերեզմանոցին մէջ, տակաւին այս օրս կայ գերեզմանաքար մը, վերոյիշեալ գերեզմանոցէն փոխադրուած, որուն վրայ կը կարդացուի թուական մը 215 տարուան։ Ալեւոր Հայք կ'ըսեն թէ շատ լաւ կը յիշեն, որ վերոյիշեալ գերեզմանոցին մէջ՝ աւերակ դառնալէն յառաջ՝ տեսած են շիրիմներ, որոնց թուականը շատ աւելի հնագոյն եղած է։ Այս ամէնը նմանապէս իմ կարծիքիս հաստատութեան կը նպաստեն եւ կրկնել կու տան, թէ Հայոց Ջմիւռնիա գաղթելը ԺԴերորդ դարու մէջ եղած է։

"Այս կարծիքն իւր հաստատութեան պաշտպան կը գտնէ նաեւ հետեւեալ երկու հեղինակաց գրուածներէն։

Ա. Տավեռնիէ (Tavernier) կ'ըսէ թէ 1631ին Ջմիւռնիա 8000 հայ կար։ Ըստ հետեւորդի իրենց գաղթականութեան թուականն եթէ 1604ին համարուէր, իրենց թիւը 26 տարուան մէջ այնչափ չէր կրնար բազմանալ։ Բ. Շարդէն[1] կ'ըսէ թէ 1672ին Ջմիւռնիոյ մէջ հոլանդական վաճառականութեան գլխաւոր շահը կը կայանար Հայերն եւ անոնց վաճառքն Եւրոպա տանիլ եւ զանոնք ետ դարձընել։ Նմանապէս այս եւս կը ցուցընէ թէ այն ժամանակն արդէն Հայք երկայն ատենէ ի վեր հաստատուած էին Ջմիւռնիա եւ վաճառականութեան մէջ կարեւոր դեր կը խաղային, որովհետեւ իրենց վաճառականութիւնը Հոլանդացւոց գլխաւոր շահն էր։

"Մեծն Պետրոս հրամանագիր մը տուաւ յանուն Պետրոս Ապրոյի, հարուստ եւ պատուաւոր

---

1 Voyage du Ch. Chardin en Perse et autres lieux de l'Orient. Edit. de L. Langlès 1811.

Զմիւռնացի վաճառականին, որով ինքնակալը կը բանար իւր կայսրութեան դուռը Տաճկաստանի Հայոց եւ հրաման կու տար իր երկիրը մտնելու։ Վաւերական յիշատակարաններ կը հաստատեն, թէ տարի մ'եաքը 1718ին Հայք հաստատեցին Ռուսաստան մետաքսագործութեան տուն մը, եւ Ռուսաց սորվեցուցին կերպասի ոստայնանկութիւնը։

"Զմիւռնիոյ Հայոց թիւն օրէ օր աճեցաւ այն գաղթական Հայոց գալովը, որոնք՝ ի սկզբան գաղթականութեան՝ ցրուած էին Եւրոպայի զանազան կողմերը, ինչպէս Վենետիկ, Հոլանդա, Աւստրիա եւն, ուր ամենայն յաջողութեամբ վաճառականութեան կը պարապէին։ Զմիւռնիոյ Հայք 12.000 հոգի կը համրուին, Գրիգորեան կամ ոչ միացեալ, ի բաց առեալ 150—200 հոգին, որոնք Կաթուղիկեայ, Հռոմէական կամ միացեալ հայ են։ Բողոքականութիւնը չմիացեալ Հայոցմէ հազիւ քանի չափ կողմնակից գտած է, ընդդէմ այնչափ անչափ ճգանց եւ ջանից անգղիական, ամերիկեան, զուիցերացի եւ գերմանացի հովիւներու. այս աննշան թուով բողոքական Հայոց մեծագոյն մասն ալ՝ Կեսարիայէն եկող Հայերն են։ Նշանակութեան արժանի է, որ տեղական կառավարութիւնը՝ շնորհիւ անգղիական ազդեցութեան՝ բողոքական Հայոց եւ ուրիշ Հայոց մէջ զանազանութիւն մը դրած է եւ զանոնք իբր առանձին հասարակութիւն կը նկատէ։

"Զմիւռնիոյ Հայերն ընդհանրապէս վաճառական են. Եւրոպայի հետ ուղղակի յարաբերութեան մէջ մտած են, ի մասնաւորի Մանչեսթերի եւ Լոնտոնի հետ, ուր այս օրս վաճառականական խէլ մը տներ բռնած են։ Անգղիական բամբակի ձեռագործութիւնն (manufacture) իրենց տուրեւառին գլխաւոր մէկ ճիւղը կը կացուցանէ։ Հայք իրենց աւանդական վաճառականի հանճարովն

եւ իրենց ունակութեամբն այնպիսի մեծ մրցութեան մէջ մտած են անգղիական եւ յունական վաճառատանց հետ, որ այս վերջինները ստիպուած են իրենց գործքը դադրեցընել։ Զմիւռնիոյ տարապագործութեան (manufacture) վաճառականութիւնը՝ միահամուռն եւ մասնականը՝ այսօրուան օրս ամբողջ Հայոց ձեռքն է, որոնք շուկայի մէջ խանութպաններու եւ ձեռագործութեան վաճառականներու մեծագոյն մասը կը կազմեն։ Աննշան թուով մէկ մասն ալ՝ ամենայն յաջողութեամբ՝ ոսկերչութեան, նարօտաներկութեան, դարբնութեան եւն կը զբաղի։

«Վաճառականի նկարագիրն, որ կատարեալ կերպով դրոշմուած է այս ազգին վրայ, անկեղծութեան պակասութիւնն ենթադրելուն կասկած մը թերեւս տայ. սակայն ընդհակառակն՝ մտադրութեան արժանի է որ ստորին ժողովուրդը բնաւ յանցանքի մը համար դատապարտուած չէ, եւ երբեք արդարութեան ատեանը Հայ մ'իբր գող կամ մարդասպան պատժած չէ՝ գէթ Զմիւռնիոյ մէջ։

«Զմիւռնիոյ Հայք դեռ կը զբաղին ծաղկէնկար վարշամակներու գործով, որոնցմով արեւելեան կանայք կը ծածկեն երեսնին, կամ կը զարդարեն գլուխնին։ Թէպէտ եւ իրենց տպուածոյ կերպասուց գործատան (պասմախանէի) արտօնութիւնը ջնջուած եւ գործատան տեղը Զմիւռնիայէն Գասապա գացող երկաթուղւոյ կայարանն եղած է, այսու ամենայնիւ տակաւին կը շարունակեն նոյն գործքը, որ ժամանակին շահաբեր եղած է։ Զմիւռնիոյ նշանաւոր Հայերէն մին՝ 1790ին Կ. Պոլիս երթալով Սուլթան Սելիմէն ընդունած էր վերոյիշեալ գործատունը (պասմախանէն) կառուցանելու հրամանագիրը։

Այս հրամանը տրուած էր սա՛ թէութեամբ. այն երկիրն՝ որուն վրայ գործատունը պիտի կա-

ռուսուէր, Կ. Պոլսոյ մէկ մզկիթին յատկացեալ Վագըֆը պիտի ըլլար։ Եւ իրօք մինչեւ իւր գոյութեան վերջին վայրկեանը՝ գործատունս ամէն տարի կը վճարէր որոշ գումար մը մայրաքաղաքին բարեպաշտական հաստատութեանց պաշտօնէին։ Իսկ գործատունը հաստատող Հայն իրեն եւ իւր ժառանգներուն համար ընդունած էր իրաւունք ծաղկէնկար վարշամակներ դրոշմելու եւ ամէն քան վարշամակէ բաղկացեալ կապոցէ դահեկան մ'ընդունելու՝ իբր իրաւունք դրոշմի։ Սակայն Զուիցերիայի ծաղկէնկար վարշամակներու գործատանց մրցութիւնը մեծ հարուած տուաւ այս գործատան յառաջադիմութեան եւ զգալի վնաս՝ անոր 50 տարիէ աւելի ունեցած յաջողութեան։

“Հայերն անհամեմատաբար աւելի հարուստ են քան զԼատինները, եւ համեմատաբար աւելի հարուստ են քան զՅոյները։ Հայոց մէջ կան ընչաւէտ եւ կալուածատէր անձինք, որոնց գոյքը Յունաց եւ Լատինաց ունեցածներէն աւելի է՝ համեմատաբար։

“Հայք ինչպէս նաեւ Զմիւռնիոյ մէջ գտնուած ուրիշ ազգերն ի վաղուց հետէ ընդգրկած են գաղղիական նորաձեւութիւնը։ Հայ կանանց հագուստը, ի մասնաւորի վերջին երկու սերնդոց զգեստը, Պարիսի գեղեցիկ նորաձեւութեանց վրայէն ձեւուած եւ կարուած է։ Իսկ արանց զգեստը չի տարբերիր եւրոպացւոյ մը հագուստէն, եթէ ոչ կարմիր գլխարկովն (ֆէսով) զոր ընդհանրապէս օսմանեան հպատակները կը կրեն։

“Հայոց ազգային դպրոցները, թէ մանչերու եւ թէ աղջկանց, ունին գաղղիերէն լեզուի ուսուցիչ մը։ Մանչերու դպրոցին մէջ գաղղիերէն լեզուի դասատուութեան սկիզբը կը հանի մինչեւ 1835։ Հանգուցեալ Պետրոս Եուսուֆ, հարուստ հայ վաճառականն ու Եգիպտոսի փոխարքային գործակատարն, իւր ծախիւք հաստատեց գաղղ. լեզուի

այս ընթացքը: Պետրոս Եուսուֆ ծննդեամբ Զմիւռնացի էր: Մ. Յովսէփ Եուսուֆ, իւր մօրեղբօր ստացուածոց ժառանգը, ժառանգեց նաեւ անոր գաղափարները. իրեն պարտք մ'ըրաւ հսկել սոյն դպրոցին գաղղ. լեզուի աւանդութեան յառաջադիմութեան վրայ, եւ ի մասնաւորի իւր մօրեղբօր դիտած վախճանին հասնելու համար՝ իւր ծախիւք գաղղ. լեզուի ընթացք մ'ալ հաստատեց աղջկանց դպրոցին մէջ: Աղջկանց դպրոցն, որուն նախնական հիմնարկողն էր Մ. Ղուկաս Պալդազար, Արշալոյս Արարատեան թերթին խմբագրապետը, 1845ին զարհուրելի հրդեհէն ետքը՝ վերստին կանգնուեցաւ Յովսէփ Եուսուֆի քրոջ՝ Տիկին Կոստանդեանի ձեռօք:

"Մանչերու ազգային դպրոցը՝ գաղղիերէնէ զատ կ'աւանդուի նաեւ յունարէն, տաճկերէն եւ անգղիերէն: Դպրոցական կանոնադրութեանց համաձայն՝ հայերէնը պարտաւորեալ է. տղայ մը չի կրնար օտար լեզու մը սորվելու սկսիլ, քանի որ հայերէն լեզուի քերականութեան առաջին մասը սորված չէ: Բայց դժբախտաբար այս ազգասիրական տրամադրութիւնը չէ պահուած. կը տեսնուին հայ երիտասարդներ, որոնք գաղղիերէն կամ անգղիերէն գրել գիտեն, սակայն չեն կրնար խօսք մը շարադրել իրենց մայրենի լեզուաւ: Կը գտնուին այնպիսիներ ալ, որոնք այս ընթացքը յառաջադիմութիւն եւ քաղաքակրթութիւն կ'անուանեն: Բաց աստի Հայոց դպրոցներու մէջ տրուած կրթութիւնը հարեւանցի է եւ շատ սահմանափակ: Ներքին երկպառակութիւններն, որոնք դժբախտաբար ամէն ժամանակ սպրդած մտած են Հայ ազգին մէջ, կ'արգելուն զիրենք այսօրուան օրս յառաջադիմութեան դիմելէ: Այս կարեւոր ազգը տակաւին չէ ըմբռնած թէ միութիւնը զօրութիւն կը ծնանի եւ կրկին մղում կու տայ յառաջադիմութեան: Այս երկպառակութիւններն են որ

խափան կ՚ըլլան ազգին աղէկ կառավարուելուն՝ գէշ օրինակ տալով երիտասարդութեան։

“Հայերն ունին Զմիւռնիոյ մէջ երկու տպարան, որոնցմէ միոյն սկզբնաւորութիւնը մէկ դարէ աւելի յառաջ եղած է, ինչպէս կը տեսնուի Եզնկայ ընդդէմ հեթանոսական պաշտամանց [Ընդդէմ աղանդոց] գրած գրքէն, որ 1762ին Զմիւռնիա տպուած է։ Քանի մը տարիէ ի վեր գրական շարժում մը սկսած ըլլալով՝ թերթեր հրատարակելու ձեռք զարկած են, որոնցմէ ոմանք սակաւաժամանակեայ գոյութիւն ունեցան։ Միայն Արշալոյս Արարատեանն է, որ 1840էն սկսած՝ կը շարունակուի՝ իւր հիմնարկողին Մ. Ղուկաս Պալդազարեանի խմբագրութեան ներքեւ։

“Տասը հայ երիտասարդ հաստատած են ընկերութիւն մը Բարերարական Ընկերութիւն Հայոց անուամբ. որուն վախճանն է՝ ազգին այնպիսի հիւանդներուն օգնութեան հասնիլ, որոնք միջոց չունին դիմելու միշտ բժշկական մեծածախ խնամքներու, եւ որոնց աստիճանը կամ պատիւը չի ներեր ազգային հիւանդանոցն երթալու. այս ընկերութիւնը մեծ եւ կարեւոր ծառայութիւն կը մատուցանէ ազգին։

“Հայ հասարակութիւնն ունի 100.000 ֆռանքէն աւելի եկամուտ. ասոր 30 հազարը յատկացուած է դպրոցներու։ Ցանկալի էր որ աւելի մեծագոյն գումար մը յատկացուէր դպրոցաց, որով կարելի ըլլար բարձրագոյն ծրագրի եւ կանոնաւորեալ տեսչութեան ներքեւ դնել զանոնք. ազգն ասով բնաւ բան մը չէր կորսնցըներ։

“Երիտասարդ հայ աղջկունք կը սիրեն խօսիլ գաղղիերէն եւ երաժշտութեան աւելի ճաշակ ու ձիրք ունին քան մանչերը։ Զմիւռնիա հրատարակուած թերթերուն մէջ՝ Մ. Չիլինկիրեանի հրատարակած Ծաղիկ անուն թերթը, իւր ա-

զատական եւ անկախ ոգւոյն նկարագրին պատճառաւ, շատ դժուարութիւններու հանդիպած եւ շատ բան քաշած է։„

---

## ԳԼՈՒԽ ՀԻՆԳԵՐՈՐԴ

*Հայոց այլեւայլ ժամանակներ Զմիւռնիա գաղթելը: Նախկին մատուռն եւ գերեզմանոցը. այժմեան թաղը. զանազան տարիներու մէջ ունեցած թուերնին:*

Պ. Սլարսի վերոգրեալ տողերուն մէկ մեծ մասը կը պատկանի Հայոց Զմիւռնիա գաղթելուն ժամանակին, եւ մէկ մասն ալ անկէ տասնեակ տարիներ յառաջ՝ առհասարակ Հայոց ունեցած վիճակին։ Գաղթականութեան համար ըսածները կը հաստատենք մենք ալ։ Հայք այլեւայլ դարերու մէջ եւ զանազան կողմերէ Զմիւռնիա դիմած են։ Առաջին անգամ ամենայն հաւանականութեամբ Ռուբենեանց թագաւորութեան անկումէն ետքն ոտք կոխած են հոս։ Իբր հաստատութիւն ըսածիս՝ մէկդի թողլով պատմական ցոյցերը, յառաջ կը բերենք գերեզմանաքարերն եւ տեղական աւանդութիւնը։ Պ. Սլարս իւր ապացոյցներուն մէջ կը յիշէ նաեւ, թէ "Հայոց գերեզմանոցին մէջ կայ քար մը, որուն վրայ 215 տարուան թուական կը կարդացուի։„ Երկու հարիւր տարուան թուական չէ թէ միայն մէկ, այլ մէկ քանի գերեզմանաքարերու վրայ կը կարդացուի. (տես Գլուխ Է.)։ Աւելի հնագոյն՝ 300 տարուան եւ աւելի թուական ունեցող կրկին գերեզմանաքարեր կը գտնուին, որոնք նախկին գերեզմանոցէն փոխադրուած են այժմեան եկեղեցւոյ պարտէզը։

Միթէ չկայի՞ն այն հին գերեզմանոցին մէջ անոնց նման եւ անոնցմէ հնագոյն թուական ունեցող քարեր։ Բնականապէս Հայք բաւական ժամանակ ունեցած պիտի ըլլային յառաջադիմու-

թեան, որով կարող եղած են կանգնել իրենց յատուկ մատուռ մը, ունեցած են իրենց սեպհական գերեզմանոցը եւ քանդակած են հայերէն գրերով իրենց ննջեցեալներու յիշատակը։ Աւանդութիւնն ալ կը միաբանի մեր ըսածին. եթէ տեղացւոց հարցընենք իրենց սկիզբը, ոմանք կ՚ըսեն, թէ 450—480 տարի յառաջ եկած են իրենց նախնիքը Զմիւռնիա։ Ոմանք իրենց հաւերէն աւանդութեամբ լսած՝ Շահ-Աբբասի ժամանակ եղած գաղթականութեան մէկ ճիւղն ենք կը պատմեն։ Իսկ ոմանք ալ, վերջին դարուս մէջ եկած ենք Զմիւռնիա՝ կը հաստատեն։ Ասոնցմէ ոչ մին եւ ոչ միւսը կրնանք ժխտել. եթէ առաջինն ուրանալ փորձենք, պէտք ենք նախ 347, 331 տարուան թուական ունեցող քանդակեալ քարերը կոտրել աներեւոյթ ընել. եթէ երկրորդը մերժենք, յաւանդութենէ՝ հաւատարմութեամբ պատմող եւ վկայ եղող Հայերը կը բողոքեն. իսկ երրորդին վրայ տարակոյս մ՚անգամ չենք կրնար ունենալ, ակն յայտնի եղած կը տեսնենք։ Ըստ հետեւորդի Հայք գլխաւորաբար երեք ժամանակամիջոցի մէջ գաղթած են Զմիւռնիա. առաջին անգամ 1380ի միջոցները. երկրորդ անգամ 1610 թուականէն ետքն. եւ երրորդ անգամ 1800ի վերջերը։

Բ. Առաջին գաղթականք իրենց բնակութեան վայր ընտրած էին՝ այժմ վերին փողոց (Apano machala) ըսուած տեղն, ուր կանգնած էին իրենց յատուկ մատուռ մը, շուրջը գերեզմանոցով։ Այս մատրանս նկատմամբ չկրցանք գտնել որեւիցէ քանդակեալ գրութիւն եւ ոչ գրաւոր յիշատակարան մը. միայն երկու երեք գերեզմանաքար կը ցուցուին Ս. Ստեփանոսի պարտէզին մէջ, որոնք վերոյիշեալ մատրան շուրջը գտնուած գերեզմանոցէն փոխադրուած են. ասոնցմէ մին ալ՝ բոլորովին անընթեռնլի եղած է։

Կան տեղացի Հայեր, որոնք աւանդութեամբ լսած՝ կը պատմեն նախկին մատրան վայրը․ եւ աւելի ընդարձակ տեղեկութիւններ չեն գիտեր։ Պ. Սլարսի այն խօսքը, թէ “Դեռ այս օրս կը տեսնուին նոյն մատրան մնացորդներն եւ գերեզմանին ցանկերը, Տաճկաց թաղին ճիշդ քովը„ նոյնպէս իրեն հիմ ունի աւանդութիւնը։ Մանաւորապէս այս կէտիս վրայ լուսաւորութիւն եւ ճշգրիտ ծանօթութիւն մ'ընդունելու դիտաւորութեամբ Սլարսի հետ տեսակցելուս՝ պատասխանեց հետեւեալն. “Ասկէ երեսուն տարի յառաջ գրած այս տողերուս աղբիւրը Հայոց ազգին ալեւորներն եւ ուսումնականներն էին. գլխաւորաբար Ս. Պալապանեան եւ Ղ. Պալդազարեան. ի մասնաւորի վերջինս գրաւոր տեղեկութիւններ եւս տուած էր ինձ իւր կենդանութեան ժամանակ, երբ աշխատասիրութիւնս հրատարակելու ձեռք զարկած էի„։

Բազմաթիւ են այն անձինք որ կը պատմեն թէ ասկէ 20 – 30 տարի յառաջ, երբեմն երբեմն կ'երթային նախկին մատրան վայրը. իբր ուխտատեղի կը հանէին հոն իրենց հիւանդոտ տղաքը, եւ ուր՝ գերեզմանոցին մէջ տեսած են հայերէն գրով քարեր, որոնք վերջին տարիներու մէջ պակսած են եղեր։ Այժմ բոլորովին դադրած է հոն երթալու սովորութիւնը։ Այս տեղւոյն Հայ հասարակ ժողովուրդն անուն կու տայ Փաշամ Սուլթան, իսկ այլազգիներն Էմիր Սուլթան։

Գ. Հաւանականաբար Հայք 1500ի վերջերը տակաւ թողուցած են նախկին մատրան վայրը եւ հաստատուած՝ այժմեան գտնուած տեղերնին, ուր այսօրուան օրս գեղեցիկ եւ ընդարձակ թաղ մը կազմած են[1]։ Այս թաղն՝ որ եւ իրենց անուամբ

1 Թէ ինչպէս հաստատուած են հոս՝ ռամկին բերանը կը պատմէ հետեւեալը։ Հայք իրենց նախկին վայրը շրջապատող դրացիներէն միշտ նեղութիւն կը կրեն. բարեկամ այլազգւոյն մէկը գթալով իրենց վրայ, իւր դաշտա-



ԹԱՂ ՀԱՅՈՑ:

Ա. Ս. Ստեփանոս Եկեղեցի.
Բ. Առաջնորդարան Հայոց.
Գ. Արուեստանոց.
Դ. Մեսրոպեան Վարժարան.
Ե. Ս. Լուսաւորչեան Հիւանդանոց.
Զ. Ս. Հռիփսիմեան Վարժարան.
Է. Եկեղեցի եւ Վարժարան Մխիթարեանց.
Ը. Ժողովատեղի Բողոքականաց.
Թ. Երկաթուղւոյ Կայարան Գասապայի.
1. Բէշխոիյէ Ճատտէսի.
2. Պասմախանէ Ճատտէսի.
3. Արապ (Քալիկլյէ Ճատ.)
4. Այի Փարասքեվի սօգաղը.
5. Մէքթէպ սօգաղը.
6. Քիլիսէ սօգաղը (Մօտա).
7. Սօնգան սօգաղը.
8. Ֆէթհիէ Ճատտ.
9. Րուշան սօգաղը.
10. Շիրին սօգաղը.
11. Շահին սօգաղը.
12. Տէրտէր սօգաղը.
13. Գանպուրօղլու սօգաղը.
14. Գաթրճըօղլու սօգաղը.
15. Նէվրէս սօգաղ.
16. Աստուածածին.
17. Ջնարը.
18. Տիլրուպա.
19. Մէլէս Ճատ.
20. Քէմէր Ճատ.

Կան տեղացի Հայեր, որոնք աւանդութեամբ լսած՝ կը պատմեն նախկին մատրան վայրը. եւ աւելի ընդարձակ տեղեկութիւններ չեն գիտեր։ Պ. Սլարսի այն խօսքը, թէ “Դեռ այս օրս կը տեսնուին նոյն մատրան մնացորդներն եւ գերեզմանին ցանկերը, Տաճկաց թաղին ճիշդ քովը„ նոյնպէս իրեն հիմ ունի աւանդութիւնը։ Մանաւորապէս այս կէտիս վրայ լուսաւորութիւն եւ ճշգրիտ ծանօթութիւն մ՚ընդունելու դիտաւորութեամբ Սլարսի հետ տեսակցելուս՝ պատասխանեց հետեւեալն. “Ասկէ երեսուն տարի յառաջ գրած այս տողերուս աղբիւրը Հայոց ազգին ալեւորներն եւ ուսումնականներն էին. գլխաւորաբար Ս. Պալապանեան եւ Ղ. Պալդազարեան. ի մանաւորի վերջինս գրաւոր տեղեկութիւններ եւս տուած էր ինձ իւր կենդանութեան ժամանակ, երբ աշխատասիրութիւնս հրատարակելու ձեռք զարկած էի„։

Բազմաթիւ են այն անձինք որ կը պատմեն թէ ասկէ 20 – 30 տարի յառաջ, երբեմն երբեմն կ՚երթային նախկին մատրան վայրը. իբր ուխտատեղի կը հանէին հոն իրենց հիւանդոտ տղաքը, եւ ուր՝ գերեզմանոցին մէջ տեսած են հայերէն գրով քարեր, որոնք վերջին տարիներու մէջ պակսած են եղեր։ Այժմ բոլորովին դադրած է հոն երթալու սովորութիւնը։ Այս տեղւոյն Հայ հասարակ ժողովուրդն անուն կու տայ Փաշամ Սուլթան, իսկ այլազգիներն Էմիր Սուլթան։

Գ. Հաւանականաբար Հայք 1500ի վերջերը տակաւ թողուցած են նախկին մատրան վայրը եւ հաստատուած՝ այժմեան գտնուած տեղերնին, ուր այսօրուան օրս գեղեցիկ եւ ընդարձակ թաղ մը կազմած են[1]։ Այս թաղն՝ որ եւ իրենց անուամբ

---

1 Թէ ինչպէս հաստատուած են հոս՝ ռամկին բերանը կը պատմէ հետեւեալը։ Հայք իրենց նախկին վայրը շրջապատող դրացիներէն միշտ նեղութիւն կը կրեն. բարեկամ այլազգւոյն մէկը գթալով իրենց վրայ, իւր դաշտա-



ԹԱՂ ՀԱՅՈՑ:

Ա. Ս. Ստեփաննոս Եկեղեցի.
Բ. Առաջնորդարան Հայոց.
Գ. Արուեստանոց.
Դ. Մեսրոպեան Վարժարան.
Ե. Ս. Լուսաւորչեան Հիւանդանոց.
Զ. Ս. Հռիփսիմեան Վարժարան.
Է. Եկեղեցի եւ Վարժարան Մխիթարեանց.
Ը. Ժողովատեղի Բողոքականաց.
Թ. Երկաթուղւոյ Կայարան Գասապայի.
1. Բէշիկտիյէ ճատտէսի.
2. Պասմախանէ ճատտէսի.
3. Արապ (Քալկըլըյէ ճամ.)
4. Այի Փարասքեվի սօգաղը.
5. Մէքթէպ սօգաղը.
6. Քիլիսէ սօգաղը (Մօսա).
7. Սօնգան սօգաղը.
8. Ֆէթհիէ ճատտ.
9. Բուշան սօգաղը.
10. Շէրին սօգաղը.
11. Շահին սօգաղը.
12. Տէրտէր սօգաղը.
13. Գանպուրօղլու սօգաղը.
14. Գաթըրճըօղլու սօգաղը.
15. Նէվրէս սօգագ.
16. Աստուածածին.
17. Չնարլը.
18. Տիլրուպա.
19. Մէլէս ճամ.
20. Քէմէր ճամ.

կ'անուանուի Թաղ Հայոց (Quartier Arménien), իւր ունեցած ուղիղ եւ կանոնաւոր փողոցներու բաժանմամբ Զմիւռնիոյ Թաղերուն մէջ առաջին տեղին կրնայ բռնել. չունի ելեւէջներ, անել եւ օձապտոյտ փողոցներ եւ ուղիներ։ Այս կանոնաւոր բաժանումը տրուած է Թաղին 1845ին պատահած մեծ հրդեհէն ետքն, որ Հայոց Թաղն ալ վերէն վար այրած եւ մոխիր դարձուցած էր։ Ազգային ամենակարեւոր հաստատութիւնները, ինչպէս եկեղեցին, առաջնորդարանը, դպրոցները, հիւանդանոցը եւն կը գտնուին այս Թաղին մէջ կամ մօտերը, եւ այս պարագան մեծ դիւրութիւն կը մատուցանէ ժողովրդեան պիտոյից։ Թէպէտեւ քաղքին զանազան Թաղերուն մէջ եւս կը գտնուին բաւական թուով հայ ընտանիքներ եւ ունին իրենց սեպհական տները, ինչպէս հարուստ դասակարգէն մաս մը կը բնակի ծովեզերեայ քարափանց եւ ասոր յարակից փողոցներուն վրայ, բայց ընդհանրապէս մեծամասնութիւնը կը գտնուի իւր անուամբ կոչուած Թաղին մէջ եւ շուրջը։ Յաւալի է յիշել թէ վերջին տարիներուս մէջ բաւական թուով հրեայ եւ կեսարացի թրքախօս յոյն ընտանիքներ բնակութիւն հաստատած են Հայոց Թաղին մէջ. չենք կրնար անցնիլ փողոցէ մը՝ առանց լսելու տան մ'անկիւնէն հրէերէն կամ թրքերէն. այս

---

գետինը կ'ուզէ տալ անոնց, բայց որպէս զի ընդդիմութեանց չբախի, խորհուրդ կու տայ Հայոց որ քարէ խաչ մը կոփեն եւ տանին իւր երկրին մէջ թաղեն։ Գետինը հերկելու ժամանակ վարձականները այս խաչը կը գտնեն. տէրը լսելով խաչին գիւտը՝ այստեղը քրիստոնէի կը պատկանի ըսելով, կը ծախէ կամ կու տայ իւր ունեցած գետինը Հայոց։ Հայք կը շինեն հոն մատուռ մը, որուն հիմունքը փորած ժամանակ ջրոյ ակունքի մը հանդիպին. յընթացս ժամանակաց կարգաւորեալ ջրհորի ձեւով կը նորոգուի եւ կը շինուի այս ջրոյ տեղն, որ մինչեւ ցայս օրս մեծ յարգ ունի տեղացիներուն առջեւ։

ընթացքն եթէ չընդհատուի, քիչ ատենէն Հայոց թաղի տներուն մեծմասն ատոնք պիտի բռնեն։

Դ. Հայոց թիւը միշտ նոյն չէ եղած Զմիւռնիոյ մէջ. ժամանակ ժամանակ պատահած ճարակող հիւանդութիւններէ կամ ուրիշ դէպքերէ նուազած եւ երբեմն ալ ուրիշ քաղաքներէ նորերու գալովն աւելցած է։ Թէ գաղթականութեան սկիզբներն որչափ էին, չենք կրնար ճշգրիտ նշանակել։ Անոնց այլեւայլ ժամանակամիջոցներու մէջ ունեցած թուոյն վրայ համեմատական գաղափար մ'ունենալու համար՝ 1600էն ասդին Եւրոպայի ճանապարհորդներու եւ տեղացիներու մէկ քանիին նշանակած թուերը յառաջ կը բերենք.

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| ա) | 1631ին . . . | 90.000 | բնակչէն | 8000 | Հայ. |
| բ) | 1731 „ . . . | 76.000 | „ | 7000 | „ |
| գ) | 1776 „ . . . | 102.000 | „ | 6000 | „ |
| դ) | 1812 „ . . . | 106.000 | „ | 10.000 | „ |
| ե) | 1836 „ . . . | 150.000 | „ | 10.000 | „ |
| զ) | 1837 „ . . . | 130.000 | „ | 6000 | „ |
| է) | 1840 „ . . . | 130.000 | „ | 5000 | „ |
| ը) | 1857 „ . . . | 180.000 | „ | 10.000 | „ |
| թ) | 1861 „ . . . | 123.788 | „ | 7000 | „ |
| ժ) | 1868 „ . . . | 187.000 | „ | 12.000 | „ |
| ժա) | 1890 „ . . . | 250.000 | „ | 6683 | „ |
| ժբ) | 1898 „ . . . | 340.000 | „ | 11.000 | „ |

---

ա) Tavernier J. B. (Voyages en Turquie, en Perse).
բ) Tollot (Voyage au Lev.).
գ) Choiseul Gouffier.
դ) Tancoigne (Voyage à Smyrne). — ե) Ch. Texier.
զ) Journal de Smyrne (տեղական լրագիր).
է) Joseph Bargigli (le guide Smyrnéen).
ը) Shepherd (Oriental Year book).
թ) L'Impartial (տեղական լրագիր).
ժ) Bonaventure F. Slaars (Etude sur Smyrne).
ժա) Թ. Ճերմակեան (Հանդէս Ամսօրեայ)։
ժբ) Վերջին տարւոյ նշանակած թուերնիս կրնանք

Ցուցակէս յայտնի կը տեսնուի, թէ ինչպէս քաղաքին ընդհանուր բնակչաց թիւն երթալով բազմացած է. ենթադրենք որ սոյն ցուցակին մէջ Հայոց նկատմամբ նշանակուածներէն ոմանց պակաս կամ աւելի եղած ըլլայ, այսու ամենայնիւ կը տեսնենք որ Հայոց թիւը միշտ 8—10 հազարի մէջ մնացած է. 12 հազարը չէ անցած. ասոր պատճառը պիտի տեսնենք իր տեղը։ Ցուցակիս մէջ Թ. Ճերմակեան միայն քաղաքին մէջ գտնուած Հայոց թիւը նշանակած է. ինչպէս կը գրէ ինքն ալ. «Վերջին վիճակագրութեան համեմատ, որ կատարուած է գրեթէ երեք տարի յառաջ (1887) բուն քաղաքին մէջ Հայոց թիւն է 6683։» Ուստի

---

բաժնել երկու կարգի, տեղացւոց եւ պանդուխտներու։ Տեղացիք կը համրուին 6500 հոգի, այսինքն այնպիսիներ որոնք գրուած են ազգահամարի արձանագրութեան մատեանին մէջ եւ գլխահարկի թղթերն անկից առած. ըստ հետեւորդի տեղւոյն զինուորական տուրքը ծանրացած է միայն ասոնց վրայ. ասոնցմէ ալ 4000 հոգի կին, մանուկ՝ ու անկարող դուրս հանելով, կը մնայ գրեթէ 2500 հոգի իբրապէս զինուորական հարկ վճարող։ Տէրութիւնը կը պահանջէ ազգէն իբր զինուորական տուրք 105.000—110.000 դահեկան (մէճիտ 19), ազգային վարչութիւնն այս գումարը կը բաժնէ 2500 հոգւոյ վրայ եւ իւրաքանչիւր ըստ իւրում կարողութեան, ոմն մէկ մէճիտ, այլ ոմն 5 մէճիտ, մէկն աւելի միւսը պակաս տալով կ'ամբողջանայ տէրութեան պահանջածը։ Ահաւասիկ Ազգին չորս տարւան մէջ տէրութեան վճարած՝ զինուորական տրոց ցուցակը, զոր ազգահամարի արձանագրութեան մատենէն քաղելով կը դնենք, աւելի որոշ գաղափար մը տալու համար։

| | |
|---|---|
| 1308ին (1892) . . . . . . . | 109.928 դահեկ. |
| 1309 . . . . . . . . . . . | 109.520 „ |
| 1310 . . . . . . . . . . . | 109.631 „ |
| 1311 . . . . . . . . . . . | 107.891 „ |

Պանդուխտներուն թիւը կրնայ աւելի ըլլալ. մանաւանդ վերջին տարիներուս մէջ տեղի ունեցած գաղթականութեան հետեւութեամբ՝ ասոնց թուոյն վրայ զգալի յաւելում մ'եղած կը գտնենք։

շրջակայ գիւղերու մէջ բնակող Հայերն ալ առնելով, նոյն տարւոյ համար նշանակուած թիւն անտարակոյս պիտի ըլլար 9—10 հազար։

Հայք թէպէտեւ չեն պահած քաղաքին ընդհանուր բնակչաց հետ ունեցած իրենց համեմատական թիւը, բայց միշտ նշանաւոր թիւ մ՚ունեցած եւ կարեւոր դիրք մը բռնած են։ Թէպէտեւ թուով չեն բազմացած, բայց միշտ ժամանակին պահանջման համաձայն, յառաջադէմ ըլլալու, զարգանալու փոյթ ունեցած են։ Գտնուած են եւ կը գտնուին իրենց մէջ ամէն դասակարգէ անձինք. եւ ունին այն ամէն կարեւոր հիմնարկութիւններն, որ պէտք են ազգի մը՝ յառաջդիմելուն համար։

Ասոնց ամէնուն վրայ լուսաւոր գաղափար մ՚ունենալու դիտմամբ՝ յառաջ կը բերենք մի առ մի նշանաւոր հիմնարկութիւնները, կրթական եւ բարեգործական հաստատութիւնները, Հայոց տպարաններն ու հրատարակութիւնները, ժողովրդեան նիւթական եւ բարոյական վիճակը, ժամանակիս նշանաւոր եւ երեւելի անձնաւորութիւններն եւ այլեւայլ հայ հասարակութիւնները։

---

## ԳԼՈՒԽ ՎԵՑԵՐՈՐԴ

### Ս. Ստեփանոս:

### 1.

*Եկեղեցին, արտաքին գաւիթը, պարտէզը, արձանագրութիւններն եւ շինութեան թուականը:*

Ը. Զմիւռնիոյ մէջ կառուցուած եկեղեցիներուն մէջ առաջին տեղին կը բռնէ Հայոց Ս. Ստեփանոսի նուիրեալ եկեղեցին։ Լատինք ունին հինգ մեծ եկեղեցի, բաց ի փոքր մատուռներէ. նոյնպէս Յոյները վեց մեծ եկեղեցի. բայց ասոնց մէջ չկայ եկեղեցի մը, որ իւր յօրինուածութեամբ, պայծառութեամբ եւ ճարտարապետական

շքեղութեամբ հաւասարի Ս. Ստեփանոս եկեղեցւոյն: Այս Լատինաց մայր եկեղեցին, նուիրեալ Ս. Յովհաննու Աւետարանչի, ընդարձակ է քան զամէնը, հաստ քարաշէն սիւներն՝ զորոնք երեք հոգի հազիւ կրնան գրկել, բարձրացած են եկեղեցւոյ մէջ, բայց սիւներու համեմատութեամբ եկեղեցւոյ ձեղունը ցած է եւ անճաշակ: Յունաց Այիա Փոթինի եկեղեցին անուանի է, որուն աշտարակը կարծես թէ կը տիրէ Զմիւռնիոյ ամենաբարձր շէնքերուն վրայ եւ կը տեսնուի ամէն կողմանէ, որուն գագաթին վրայ կանգնուած շողշողուն խաչին գոյնզգոյն բիւրեղաւոր ապակիներն արեւու ճառագայթներէն լուսաւորուելով, աջ ու ձախ սիրուն ցոլացումներ կը սփռեն եւ որուն զանգակին հնչիւնը մերձակայ գիւղերէն անգամ կը լսուի. սակայն այս բարձրակառոյց աշտարակին տակն եղող եկեղեցին շատ փոքր է: Ս. Ստեփանոս կը գերազանցէ զամէնքն ալ: Քաղքին հարաւային կողմը բարձրացած Գատիֆէ Գալէսի ըսուած լեռնաբլրակէն Զմիւռնիոյ վրայ նայուածք մը նետելով՝ կը տեսնենք Ս. Ստեփանոսի եկեղեցին գրեթէ քաղքին միջավայրը բարձրացած. գմբեթն եւ ասոր երկու կողմը զարդի համար շինուած փոքրիկ աշտարակներն, ինչպէս ետեւի կողմը բարձրացած զանգակատան աշտարակը շքեղապէս կը տեսնուին: Իւր շուրջն եղող ընդարձակ պարտէզին մէջ շինուած են ազգային կարեւոր հաստատութիւնները, որոնք իրեն հետ մարմին մը կը կազմեն եւ որոնք պարտէզին երեք անկիւնները բռնած են, ինչպէս արեւմտեան կողմը՝ կրկնայարկ մեծակառոյց առաջնորդարանը. հարաւային կողմը Մեսրոպեան վարժարանը եւ այս երկուքին մէջտեղը վերջին տարիներս շինուած արուեստանոցը. արեւելեան անկիւնն է քահանայից ժողովարանն եւ ընթերցատունը:

Բ. Շքեղաշէն եկեղեցւոյս արդն ու զարդն ի մերձուստ չդիտած՝ նախ իւր շրջապատը զարդա-

րող պարտէզին ակնարկ մը նետենք։ Պարտէզս ունի երկու դուռ. մեծ դուռը Բէշիկթաշէ անուանեալ լայն փողոցին վրայ, փոքր դուռն Սօնզան ըսուած կողմնակի փողոցին վրայ։ Պարտէզին աստիճանաւոր մեծ դռնէն ներս մտած ժամանակնիս՝ կը տեսնենք առջեւնիս բաւական թուով գեղեցիկ շիրիմներ, բարձրաքանդակ եւ խորափոր քանդակներու տապաններ։ Ասոնց քով աւելի բազմաթիւ խիտ առ խիտ գետինը դրուած տափարակ պարզ գերեզմանաքարեր, որոնց վրայ տարիներէ յառաջ քանդակուած արձանագրութիւններն անցուդարձէն մաշած, քանի մը տարիէն ընաջինջ ըլլալու վտանգի մէջ, կեցած են լռիկ մնջիկ։ Հոս հոն կը տեսնուին մարմարիոն քարէ՝ բարձր ու ցած կոթողներ՝ իրենց մաքուր յիշատակարաններով կանգուն կեցած. անդին մարմարակուռ հրեշտակ մը աչքն երկինք բարձրացուցած, կարծես կը բարեխօսէ իւր պատուանդանին տակը՝ գերեզմանին մէջ հանգչողին համար. աղդին տապանաձեւ՝ վրան վարշամակ մը փռուած քանդակեալ շքեղ շիրիմ մը, իւր մէջը կարծես կը պահէ անգին գանձ մը, ունենալով իւր տակը՝ հողին մէջ սիրելւոյ մը մնացորդները։ Հոս ընչաւէտի մը տապանաքարը գեղեցկապէս հոգացուած եւ քանդակուած. ոմանք երկաթեայ զարդաձեւ վանդակներով շրջապատուած. հոն աղքատին գերեզմանն անպաճոյճ, միայն քարով մը եւ կամ պարզապէս հողով ծածկուած։ Սակայն ամէնն ալ վայր մը, խաղաղութեան բնակարան մը, ուր հարուստին գեղեցիկ շիրիմն իւր հովանին ձգած է աղքատին գերեզմանին վրայ, իբր թէ կ՚ուզէ ըսել՝ ինչպէս որ աղքատն ի կենդանութեան հարուստին գթոտ սրտովն եւ առատ ձեռաց տակ ուրախանալու է, նոյնպէս եւ գերեզմանին մէջ, անոր սիրուն շիրմին քով, կոթողին հովանւոյն ներքեւ հանգչելով մխիթարուելու է։

Այս սրտաճմլիկ տխուր տեղւոյն աւելի խորհրդաւոր կերպարանք մը կու տան պարտէզիս մէջ եղած ծառերն, որոնք եկեղեցւոյն երեք կողմը տնկուած են։ Երեք կողմն ըսի, որովհետեւ ձախակողմը թափուր կը գտնուի սոյն սիրուն զարդերէն. ժամանակին տնկուած չըլլալով, ներկայիս ալ այնչափ հոգ չի տարուիր՝ դալարագեղ զարդերով գեղեցկացընելու այս կողմն ալ։ Ընդհանրապէս պարտէզին ընդարձակութեան նայելով՝ ծառերը քիչ են. ինչպէս՝ ետեւի կողմը կարգ մը միայն ծառերու կը տեսնուի, ուր երկու կամ երեք կարգ կրնար տնկուիլ. նմանապէս առջեւն եւ աջ կողմը կան բաց միջոցներ, որ մատաղատունկ ծառերով կրնային զարդարուիլ այժմ եւ որոնք ժամանակին աւելի շքեղութիւն մը կրնան տալ տեղւոյս եւ կամ հինաւուրց՝ չորնալու կտրուելու ենթակայ եղողներուն տեղը կրնան բռնել ապագային։ Համեմատութեամբ այս սակաւաթիւ ծառերը զանազան եւ տեսակ տեսակ են. կայ մշտադալարն եւ տերեւաթափը. կայ հաստարմատ հաստաբունն եւ տկարը, բարձրն ու ցածը, պտղատուն եւ անբերը։ Հոս բարձրագլուխ սօսիները քովէքով կեցած՝ հանդարտօրէն կ'աճին եւ կը բարձրանան դէպ ի վեր, անդին աջ ու ձախ ցրուած ձիթենիներն երկրէն հիւթ ծծել կը ճգնին. հոս հոն ոստաշատ պսակաձեւ նարնջենիներն՝ իրենց մշտադալար ճիւղերը միշտ կանանչ պահելու համար, կարծես գաղտնօրէն իրենց հին՝ անպէտ տերեւները մեղմիկ վար կը ձգեն. անդին ուռիներն իրենց դիւրաբեկ ճիւղերը՝ բոլորակաձեւ մինչեւ գետին հասցուցած՝ թեթեւ հովէ մ'անգամ կը տատանին։

Պարտէզիս այս բնական զարդերը, սօսիները, ձիթենիները, նարնջենիներն եւ ուռիներն եւն իրենց քիչ կամ շատ թաւուտ ճիւղերուն հովանւոյն ներքեւ առած կը պահեն՝ արմատներուն քով՝ շիրիմներու տակ հանգչողներու մարմինները, եւ





որոնք իրենց սրաձեւ ու սրտաձեւ սիրուն տերեւներուն տակ կը հրաւիրեն օդագնաց թռչունները։ Իսկ հոս հոն գերեզմաններու վրայ՝ հովանաւոր տեղեր ու պատերու տակը կը հանգչին աղքատներ, անգործներ ալ թերեւս, որոնք ժամերով նստած տեղերնէն բնաւ չեն շարժիր։ Կը տեսնուին նաեւ պարտէզէն անցնողներ, որոնց հաճելի եւ քաղցր կու գայ վայրկեան մը հովանաւոր ծառի մը ներքեւ դադար առնուլ եւ սրբել իրենց ճակտին քրտինքը։ Կը տեսնուին մանուկներ, որոնք տապանաքարերու վրայ դիմացէ դիմաց նստած՝ կը խաղան աղիւսակի խաղ (փոմփ) կամ կոլիկ քար։ Տիկիններ, որոնք պարտէզէս անցնելու միջոցնին՝ վայրկեան մը տաճարին դրան առջեւը կանգ առած, առ Բարձրեալն աղաչանքներ ու աղօթքներ ընելէն ետքը կ'անցնին կ'երթան։

Աչաց հաճելի կամ տխուր այս տեսարանները դիտած ժամանակնիս՝ մտադրութիւննիս եթէ ծառերուն դարձրնենք, զանազան թռչնոց գեղգեղանաց ձայները կը լսենք։ Մէկ կողմը ճիւղաւոր ծառի մը պսակին տերեւներուն տակ պահուըտած՝ անհամար թուով յանդուգն փոքրիկ ճնճղուկները կը ճըւճըւան ու կը ճռուողեն։ Անդիէն սօսենւոյ ծառին գագաթը տատրակը գուրգուրալով իր տխրագին հառաչանքները կը հնչեցնէ։ Ահա քաղցրահնչիւն թռչուն մը՝ ծառէ ծառ թռչելով, ճիւղէ ճիւղ ոստոստելով, իր անուշ դայլայլիկը վայրկեան մը լսելի ընելէ ետքը, դարձեալ ծառէ ծառ սաւառնաթեւ թռչելով աներեւոյթ կ'ըլլայ։ Ահա այսպիսի տեսարաններ կը բացուին առջեւնիս, երբ ամառ ժամանակ այցելութիւն մ'ընենք տեղւոյս։

Այս ընդարձակ պարտէզն եւ այժմեան Մեսրոպեան վարժարանին տեղւոյն մէկ մասը, գրեթէ մինչեւ 1882 թուականը կը գործածուէր իբր գերեզմանոց։ Ուրիշ ազգեր արդէն հրամանաւ կա-

ռավարութեան սոյն Թուականէն յառաջ դադրեցուցած էին եկեղեցեաց պարտէզը ննջեցեալ թաղելը, եւ քաղքէն դուրս մասնաւոր գերեզմանոցներ շինած էին։ Հայերը դեռ կը շարունակէին եկեղեցւոյ պարտէզը թաղելը. բայց վերջապէս անոնք ալ ստիպեալ, քաղքէն դուրս ընդարձակ գետին մը գնեցին եւ հոն սկսան թաղել իրենց ննջեցեալները, վերոյիշեալ Թուականէն ետքը։ Այս գերեզմանոցը կը գտնուի Այտըն գացող երկաթուղւոյն գծին առջեւ՝ Լատինաց գերեզմանոցին կից։

Գ. Հինաւուրց գերեզմանաքարերու վրայ կոխելով, քանի մը քայլ առնելէ ետքը՝ մէկ աստիճան բարձր մարմարաշէն սպիտակ յատակի մը կը մերձենանք։ Եկեղեցւոյն արտաքին բակը կամ գաւիթն է այս։ Եկեղեցւոյ առջեւն՝ աջ ու ձախ կողմերը, մինչեւ աւանդատանց դռներու քով, շրջապատեալ է մարմարաշէն յատակս. ասոր եզերաց վրայ գեղեցկապէս կանգնուած են քսանուչորս մարմարեայ սիւնակներ, որոնք ճիշտ եկեղեցւոյ աւագ դրան առջեւն, երկու որմաշէն եւ քարաշէն ու չորս մետրէ աւելի շրջապատ ունեցող չորեքանկիւն հաստ սիւներուն հետ՝ վեր կը բռնեն տաճարիս երեք կողմը՝ դէպ ի դուրս կառուցուած վերնատուները։

Այս մարմարեայ սիւնակները սիրուն տեսք մը կու տան հոյակապ տաճարիս։ Ասոնք առջեւի երկու անկեանց վրայ երեք հատ իրարու կից, ասոնց աջ ու ձախը բաւական հեռու, զոյգ զոյգ եւ յետոյ առանձին առանձին, մէկ աստիճան պատուանդաններու վրայ շարուած են եւ յոնիական եւ կորնթական ճարտարապետական զարդերէ խառն խոյակներով՝ յաղթական կամարներու նման կը շքեղացընեն այս վայրը։ Սիւնակներուս բարձրութիւնն, առանց խոյակի, է 2·20 մետր եւ շրջապատնին 1·12 մետր։ Մարմարայատակ գաւթիս վրայ շրջան մ'ընելու ըլլանք, մէկ կողմերնիս հաս-

տասուն փառաւոր դռներ, եւ զարդաձեւ երկաթեայ ձողերով գեղեցկացուած՝ լայն ու բարձր պատուհաններ կը տեսնենք, մէկալ կողմերնիս ալ այս մարմարակուռ սիւնակները։

Գաւթիս վրայ եկեղեցին ունի եօթը դուռ. առաջակողմն երեք դուռ, դուռ մ՚աջ, դուռ մ՚ալ ձախ կողին վրայ. եկեղեցւոյ ետեւի մասին վրայ՝ երկու կողմը խաչաձեւ դուրս ելած աւանդատանց կամ փոքրիկ տաճարներու յատուկ դռները։ Այս դռներն ամէնն ալ կրկին փեղկերով ամրացուած են, զօրաւոր ծխնիներու վրայ հաստատուած, մարմարեայ սեամներու վրայ ամրապնդեալ եւ ճակատնին բոլորակաձեւ. միայն երկու տաճարաց դռներու ճակատն ուղիղ է։ Այսպէս եօթը կողմանէ բաց է եկեղեցին իւր պաշտօնէից եւ հաւատացելոց առջեւ։ Իսկ վերնատուները մտնելու համար, պարտէզին մէջ՝ եկեղեցւոյ աջ կողմը կառուցուած՝ վրան բաց, քարաշէն, լայն ու քառասուն աստիճաններէ կազմեալ սանդուխէն պէտք է վեր ելլել եւ ապա առջեւնիս կ՚ելլէ վերնատան յատուկ դուռն եւ աջակողմեան վերնատունը, ուսկից մէջէ մէջ դռներէ անցնելով եկեղեցւոյ երեք կողմը շինուած վերնատուները կրնանք մտնել։

Հոյակապ տաճարիս դրանց մէջ ամենագեղեցիկն է աւագ դուռն. իւր գեղեցկութեան աւելի շքեղութիւն մը կու տան կրկին փեղկերուն վրայ դուրս ցցուած ձուլածոյ երկու արձաններ, որոնցմէ մին կը ներկայացընէ զՊետրոս Առաքեալ՝ ձեռքը բանալիներ եւ աւետարան բռնած. երկրորդը զՊօղոս Առաքեալ՝ մէկ ձեռքովն աւետարանը բռնած, միւսովն սուր մը։ Դրանս կից, աջ ու ձախ, զոյգ զոյգ սեւագոյն մարմարեայ սիւնակներ կանգնուած են, որոնց պատուանդանն եւ խոյակները պատին կցուած, բոլորակ գեղեցիկ զարդերով քանդակուած քովթարներով՝ մարմին մը կը

կազմեն դրան հետ եւ շքեղութիւն մը կու տան դաւթին։

Աւագ դրանս աջ ու ձախ կողմերը, պատին



ԱՒԱԳ ԴՈՒՌՆ Ս ՍՏԵՓԱՆՈՍԻ:

վրայ հաստատուած են մարմարեայ երկու քար, որոնց վրայ մաքուր եւ սիրուն գրերով փորագրուած են երկու յիշատակարան. աջակողմեան արձանագրութիւնը կը ցուցընէ գաւթիս յատակն

շինող բարերարին անունը եւ թուականը[1]. իսկ ձախակողմեանն է Պօղոս Բ. Պատրիարքին մահարձանագրութիւնն, որուն առջեւն է նաեւ հանգուցելոյն շիրիմը։ Բակին վրայ այս շիրմէն զատ, որ կէս մետր բարձրութեամբ յօրինուած է, չկայ ուրիշ որեւիցէ քար մը, որ գաւթին հարթ երեսը տգեղացընէ։

Վերոգրեալ արձանագրութեանց առաջինն է.

*Շինեցաւ սալայատակ զաւթիս Ս.*
*Ստեփանոս Եկեղեցւոյ ծախիւք Պալեօզ-*
*եան Հարազատաց Կարապետի եւ Մատ-*
*թէոսի ի յիշատակ Հօր իւրեանց բարե-*
*պաշտօն Մարտիրոսի եւ Հանգուցեալ*
*ազնուափայլ Տուտու տիկնոջ Կ. Պալեօզ-*
*եանի եւ ըստ որոշման Ազգային վարչու-*
*թեան կանգնեցաւ Յիշատակարանս*
*Յառաջնորդութեան Տ. Մելքիսեդեկ*
*Սրբազան Արքեպիսկոպոսի Մուրատեանց*
*Զմիւռնիա 1 Մարտ 1885*

իսկ երկրորդն է հետեւեալը.

*Ի յիշատակ*
*Ամենապատիւ Տո̃ն Տո̃ն*
*Պօղոսի Բ. Արք—Եպսկպ̃սի*
*Սրբազան Պատրիարքին Կ. Պօլսոյ*
*Եւ առաջնորդին Զմիւռնիոյ.*

---

1 Եկեղեցւոյ գաւիթը սալայատակ շինելու համար 315 օսմ. ոսկի նուիրած են այս բարերարք։

զբանն, զոր
ես խօսեցայ
ընդ ձեզ.
հոգի է ե-
կեանք:
Յովհ. Գլ. 6.
Համ. 64.

*Հանգեաւ ի Տէր 73 ամաց,*
*Ի Զմիւռնիա 1872 Սեպտ. 9.*

Պատին վրայ հաստատուած քարին գրութիւնն է այս. իսկ շիրմին վրայ քանդակուածը կը կարդանք այսպէս.

Ահա ես
եւ ման-
կունք
իմ, զորս
ետ ինձ
Ած:

*ՄԱՀԱՐՁԱՆ*

*Ցուերժացի՛ արդ քան զայս մահարձան*
*պերճ համբաւ վարուց վեհին գիտնական*
*Տն̃ Պօղոսի Արհւոյն Սրքազան,*
*ծնեալն ի Պրուսա զարմէ Թագթագեան:*
*Զարգացեալ ի վարժս մ̃ք գրոց ուսման,*
*ընտրեցաւ քարոզ բանին կենսական.*
*իբրեւ զկէս դար ի նոյն պաշտաման*
*տաղանդք իւր արդեանց վեհ հանդիսա-*
*ցան:*
*Եկաց Զմիւռնիոյ Տեսուչ խոհական,*
*ուր զամս երեսուն ի սէր հայրական*
*միշտ խաղաղ պահեալ զորդիսն հոգեկան՝*
*ապա կոչեցաւ Պ̃տրրք բիւզանդեան:*

Իսկ յետ վեց ամաց ըստ ուխտին լրման
դարձեալ ի միճակն հանգեաւ յայս տա-
պան,
վերանորոգիլ ի կեանս անվախճան,
մինչեւ հնչեսցի փող Գաբրիէլեան:
ի Զմիւռնիա 9 Սեպ. 1872

Աւագ դրանս աջն ու ձախը հաստատուած այս քանդակագրութիւնները կարդալէ ետքն՝ աչքերնիս դրան ճակտին դարձընելով, կը տեսնենք վրայէ վրայ ուրիշ երկու սպիտակափայլ մարմարեայ քարեր՝ զարդերով միայն իրարմէ բաժնուած, որոնք վերոյիշեալ սեւագոյն սիւնակներուն հետ ամբողջ մարմին մը կը կազմեն եւ շքեղ տեսք մը կու տան դրանս: Քարերուս վրայ քանդակուած են կարեւոր արձանագրութիւններ. այս գրութիւնները կը յիշեցընեն անցեալ դարերու մէջ տեղի ունեցած բնութեան կրկին հարուածներն, աղէտաբեր պատահարներն, որոնք յանդգնած են տաճարիս որմերն անգամ տապալել. կը յիշեցընեն միանգամայն երկրորդ եւ երրորդ շինութեան թուականը: Դարերու յիշատակը պահող սոյն կրկին քարերը քանդակուած են այսպէս.

(Ա)

Ըստ հին արձանագրութեանց

Հնագոյն տաճարն ի 1688 յերկրաշարժէ
տապալեցաւ
եւ ի 1689 վերստին կառուցաւ
եւ ի 1845 այրեցաւ.

(Բ)

*Հոյակապ այս ս̃ք տաճար Ս̃յ զկնի այր-*
*ման յամին 1845, դարձեալ*
*յանուն ս̃ք Ստեփանոսի նախավկային ի*
*հիմանց նորոգ կառուցաւ,*
*արդեամբք առ հասարակ ժողովրդոց*
*Զմիւռնոյս եւ մասնաւոր*
*նուիրօք ոմանց բարեպաշտից. ի Հայրա-*
*պետութ̃ն ս̃քյ Էջմիածնի*
*Տ. Տ. Ներսիսի Նոռ Ս̃րբզն Կ̃թղկսի ամ*
*Հայոց եւ յԱռաջնորդութ̃ն*
*քաղաքիս Տ. Պօղոսի Սրբազան Արքեպսի.*
*յամի Տեառն 1853.*

Ինչպէս կը տեսնուի Ա. արձանագրութեան մէջ եկեղեցւոյս նախնական կառուցման թուականը չէ նշանակուած, որով ամենակարեւոր թուական մը դժբախտաբար անծանօթ կը մնայ։ Շատ հետամուտ եղանք այս նկատմամբ գտնել յիշատակարան մը, բայց ի զուր. ժամանակը թերեւս յերեւան հանէ քարի կտոր մը եւ զմեզ լուսաւորէ։ ... Կան Առաջնորդարանի Դիւանատան մէջ պահուած յիշատակարաններ, որոնք կը պատմեն եկեղեցւոյս կործանման եւ վերստին կառուցման թուականը, սակայն 1688էն անդին յիշատակութիւն չեն ըներ։

Դիւանատան արձանագրութեանց գրքին մէջ յիշատակարանները գրուած են հետեւեալ կերպով.

“Սուրբ Ստեփանոս Եկեղեցի Հայոց Զմիւռնիոյ 1845ի հրդեհէն առաջ նախկին տաճարի

դրանց վրայ գտնուած մարմարիոնեայ Յիշատակարաններու պատճէնքն„ ։

“Ի Թուին ՌՃԼԷ Յունիսի 30, շարժ եղեւ յԻզմիրս (Իզմիրս)[1] առաջին եկեղեցին ի հիմանց տապալեցաւ., իսկ ի Թուին ՌՃԼԸ Յունուարի (յունվարի) 29, եւ ի Հայրապետութեան սուրբ Էջմիածնի (Էջմիածնայ) Տեառն Եղիազարու, շնորհօքն Աստուծոյ, կամօք եւ տրովք (տրօք) հասարակ վաճառականաց եւ ժողովրդոց, ես Իզմիրու (Իզմիրոյ) Առաջնորդ Յովսէփ վարդապետս ապաւինեցայ յողորմութիւն (ողորմութիւնն) Աստուծոյ, ի սուրբ Ստեփաննոս եւ ի սուրբ Բարդուղիմէոս, եւ զեկեղեցիս (եկեղեցիքս) հիմնարկեցաք, եւ առաջնորդութեամբ Հոգւոյն սրբոյ ի նոյն Թուոջ ի Մայիսի 18 ի կատարումն (կատարումն) հասուցաք, եւ ի տօնի Գալստեան Հոգւոյն սրբոյ օրհնեցաք եւ Պատարագ մատուցաք, եւ կանգնեցաք զսոսա Տուն Աստուծոյ՝ նորոգ արձան՝ մշտնջենաւոր յիշատակ ինձ եւ ամենից ողորմածաց եւ աշխատողաց ։„

“Ի Թուին ՌՃՂԲ Յունիսի 15 Աստուծով եւ օժանդակութեամբ Հոգւոյն Սրբոյ սկիզբն եղեւ վերստին նորոգութեան սուրբ Ստեփաննոս Եկեղեցւոյս եւ Սրբոյն Մինասայ տաճարին ձախակողման աւանդատանն եւ օծաւ սոյն Թուին Սեպտեմբերի 11 եղեւ աւարտ ի ժամանակս Հայրապետութեան Սրբոյ Էջմիածնի Տեառն Ղազարու ամենայն Հայոց Կաթողիկոսի, եւ Արքեպիսկոպոսութեան Զմիւռնիոյ (ի զմիւռնոյ) քաղաքիս Աղեքսանդր վարդա-

1 Եղիա Եսայեան, Հայազգի դերձանավաճառ, տուած էր մէկ քանի արձանագրութիւններ, զորս ինքն անձամբ քարերու վրայէն ընդօրինակած է տարիներ յառաջ։ Ասոնց մէջ կային եկեղեցւոյ շինութեան վերաբերեալ այս երկու գրութիւններն ալ, միայն Դիւանատան գրքին մէջ գրուածէն փոքր ինչ տարբերութեամբ։ Իւր ունեցած տարբերութիւնը փակագծի մէջ առած ենք։

պետին Կոստանդնուպօլսեցւոյ արդեամբք (արդեամբ) եւ տրովք (տրօք) առ Հասարակ ժողովրդոց լուսաւորչածնից տեղացւոց եւ վաճառականաց եկաց եւ բնակաց:„

Գրքիս մէջ այս յիշատակարանաց կը յաջորդէ եկեղեցւոյ ճակատը գտնուած կրկին քարերու վրայ քանդակուածը յար եւ նման, զորոնք վերագոյն յիշեցինք: Ասոնց ամէնուն կը յաջորդէ տող մ'ալ, զոր արձանագրողն աւելցուցած է, ըսելով.

“Թուական առաջին հիմնարկութեան տաճարիս ոչ գտաւ ուրեք:„

Ասոնք են ահաւասիկ այժմեան շքեղակառոյց եկեղեցւոյս անցելոյն վկաները, որոնցմէ յայտնի կը տեսնուին իւր յընթացս ժամանակաց կրած փոփոխութիւնները. ուստի աւելորդ կը համարինք աւանդութեան տուած տեղեկութիւնները յառաջ բերել եւ կ'անցնինք տաճարիս ներքին փառաւորութիւնը դիտելու:

## 2.

*Ս. Ստեփանոս եկեղեցւոյն ներքինը, սիւները, մեծութիւնը, գմբեթը, դասը, բեմը, խորանները, փոքր տաճարները, զանգակատան աշտարակը, վերնատունները յատակը եւ Ս. Ստեփանոսի հնագոյն պատկերը:*

Ը. Ինչպէս վերագոյն յիշեցինք եկեղեցին ունի եօթը դուռ. աւագ դուռն ընդհանրապէս հանդիսական օրերը կը բացուի, իսկ ամենօրեայ գործածուած դուռն է աջակողմեան դուռը. այս դուռն ամէն օր առտու իրիկուն եւ եկեղեցւոյս այցելութեան յատուկ օրերն՝ առտուընէ մինչ իրիկուն բաց է հաւատացելոց առջեւ: Այս դռնէն ներս մտնելով, քանի մը քայլ յառաջ երթալէ ետքը՝ միջավայրը պէտք ենք կենալ, որպէս զի անարգել ամէն կողմ դիտել կարենանք: Ոտքերնիս դրանս սեմոց վրայ դրած վայրկենին, եկեղեցւոյ ներքին շքեղութիւնն եւ պայծառութիւնը մէկէն




Ս. ՍՏԵՓԱՆՈՍ:

1. Գմբէթ.
2. Ս. Ստեփանոս.
3. Աստուածածին.
4. Ս. Յովհ. կարապետ.
5. Տաճար Ս. Բարթուղիմէոսի.
6. Տաճար Ս. Գլխադիր.
7. Զանգակատուն.
8. Արտաքին գաւիթ.

աչքերնուս առջեւ կը բացուի· իսկ երբ միջավայրէն, աջ ու ձախ, վեր ու վար նայուածք մը արձակենք, կատարեալ սքանչելիք մը կը տեսնենք։ Կատարեալ եւ սիրուն ճարտարապետական յօրինուածութիւն մը, շքեղ գմբէթ մը, ոսկեփայլ գեղեցիկ խորաններ, մարմարաշէն բարձր բեմ, բարձր ու վեհ սիւներ, կամարակապ ձեղուն, բարձրակառոյց վերնատուններ, բազմաթիւ փառաւոր լուսամուտներ եւ սպիտակափայլ յատակ։ Այս ամէնը մին քան զմիւսն գեղեցիկ, ի միասին ամբողջութիւն մը կը կազմեն, եւ կարծես ըսել կ'ուզեն, թէ առանց միոյն օժանդակութեան՝ ամբողջին եւս կը մնար անկատար եւ ոչ այսչափ փառաւոր։ Բայց ամէնէն աւելի մարդուս մտադրութիւնը կը գրաւեն մարմարակուռ բարձր սիւները։

Բ. Միջավայրէն դիտելով, աջ ու ձախ թեւերնուս վրայ կարգաւ շարուած կը տեսնենք այս շքեղ սիւները[1], հինգ մէկ կողմը, հինգ ալ միւս կողմը, իրարմէ գրեթէ չորս մետր հեռաւորութեամբ· տասն ալ՝ մարմարեայ սպիտակափայլ եւ միակտուր։ Սիւներուս իւրաքանչիւրին բարձրութիւնն է, առանց պատուանդի եւ խոյակի, 5·50 մետր· եւ իւրաքանչիւրին շրջապատն է 1·90 մետր, եւ երթալով վերի կողմը սակաւ ինչ բարակցած կը տեսնուի։ Սիւներս հաստատուած են 80 հարիւրերորդական մետր բարձրութիւն ունեցող ձեւաւոր խարիսխներու վրայ եւ պղնձէ փայլուն բոլորակ կապով մը կապուած են իրարու։ Խոյակները մաքուր եւ գեղեցկապէս քանդակուած, յոնիական եւ կորնթական ճարտարապետական զարդերէ խառն (composite) ձեւով կոփուած են եւ սիւներուն հետ կապուած են նմանապէս պղնձէ փայլուն շրջանակով մը։ Խոյակներու վրայ շինուած են քառանկիւնաձեւ եւ 3 մետրէ աւելի բարձր

---

1 Սիւներս բերուած են Կարարայէ։

քովլթարներ, որոնք մինչեւ ձեղուն կը հասնին եւ հաստատուն պատուանդաններուն, վեհ սիւներուն, գեղեցկաքանդակ խոյակներուն հետ ի մի մարմին վեր կը բռնեն տաճարիս կամարակապ ձեղունը։

Եկեղեցւոյս ձեղունն երեք կամարէ կազմուած է՝ միջին, աջ ու ձախ կամարներէ։ Այս կամարներն ու ամբողջ շէնքն եւս առաւել հաստատուն գործելու համար, սիւներու քովլթարներէն՝ երկաթեայ հաստկեկ ձողերով՝ կամարէ կամար, սիւնէ սիւն, պատէ պատ ամրացուած է։ Եկեղեցւոյն ներքին մեծութիւնն է աւագ դռնէն մինչեւ դաս 24 մետր, դասէն մինչեւ խորան 9 մետր, ընդ ամէնը 33 մետր երկայն եւ 21 մետր լայն։ Գլխաւոր որմերը շինուած են 1 մետր հաստութեամբ, եւ վերոյիշեալ իւրաքանչիւր սիւնի դիմացը, պատերու կից, վեր կը բարձրանան չորեքանկիւն քառորդ սիւներ, որոնք իրենց պատուանդաններով, խառն խոյակներով եւ վրանին մինչեւ ձեղուն բարձրացած քովլթարներով՝ եկեղեցւոյ որմերը կը գեղեցկացընեն։

Գ. Միջավայրէն քանի մը քայլ յառաջ երթալով՝ դասին առջեւը գանք. հոս գլուխնիս դէպ ի վեր վերցընելով շքեղագործ բոլորակ գմբեթը կը տեսնենք, որ ճիշդ դասին վրայ բարձրացած, իւր շուրջն եղող լուսատու պատուհաններէն պայծառ ճառագայթներ կը սփռէ դէպ ի վար, բեմն ու դասը կը լուսաւորէ եւ ի հարկաւորութեան կը զովացընէ տաճարս։

Գմբեթիս ներսի կողմը գոյնզգոյն զարդերով զարդարուած եւ ոսկեզօծուած է. այս զարդերն աւելի վեհութիւն մը կու տան իւր կազմութեան. չորս անկեան կողմերն ալ հաւկթաձեւ բոլորակներու մէջ դիմացէ դիմաց, չորս աւետարանիչները գեղեցիկ կերպով եւ սիրուն գոյներով նկարուած են. կարծես ասոնք վերէն կը դիտեն տաճարիս այցելութեան եկող ժողովուրդը։ Երանի թէ եկեղե-

ցուցս ամբողջ կամարն եւ որմերն ալ գոյնզգոյն զարդերով նկարուած ըլլային, այն ատեն ըստ մասին կրնար Սողոմոնի տաճարին հաւասարիլ։



ԱՒԱԳ ԽՈՐԱՆ Ս. ՍՏԵՓԱՆՈՍԻ։

Երանի թէ, ըսինք, ձեղունն եւ պատերն գոյնզգոյն զարդարուած ըլլային, որովհետեւ ձեղունին միջավայրի կամարը՝ պարզ մութ ճերմակ, երկու կողմնակի կամարները՝ կարմրախառն, ինչպէս նաեւ

որմերը պարզ կարմրախառն ներկով ներկուած են, ուր եթէ կամարները գմբեթին նման գունաւոր զարդերով գործուած ըլլային, միակտուր մարմարեայ սիւները հարիւրապատիկ շքեղ պիտի երեւային. եւ եթէ պատերը զարդարուած ըլլային գոյնզգոյն նկարներով, պատերուն վրայ դէպ ի վեր բարձրացած սպիտակ սիւներն եւ խոյակները կրկին տեսք պիտի ունենային, նա մանաւանդ եթէ տեղ տեղ ալ ոսկեզօծն անպակաս ըլլար, ինչպէս գմբեթին մէջ։

Դ. Դասը աստիճան մը բարձր է եկեղեցւոյ յատակէն, միջավայրը կէս բոլորակաձեւ դուրս ելած եւ երկաթեայ զարդաձեւ սիրուն վանդակով մը բաժնուած նաւէն. երկու ծայրերը բաց են, ինչպէս նաեւ միջավայրը վանդակեայ դռներով զարդարուած, որոնք ի հարկին կը բացուին ու կը գոցուին։

Դասին առջեւը բարձրացած է փառաւոր մարմարակուռ բեմն, որուն վրայ ելլելու համար, միջավայրէն իրարմէ չափաւորապէս հեռու, երկու աստիճան շինուած է։ Բեմիս բարձրութիւնն է մէկ մետր եւ այս բարձրութեան մարմարեայ քարերը դուրս ցցուած ու գլանաձեւ կոփուած են։

Բեմին վրայ մէկ կարգի մէջ՝ դէպ ի վեր բարձրացած են երեք խորանները, որոնք իրենց ունեցած անզուգական գեղեցկութեամբը, գմբեթին շքեղութեան հետ կարծես կ՚ուզեն մրցիլ։ Եւ ստուգիւ խորաններուն մին քան զմիւսն փառաւոր եւ սիրուն է, նա մանաւանդ աւագ խորանն, որ կողմնակի խորաններէն աւելի բարձր եւ աւելի շքեղազարդ է։ Խորաններս կամարակերպ պատին մէջ ներս մտած են եւ այս կամարներն ոսկեզօծ բոլորակ զարդերով գոցուած։ Աւագ խորանը նուիրեալ է Ս. Ստեփանոսի Նախավկային. աջակողմեանը Ս. Յովհաննու Կարապետի. իսկ ձախակողմեանն Ս. Աստուածածնի։

Ե. Դասին աջ ու ձախ կողմը կը տեսնուին փայտաշէն հաստ դռներ, որոնք եկեղեցւոյ երկու թեւերուն վրայ խաչաձեւ դէպ ի պարտէզ դուրս ելած երկու փոքրիկ տաճարներն եկեղեցւոյ հետ հաղորդակցութեան մէջ կը դնեն: Փոքրիկ տաճարներուն աջակողմեանը նուիրեալ է Ս. Բարթուղիմէոսի. ձախակողմեանը Ս. Յովհաննու կարապետի (Ս. Գլխադիր): Ասոնց ներսի կողմը շատ պարզ է, ճերմակախառն ներկով ներկուած. արեւելեան որմերուն մէջ յօրինուած է մէյ մէկ խորան՝ զոյգ մը սիւնակներով զարդարուած:

Ս. Գլխադիր անուանեալ տաճարին ձախ կողմը՝ պատին մէջ հաստատուած է մկրտարանը, պարզ եւ անզարդ: Մկրտարանին առջեւը կախուած է Քրիստոսի Տեառն մերոյ ի Յովհաննէ մկրտուելուն իւղաներկ պատկերը: Այս տաճարիս աջ թեւին վրայ՝ եկեղեցի մտնելու դրան կից կը տեսնուի փոքր խաչքար[1] մը: Խաչքարիս քանդակն իսկոյն կը ցուցընէ հեռաւոր տեղերէ հոս փոխադրուած ըլլալը: Հայաստանի խաչքարները կը յիշեցընէ, եւ ստուգիւ վերջին տարիներս (1892) զետեղուած է պատին մէջ:

Փոքրիկ տաճարներս արեւելեան անկեանց վրայ ունին դռներ, որոնցմէ եկեղեցւոյ կռնակը շինուած աւանդատունը կ'երթըցուի. այսպէս դասին վրայէն, մէկ տաճարին դռնէն մտնելով, երկրորդ տաճարը եւ եկեղեցին կրնանք մտնել՝ բոլորակ շրջան մ'ընելով: Աւագ խորանի ետեւը կայ նաեւ փոքրիկ դուռ մը որ զմեզ աւանդատուն

---

1 Գարեգին Յ. Էֆ. Բաբազեան 1892ին Էջմիածին այցելած տարին, Անի քաղաքի աւերակներէն առած բերած է խաչքարս Զմիւռնիա եւ նուիրած Ս. Ստեփանոս եկեղեցւոյն, ինչպէս նաեւ բաւական թուով հին դրամներ, զորս պարգեւած է Մեսրոպեան Վարժարանի Թանգարանին: Խաչքարիս վրայ եղած տեղեկութիւնք, Առաջնորդարանի դիւանատան մէջ պահուած են:

կը հանէ։ Աջակողմեան տաճարն արդէն իբր աւանդատուն կը գործածուի, ուսկից դպիրք, երդիչք եւն կ'ելլեն ու կը մտնեն եկեղեցական պաշտամանց



ԶԱՆԳԱԿԱՏՈՒՆ Ս. ՍՏԵՓԱՆՈՍԻ։

ժամանակ։ Իսկ եկեղեցւոյ վերաբերեալ զարդի առարկայք կը պահուին ետեւը գտնուած աւանդատան մէջ։ Այս աւանդատան վրայ՝ եկեղեցւոյ կռնակը բարձրացած է զանգակատան աշտարակը։

Զ. Աշտարակս քառանկիւն ձեւ ունի. իւր բարձրութեամբ գմբէթին եւ ամբողջ եկեղեցւոյ վրայ կը տիրէ, շուրջը բարձրացած ծառերուն եւ շէնքերուն վրայ կը ժպտի։ Զանգակատունս բաց ի պատուանդանէ, ունի վրայէ վրայ շինուած կրկին բաժանումներ։ Այս բաժանմանց վարինը՝ քարաշէն անկիւնաւոր չորս սիւներէ զատ, ունի միանգամայն չորս կողմը զոյգ զոյգ կարմրագոյն սիւնակներ, որոնց խառն խոյակներուն վրայ կամարաձեւ հաստատուած է վերի բաժանման պատուանդանը։ Իսկ վերի մասը միայն անկիւնաւոր չորս սիւներէ կազմուած է, որոնց խոյակներուն վրայ նոյնպէս կամարաձեւ հաստատուած է աշտարակին զարդաձեւ պսակը, գագաթն ալ յաղթական խաչ մը կանգնուած։ Աշտարակիս չորս կողմն ըստ հետեւորդի կամարակապ պատուհաններու նման բաց է եւ կը տեսնուի երկու զանգակ, մեծագոյնը կախուած է վարի մասին մէջ, փոքրն ալ վերինին մէջ։ Երկուքն ի միասին, իրենց քաղցրահնչիւն եւ ներդաշնակ ձայնով, հանդիսական օրերը կը հրաւիրեն ժողովուրդը տաճարս. իսկ հասարակ օրերը մին միայն կը կատարէ այս պաշտօնը։

Զանգակատանս տակն, եկեղեցւոյ ճիշդ կռնակը կայ խորունկ լայն ջրհոր մը, որ կը հանի գրեթէ մինչեւ աւագ խորանի տակը. Ջրհորիս ջուրն իբր նուիրական ջուր (այազմա) կը գործածէ չէ թէ միայն հայ, այլ նաեւ յոյն ու տաճիկ ժողովուրդը։ Ջրհորս իջնալու աստիճաններուն վրայ, գոգաւոր վայր մը՝ հաստատուած է խաչքար մը, որուն առջեւ իւղալապտերի մը դողդոջուն լոյսը կը փայփլի ժամանակ ժամանակ՝ ուխտաւորներու նուիրած իւղովը։ Խաչքարս ունի հետեւեալ արձանագրութիւնն.

# ԿԱՆԳՆԵՑԱՒ ԽԱՉՍ. ԱԿՆ ՑԻ ՄՐ. ՅՈՀԱՆԻ ՈՐԴԻ ՀԱՑԱԳՈՐԾ. ՄԻՆԱՍԻՆ ԿԵՆԴԱՆԵԱՑՆ ԵՒ ՆՆՋԵՑԼՑ ՌՄ. ՍՏ.



Է. Դասին վրայէն գլուխնիս դէպ ի եկեղեցւոյ առաջակողմը դարձընելով՝ կը տեսնենք կանանց յատուկ վերնատունը՝ աւագ դրան վրայ բարձրացած, որուն կէսը եկեղեցւոյ մէջ եւ կէսն ալ դէպ ի դուրս պարտէզ ցցուած է։ Վերնատունս իւր լուսատու պատուհաններովը, վրայէ վրայ ունեցած բաժանումներովն, առջեւն հաստատուած զարդաձեւ վանդակովը գեղեցիկ եւ սիրուն տեսք մը կ'ընծայէ աչաց եւ կրնայ բովանդակել հարիւրաւոր անձինք։ Եկեղեցւոյ առաջակողմը բարձրացած այս ընդարձակ վերնատունէն զատ՝ ունի եկեղեցին երկու վերնատուն եւս, որոնք վերայիշեալ երկու փոքրիկ տաճարներու վրայ շինուած են եւ կը նային դասին վրայ։ Վերնատուններս ելլելու սանդուխը վերագոյն յիշեցինք։ Կը մնայ նայուածք մ'ալ նետել եկեղեցւոյ յատակին։

Ը. Մեծաշէն տաճարիս ամբողջ յատակը հարթուած է քառանկիւն սպիտակ մարմարեայ մեծկակ քարերով։ Չէ թէ միայն այս ընդարձակ լայն յատակն, այլ եւ դասն ու բեմը մարմարեայ յատակ ունին։ Սպիտակափայլ գեղեցիկ յատակին վրայ՝ դէպ ի լայնութեան շարուած են չորս կարգ երկայն նստարաններ, երկու կարգ միջավայրն եւ մէյ մէկ կարգ պատուհաններու առջեւն, փառաւոր յատակիս վրայէն դէպ ի աւագ դուռն յառաջ երթալով, աջ ու ձախը պատին մէջ հաստատուած կը տեսնենք, հաւկթաձեւ շրջա-

նակներու մէջ, մարմարեայ քարերու վրայ քանդակուած երկու յիշատակարաններ։ Ասոնք կը յիշեցընեն այն բարերարներն որոնք իրենց ծախիւք եկեղեցւոյս յատակը մարմարաշէն ընել եւ որմերը ծեփել յանձն առած են՝ թողլով միանգամայն պատուական օրինակ ապագայ սերունդին, աշխատելու ի շինութիւն եւ ի պայծառութիւն նման հաստատութեանց։ Ահա յիշատակարանները.

†

ՅԱՆՈՒՆ ՀԱՆԳՈՒՑԵԱԼ
ԲԱՐԵՊԱՇՏՕՆ ԲԱԼՈՒԾԻ
ԽԱՉԱՏՈՒՐ ԱՂԱՅԻ ՂԱՉԷՐԵԱՆ,
ՈՐՈՅ ԱՐԴԵԱՄԲՔ ԾԵՓԵԱԼ ԵՒ
ՅԱՐԴԱՐԵԱԼ ԵՆ ՀԱՄԱՅՆ ՈՐՄՈՒՆՔ
ՍՈՒՐԲ ՏԱՃԱՐԻՍ, ԵՐԱԽՏԱԳԷՏ
ԶԳԱՑՄԱՄԲ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ
ԶՄԻՒՌՆԻՈՅ ԵԴԱՒ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՍ
Ի 1878 ԱՄԻ ՅԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԵԱՆ
Տ. ՄԵԼՔԻՍԵԴԵԿԻ
Ծ. ՎԱՐԴԱՊԻ ՄՈՒՐԱՏԵԱՆՑ

†[1]

ԵՐԱԽՏԱԳԷՏ ԶԳԱՑՄԱՄԲ
ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆՍ
ԶՄԻՒՌՆԻՈՅ ԵԴԱՒ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՍ

---

1 Սոյն Բարերարին առ Ազգային Ժողովն ուղղեալ նամակն.

Մեծապատիւ Տեարք։

Կը համարձակիմ Ս. Ստեփանոս եկեղեցւոյ պայծառութեան օգտակար խորհուրդ մը որ վերջին ժամանակներս յղացած եմ, Մեծ. Ժողովոյդ ատեանը հանել, տարակոյս չունենալով որ նկատողութեան առնելով զայն՝

# ՅԱՆՈՒՆ ԲԱՐԵՊԱՇՏՕՆ ԽԱՉԱՏՈՒՐ ԸՂԱՅԻ ԳԱՐԱԳԱՇԵԱՆ ՈՐ ԻՒՐՈՎ ԾԱԽԻՒՔ ԵՒ ԱՇԽԱՏՈՒԹԵԱՄԲ ՅԱՐԴԱՐԵԱՑ ՄԱՐՄԱՐԻՈՆԵԱՅ ՔԱՐԱՄԲՔ ԶՅԱՏԱԿ ՍՈՒՐԲ ՏԱՃԱՐԻՍ ՅԱՄԻ ՏԵԱՌՆ 1878 ՅԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԵԱՆ Տ. ՄԵԼՔԻՍԵԴԵԿԻ Ծ. ՎՐԴՊԻ ՄՈՒՐԱՏԵՆՑ

Թ. Եկեղեցւոյս սոյն կրկին բարեբարաց անջինջ յիշատակարանները կարդալէ ետքը՝ դառնանք եկեղեցւոյ միջավայրը։ Հոս աչքերնիս աջ ու ձախ դարձընելով, երրորդ կարգի վրայ բարձրացած մարմարեայ սիւներուն կից, որոնք ճիշդ կողմնակի դռներու առջեւը կ'իյնան, կը տեսնենք երկու փոքրիկ սեղաններ, երկու գեղեցիկ շրջանակներու մէջ դրուած պատկերներով։ Պատկերներուս աջա-

---

Ձեր բարձր Հաւանութեան եւ վաւերացման արժանի պիտի ընէք։ — Ինչպէս յայտնի է Ձեր մեծապատուութեանց, Ս. Ստեփանոս եկեղեցւոյ յատակը, ազգային սնտուկի նեղ վիճակին պատճառաւ շատ տարիներէ ի վեր անյարդար մնացած է ի ցաւ սրտի բարեպաշտ ժողովրդեան։ — Յիշեալ Հոյակապ եկեղեցւոյն սոյն թերի մասն լրացընելու Համար որոշած եմ յատակն իմ անձնական ծախքովս մարմարով պատել, որու Համար Ձեր Հաւանութիւնը խնդրել օրինական պարտք մը լինելով, կը փութամ սոյն գրութեամբս կատարել զայն, միանգամայն եւ իմացընելով որ եթէ սոյն որոշումս վաւերացուի Մեծ. Ժողովէդ, նոյնին գործադրիչ եւ վերատեսուչ կարգած եմ իմ կողմէս մեծապատիւ Յովհաննէս Նուպարեան եւ Սարգիս Սէֆէրեան աղաները.

Մնամ ամենախոնարհ ծառայ

Զմիւռնիա, 15 Սեպտ. 1877։

Խաչատուր Յ. Գարագաշեան։

կողմեանն է Ս. Ստեփանոս, ձախակողմեանն Ս. Աստուածածին։ Ս. Ստեփանոսի այս պատկերն աւագ խորանի նախկին պատկերն է. տարիներ յառաջ տեղն ուրիշ նորագոյն մը դրուելով՝ հնագոյնը հոս փոխադրուած է. յընթացս ժամանակաց վրայէն թափուած տեղերը նորոգուած եւ սրբոյս զգեստները նորագոյն գոյներով զարդարուած են։ Պատկերիս վրայ հաստատուած են արծաթեայ զարդեր, ինչպէս ձեռքերը, պսակն եւ պսակը բռնող երկու հրեշտակները, ուսուրարն արծաթեայ են, նուիրեալ բարեպաշտ անձինքներէ։ Ուսուրարին վարի եզերաց վրայ փորագրուած է

Յշտկ Ակիւլիսերեան 1886.

իսկ պսակին միջավայրն նմանապէս փորագրուած է,

Յիշատակ է Տիգրան Կիւզէլեանի 1888.

Տարւոյն ամէն հինգշաբթի օրերը, պատկերիս քով կը դրուի ուրիշ սեղան մը, վրան Ս. Ստեփանոսի մասունքն եւ խաչահանգիստ ջուր (օրհնեալ ջուր) արծաթեայ ամանով եւ դգալներով. Նոյն օրերն եկեղեցւոյ դուռն առտուընէ մինչ իրիկուն բաց է ժողովրդեան, որ կը դիմէ Սուրբիս ուխտի, կ'աղօթէ, մոմ կը վառէ, իւր բնիոնը կը ձգէ գանձանակը եւ խաչահանգիստ ջրէն դգալ մը խմելով կը մեկնի։

Եկեղեցւոյ կողմնակի դրանց քով դրուած են նաեւ մոմլաթի վրայ նկարուած փոքր պատկերներ, որոնք դժբախտաբար ապականած են առջեւնին վառուած մոմերէ կամ կանթեղներէ։ Աւանդատանց մէջ ալ կան այսպիսի պատկերներ, որոնց մէջ յիշատակութեան արժանի է ձախակողմեան աւանդատան (Ս. Գլխադիր) վրայ կառուցուած վերնատան պատէն կախուած Դատաստանի պատկերը։ Ուստի՝ հրաշակերտ տաճարիս ձեղունին երկաթեայ ձողերէն կախուած բազմաթիւ կանթեղներուն, բիւրեղեայ ջահերուն, արդին ու զարդին

վերջին անյագ ակնարկ մ'ալ նետելով՝ դուրս ելլենք եւ երթանք վերոյիշեալ վերնատունը՝ Դատաստանի պատկերը տեսնելու։

## 3.

*Դատաստանի պատկերը։*

Դատաստանի պատկերս Ս. Ստեփանոս եկեղեցւոյ մեծ զարդը կրնայ համարուիլ։ Առաջին անգամ այս պատկերն եւրոպացի ճանապարհորդի մը հետ տեսնելու բախտն ունեցայ. թէ ինչ ազդեցութիւն ըրաւ պատկերս օտարականին վրայ՝ հետեւեալ տողերէն կրնայ իմացուիլ։

Ամառ էր (1896) երբ գերմանացի զբօսաշրջիկներու նաւ մը խարիսխ նետած էր Զմիւռնիոյ խորշին մէջ։ Զբօսաշրջիկները ցամաքն ելած էին քաղաքին նշանաւոր վայրերը դիտելու. ասոնցմէ մին խնդրեց ինծմէ որ ընկերանալով իրեն Զմիւռնիոյ գեղեցկաշէն եկեղեցիները ցոյց տամ։ Առաջին մտածութեամբ քայլերնիս դէպ ի Ս. Ստեփանոսի եկեղեցին ուղղեցինք, ուր եկեղեցւոյ շինուածքին եւ գեղեցկութեան մի առ մի հետաքրքրական նայուածքներ նետելէ ետքն՝ աւանդապահին առաջնորդութեամբ վերնատունները ելանք։ Այլ եւ առաջակողմեան վերնատունները անցնելով՝ մտանք ձախակողմեան վերնատունը։ Ահաւասիկ, Տէր Յ. Մասս (այս էր Գերմանացւոյն անունը), ահաւասիկ ըսի պատկեր մը, որուն վրայ ահռելի դատաստան մը եւ հազարաւոր գլուխներ կը տեսնուին։ "Ա՜հ այս տեսնելու արժանի պատկեր է.„ պատասխանեց. "չկա՞յ տեղ մը գրուած թուականն եւ պատկերահանին անունը, որպէս զի նշանակեմ եւ պատմեմ իմիններուս այդ գծագրիչ ձեռքին ունեցած գաղափարի ընդարձակութիւնը„ ըսաւ։ Դժբաղդաբար... չկայ, ըսի, որովհետեւ

զարհուրելի հրդեհ մը եզերքներն այրած ապականած է։ “Ստուգիւ Եւրոպայի մէկ ցուցահանդիսին մէջ դրուելու արժանի է պատկերս„ կրկնեց։ Միով բանիւ պատկերիս վրայ սքանչացած եւ քանի մը տեղեկութիւններ իւր յուշատետրին մէջ նշանակելէն ետքն՝ իջանք վերնատունէն եւ վերջապէս բաժնուեցանք իրարմէ։

Եկեղեցւոյ աւանդապահին վկայութեան համեմատ ուրիշ անգամներ ալ օտարական ճանապարհորդներ այցելած են եկեղեցւոյս եւ պատկերս տեսնելով գոված են։ Թողունք իւրաքանչիւր այցելուին, ինչպէս որ կ՚երեւայ իւր աչաց, այնպէս թող գնահատէ։ Իսկ մենք կը կրկնենք թէ ստուգիւ պատկերս է սքանչելի, հնութեան ու հայ ձեռաց յիշատակ մը։ Պատկերիս վրայ գաղափար մ՚ունենալու համար, համառօտ տեղեկութիւն մը տալ պատշաճ է։ Իւր այժմեան մեծութիւնն է 5·12 մետր երկայնութիւն եւ 2·38 մետր լայնութիւն կամ բարձրութիւն. մոմլաթի վրայ նկարուած։ Իւր այժմեան մեծութիւնն, ըսի, որովհետեւ 1845ին պատահած աւերիչ հրդեհին ապականիչ բոցերը համարձակած են պատկերիս եզերքներն այրել, որով թէ թուականը եւ թէ նկարչին պատուական անունը այրած լափած եւ մոխիր դարձուցած են։ Սակայն այն անգութ բոցերն բարեբախտաբար չեն կրցած աւելի յառաջ երթալ եւ բոլորովին անհետացընել հնութեան այս յիշատակն. որովհետեւ նոյն զարհուրելի հրդեհին ատեն ապրողները լաւ ճանչցած էին պատկերիս յարգը, ուստի եւ իրենք զիրենք վտանգի ենթարկելով՝ յաջողած են արդէն բոցը առած պատկերս ազատել, եւ եկեղեցիէն դուրս հանելով, ընդարձակ պարտէզին մէկ կողմը տարած եւ վտանգէ ապահովցուցած են։ Քանի՜ շնորհակալութիւն պէտք է մատուցանել ներկայ սերունդն իւր նախնեաց այսպիսի վեհ գործերուն։

Բնականապէս այսպիսի ահռելի վտանգներէ ազատուածն իւր նախնական գեղեցկութիւնը կը կորսնցընէ. Թէպէտ եւ տեղ տեղ գոյները թափուած են եւ մոմլաթին ծակերը կը տեսնուին, այսու ամենայնիւ դարձեալ իւր այս վիճակին մէջ հետաքրքրական է եւ սքանչելի։ Եթէ աղէկ հոգացուի, փոշիներու տակ չձգուի, երբեմն երբեմն մաքրուի եւ գլխաւորաբար 'անգութ կամ տգէտ ժամկոչներու կոշտ ձեռքերէն զգուշացուի՝ պատկերս դեռ կրնայ դիմանալ տարիներ եւ դարեր։

Պատկերիս գծագրիչը ներկայացուցած է հոն ամէն աստիճանի եւ վիճակի մէջ գտնուողներու դատաստանն ի վերջնում աւուր։ Ճշմարիտ պատկեր մ'արդար եւ անաչառ Դատաւորին դատաստանաց, ճշգրիտ նկար մը վերջին ահաւոր օրուան։ Հարիւրաւոր ամբողջ մարմիններ՝ այլեւայլ վիճակներու եւ ձեւերու մէջ կը տեսնուին վրան։ Խաչաձեւ բաժանում մ'ընելով, կ'ունենանք չորս մաս։ Մէջտեղի գծին վրայ վերէն վար գեղեցկապէս նկարուած կը տեսնենք զՀայր Աստուած, տակն՝ զՀոգին Սուրբ աղաւնակերպ եւ յետոյ զՔրիստոս Տէրն մեր։ Քրիստոսի Տեառն մերոյ ոտից ներքեւ կայ խաչափայտ մը, որմէ աջ ու ձախ ճառագայթներ սփռուած են. ճառագայթներ՝ որոնք լուսոյ եւ պայծառութեան մէջ ծածկած են իրենց շուրջը նկարուած հոգիները։

Խաչափայտին տակը կեցած է Միքայէլ Հրեշտակապետը, փողն եւ արդարութեան կշիռքը ձեռքը բռնած։ Ասոնք են պատկերին միջավայրն երեւցածները։ Աչքերնիս վեր վերցընենք, ինչպէս որ բաժնեցինք նկարը, եւ վերի աջ ու ձախ թեւերուն վրայ ակնարկ մը նետենք։

Հոն նկարուած կը տեսնենք երկնային բնակչաց եւ մեր յարգանաց արժանի եղող հոգիներու խումբերն. ինչպէս գեղեցիկ բաժնուած են սոյն պատուական սուրբերն։ Իւրաքանչիւր խումբին

տակ նշանակած է գծագրիչը հայերէն գրերով նոյն խումբին անունը: Կարդանք մի քանին. “Դասք Սերովբէից„. “Դասք Քերովբէից„: “Դասք Մարգարէից„. “Դասք Առաքելոց„. “Սարկաւագաց„. “Քահանայից„. “Դասք Հայրապետաց„. “Դասք Թագաւորաց„. “Ճգնաւորաց„. “Կուսանաց„ եւն:

Դիտողին աչքերը չեն յագիր այս դաս դաս ներկայացուած սուրբերուն նայելով, որոնց իւրաքանչիւրն իրեն յատուկ զգեստով եւ սիրուն գոյներով հանդիսացած է: Բաղձանք մը, ցանկութիւն մը կ'ունենայ մարդս թռչելու եւ հանգչելու այն ուրախ հոգիներուն քով, սէր մը կը զգայ դէպ ի երկնաւորն, դէպ ի իւր Արարիչը: Իսկ երբ աչքերնիս պատկերին վարի թեւերուն վրայ դարձընենք, բոլորովին տարբեր տեսարաններու կը հանդիպինք: Այս մասին աջ կողմն ալ նմանապէս խնդութեամբ եւ ցնծութեամբ կը լեցընէ դիտողին սիրտը, ուր կը տեսնուին հրեշտակներ եւ բազմաթիւ անմեղ հոգիներ՝ իրենց պայծառ զգեստներովն, ուր կան ամէն աստիճանի եւ ամէն վիճակի մէջ գտնուող եւ ըստ քրիստոնէական օրինաց, սրբութեամբ իրենց կենաց ընթացքը կատարող հոգիներ, որոնց վրայ միջավայրը կեցող Միքայէլ հրեշտակապետին փողէն “Եկայք օրհնեալք Հօր իմոյ„ Քրիստոսի Տեառն մերոյ մխիթարալից խօսքը՝ ճառագայթներու մէջ գրուած է: Ասոնց ամենուն տակը կը կարդանք հետեւեալը, “Դպրութիւն կենաց ըստ որոց... գործողքն բարի... յարդար դատաւորէն յաւիտենական.... ընդունին...„ (Թափուած ըլլալուն ամբողջ չի կարդացուիր): Ուրախական եւ մխիթարական է կենալ ժամերով նկատել այս կողմը. սակայն անհամբեր են հոն կեցողին աչուըները, հետաքրքրութիւնը ակնարկ մ'ալ վարի մասին ձախ թեւին վրայ նետել կու տայ. բայց հոս տեսարանը փոխուած

կը գտնենք: Ցանկարծ մտածութիւնները բոլորովին կը փոխուին, տրտմութիւն մը մարդուն վրայ կը տիրէ. Թէ ունի զգացում՝ սոսկում կը զգայ եւ թէ մարդասէր է՝ ցաւակից ըլլալ կը սկսի, եթէ հեռի կը գտնուի իւր պարտուց կատարմանէն՝ ուղղուելու եւ բարի ապրելու առաջադրութիւն մը կ'ունենայ սրտին մէջ:

Ժամերով կրնայ մէկը կենալ պատկերիս առջեւն եւ նկատել այս ձախ կողմն ալ. առանց գրքի, առանց դպրութեան հոն կը տեսնէ մարդս՝ չար ճամբաներու հետեւողաց պատիժները: Գունդ գունդ մարդիկներ նկարուած են եւ ամէն մէկ գունդին վրայ իւրաքանչիւրին գործած մեղաց տեսակը գրուած է. բաց աստի իւրաքանչիւր գունդին զանազան տանջանքներ յատկացուցած է նկարիչն, մեղաւորաց ամէն մէկ խումբը տեսակ տեսակ տանջանքներու մէջ կը տեսնենք հոն: Հոս բազմութիւն մը մարդկանց՝ ձաղկանքներու են մատնուած, հոն ուրիշները գլխիվայր կախաղանի են դատապարտուած, հոս քիչ մը վերն, ոտքի վրայ իրարու կապուած բազմութիւն մը՝ սատանաներէ շրջապատուած կը տանջուին. հոն վարը՝ խորը խորը առանձինն բոցերու մէջ նստած է մէկը, գլուխը դէպ ի վեր վերցուցած, մատին ծայրը լեզուին դրած, անտարակոյս բան մը կը խնդրէ, անտարակոյս բոցերու մէջ կը տապի կը տառապի, օգնութիւն մը կը խնդրէ: Այո՛ սա Քրիստոսի Տեառն մերոյ Աւետարանի մէջ մեր առջեւը դրած մեծատունն է: Ուսկի՞ց կը խնդրէ օգնութիւն, որո՞ւն կ'ընէ իւր աղաչանքը. վեր, շատ վերը, սրբոց դասին աչքերնիս դարձընելու ըլլանք՛, անհամար ուրախ հոգիներուն մէջ կը տեսնենք զհայրն Աբրահամ, գիրկն ալ Թշուառ ու աղքատ Ղազարոսն. ասոնցմէ մեծատունը կը խնդրէ կաթիլ մը ջրոյ՝ իւր պապակեալ լեզուն թրջելու համար: Ինչպիսի՜ անտանելի ծարաւ, ինչ սոսկալի տանջանքներ,

քանի՜ զարհուրելի տառապանքներ։ Եթէ մէկը նկատելով այս պատկերացեալ տանջանքներու տեսակները, հարցնել ուզէ անոնց պատճառը, հարցման պատասխանը իսկոյն կը տեսնէ գրուած առջեւը։ Պատկերահանը չէ մոռցած գրել իւրաքանչիւրին վրայ այն դառն վիճակին մէջ իյնալնուն պատճառները։ Կարդանք մի քանին. "Պոռնիկ են սոքա". "սոքա զրկողք են միմեանց". "Սոքա դիր զմեղս ի վերայ մեղաց գործէին եւ ոչ խոստովանէին եւ ոչ ապաշխարէին". "սոքա սուտ վկայք են". "սոքա գողք եւ աւազակք են" եւն։ Մի առ մի կարդալ անկարելի է, որովհետեւ տեղ տեղ թափուած է. միով բանիւ Աստուծոյ եւ Եկեղեցւոյ պատուիրանաց դէմ գործուած մեղքերը մի առ մի ներկայացընել աշխատած է նկարիչը, որոնց ամէնուն տակը՝ ստորեւ կը կարդանք այս խօսքը, "Գիրք դատապարտութեան, ըստ որոց չարագործք մատնին յանշէջ հուրն դժոխոց հրամանաւ անաչառ դատաւորին։"

Ահա այսպիսի տեսարաններ կը ներկայացընէ Դատաստանի պատկերս։ Բնականապէս հետաքրքրական էր գիտնալ այն տարին, յորում պատկերս գծագրուած է. ասոր համար շատ հետամուտ եղանք գտնել արձանագրութիւն կամ յիշատակարան մը, բայց ի զուր։ Ուստի գրութիւն մը յերեւան հանելէ մեր յոյսը կտրած՝ կը դիմենք աւանդութեան։ Զմիւռնացի ալեւոր հայերը կը պատմեն, թէ իրենց հայրերը մանուկ հասակնուն մէջ պատկերս տեսած են՝ եկեղեցւոյ պատէն կախուած։ Ի մէջ այլոց Սարգիս Պալապանեան կը պատմէ հետեւեալը. "Լաւ կը յիշեմ, որ հայրս իւր հօրմէն լսած՝ կը պատմէր մեզի, թէ ժամանակին Պօղոս անուն հայազգի պատկերահան մը եղած է Զմիւռնիոյ մէջ, որ չէ թէ միայն այս, այլ ուրիշ պատկերներ եւս նկարած է, որոնք նախկին Ս. Ստեփանոսի (Ս. Բարթուղիմէոսի) պատերուն

վրայ կախուած տեսած են:„ Մեծ կրակին յաջողած են այս պատկերն ազատել, մնացածները հրոյ ճարակ եղած են: Այսպիսի աւանդութեանց վրայ հիմնեալ, զորս մի առ մի յիշել աւելորդ կը համարիմ, կրնանք ըսել թէ պատկերս հաւանականաբար նկարուած է 1750 միջոցները[1]:

## 4.

*Ս. Ստեփանոս Եկեղեցւոյ ճարտարապետները:*

Եկեղեցւոյս կառուցման թուականը տեսանք վերնագոյն (երես 56): Այսպիսի շքեղաշէն եկեղեցւոյ մը կառուցման աշխատող ճարտարապետներն եւս համառօտիւ յիշել պատշաճ է: Իբր առաջին ճարտարապետ կը յիշուի Սթրաթի, որ եկեղեցւոյս հիմը դրած եւ շինութեան սկսած է:

Ազգային վարչութիւնը գոհ չըլլալով իրմէ, ստիպուած է ընտրել զՍիմոն Կեսարացի անուն ճարտարապետը: Այս երկրորդ ճարտարապետն ալ կարճ ժամանակ մը շինութեան հսկելէ ետքն՝ անձամբ տուած է իր հրաժարականը եւ մէկդի քաշուած: Այն ատեն ազգը դիմած է Կ. Պոլիս եւ խնդրած է համբաւաւոր ճարտարապետն Էօրտէկ Մինաս: Էօրտէկ Մինաս անձամբ չկրնալով գալ, իրեն ընկերակիցն եւ աշխատակիցը զՄելքոն Երամեան խրկած է Զմիւռնիա: Այս երրորդ ճարտարապետը, Մելքոն Երամեան, անխոնջ հսկողութեամբ ի գլուխ հանած եւ աւարտած է շքեղակառոյց տաճարս: Ճարտարապետիս արձանը կը վայելէր ստուգիւ կանգնել եկեղեցւոյ պարտէզին մէջ, ասոր հակառակ կը տեսնենք իւր գերեզմանը պարզ եւ անզարդ քարով մը ծածկուած: Իւր մահը յանկարծակի եղած է. Աւագ

1 Դատաստանի պատկերիս նման պատկեր մ՚ալ կը գտնուի Էօտէմիշի Ս. Հռիփսիմէ եկեղեցւոյ արտաքին պատէն կախուած՝ գաւթին վրայ:

Հինգշաբթի օրն ողջ առողջ՝ ոտքի վրայ եկեղեցին կը հաղորդուի, երկրորդ օրն Ուրբաթ կը վախճանի։

Իւր տապանաքարն՝ որուն տակ կը գտնուին իւր մնացորդները Եկեղեցւոյ աւագ դրան կողմը, գաւթին կիսաբոլորակ աստիճանին ճիշդ առջեւն է։ Ճարտարապետին յիշատակարանը քանդակուած է այսպէս։

*Մելքոն Նրամեան Կոստանդունպլցի*
*Ծարտարապետ հոյակապ Եկեղեցոյս*
*որ յաւարտ շինութե հանգեաւ ի Քս*
*ի հասակի ԼԵ ամաց 1853 ապրիլի 18:*
*զալան տիինեանըն եօք տուր մէքասը*
*սաքուլ մէյիլ վէրմէ տուշերսին պրկիւն*
*նէ քատար սուրսէն պօշ տուր սէֆասը*
*Էճէլ մէյլ էտտիկտէ շաշարսըն պրկիւն:*

Տաճկերէն լեզուաւ գրութեան յաջորդ տողերն անըմբռնելի եղած են. իբր օրինակ առջի չորս տողերը գրել բաւական համարեցանք։

---

## ԳԼՈՒԽ ԵՕԹՆԵՐՈՐԴ

*Գերեզմանաքարեր եւ Արձանագրութիւններ:*

Ա. Ստեփանոս եկեղեցւոյ պարտէզին ժամանակ մը իբր գերեզմանոց գործածուած ըլլալը վերը յիշեցինք (էջ 50)։ Հոս գտնուած գերեզմանաքարերուն հնագոյնները միայն, եւ հոս հանգչող երեւելի անձանց շիրիմներու արձանագրութիւններն ընդօրինակած կը ներկայացընենք. որոնցմէ ոմանք իբր վկայ՝ մեր պատմութեան հետ ի միասին կ'ընթանան եւ ոմանք ալ ժամանակին պատա-

հարները կը պատմեն։ Այնոցմէ զատ պարտէզը շրջապատող որմերուն մէջ, ի մասնաւորի պարտէզին մեծ դրան աջ ու ձախ կողմերը ներքուստ հաստա-



Բ. ԴԱՐԻ ԲԱՐՁՐԱՔԱՆԴԱԿ (պարտէզին պատին մէջ զետեղուած):

տուած են քանի՛ մը քարեր եւս, որոնք Հռոմայեցւոց ժամանակէն՝ մնացած զարդերու բեկորները կը յիշեցընեն. այս՝ քարերը գտնուած են՝ շինութեանց հիմ դնելու համար՝ գետինը փորուած ժամանակ եւ իբր գերեզմանաքար գործածուած,

վրանին յիշատակարաններ քանդակուած եւ յետոյ պարտէզին որմերը շինուած ատեն, ուրիշ խել մը գերեզմանաքարերու հետ որմերուն մէջ հաս-



Գ. ԴԱՐԷՆ ԲԱՐՁՐԱՔԱՆԴԱԿ (պարտէզին պատին մէջ զետեղուած):

տատուած են։ Այսոնցմէ վեց կտոր լուսանկար պատկերով կը դնենք հոս, գաղափար մ'ունենալու համար այս քարերուն վրայ։

Մեծ հրդեհը հնագոյն գերեզմանաքարերու շատերն ապականած է, որոնց մնացորդները եկե-

ղեցւոյ շինութեան գործածուած են. այս քանդակ- ները ցոյց կը տրնենք եօթ կտոր գերեզմանաքարերու քանդակագրութիւնները, զորս ընդօրինակած է

Բ. ԴԱՐԻ ԲԱՐՁՐԱՔԱՆԴԱԿ (պարտէզի պատին մէջ զետեղուած)։

Հրդեհէն յառաջ Եղիա Եսայեան[1] եւ որոնք այսօրուան օրս չեն գտնուիր։

---

1 Տես նաեւ էջ 57ի ծանօթութիւնը։

Ի սմին կայ է պարածածէն.
մարմին ոսկորացն նոր վէայէ:
որ եւ Սարգիս գուլ ճանայէ.
յերկրորդ Հայոց Մեւրինացէ
երքեմն է տէս մանկականէ.
Թողեալ շառէր կենաց անտէ
ամօք քաղմօք նոմէսք վարէ.
քայց էսրովէ դարձեալ կորզէ
զէ յատենէ համարձակէ:
է Զըմիսոէնս Աւէայէ.
մեծ հանդէսէս նահատակէ
ընդ տէրսոքեք Իսմայէլէ.
հարասսականն եղեալ տոհմ
յամի հազար հայկեանս Թաւէ
եւ զնայն անոսն խոստովանէ:
Աբրէլ ԺԵ օրըն. նոր
կէրակէ երեգշաբթէ
օրըն. նահատկցաւ.

*1567*

*Այս է տապանս*
*Հանգստի՝ եւ նազ*
*ելի պատանեակի*
*գեղեցկատիպ եւ*
*ցանկալի Գասպար*
*անուամբ քաղցր յոգի*
*որդի էր առն Սար*
*գսի՝ եւ յերկրէ*

*Ներքաղքցի*
*որ եւ մայ ծ̄նի*
*փոխ առ Տ̄րն*
*ի Թուականիս հա*
*յկեան սեռի հա*
*զար ծ̄ջի:*

[1] HERE LYE ...............
BODY OF CAPITANIS MOYER
..........................
..........................
.......... A DMNI
1636

*Այս է տապան Յով՛աննէսի որդի Կումուշկէրտան Գրիգորին*
*Եւ իւր թոռն Գրիգորին որ փոխեցաւ թվին:*
*ՌՃԺԳ.*

**ԻԶՄԻՐՑԻ ՃԷՎԱՀԻՐՃԵԱՆ**
**ՏԷՐ ՍԱՀԱԿԻ ՈՐԴԻ Պ̄ՐՆ**
**ՕՀԱՆՆԷՍ ՀԱՆԳԵԱՒ**
1670 **ՅՈՒՆԻՍ** 19
**ԻԶՄԻՐՑԻ ՃԷՎԱՀԻՐՃԵԱՆ**
**ՏԷՐ ՍԱՀԱԿԻ ՈՐԴԻ Պ̄ՐՆ**
**ՅԱՐՈՒԹԻՒՆ ՀԱՆԳԵԱՒ**
1756 **ՄԱՅԻՍ** 8

---

1 Կ'ըսուի թէ Անգղիացի նաւապետ մը Զմիւռնիոյ Ծովախորշին մէջ իւր մահկանացուն կնքած ըլլալով՝ թաղուած է պարտէզիս մէջ:



Գ. ԴԱՐԻ ԲԱՐՁՐԱՔԱՆԴԱԿ (գործածուած իբր գերեզմանաքար)։

ՃԷՎԱՀԻՐՃԵԱՆ ՊԱՐՈՆ
ՅԱՐՈՒԹԻՒՆԻ ՈՐԴԻ
ՄՀ̃Ի ՍԱՀԱԿ ԱՂԱ ՀԱՆ
ԳԵԱՒ 1822 ՅՈՒԼԻՍ 17

---

ՄՀ̃Ի ՅՈՎՀԱՆՆԷՍ ՍԱՀԱԿ
ՃԷՎԱՀԻՐՃԵԱՆ ՀԱՆԳԵԱՒ
Ի ՏԷՐ 1867 ԴԵԿ. 23.

*Այս է տապան տէլի Թոր*
*ոսի Յոզեւոր որդի՝ Յով*
*անէսին Թվին ՌՃԻԳ.*

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՋՈՒ
ՂԱԵՑԻ ՄԱՀՏԵՍԻ Բ...
ԱՐԻ ԼՈՒՍԻՆ ՈՐ ՓՈԽԵՑ
ԱՒ ՅԱՆԱՆՑ Ի ԿԵԱՆ
Ս ԹՎԻՆ ՌՃԼԵ ՅԱ
ՐԺԻՆ ՏԱՐԻՆ[1]

ԱՅՍ Է ՏԱՊԱՆՔ ԱՊՐՕԵԱՆ ՄԱԹՈՍ
ԱՂԱՅԻ ՈՐԴԻՔ ԱԲՐԱՀԱՄ Ե ՄՈՒՐԱՏ
ԽԱՆ ԱՂԱՅՆԵՐԱՑ ՈՐ ՀԱՆԳԵԱՆ
Ի ՇԱՐԺԷՆ Ի ԹՎԻՆ ՌՃԼԷ ՅՈՒՆԻՍԻ Է

---

1 Տապանաքարս 1897ին Յուլիս 15ին՝ Առաջնորդարանի առջեւն, մեծ փողոցին ջրոյ ճամբան մաքրուած ժամանակ գտնուեցաւ՝ ուրիշ քարերու հետ, որոնք գործածուած էին աւելորդ ճամբաները գոցելու։

# 1688 ՅՈՒՆՎԱՐԻ 30
# ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՄԿՐՏԻՉԻ ՈՐԴԻ ՆՈՐԸՆԾԱ ՏՐ ԳԱԲՐԻԵԼԸՆ ԱՅԼ ԵՒ ՀԱՓԵՂԱՄԻ ՄԵԾ ՇԱՐ ԺԻՆ ԵԿԵՂԵՑԻՆ ՊԱՀԱՐԱՆԻ ՄԻՋՈՒՄՈՒ ԱՒ ԱԾ ՓՕԽԻ

Այս է տապան Թէֆլիզցէ
Կուալինեանց Դաւիթի որդի Պ
աղօի որ հանգեաւ ի Քին
ՌՃԿԷ. Յունվրի. 6։
Վերոյիշեալ Պաղօի որդի Գա
լէին հանգեաւ ի Քն ՌՃԿԷ Սեպ
20։
Այս է տապան Պաղօի որդի Դուր
ման Սուլթանն հանգեաւ ի Քին
1792 Մայիսի 17։
Աստ է պահեստի գանձեալ խա
Մարթին Բարգման Սուլթանի որ
դի Թարգման Գրիգոր աղայ
որ եւ հանգեաւ ի Քին. 1829
Մարտի 4ին։



Դ․ ԴԱՐԻ ԲԱՐՁՐԱՔԱՆԴԱԿ (իբր գերեզմանաքար գործածուած եւ ապա պարտէզին պատին մէջ զետեղուած)։

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՄԱ
ՆԻՍԱԾԻ ՆԱՀԱՏ̃Կ
ՍԱՄՈՒԷԼԻՆ Ջ̃Ր
ՄԵՌԱՆԳ ՀԱՒԱ
ՏՈՒՎ ԳԼԽԱՏԵԾԱՒ
ՍԱ ՈՐԴԻ Է Տ̃Ր ԵՂԵԱ
ԻՆ ՌԺՀԲ Թ̃ԻՆ
ՑՈՒԼԻՍԻ Ժ̃Ե ՕՐՆ Գ
ՇԱԲԹԻ[1]

*Այս է տապան Իզմիրցի*
*Տէր Սահակեան Ցարութ̃նի*
*Դուստրը Թագուհի խաթուն*
*որ փոխեցաւ ի մահվանէ*
*թըվին 1188 Դեկտեմբեր 29.*

---

*Այս է տապան Իզմիրցի*
*Տէր Սահակեան Ցարութ̃նի*
*որդի սահակ որ փոխե*
*ցաւ ի մահվանէ ի կեանս*
*թըվին 1189 Յունվար 17*

---

1 Նահատակիս գերեզմանաքարին վերի երկու անկեանց կողմերը խոռոչներ փորուած են։ Զմիւռնացի թէ հայ եւ թէ յոյն ժողովուրդը սովորութիւն մ'ունի, երբ ջերմէ կը բռնուի, տեղական հողէ սափոր մ'առած, գանգակատան աշտարակին տակը գտնուած ջրհորէն ջուր լեցընելով, կու գայ այն խոռոչներուն մէջ քիչ մը կը լեցընէ, կը չոքի կը խմէ քիչ մը եւ յետոյ սափորը կը զարնէ գերեզմանաքարին վրայ կը կոտրէ եւ կը դառնայ տունը։ Այսու կը յուսայ եւ կը հաւատայ թէ ջերմը զինքը կը թողու։

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ
ԵՐԵՐՆԷՑԻ[1] ՄԵՆ
ԱՅՑԱԿԱՆԻ ԿՈՂ
ԱՅԿԻՑ ՄԱՐԻԼՈԻ
ՍԻ ԵԽ ԳՈԽՍՏՐ
ԽԱՆՈԽՄԻՆ
ՈՐ ՓՈԽՑ̃Ի ԹԻՆ
ՌՃՁԹ

*Այս է տապան*
*կեսարէցի խաչ*
*երի՝ որդի մերձէմ*
*որ փոխէցւ Թին*
*ՌՃՁԹ Ուլիսի ԻԳ:*

**ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՀԱՆԳՍՏԻ**
**ԿԷՍԱՐԱՑԻ Ի ԿԷՂՋԷՆ ԹՕՄ**
**ԱՋԱՑԻ ՄԱՐԿՈՍ ՂՍՔԱ**
**ՎԵՐՈՅՉԱՆԻ Ի ՋՄԻՐՈԻՆ**
**ՀԻՍԱՐՏԻՊԻ ՆՈՐ ԽԱՆՆ**
**ՂՋԼԱՐԱՂԱՍԻ ՍԱՅ ԷՐ**
**ՀԻՄՆԱՐԿՈՂ ՂԱԼՔԱ**
**ՊԱՃԻ ՈՐ ԵԻ ՀԱՆԳԵԱԻ**
**Թ. ՌՃՂԳ ՅՈԻԼԻՍԻ Է**

---

1 Օրբէլեանի պատմութեան մէջ՝ թէ Վայոց ձոր գաւառին եւ թէ Գեղաքունի գաւառին մէջ կը յիշուին Երերունք՝ էջ 262 եւ 264 (Հտ. Բ.)։ Իսկ Վ. Հ. Ալիշան կ'ըսէ «կարծեմ թէ Հովիտ վերին Ջանախճեայ էր վիճակդ Երերունք»։ Այրարատ, էջ 442։

**ԱՅՍ Է ՏԱՊԱՆ**
**ԵՐԵԻԱՆՑԻ Ի ԳԵՂ**
**ՋԷՆ ԿԱՐԲԵՑԻ[1] ՄՀ**
**ՏԵՍԻ ՄԱՐՏԻՐՈՍԻ**
**ՈՐԴԻ ԵԻ ՈՒՄԻՆ ՈՐ ՓՈԽ**
**ԵՑԱԻ Թ ՌՃՂԸ**
**ՄՐՏԻ Ի**

*Այս է տապան*
*Ղափանի ի գեղջէն*
*Գումրեցի Պաղտասարի որդի*
*Թ. ՌՄՋ:*

* [illegible] 16

Անկայուն է մարդկան կենաք
[illegible]
[illegible]
[illegible]
[illegible]
[illegible]
[illegible]
[illegible]
[illegible]
[illegible]
[illegible]
[illegible]

---

1 Քառորդաւ ժամու կամ իբր կէս մղոնաւ հեռի յարեւմտից Յովհաննավանից՝ ի դիւր տեղւոջ կայ Կարբի, որ գրի Կարփի, դուն ուրեք Քարվի, աւանագեօղ, գլխաւոր չէն վիճակիս եւ մերձակայից եւս՝ ... յորմէ սկսաւ Կարբոյ երկիր կամ գաւառ կոչիլ մեծ մասն Արագածոտան, իսկ շրջակայքն կոչին Կարբոյ դաշտ, եւ լեռնակողմն Կարբու դարեր։ Այրարատ, էջ 177—178։

* Աստղանիշ քանդակագրութիւններն ընդունած ենք Եղիա Եսայեանէ (տես նաեւ էջ 57 եւ 80)։

Ջամբօղ մանկանց իբր դայեակ
ի հաւատոց անխոտորնակ
վարուք ընտիր ամրաքարակ
եր աա յերկրէն հոչեալ Գանձակ
որ այժմ ի հողս փանջի պահակ
առբեծո հալցուք մեղ նպատակ
շիրիմս եդեալ զմաքուր դիակ
զի զաւակս խօսեալ փոխանակ
տարփօղք վերնոյն լիցին համակ
յիշեալ աղօթիւք ընդունակ
զհոգին սուրբն մաքրափառնակ
հանգուսցիլ ընդ սրբոյն երամակ
եւ զանթառամն առնուլ պսակ։

*Թիւ փրկչին 1765

Ծնթայս վիմիս զոր ամփոփեալ
է մարմին առն սրբասընեալ
վարդապետի Տեղազոյն լեալ
պսակ անուն վերածայնեալ
երկիր սորա պարսկաստան լեալ
ծնունդ մնունդ Ջուղայ եղեալ
պարկեշտ քահանայէ սեռեալ
եւ բարի քաղաքավարեալ
աշխարհայնոց ոչ ցանկացեալ
որպէս զստուեր համարեցեալ
զոյք հայրենեաց ապախտ արարեալ
զգաստ վարուք կրօնաւորեալ
զմահազէնն ի յուս բարձեալ
եւ Կենսատուին իւր հետեւեալ
դիտի զմիւռնոյ սպասաւորեալ
Ղուկաս տեաչին մեր ծառայեալ
վեհին հրամանն սաստիկ եւեալ
որպէս աղամըն այն ծայնեալ
ուստի էիր անդրէն դարձեալ
բնութիւն մարդկան մահու զրաւեալ

*նոյնպէս եւ սա որդի եղեալ*
*շաւղաց ծնողին իւր հետեւեալ*
*մահ տարաժամ սմա դիպեալ*
*եւ ի տապանի աստ տքնեալ*
*ի Թուականի հայոց զոր եւ հիւսեալ*
*տասնեակ հարիւր քառ յիսուն լեալ*
*չորեքտասան ութ այն դասեալ*
*մայիս ամսոյն ելն աւարտեալ:*

*1768

Վէմս է ցուցակ դիոյ հատեալ
առն իմաստնոյ զոր պակասեալ
Նախիջեւան յերկրէն գովեալ՝
եւ Նախաջուր գիւղն ծնեալ
Սուրբ Կարապետն միաբան լեալ
որ Երնջակ գեր հռչակեալ
Կտակարանքն ուղիղ վարժեալ
սպանջական Փրկչին եղեալ
ենթ Յիսուսի լծոյն մտեալ
Ստեփաննոս վերաձայնեալ
չար թշնամեաց սա հալածեալ
բարձրաբերձէ ի վայր անկեալ
անդէն բոլոր անձամբ հաշմեալ
խեղ եւ թօփալ մականուանեալ.
ուստի զձայն Տեառն լուեալ
որ ասէ եկ դու աշխատեալ
յոլով զինչս իւր աստ թողեալ
միայն եւեթ առ Տէր դիմեալ
վախճան սորա ներ թուոյ լեալ
քառեակ հարիւր յերրեակ կրկնեալ
եօթտասան թիւն ընդ այնց խառնեալ
դեկտեմբերի ինն ամփոփեալ:

---

1771

ԱՅՍ Է ՄԱՊԱՆ
Ի ՋՄԻՐՅԻ
ՍԻՄՕՆ ՉԷ
ԼԷՊԻԻ ԴՈՒ
ՍՄՐ ՍՐԲՈՒ
ՀԻԻՆ ՈՐ ՓՈ
ԽԵՅԱՒ Ի

*Հոս կոփուած նոր յիշատակարան մ'աւելցուած է։*

** 1771*

*Ամրափակեալ յայսմ տըփի*
*մարմին Բարսեղ վարդապետի*
*տեղեաւ գոլով Նախջեւանցի*
*Գողթան տանէն Փառակեցի*
*ի սոյն քաղաքս Հանղիպլի*
*եւ յանանց կեանսն փոխի*
*որք Հանղիպլիք յայսմ շիրմի*
*ասէք Հայր մեր լիով սրտի*
*զայսքան քանէս աւարտ առի*
*Թուականիս Հայոց ազգի*
*մի հազարեակ երկհարիւրի*
*իննեւտասան կենաց զրաւի :*

*ոճ. յունիսի 11

Հայեցարուք անձինք երկրի
ընդ այս արձանս որ տեսանի
հողապատեան աս այս շիրմ
մարմին ան ընթերցաւորի
Տեառն Աւետիս վարդապետի
անօղ շնամս Տեառն Արարչի
էր սա երկրաւ արեւելցի
յատաւէ գեղջէն յԱստապատցի
որք հանդիպիք յայսմ գծի
տուք ողորմին լեալ որդի:

*1221 *յունիսի* 4

*գանձեալ պահի ի պահեստի*
*դի տիրացու Ստեփանոսի*
*էր միաբան մեծին գահի*
*սուրբ աթոռոյն էջմիածնի*
*աշակերտեալ մեծին դիտի*
*Տեառն Ղուկասու վարդապետի*
*քանզի խորշակ մահն դիպեալ*
*վնաս խղճոյս բազում եղեալ*
*եւ սաստ վախճան անձին հասեալ*
*ի մեր թուի որ հետեւեալ*
*հազար երկերիւր լեալ*
*եւ երկտասամբ հար լրացեալ:*

———

*Այս է տապան*
*Ղափանցի եւ ի գեղջէն*
*Կառաւեցի մՆտի Ստեփան*
*ՌՄԻԲ:*

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՇԱՇ[1]
ԿԵՏԵՑԻ ՄԱՐԴՈՍԻ
ՈՐԴԻ ՄԷԼՔՈՒՄԻՆ
ՈՐ ԵՒ ՀԱՆԳԵԱՒ ԹԻՆ
ՌՄԻԲ ՅՈՒՆԻՍԻ Դ

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ԵՐ
ԵՒԱՆՑԻ ԵՒ Ի ԳԵՂ
ՋԷՆ ԿԱՐՓԵՑԻ ՄԱՐ
ՏՈՒՄԻ ԿՈՂԱԿ̅Ց
ԿՈՒԼՈՒՄԻՆ ՀԱՆ
ԳԵԱՒ ԹԻՆ ՌՄԻԷ
ՀՈԿՏԵՄԲՐԻ Ա

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՂԱԲԱՆ[2]
ՑԻ ՊԱՐՈՆ ԳՐԻԳՈՐԻ
ԴՈՒՍՏՐ ՄԱՐԵԱՄԻՆ
ԹԻՆ ՌՄԻԷ ՅՈՒՆԻՍԻ Բ

---

1 Շաշիկէտ՝ Սիւնեաց երկոտասան գաւառաց մէջէն Կովսական Գաւառ մէջ, Օրբէլեան, էջ 271 (Հտ. Բ.)։

2 Սիւնեաց երկոտասան գաւառաց մէջէն Ճահուկ գաւառին մէջ։ Օրբէլեան էջ 272 (Հտ. Բ.)։

*Անծուկ այս վայր եւ նեղ տապան.*
*մարմնոյն միայն է կայարան.*
*զի կերպարանըն տիրա կան.*
*տուաւ յաւանդ աստուածութեան.*
*Հօվիւս այս քաջ մտօքն արթուն.*
*որում անուն պետ Ցարու թիւն.*
*ցուցաւ յայս դարս մեծ ըրաբուն.*
*եւ քարոզիչ զերիմաս տուն.*
*սք սաղիմայ նուիրակ ընտիր.*
*երկիցս եկն աստ մեզ ի խնդիր.*
*որոց էին սիրտ ըղձա լիր.*
*քաշխել առատ հոգոյն ըզձիր.*
*առ ծովեզերըն պոնտո սի.*
*ուր հռեղեստոն քաղաք ասի.*
*անդ քանաւոր տունկըս քուսի.*
*տալ հոգեւոր մեզ արգա սի.*
*փափաքելի կենաց սո րին.*
*դիպեալ ախտի մահարե · րին.*
*յորմէ բուժիլ մինչ անհնա րին.*
*եթող զվայրս զայս ըստորին.*
*եւ վերճեմեալ ի յարկն վե րին.*
*ցնծայ ի սուրբ հարսն արանին.*
*յամի Տեառն 1793 Սեպտեմբերի 16:*

Այս է տապան Երեւանցի ման
կէէ որդի Գրիգորին որ էր հան
գեաւ 1795 մարտ 20.

Ներոյ գրեաւ գրիգորի որդի
մանկէին հանգեաւ 1805
մայիսի 8.

Ներոյ գրիգորի որդի մա
տէոսի Մելքոնըն հանգեաւ
1831 մայիսի 1.

Այս է տապան Կե
րտէսցի մահտեսի
Այրեապետի ղուս
ը Սուլթանին որ
մահ տառաժամէ
եցաւ Թվն. 1249:

*Վարուց բարեաց բանատուիղ
Գէորգ պետին ուղղաշաւիղ
որ ի Սաղիմ որբոյ խաւիղ
Հոգւոյն շնորհիւ մնունդ բարի
առ Միքայէլ արհին արի
առեալ ի շուք ծոխ պարարի
յԱնդրիանու շէնն ըստ կարի
քաղցր դիմօք զուարթ փայլեալ
ի համեստ վարս գերազանցեալ
մաքուր ձրիւք զգաստ ցուցեալ
զաշխարհի փառս ունայն լքեալ
ի վախճանի իւրոյ կենաց
ուշիմ տնօրէն լեալ պիտանեաց
զքառասուն եւ չորս հասակն ամաց
կնքեալ յանանց փառս դիմեաց
ի Թուին ումկ սեպտեմբերի 21:

Յաստեղացն պարս պայծառ արուսեակ,
ի Կարնոյ ծագեալ արփիատեսակ.
տեառն աղէքսանդրի զաւակ դեռհասակ·
Յարութիւն ընտիր կարմրագեղ պսակ:
Մշակ ժրաջան ի գործ հաւատոյ.
բանսարկուին խլիչ սերմանց յարմատոյ.
ոյր ստապատիր եզանց կալոտոյ.
կզակաց փշրող զօրութեամբ ազդոյ:
Ի քաջից խումբ տասն օր հարուածեալ.
քաղցու տուայտեալ ի ճենճերս ածեալ.

*վիզոլոր զելեալ տաշտատապ խանձեալ.*
*յատրաշէկ ի թելս ընդ (զազայնս) փոլձեալ:*
*Ոտնկախ ըկեալ վշտըմբեր վըկայ.*
*խաչազգեաց զինուոր մարտիկ զերակայ.*
*անեղ սպառնալեալ արի դիմակաց.*
*խոստման պարգեւաց դերեւիչ յանկայ:*
*Արծան անծնաւոր մատեան հոգեբառ.*
*անուն յիսուսի փող մշտաքարբառ.*
*խնդրակ անծուրաց կենացն անսպառ.*
*արիւնանկերկեալ ի մահ գլխափառ:*
*Վասն որոյ խմբեալ ազգիս մեր համակ.*
*զերջանիկդ ի զով պատուեմք նահատակ.*
*Ով հոգւոյն . . . զեղուն ընդունակ.*
*լուսաթոիչ յերկնից վերճեմող բնակ.*
*յամի Տռն 1806 ի փետր. 26[1]:*

---

[1] Սպիտակահեր ծերունիները Յարութիւն նահատակին կեանքն այսպէս կը պատմեն։ Ժամանակ մը, երբ Զմիւռնիոյ կուսակալը կը նստէր Այտըն քաղաքը, եւ Զմիւռնիա ունէր իբր կառավարիչ Միւսէլլիմներ, Յարութիւն անուն երիտասարդ մը, բնիկ Կարնեցի, իւր եղբօրն հետ կը գտնուի Զմիւռնիա։ Օր մը Ենիչէրիներու խումբ մը՝ իրենց դրօշը պարզած, տեղական սովորութեան համաձայն փողով եւ թմբկով (տավուլ զուռնա) գինետան մ'առջեւէն անցած ատեննին, Յարութիւն որ իւր եօթն ընկերներով հոն կը գտնուի եղեր, կէս մը արբեալ վիճակի մէջ, տեղէն դուրս ելլելով կը միանայ Ենիչէրիներուն խմբին հետ։ Ասոնք կը տանին զինքը Ճէզայիր անուանեալ խանին մէջ եւ կը թողուն հոն։ Յարութիւն առաւօտեան դէմ սթափած, ինչպէս հոն եկած ըլլալուն վրայ կը զարմանայ եւ հետեւութիւնը խորհելով, կերպով մը փախուստ կու տայ Օտուն փազար անուանեալ շուկան, Սափրիչ Հաճի Գէորգին խանութը։ Ժամանակին Ապրօեան ընտանիքը՝ նշանաւոր եւ յամենայնի ազդեցութիւն ունեցող, տեսնելով որ Յարութիւն այլ եւս հանգիստ պիտի չկարենայ գտնել, գիշեր ատեն գաղղիական նաւու մը վրայ տանիլ կու տայ։ Յարութիւն նաւուն վրայ խորհելով որ իւր ընկերներն իրեն համար նեղութիւն պիտի կրեն, կ'որոշէ ցամաք ելլել եւ երթալ թողութիւն խնդրել, ուստի իսկոյն ծովը կը նետուի եւ լողալով կը հասնի ցա-

7*

Դամբարան
Հեղինակի ոսկեղարու
Զքոյդ երգել ո՛ որ ննջեադ
Յուր զքո գրիչ ի նուագ
Մատիցէ որ անկարողն է
զլուտ արժանւոյն ձօնել յարգ:
Ո՞չ են ընդ այս տարակոյս ինչ
Էր ոչ մնաց երաշխէպ
զի որ արդիւնք են քո ընտիր
լիցին ստոյգ քանակէպ:
Պերճ այդ արձան ընդ քոց շնորհաց
Մեծ տէր Յովհան Միրզաեան
առագերէց եւ վարժապետ
նշոյլ ազգիս արամեան:
Թէ քո անուն յաւելուն փառս
սահայն եւ այնք անձաւոր

մաք։ Սակայն այս անգամ հաստատուն իւր հաւատքին վրայ, երբ ձեռք կ՚իյնայ՝ անվախ կը խոստովանի իւր քրիստոնէութիւնը, որուն համար անլուր տանջանքներու կ՚ենթարկուի։ Բայց երբ նա բնաւ չի լքանիր եւ չի վհատիր իւր կրօնքը խոստովանելէ, ի վերջոյ Ենիչէրիները կը տանին զինքը եւ Հիսար անուանեալ մզկիթին առջեւ կը գլխատեն։ Յառաջ քան իւր մահը, Յարութիւն կը խնդրէ որ իւր ճկոյթին մէկ ոսկրը խրկեն երկիրը իւր ծնողաց՝ իբր յիշատակ, զոր եւ կը կատարէ եղբայրն։ Գլխատումէն յետոյ ժամանակին Միւսէլլիմը, բնիկ Կարնեցի, լսելով որ Յարութիւն եւս Կարնեցի էր, հրաման կու տայ մարմինը վերցընելու, որուն վրայ Հայք կու գան եւ կը տանին կը թաղեն Ս. Ստեփանոսի պարտէզը։ Ժողովուրդը սովորութիւն ունի երբեմն երբեմն իւր գերեզմանին վրայ իւղալից լապտեր վառելու եւ աղօթքներ ընելու։

*զի քեզ յերկինս պատրաստեալ կան*
*քոց վաստակոց տրիտուր.*
*ծնեալ յամի տեառն 1772*
*վախճանեալ յ3ն փետրվր*
*1840:*

ICI REPOSE
PIERRE JOUSSOUFF
BANQUIER ET AGENT
DU
VICE ROI D'EGIPTE
A
TRIESTE
NÉ A SMYRNE
EN 1780
DÉCÉDÉ
A GORITZ
LE 10 AOUT
1846.

ԱՅՍ ՀԱՆԳՉԻ ՄԱՐՄԻՆ
ՊԵՏՐՈՍԻ ԵՈՒՍՈՒՓԵԱՆՑ
ՄԵԾԱՆՈՒՆ ՍԵՂԱՆԱՒՈՐԻ
ԵՒ
ԳՈՐԾԱԿԱԼԻ ՓՈԽԱՐՔԱՅԻՆ
ԵԳԻՊՏՈՍԻ Ի ԹՐԵՍՏ
ԾՆԵԱԼ Ի ԶՄԻՒՌՆԻԱ Ի 1780
ԵՒ ՀԱՆԳՈՒՑԵԱԼ
Ի ԿՕՐԻՑԱ
Ի 10 ՕԳՈՍՏՈՍԻ 1846




ՇԻՐԻՄ ՊԵՏՐՈՍԻ ԵՈՒՍՈՒՓԵԱՆՑ։

Ի շիրմի աստ հանգ-
չի մարմին Միքայէլ
Չէլէպի դեմրոս Հարդա-
դեան որդի մահտեսի
պարոնանցն է հասա-
կի ութսնամեան և-
հինգ ամաց որ փոխե-
ցաւ է Քս յամի 1852
Ապրիլ 27։

Դամբարան ծերունա-
զարդ Յօհաննէս Հայր
դադեան պարոնեան
ցայ որ հանգեաւ
ի տէր 1855 Յունիս 1։

*Ոսկերքն*
*Սարգսեան*
*Փափազեան*
*Բարեշխան տեսչի*
*եւ*
*բազմարդիւն*
*վարժապետի*
*Ս. Մեսրոպեան*
*վարժարանին*
*Զմիւռնիոյ*
*զոր ծաղկեցոյց*
*զամս քսան եւ վեց*
*Կանգնեցին*
*զայս Մահարձան*
*աշակերտք իւր*
*շնորհապարտք*
*ծնեալ ի 11 Ապրիլի 1806*
*փոխեալ յաստեացս ի 6 Մարտի 1857։*

Դամբարանիս յանձուկ ծոց
Ննջէ ըղձքուն արդարոյ,
Պերճ Խաչատուր Ղազարեան
Անդամ ազգիս պատուական։
Պանծայ Թալու ի փառս իւր
Առնս մեծի խանձարուր,
Այլ առաւել Զմիւռին
Ասպնջականըն նորին.
Վաճառական մեծանուն
Արդարասէր եւ արթուն
Թարեպաշտօն երկիւղած,
Գոյիւքըն չափ ողորմած.
Զի ըղկալուածսն հոյակապ
Եկեղեցւոյ թող ի կտակ։
Որ մերձ ի մուտս արեւոյն
Ընդ տեսչութեամբն ինքնուրոյն
Ետ զարդարել զայս տաճար,
Ի ծեփս ի ներկըս ճարտար։
Այսպէս վառեալ արծարծուն
Ոչ զհիմենեան այլ զհոգւոյն.
Զահ իւղալից լուսափայլ
Եւ յալեւոյթ իւր յեցեալ,
Ի տիսն երրեակ քսան եւ հինգ
Թարձին ի մէնջ գնա երկինք
յամի Տեառն 1857
Հոկտեմբերի 29։

Հայր Տէր աւանդե-
էիւ հանճէ ցէ յօգուտ
յար շնոր նմանէայս
հեւ էնչ

*Դամբարան*
*Տէր Մարգար Քահանայ*
*Միրզայեան վանանդեցւոյ։*
*Գոլով խորահմուտ հայերէնա-*
*գէտ եւ քերթող յընթացս ամբողջ*
*կենացն վարեալ զպաշտօն բարձ-*
*րագոյն Դաստիրակի ճեմարանին*
*Իւսկիտարու Կ. Պոլսոյ, եւ Մէսրոպեան*
*եւ Հռիփսիմեան վարժարանաց Զմիւռ-*
*նիոյ, եւ իւր քառեակ ամս սպասաւո-*
*րելով Ս. Սեղանոյն կոչեցաւ առ Աստուած*
*ի 23 Փետրվարի 1861*
*ի հասակին 58 ամաց։*

Դամբարան
Բարեկրօն Յօ
հաննէս վար
դապետ Երզն
կացայ որ հան
գեաւ ի Քս 1869
Փետրվար 26։

---

# ԳԼՈՒԽ ՈՒԹԵՐՈՐԴ

*Առաջնորդարան, ազգային վարչական կազմակերպութիւն եւ առաջնորդք:*

Ա. Ազգային հիմնարկութեանց մէջ առաջին եւ կարեւոր տեղին կը բռնէ առաջնորդարանը։ Ժողովրդեան նիւթական եւ բարոյական զարգացման կեդրոն մ'անհրաժեշտ է, ուր հասարակութեան գլուխն իր ժողովրդեան ներկայացուցիչներուն հետ ի մի գալով՝ կարեւորն ու պիտանին խորհի, յառաջադիմութեան միջոցներ ծնանի եւ ժողովրդեան իրաւանց անխտիր վրէժխնդիր հանդիսանայ։ Շնորհիւ առատաձեռն բարերարաց՝ ունի Զմիւռնիացին գեղեցիկ առաջնորդարան մը, եկեղեցւոյ պարտէզին արեւմտեան անկեան վրայ։ Շէնքն է քառուկիր, կրկին յարկով. առաջին կամ գետնայարկն՝ որ գաւիթը կը ձեւացնէ, մարմարին քարերով յատակուած է. երկրորդ յարկը հանող սանդուխին առաջին դարձուածին վրայ կը գտնուի սրահ մը, դիւանատան կարեւոր բաժանումներով, իսկ երկրորդ յարկին վրայ կը տեսնուին ընդարձակ սրահ մը, կրկին ժողովատեղի, առաջնորդի սեպհական խուցը եւ կարեւոր բաժանումներ։ Առաջնորդարանս շինուած է 1858ին (ինչպէս դրան ճակատը գրուած է ՌՅԷ = 1858), արդեամբ Բալուցի Ղազերեան Խաչատուրի[1]։

Հոս կը կատարուին եւ կը կարգադրուին Զմիւռնիոյ Հայոց կրօնական, քաղաքական, կրթական ու ազգային զանազան հաստատութիւններու վերաբերեալ գործերն ու ամէն խնդիրները[2]։ Երեսուն քառասուն տարի յառաջ՝ երբ տակաւին "Սահմանադրութիւնը" գոյութիւն չունէր, ինչպէս ու-

---

1 Տես նաեւ իր շիրմին յիշատակարանը, էջ 104։

2 Ազգային վարչական կազմակերպութեան նկատմամբ՝ ինչ ինչ գրաւոր տեղեկութիւններ մեզ հաղորդած է Տէր Խաչատուր Քհ. Տէր Վարդանեան։

րիշ տեղեր, նոյնպէս Զմիւռնիոյ Հայ ժողովուրդը Ամիրաներու իշխանութեան ներքեւ՝ ըստ կամի կը կառավարուէր, որոնցմէ ոմանք իրենց բարուց քաղցրութեամբ լաւ անուն թողած են ժողովըր֊դեան մէջ, իսկ ոմանք ալ իրենց բռնական միջոց֊ներովը ժողովրդեան վրայ բռնանալով՝ տխուր յիշատակներ թողուցած են։ Սակայն այսօրս Սահ֊մանադրութեան շնորհիւ՝ ամէն ազգային անհատ կերպով մը, ուղղակի կամ անուղղակի՝ կրնայ մաս֊նակցիլ ազգային վարչական գործոց։ Թէպէտեւ տասնեակ տարիներ յառաջ Զմիւռնիոյ մէջ եւս սահմանադրական եւ հակասահմանադրական կու֊սակցութիւններն բաւական իրենց դերը խաղացած են, բայց տարիներէ ի վեր մարած են այս մասին եղած կողմնակցութիւնները. այժմ Սահմանա֊դրական օրինաց համեմատ կը կառավարուի ժողո֊վուրդը։

Իւրաքանչիւր անհատ առ Ազգն պարտաւո֊րութիւններ եւ իրաւունքներ ունի, նոյնպէս փոխա֊դարձաբար Ազգն ալ՝ առ ազգայինս պարտաւորու֊թիւններ եւ իրաւունքներ ունի. եւ այսպէս Ազգն ու ազգայինք, անհատն ամբողջին հետ կապուած է փոխադարձ պարտեօք։ Ազգայնոց պարտականու֊թիւնն է Ազգին նիւթական պիտոյիցն ու խնդրած ծառայութեանց՝ ըստ իւրեանց կարողութեան մասնակցիլ եւ գլխաւորաբար ըրած տնօրէնու֊թեանց հնազանդիլ։ Ազգին պարտականութիւնն է ազգայնոց բարոյական, մտաւորական եւ նիւթա֊կան պիտոյից հոգ տանիլ, ազգային հաստատու֊թիւնները պայծառացընել, հասոյթներու զանա֊զան աղբիւրներ ստեղծել եւ ծախքերն իմաստու֊թեամբ մատակարարել. միով բանիւ ազգային յառաջադիմութեան անձանձիր աշխատիլ։ Ազգը ներկայացընող եւ այս փոխադարձ պարտեաց կա֊նոնաւոր կատարման իբր տեսուչ եւ մատակարար կարգեալ իշխանութիւնը կը կոչուի "Ազգային

Վարչութիւն„ որուն յանձնուած է՝ Օսմանեան Տէրութեան առանձին արտօնութեամբ եւ Սահմանադրութեան միջոցաւ՝ Տաճկաստանի Հայոց ներքին գործոց տնօրէնութիւնը։ Ազգային Վարչութիւնն ունի այլ եւ այլ ժողովներ Գաւառական, Երեսփոխանական, Կրօնական, Քաղաքական, Ուսումնական, Տնտեսական, Դատաստանական եւ այլ եւ այլ հաստատութեանց Հոգաբարձուներ։

Բ. Երեսփոխանական ժողովքը կ'ընտրուի ժողովրդեան կողմէ քուէի առաւելութեամբ եւ կը կազմուի երեսունուհինգ անդամներէ, ասոնցմէ հինգը տեղացի կրօնականներէն կ'ընտրուին, քսանը բուն Զմիւռնիոյ ազգայնոց կողմանէ, եւ տասը՝ շրջակայ գաւառներու կողմանէ։ Ժողովս ունի իւր յատուկ դիւանը, ատենապետ, փոխ-ատենապետ, ատենադպիր, փոխ-ատենադպիր մը. իսկ ամէն ժողովներու եւ խորհուրդներու նախագահն է Առաջնորդը։ Խնդիրներն ըստ Սահմանադրութեան՝ կը լուծուին քուէից առաւելութեամբ։ Ժողովիս պաշտօնն է՝ վիճակին առաջնորդն ընտրել, ազգային արկեղ տարեկան ելեւմտացոյցը պատրաստել, վիճակին կարեւոր գործքերը հոգալ, եւ այլ եւ այլ ժողովոց անդամներն ընտրել։ Պաշտօնավարութեան շրջանն է տասը տարի։

Գ. Կրօնական ժողովը կը կազմուի հինգ եկեղեցականներէ, որոնք կ'ընտրուին Երեսփոխանական ժողովի մէջ գաղտնի քուէարկութեամբ, եւ ըստ 26երորդ յօդուածի կրնան պաշտօնավարել երկու երեք տարի։ Ժողովիս անդամները վերընտրելի չեն; բայց եթէ երկու տարուան շրջան անցնելէ ետքը։ Կրօնական ժողովոյ պաշտօնն է ազգային կրօնական գործառնութեանց ընդհանուր տեսչութիւնը, եւ ի մասնաւորի իւր պարտաւորութիւնն է՝ ազգին մէջ կրօնական զգացումը զարգացընել, եկեղեցեաց եւ եկեղեցականաց ներքին բարեկարգութեանց հսկել, Զմիւռնիոյ պատկանող շրջակայ

թեմերուն օրինաւոր քահանայ կարգել. ազգին մէջ ծագած կրօնական վէճերը քննելով ըստ եկեղեցական օրինաց խնդիրները լուծել եւ կարգադրել. Նմանապէս քահանայի ձեռնադրութեան պէտք եղած հրամանը կը տրուի կրօնական ժողովէն, նոյնպէս իրեն կը վերաբերի քահանայից տեղափոխութիւնը, անոնց պաշտօն տալը, ժողովրդեան եւ քահանայի մէջ ծագած խնդիրները կարգադրելը: Իւր որոշումները ճշդիւ կ'արձանագրուին՝ ատենապետի եւ ատենադպրի ստորագրութեամբ:

Դ. Քաղաքական ժողովը կը կազմուի եօթն հոգիէ, ազգային գործոց եւ տէրութեան օրինաց տեղեակ աշխարհականներէ: Ժողովոյս անդամները կ'ընտրուին Ազգային ընդհանուր ժողովոյ մէջ՝ քուէից բացարձակ առաւելութեամբ՝ երկու տարին անգամ մը: Քաղաքական ժողովոյ պաշտօնն է՝ ազգային քաղաքական գործոց ընդհանուր տեսչութիւնը: Իւր պարտաւորութիւնն է ազգային բարեկարգութեանց եւ յառաջադիմութեան փոյթ տանիլ, իւր վերին հսկողութեան տակ գտնուող խորհրդոց կողմանէ մատուցուած ազգօգուտ առաջարկութիւնները քննել, անոնց կարեւորութեան հասու ըլլալէ ետքը՝ զանոնք հաստատել եւ կամ գործադրութեան արգելքները բառնալու ջանք ընել: Քաղաքական ժողովս՝ իրեն եկած գործքերը կը յանձնէ այն խորհրդոյ, որուն կը պատկանի գործքը եւ առանց անոր կարծեաց գործք մը գործադրել չի փութար: Քաղաքական ժողովը չի կրնար փոխել կամ լուծել ազգային խորհուրդներէն մին, քանի որ Սահմանադրութեան հիմնական սկզբանց հակառակ ընթացք մը չի տեսներ, հակառակ պարագային՝ առաջին անգամ նոյն խորհրդոց ատենապետէն բացատրութիւն կ'ուզէ, երկրորդ անգամին անոր գրով կ'ազդարարէ, իսկ երրորդին կը փոխէ անդամները, միայն թէ այս

մասին ունեցած պատճառները պիտի բացատրէ ընդհանուր ժողովոյ ներկայացընելու երկամեայ տեղեկագրին մէջ։ Ժողովս երբ իրեն եկած քաղաքական գործերու՝ կարեւոր խնդրոց լուծումն իր ձեռնհասութենէ վեր դատէ, կը դիմէ Ընդհ. Ժողովոյ։

Քաղաքական ժողովոյ կողմանէ կազմեալ ազգային խորհուրդք եւ Հոգաբարձութիւնն են Ուսումնական, Տնտեսական, Դատաստանական խորհուրդները եւ Հիւանդանոցի Հոգաբարձութիւնը։

Ե. Ուսումնական խորհուրդը կը բաղկանայ հինգ — եօթն աշխարհականներէ. խորհրդոյս պաշտօնն է ազգին ապագայ սերունդին դաստիարակութեան եւ կրթութեան ընդհանուր տեսչութիւնն, ուղղակի կամ անուղղակի թէ տեղւոյն եւ թէ շրջակայ թեմերու վարժարանաց խնամակալութիւնը. եւ ի մասնաւորի իւր պարտքն է վարժարանաց բարեկարգութեան վրայ հսկել, դպրոցի կացութիւնը բարւոքել եւ ապագան նախանձելի ընելու հոգ տանիլ. քաջ եւ հմուտ տեսուչ, ուսուցիչներ եւ վարժուհիներ կարգելու փոյթ ունենալ։ Ուսումնական խորհուրդս վարժարանի ներքին տեսչին հետ խորհրդակցելով՝ ուսմանց դասագրքերը կ'որոշէ, տարեկան քննութիւնները կը կատարէ, ուսումնաւարտ աշակերտաց վկայական կու տայ։ Իսկ կրօնի ուսմանց գրքերն ինչպէս նաեւ կրօնի դասատուները կ'ընտրէ Կրօնական Ժողովը։

Զ. Տնտեսական խորհուրդը կը բաղկանայ հինգ — եօթն տնտեսագէտ աշխարհականներէ, որոնց պաշտօնն է ազգային բոլոր հաստատութեանց եւ կալուածոց, եւ անոնց եկամտից ընդհանուր տեսչութիւնը։ Իւր պարտքն է հսկել ազգային կալուածոց անկորուստ պահպանութեան։ Ազգային որ եւ իցէ ստացուածոց վաճառումը կամ գնումը չի կրնար տեղի ունենալ առանց տնտեսական խոր-

հըրդոյ գիտութեան, քաղաքական Ժողովոյ հաճութեան եւ Նախագահին՝ Առաջնորդին՝ հաւանութեան։ Տնտեսական Խորհուրդն որ եւ իցէ նորոգութիւն կամ շինութիւն քաղաքականին հաճութեամբ կը կարգադրէ։ Հիւանդանոցի Հոգաբարձութեան եւ եկեղեցապաններու վրայ աչալուրջ հսկողութիւն ընելով եւ անոնցմէ համար պահանջելով՝ կը ներկայացընէ Քաղաքական Ժողովոյ. միով բանիւ ազգային ելեւմտից պատասխանատուութիւնն իւր վրան է։

Է. Դատաստանական Ժողովը կը բաղկանայ հինգ անդամներէ, երկու կրօնական եւ երեք իրաւագէտ աշխարհականներէ, որոնք կ'ընտրուին Խառն Ժողովոյ (Քաղաքական եւ Կրօնական) կողմանէ՝ քուէից առաւելութեամբ։ Ժողովոյս պաշտօնն է ազգայնոց մէջ ծագած ամուսնական, ընտանեկան եւ կտակային խնդիրները քննել եւ լուծել։ Եթէ պատահի այնպիսի խնդիր մը որ Դատաստանական Ժողովն իւր ձեռնհասութենէն վեր տեսնէ, այն ժամանակ ըստ որպիսութեան խնդրոյն՝ կամ քաղաքականին եւ կամ կրօնական Ժողովոյ կը յանձնէ։ Եթէ դատաստանական խորհրդոյ մէջ վճռուած դատի մը դէմ բողոքուի, խնդիրը վերստին կը քննուի՝ Քաղաքական կամ Կրօնական Ժողովոյ մէջ՝ ըստ որպիսութեան խնդրոյն։

Ը. Հիւանդանոցի Հոգաբարձութիւնը կը բաղկանայ հինգ կամ աւելի անդամներէ, որոնցմէ մին պիտի ըլլայ բժիշկ եւ զորոնք կ'ընտրէ Քաղաքական Ժողովը քուէից առաւելութեամբ։ Հոգաբարձութեանս պաշտօնն է Հիւանդանոցի եւ անոր կալուածոց հոգատարութիւնն ու ելեւմտից խնամքը։ Այս հաստատութիւնը չորս շրջանակի բաժնուած է, 1. աղքատ հիւանդներ դարմանել, 2. ծեր անկար աղքատները պատսպարել, 3. յիմարներն ու խելագարները խնամել եւ 4. Թոշակաւոր հիւանդներ ընդունիլ։ Հիւանդանոցի Հոգաբարձութիւնը՝ հաս-

տատութեանս տնտեսական մասին՝ Տնտեսական խորհրդոյ պատասխանատու է, եւ որոշեալ ժամանակին իւր ամէն գործողութեանց համարը տալու պարտական է։

Ասոնցմէ զատ կան Եկեղեցպաններ, որոնց պաշտօնն է եկեղեցւոյ բարեզարդութեանց վրայ հսկել, եկեղեցւոյ հասոյթները գանձել, կարեւոր ծախքերն ընել եւ ամնէ ամիս հաշուեկշիռն՝ աւելցած դրամով՝ Տնտեսականին յանձնել։ Եկեղեցպանները կը բաղկանան երեք կամ հինգ վստահելի անձինքներէ, որոնք կ'ընտրուին Տնտեսական խորհրդոյ կողմանէ առանց քուէի, եւ որոնք կրնան պաշտօնավարել երեք կամ չորս տարի։

Թ. Ինչպէս վերը յիշեցինք՝ Ազգային վարչութեան եւ ազգային ժողովոյ Նախագահն Առաջնորդն է. ժողովրդեան մը յառաջադիմութեան թեւ եւ թիկունք եղողն է իւր գլուխը։ Ընդհանուր ազգին վստահութեան եւ յարգանացն արժանի անձ մը առաջնորդութեան պաշտօնին կոչելը՝ ժողովրդեան պատիւը բարձրացընել ըսել է։ Այս ընտրութիւնը կը կատարուի ընդհանուր ժողովոյ մէջ, յորում կրօնական եւ քաղաքական խորհրդոյ անդամներն, ընտրելեաց վրայ իրենց կարծիքը յայտնելու իրաւունք ունին։ Վերջապէս ընդհանուր ժողովը գաղտնի քուէարկութեամբ եւ քուէից բացարձակ առաւելութեամբ կ'ընտրէ Առաջնորդն եւ եաքը ժողովականաց ստորագրութեամբ իւր տեղեկագիրը կը ղրկէ Պատրիարքարան եւ կը հաստատուի Առաջնորդն ըստ վաղեմի սովորութեան՝ կայսերական հրովարտակով։

Առաջնորդն որ կրնայ վարդապետ կամ Եպիսկոպոս, Արքեպիսկոպոս ըլլալ, բովանդակ վիճակին Հայոց վրայ ունի կրօնական իշխանութիւն. սակայն Առաջնորդն ինքնուրոյն ոչ ինչ կարող է գործել, այլ վերոյիշեալ ժողովներու խորհրդակցութեամբ կը կարգադրէ վիճակին գործերը, ըստ

հետեւորդի իրեն եկած խնդիրները կը յանձնէ այս կամ այն ժողովոյ՝ քննութեան եւ որոշման։ Ուստի իւր իշխանութիւնը սահմանադրական է եւ Սահմանադրութեան գծած օրինաց համաձայն պիտի կառավարէ իւր հօտը։ Ի մասնաւորի իւր գլխաւոր պարտքն է իրեն յանձնուած հօտին, թեմերուն այցելել, եկեղեցեաց բարեկարգութեան, դպրոցներու յառաջադիմութեան, ժողովրդեան հանգստութեան վրայ հսկել, նիւթական եւ բարոյական բարգաւաճմանց անդուլ եւ աշալուրջ խնամք ունենալ։ Առաջնորդին ծախքերը կը հոգայ ազգային արկղը, մասնաւոր ամսական մը վճարելով անոր։

Զմիւռնիոյ վիճակը չէ կրցած վայելել միշտ քաջ հովիւներու հայրական խնամքը. մատով կը ցուցուին մէկ երկու առաջնորդներ, որոնք ընդհանուրին սէրն ու համակրանքը վաստըկած են։ Երբեմն ամիսներով դատարկ մնացած է առաջնորդական աթոռն, երբեմն տարիներով թեմն առաջնորդի երես տեսած չէ։ Ունեցած է ժամանակ ժամանակ այցելու հովիւներ եւ տեղապահներ, որոնք արդիւնք մը չեն ունեցած։ Առաջնորդաց կարգաւորեալ ցանկ մը անհնարին է յօրինել. հազիւ անցեալ դարուն վերջերը կը յիշուին մէկ երկու այցելու եպիսկոպոսներ եւ դարուս քառորդէն սկսեալ յաջորդաբար առաջնորդաց անուններու կը հանդիպինք։ Գերեզմանաքարերը կը ցուցընեն քանի մը քահանայից եւ վարդապետաց անուններն, որոնք Զմիւռնիոյ ժողովրդեան հետ ապրած են. ասոնց մէջ կը տեսնուի շիրիմ մը որ կը պատմէ թէ Յարութիւն եպիսկոպոս՝ Նուիրակ Սաղիմայ երկիցս եկած է Զմիւռնիա եւ 1793 հոս վախճանած (տես էջ 97)։

Սիւնեաց արքեպիսկոպոսն՝ Տէր Մարտիրոս 1800ին կու գայ Զմիւռնիա եւ տարի մը յետոյ կը դառնայ իւր տեղը[1]։

---

1 "Տէր Մարտիրոս՝ սրբազան արքեպիսկոպոս Սիւ-

1825ի միջոցները՝ Զմիւռնիա իբր Թեմ Էջմիածնի նկատուելով՝ Էջմիածնի կողմանէ առաջնորդ կը կարգուի Ենովքեան Ստեփան եպիսկոպոսը։ Քիչ մը ետքը՝ Ռուսաց եւ Թուրքիոյ մէջ ծագած պատերազմին պատճառաւ եւ քաղաքական բերմամբ, երբ Զմիւռնիա կ՚անցնի Կ. Պոլսոյ պատրիարքութեան իրաւասութեան ներքեւ՝ Զմիւռնիոյ Առաջնորդ կը կարգուի Աղաւնի Ստեփան Եպիսկոպոս։ Քանի մը տարի ետքն՝ իբր առաջնորդ կը գտնենք Երուսաղեմայ պատրիարքը՝ Գաբրիէլ Եպիսկոպոս (1830)։ Ասոր կը յաջորդէ Թադէոս, որ իւր առաջնորդական թեմերուն այցելութեան ելած ատեն կը վախճանի ի Սէօքէ (1837)։ Տարի մ՚ետքն առաջնորդական աթոռը նստած կը գտնենք զՊօղոս Թագթագեան (1838)։ Թագթագեան 40 տարիի չափ Զմիւռնիոյ վիճակին առաջնորդութեան պաշտօնը կը կատարէ. 1839ին Էջմիածին երթալով՝ Զմիւռնիոյ վիճակին Եպիսկոպոս ձեռնադրուած կը դառնայ իւր տեղը։ Երկու տարի

---

նեաց, այր զգօն, զուարթամիտ եւ երեւելի, ծանօթ թագաւորաց եւ իշխանաց եւ նախարարաց Ռուսաց եւ Պարսից գոլով. տեղեաւ ի գեղջէն Տաթեւացի, որդի Միրզէնց Տէր Յակոբ քահանայի, որ ի մանկական հասակի աստ ի սուրբ աթոռս Ստաթէի սնեալ եւ վարժեալ, յետոյ ի գալ աղայ Մահմատ խանին, ի 1245 թուին Հայոց, ընդ նախայիշեալ Յովակիմ սրբազան արքեպիսկոպոսին եւ ընդ Տաթեւու գիւղացւոցն գնաց ի Նախիջեւան, եւ անտի ի սուրբ աթոռն Էջմիածնի. անտի եւս ընդ Տէր Յակոբ քահանային՝ հօրն իւրոյ, գնաց ի Զմիւռին քաղաք ըստ որում բնակիչք երկրիս յառաջմէ անդ էին գնացեալ։ Եւ կեցեալ անդանօր ամի մի եւ երկու ամիս. եւ զկնի մահուան հոգելոյս Տէր Յակոբ քահանային սա վերադառնայ ի սուրբ աթոռն Էջմիածին . . .։„

Շարակարգութիւն եպիսկոպոսաց Սիւնեաց արարեալ ի միաբանից Տաթեւոյ Վանաց։

Ստեփանոս Օրբէլեան. հրտ. Կ. Վ. Շահնազարեան. Փարիզ 1859։

ետքն Արմաշ եւ Գաղատիա կ'երթայ զանազան պաշտօններով։ Այն միջոցին (1842—1845) Զմիւռնիոյ վրայ իբր առաջնորդ կը տեսնենք զՄատթէոս, որուն պատրիարքութեան կոչուելէն ետքը, ժողովրդեան խնդրանօք Թագթագեան վերստին կը դառնայ Զմիւռնիա։ Ութ տարի սահելէն անցնելէն ետքը՝ 1863ին Նոյեմ. մէջ պատրիարքութեան վիճակը կ'իյնայ Թագթագեանի, սա պահելով իրեն Զմիւռնիոյ առաջնորդութեան իրաւունքը կը մեկնի Կ. Պոլիս եւ վեց տարուան չափ փոխ-առաջնորդներ կը ղրկէ իւր տեղն. ասոնց մէջ կը յիշուին Յակոբոս Վ. Չիլինկիրեան, Գէորգ Վ. Ա. Արմաշու վանքէն եւ Կարապետ Վ. Ալէքսանեան՝ Կեսարացի։ Թագթագեան վեց տարի պատրիարքութեան պաշտօնը կատարելէ ետքը՝ կը հրաժարի եւ կը դառնայ իւր սեպհական Աթոռը Զմիւռնիա, ուր կը վախճանի 1872 Սեպտեմբեր 9ին[1]։ Թագթագեանի մահուընէն ետքը Զմիւռնիոյ առաջնորդ կ'ընտրուի Խորէն Եպիսկ. Նարպէյ, որ իսկոյն կը հրաժարի այս պաշտօնէն (1873 Մարտ.)։ Մէկ տարուան համար իբր տեղապահ Զմիւռնիոյ վիճակին կը դրուի Յ. Եպիսկոպոս Եդեսեան, Ամասիոյ Առաջնորդը, որ 1873 Դեկ. վերջերը դատարկ թողլով աթոռը կը մեկնի Կ. Պոլիս։ 1877 Յուն. 19ին Մելքիսեդեկ Վարդ. Մուրատեանց կ'ընտրուի առաջնորդ Զմիւռնիոյ վիճակին։ Առաջնորդական սոյն պաշտօնին կոչուելէն երկու տարի ետքը՝ Մուրատեանց Էջմիածին երթալով՝ Եպիսկոպոս կը ձեռնադրուի եւ կը դառնայ Զմիւռնիա (1879 ապր.) եւ մինչեւ 1888 առաջնորդական պաշտօնը կատարելէ ետքը կը հրաժարի եւ թողլով Զմիւռնիան կը դառնայ Կ. Պոլիս։ Մելքիսեդեկի կը յաջորդէ Այվազեան, իբր Պատրիարքական փոխանորդ, որուն կը յաջորդէ

[1] Տեսանել իւր մահարձանին գրութիւնը՝ էջ 53—54. եւ Արշալոյս Արարատեանի 1872, Սեպտ. 23, թիւ 945։

*Ներսէս Վրդ. Արսլանեան* (1891)։ *Մինչեւ* 1898*ի սկիզբները զԱրսլանեան կը գտնենք Զմիւռնիոյ առաջնորդական աթոռին վրայ. իրեն սոյն տարւոյ մէջ Կ.Պոլիս մեկնելէն ետքը, ուսկից պիտի մեկնէր Էջմիածին եպիսկոպոս ձեռնադրուելու, ժողովուրդը տժգոհ անոր պաշտօնավարութենէն՝ չուզեց որ Արսլանեան այլ եւս վերադառնայ Զմիւռնիա, որով առաջնորդական աթոռը մնաց դատարկ. իբր Տեղապահ Առաջնորդի կը տեսնենք Տէր Յովհաննէս Քահ. Մինասեանը, որ մինչեւ ցայսօր կը գործէ սոյն տիտղոսով։*

*Մինչեւ ցայս վայր յիշուած առաջնորդներէն՝ ամէնէն աւելի գործունեայ կեանք ունեցած են Թագթագեան եւ Մուրատեանց, ասոնց ժամանակ հաստատուած են բարեգործական եւ կրթական հիմնարկութեանց շատերը. ժողովուրդը միշտ գոհ մնացած է ասոնցմէ, եւ այսօր կը սպասէ այսպիսի գործունեայ Առաջնորդի մ՚ընտրութեան։*

---

## ԳԼՈՒԽ ԻՆՆԵՐՈՐԴ

*Ս. Մեսրոպեան Վարժարան: Առաջին շէնքը, տեսուչները, վարժարանին յոբելեանը, երկրորդ շէնքը, Թանգարանը, Նորաշէն վարժարանիս տեսուչները, գլխաւոր դասատուները, վերջին տարւոյ ուսմանց ծրագիրը:*

*Ը. Զմիւռնացի Հայք ի սկզբան անդ իրենց գաղթականութեան յափունս Յոնիական ծովու, այնչափ փոյթ եւ խնամք չեն ունեցած դպրոցներ կանգնելու, կամ լաւ եւս ըսենք՝ իրենց ապագայ սերունդը կրթելու։ Օտար երկրի վրայ՝ նիւթական վիճակնին բարւոքելու, իրենց գոյութիւնը ապահովելու հետամուտ ըլլալով՝ կրթութեան ամենակարեւոր կէտը բարձի թողի ըրած էին. չենք կրնար զիրենք մեղադրել, ժամանակն անգամ անտարբեր էր կրթութեան։ Ունէին անտարակոյս*

իրենց տնական վարժոցները, բայց հասարակաց վայր մը, վարժարան անունով՝ ընդհանուրին համար շէնք մը՝ հազիւ անցեալ դարու վերջերն եղած կը յիշուի։ Ապրօեան ընտանիքը՝ այժմու







ՅԱՏԱԿԱԳԻԾ ՄԽԻԹԱՐԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ
Ա. յարկ։
Բ. յարկ։

վարժարանի տեղւոյն վրայ գտնուած եւ իրեն սեպհական փայտաշէն մեկ տունը կը նուիրէ ազգին, որուն փոքրիկ սրահներուն մէջ կը հաւաքուին մանկունք՝ կարդալ գրել սորվելու։

Ցգիտութեան հարուած մը տուող եւ ազգը լուսաւորող Ս. Մեսրոպայ երից օրհնեալ անմոռաց անունը կը տրուի այս առաջին վարժարանին

եւ կը յանձնուին անոր հովանւոյն շէնքն ու մանկտին 1799ին։ Կ'անցնին տարիներ եւ Շնորհք ամիրային ձեռնտուութեամբ՝ Տէր Յովհան Վանանդեցին[1] փոքրիկ դպրոցիս մէջ մանկտւոյն կրթութեան կը սկսի պարապիլ։ Բայց տակաւին մինչեւ ցայն վայր չկար ժողովրդեան մէջ ուսման եւ կրթութեան գովելի բաղձանք մը. սակայն ժամանակը փոխած էր քաղաքական դրութիւնն եւ Եւրոպայի կացութիւնը. կրթութեան ջահն ամէն կողմ լուսաւորութիւն կը սփռէր. Զմիւռնիոյ Հայք այլ եւս անտարբեր չէին կրնար կենալ՝ ուսման եւ կրթութեան նուիրական պարտուց մէջ։ Ուստի 1825ի Մայիսի մէջ աւելի ընդարձակ նոր շէնք մը կառուցանելու խորհուրդը կ'ունենան եւ գործի սկսելով հնոյն տեղ կը կանգնեն բաւական ընդարձակ շէնք մը, մի միայն Ս. Ստեփանոս եկեղեցւոյ եկամուտովն՝ Եփրեմ Կաթողիկոսի օրով եւ Զմիւռնիոյ Ենովքեան Ստեփանոս եպիսկոպոսի առաջնորդութեան ժամանակ։ Վարժարանիս շինութեան բարոյապէս եւ մեծապէս օգնած են՝ ժամանակին Անգղիոյ հիւպատոսարանին թարգման Պապօեան Գրիգոր աղա, եւ Էքիզեան Աւետիս աղա, որոնց պաշտպանութեան եւ հսկողութեան ներքեւ՝ տեղական կառավարութեան յարուցած ինչ ինչ դժուարութիւններու դէմ դնելով, շէնքը կ'աւարտի եւ հանդիսապէս կը բացուի։ Առաջնորդարանի դիւանատան մէջ նախկին վարժարանիս շինութեան նկատմամբ գտնուած արձանագրութիւններն հետեւեալներըն են.

“Ս. Մեսրոպեան վարժարան Հայոց Զմիւռնիոյ: Հին յիշատակ Ապրօեանց տոհմի, մինչեւ ցարդ աւանդութեամբ

---

1 Տես նաեւ իւր շիրմին յիշատակարանը (երես 100)

*իմացեալ: Նորին կառուցեալ ի 1825ի վերայ գետնոյ հնոյն արդեամբք Ս. Եկեղեցւոյ. ունի յիշատակարան ի ճակատ Դրան վերին ուսումնարանին. որ է*

*Դպրատունս այս ի հիմանց նորոգ կառուցաւ արդեամբք եւ ծախիւք Ս. Ստեփանոս Եկեղեցւոյս Զմիւռնիոյ, Տիրապահ քաղաքիս, ի վարժումն օրհնեալ Ազգիս դեռաբոյս մանկանց: Յամի Տեառն 1825, Նոյեմբեր 15:,,*

Բ. Վարժարանիս շինութեամբ Նոր դարագլուխ կը սկսի Զմիւռնիոյ Հայոց համար. ապագայ սերունդին կրթութեան վայրն այլ եւս՝ ապահովուած էր, կրթութեան լուսոյ կայծերը շատերու սրտերուն մէջ տեղի գտած էին, զանոնք արծարծող պէտք էր: Նորաշէն դպրոցիս առաջին ուսուցիչը կ'ըլլայ վերոյիշեալ Տէր Յովհան Վանանդեցին, որ կը սերմանէ քաջութեամբ մանկտւոյն սրտին մէջ՝ ուսման նախնական սերմը, իրեն օգնական ունենալով Տէր Գալուստ քահանան: Վանանդեցի եօթն ութ տարի կը վարէ այս պաշտօնը, իւր ժամանակը վարժարանը մեծ անուն կ'ունենայ ի մասնաւորի Հայկաբանութեան եւ կրօնագիտութեան նիւթերուն մէջ: Իրեն կը յաջորդէ Անդրէաս Վարժապետ Փափազեան (1831): Ասիկա Եւրոպա՝ ի մասնաւորի Իտալիա ըրած ճանապարհորդութեամբ կրթութեան փորձառու, հայերէն եւ իտալերէն լեզուներու քաջ տեղեակ, վարժարանին գլուխն անցնելէ ետքը կարճ ժամանակուան մէջ կարեւոր բարեկարգութիւններ եւ ուսումնական այլեւայլ փոփոխութիւններ կը խոթէ դպրոցը: Առաջին ան-

գամ իտալերէն, տաճկերէն եւ յունարէն լեզուները կ'աւանդուէին մանկանց. Նոյն տարիները Ղուկաս Գ. Պալդազարեան՝ Տրիեստ ըրած ուղեւորութեան



ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՎԱՆԱՆԴԵՑԻ. ԾՆ. 1772, † 1840:

առթիւ, հոն գտնուող Եուսուֆեան Պետրոս աղայի կ'առաջարկէ որ իւր ծախիւք Մեսրոպեան ազգային վարժարանին մէջ գաղղիերէն լեզուի դասատու մը դնէ: Նոյն վեհանձն բարերարը յանձն կ'առնու



*ՌՈՒԲԷՆ ԱՆԴՐԷԱՍ Ց. ՓԱՓԱԶԵԱՆ*
*ծնեալ ի Կ.Պոլիս 1806, Ապրիլ 11, † ի Զմ. 1857,*
*Մարտ 6:*

այս առաջարկութիւնը եւ միանգամայն 40.000 ֆիորին կը կտակէ ազգային արկեղ, նոյն գումարով անշարժ ստացուածք գնելու եւ եկամու-



ՊՕՂՈՍ ՊԷՅ ԵՈՒՍՈՒՖԵԱՆ ՓՈԽԱՐՔԱՅ ԵԳԻՊՏՈՍԻ
(† 1843):

տովը գաղղիերէն եւ անգղիերէն լեզուաց դասատուներու ամսականը վճարելու համար: Պալդազարեան Տրիեստէ դառնալէն ետքը՝ իսկոյն հետամուտ կ'ը լայ վարժարանին գաղղիերէնի ուսուցիչ մը հոգալու: Առաջին անգամ վարժարանի

մը մէջ նոր լեզու, նոր ուսմունք խոթելը բնականապէս ի կողմն եւ յընդդէմն կողմնակցութիւնները կը հանդիպի։ Մասնաւորապէս ժամանակին Առաջնորդը՝ Գաբրիէլ Եպիսկոպոս, որ միանգամայն Երուսաղեմայ պատրիարք էր, ամենայն ճիգ կը թափէ որ այս օտար լեզուն վարժարանին մէջ չմուծուի՝ ի ժամու եւ ի տարաժամու քարոզելով, որ գաղղիերէն անհաւատութիւն, Վոլտէռ ըսել է։ Սակայն այս լեզուին կողմնակիցներն քանի մ'ամիս ընդդիմութիւն կրելէ ետքը՝ կը յաջողին գաղղիացի ուսուցիչ մը հաստատել վարժարանին մէջ, քիչ մ'ետքը կը սկսի նաեւ անգղիերէն լեզուի ուսումն, որուն ձեռնտու կ'ըլլայ նաեւ Եուսուֆեան Պօղոս Պէյ։

Վարժարանիս այսպիսի յառաջադիմական քայլեր առած ժամանակ՝ Անդրէաս Վարժապետի կ'ընկերանայ Տէր Մարգար քահանայ, Տէր Յովհան Վանանդեցւոյ որդին։ Մեսրոպեան Վարժարանի ամենափայլուն եւ ոսկի տարիները կ'ըլլան 1831—1845ի միջոցները։ Մեծ անուն եւ համբաւ կը հանէ վարժարանս. օտար լեզուաւ թատրներ կը ներկայացուին. հեռաւոր վայրերէ անգամ աշակերտներ կը յաճախեն հոս՝ ուսմունք սորվելու, եւ վարժարանէս ելած աշակերտները մեծամեծ պաշտօններու հասնելով՝ ազգը խնդութեամբ կը լեցուի։

Սակայն դժբաղդաբար այս նախանձելի ընթացքն երկայն չի տեւեր. 1845ին պատահած հրդեհը՝ հարուած մը կու տայ վարժարանիս, որով տարի մը գրեթէ ուսմանց ընթացքը կը դադրի։ Ժամանակին Առաջնորդին՝ Թագթագեանին՝ ամէն ճիգ թափելովը՝ վերստին կը բացուի վարժարանս եւ իւր սովորական ընթացքը կը սկսի։ Քանի մը տարիէն ետքը Պոլսեցի բազմաշխատ եւ բազմարդիւն Անդրէաս Վարժապետը կը հրաժարի իւր պաշտօնէն (1856 ապր. 6), հոգաբարձութեան

հետ չկարենալով համաձայնիլ։ Իւր սիրական վարժարանին սեամքէն դուրս ապրիլ չէր կրնար Անդրէաս եւ իրօք տարի մը յետոյ կը կնքէ իւր արդիւնալից կեանքը 1857 Մարտ. 6։ Իւր մահուանէն չորս տարի ետքը կը վախճանի նաեւ իրեն ընկերակից եւ աշխատակից՝ Տէր Մարգար քահանան[1] (1861)։ Անդրէասի երախտագէտ աշակերտներն՝ իրենց վարժապետին վերջին յիշատակ մը թողլու համար՝ առաջնորդութեամբ Գարեգին Բաբազեանի, հանգանակութիւն մ'ընելով կը կանգնեն գեղեցիկ շիրիմ մը, Եկեղեցւոյ պարտէզին մէջ (տես երես 103)։ Մեսրոպ Նուպարեան, իւր աշակերտներէն մին՝ "Իմ մանկական յիշատակներս" վերնագրով՝ Արեւելեան Մամլոյ մէջ հրատարակած յօդուածներով լաւ կը ստորագրէ Անդրէասի վարքն ու բարքը եւ նոյն ժամանակի դպրոցական կեանքը։ Զմիւռնիոյ Հայոց մէջ անջինջ դրոշմուած է Անդրէասի անունը եւ Մեսրոպեան Վարժարանը պանծալով պիտի պատմէ յաջորդաց իւր ոսկեդարեան բազմարդիւն վարժապետին յիշատակը։

Այս բարեյիշատակ դաստիարակներուն կենդանութեան վերջին տարիներուն մէջ՝ արդէն ներքին գժտութիւն եւ հակառակութիւն սպրդած մտած էր ժողովրդեան մէջ։ Նոր տնօրէններ եւ նոր հոգաբարձութիւններ իրարու կը յաջորդեն. մէկուն շինածը միւսը կ'աւրէ եւ վարժարանս ալ կաղն ի կաղն յառաջ երթալու ընթացքին մէջ կը մտնէ։ Այս ժամանակներն տեսչութեան պաշտօնին կոչուած կը տեսնենք Մ. Աղաբէգեան, Տէպէճեան, Զէնճիրճեան, Առաքելեան, Գուրգէնեան, որոնք փոփոխակի մինչեւ 1866 կը գործեն վարժարանիս մէջ։ Սոյն թուականին գործունէութեան մէջ կը գտնենք Ստեփան Էֆ. Ոսկան, որ իւր ունեցած հմտութեամբ, ի մասնաւորի քաջ գաղղիերէնա-

---

1 Տես իւր շիրիմն երես 105։

դէտ ըլլալովը նոր մղում մը կու տայ դպրոցին եւ ուսմանց, ի մասնաւորի գաղղիերէն լեզուի եւ հայերէն աշխարհաբարի։ Ոսկանեանի այս պաշտօնը կը տեւէ երկու տարի միայն եւ իրեն կը յաջորդէ Մատթէոս Էֆ. Մամուրեան։

Գ. Մամուրեան իւր երկարժամանակեայ տեսչութեամբ բաւական ազդեցիկ դերը մ'ունեցած է Մեսրոպեան Վարժարանի մէջ. իւր օրովը կը կատարուի վարժարանիս առաջին Յոբելեանը. այս Յոբելեանը՝ որ 1825ին կառուցուած շէնքին եւ ոչ թէ անկէ յառաջ յիշատակուած վարժարանին յոբելեանն էր, մեծ փառաւորութեամբ կատարուած է։ Սոյն հանդիսին աւելի շքեղութիւն մը տուած են Արժ. Տէր Եղիշէ Վարդ. Գազանճեանի ատենախօսութիւնը, նոյն տարիներու հայկաբանութեան դասատու Մեծ. Ս. Պալապանեանի ճառը եւ տնօրէնին (Մամուրեանի) ատենաբանութիւնը։ Հոս յառաջ կը բերենք Ս. Պալապանեանի ճառին միայն այս մասը, յորում կրնանք տեսնել նոյն ժամանակին եղած դասերու ընթացքն ու կարգը։

“Արդ կարգք եւ օրէնք եւ հրահանգք ուսմանց վարժարանիս են, աշակերտք թուով գրեթէ 300 բաժանեալ են ի քառեակ կարգս ուսումնարանաց. յորոց մին անուանեալն Ծաղկոց հրահանգէ զնորեկ մանկտին ի վարժս հայացի աթութայից եւ ի գիր։ Յերից կարգաց առաջինն Նախակրթարան անուանեալ ի Ծաղկոցէ ընդունի զմանկունս եւ հրահանգէ զնոսա յընթերցանութիւն եւ ի վայելչագրութիւն եւ ի սկզբունս աշխարհագրութեան եւ թուագիտութեան եւ այլն։ Կարգն երկրորդ Միջակ անուանեալ հրահանգէ զաշակերտս ի մարզս մաքուր աշխարհիկ բարբառոյ եւ ի տարերս գրաբառ քերականութեան եւ ազգային Պատմութեան։

Կարգն երրորդ բարձրագոյն անուանեալ պարունակէ քառեակ դասարանս, յորոց առաջինն եւ

երկրորդ հրահանգին յառաջին մասն գրաբառ քերականութեան, երրորդն ի Համաձայնութեան, իսկ չորրորդն պարապի ի կրթութիւնս հռետորական շարագրութեանց եւ բարձր թարգմանութեանց եւ ճաշակի հայացի ոճոյ հանդերձ ուսմամբ նախնեաց ընտիր մատենագրութեանց: Ուսումն կրօնի եւ պատմութեան եւ աշխարհագրութեան եւ թուագիտութեան եւ եկեղեցական եւ ազգային երգոց աւանդի ըստ կարգի եւ աստիճանի դասարանաց: Նոյնպէս հրահանգին աշակերտք ի վարժս բնագիտութեան, տոմարակալութեան, գաղղիերէն, անգղիերէն եւ տաճկերէն լեզուաց: Տումարք օրագրութեանց են ի ձեռս իւրաքանչիւր դասատուաց, յորս նշանակին ընթացք ուսմանց եւ վարուց աշակերտաց ի քաջալերութիւն նոցա կամ ի պատիժ: Տնօրէն մի եւ կառավարիչ մի եւ տասնեքին դասատուք եւ երկու տնտեսք կան ի պաշտամունսն: Կանոնաւորեալ են ժամակարգութիւնք դասարանաց եւ արձակմանց ի հնչումն զանգակի: — Յաւուրս սուրբ Զատկի եւ սուրբ Ծննդեան աշակերտ ընդ հսկողութեամբ ներքին վարժապետաց մատչին ի սուրբ Հաղորդութիւնն: Փակ է վարժարանս յաւուրս խաչանիշ տօնից, նոյնպէս ի նախընթաց աւուրս ինչ սուրբ Զատկի եւ սուրբ Ծննդեան եւ բարեկենդանի. ունի եւ հանգիստ ամառնային աւուրս քառասուն: — Այս են ահա կարգք եւ օրէնք եւ հրահանգք գիտութեանց եւ լեզուաց վարժարանիս ի վերջնում աւուր ամի առաջին Յոբելինիս[1]:„

Սոյն տեղեկագրէն՝ վարժարանիս ասկէ քսաներեք տարի յառաջ ունեցած ընթացքին վրայ կրնանք գաղափար մը կազմել. կը մնայ ըսել, թէ մինչեւ 1876 վարժարանս յաճախող մանկտին գրեթէ ամէնքն ալ ձրի էին: Կրթասէր բարերարաց

[1] Արշալոյս Արարատեան 1875, 13 Դեկտ. թիւ 1029:

նուէրներովն եւ ազգային արկղը կը հոգար դպրոցի ծախքը։ 1877ին Ուսումնական եւ Տնտեսական խորհուրդը դպրոցական թոշակ կը կապէ աշակերտաց վրայ. հետաքրքրութեան համար կը դնենք թոշակի ցուցակը՝ որոշուած նոյն տարւոյ մէջ։

Ուսումնարան 3 կարգ։ Ա. կարգէն 21 մէճիտ, Բ. կարգէն 14 մէճիտ, Գ. կարգէն 7 մէճիտ պիտի առնուի։

Պատրաստարան 3 կարգ։ Ա. կարգէն 15 մէճիտ, Բ. կարգէն 10 մէճիտ, Գ. կարգէն 5 մէճիտ պիտի առնուի։

Նախակրթարան 3 կարգ։ Ա. կարգէն 12 մէճիտ, Բ. կարգէն 8 մէճիտ, Գ. կարգէն 4 մէճիտ պիտի առնուի։

Ծաղկոց 2 կարգ։ Ա. կարգէն 6 մէճիտ, Բ. կարգէն 4 մէճիտ պիտի առնուի։ Վերոյիշեալ թուականէն տարի մ'ետքը (1878) Մամուրեան տեսչութեան պաշտօնէն կը հրաժարի եւ իրեն տեղ կ'անցնի Համբարձում Էֆ. Իփէքճեան, Շահնազարեան Վարժարանի նախկին տեսուչներէն մին։ Երկու տարիէն՝ դարձեալ զՄամուրեան կը տեսնենք վարժարանին սեմոց վրայ։

Դ. Վարժարանս տեսած էր 61 տարւոյ շրջաններ, իւր ծառայութիւնը մատուցած եւ յոգնած. շէնքն այլ եւս անյարմար կու գար առողջապահական սկզբանց եւ մանկութեան զարգացման։ Ամէնուն աչքն առատաձեռն բարերարաց վրայ դարձած, մեծամեծ յոյսերով կը սպասէր սոյն կարօտութեան լրման։ Հասաւ օրն, ազգին այս բաղձանքն ալ իրականացաւ. Յովհաննէս Էֆ. Սպարթալեան տեսնելով վարժարանին վիճակը, իւր սովորական ազգասիրական առատաձեռնութեամբ նոր շէնք մը կառուցանելու համար երկրնցուց իւր լեցուն ձեռքը ազգին։ 1886 Փետր. 5ին հին շէնքին տեղ նորին հիմերը դրուեցան եւ նոյն տարւոյ Նոյեմբեր ամսոյ 30ին աւարտելով, բաց-

ման հանդէսը կատարուեցաւ շքեղապէս։ Հանդէսին աւելի շքեղութիւն մը տուած են Յովհաննէս Սպարթալեանի ատենախօսութիւնը, Մելքիսեդեկ



ՄԵՍՐՈՊԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ՃԱԿԱՏՆ:

Մուրատեանց Առաջնորդի ատենաբանութիւնն, Վիեննայի Մխիթարեանց միաբան Վ. Հ. Ամբրո-սիոս Վ. Քիւբէլեանի ճառը եւ Մամուրեանի

խօսքը[1]։ Առաջնորդարանի Դիւանատան մէջ գըտնուած արձանագրութեանց մատեանը՝ վարժարանիս շինութիւնը կը պատմէ հետեւեալ տողերով.

"Վսեմաշուք Ցովհաննէս Էֆէնտի Սպարթալեան հաճութեամբ Ազգին, ի հիմանց քակեալ զվերոյիշեալ վարժարանս Ս. Մեսրոպեան, իւրով ծախիւք վերաշինեաց զայժմեան նոր վարժարանս Ս. Մեսրոպեան առաւել ընդարձակ եւ առաւել հոյակապ ի մշտնջենաւոր վայելումն Ազգիս Հայոց։ Հանդէս օրհնութեան եւ բացման Նոր Վարժարանիս շքեղապէս կատարեցաւ ի Կիւրակէի 30 Նոյեմբերի 1886 ամին։ Ի ճակատ աւագ դրան վարժարանիս կայ յիշատակարանն, որ է.

Զայս Վարժարանս Ս. Մեսրոպեան ի հիմանց վերաշինեաց Օհաննէս Էֆէնտի Սպարթալեան. ի գահակալութեան օգոստափառ կայսեր Սուլթան Ապտիւլ-Համիտ Խանի, ի կուսակալութեան Հալիւլ Րիֆաթ Փաշայի եւ յառաջնորդութեան Տ. Մելքիսեդեկ Արքեպիսկոպոսի Մուրատեանց Զմիւռնիա 30 Նոյեմբեր 1886։„

Նորաշէն վարժարանս ժամանակիս եւ առողջապահական օրինաց պահանջածներն ամէնն ալ ունի։ Կրկնայարկ ու քարաշէն, չորս կողմը բաց՝ պարտէզով շրջապատուած, լայն ու բարձր պատուհաններով լուսաւորուած։ Վարի յարկին վրայ դիմացէ դիմաց բաժնուած են վեց խուցեր՝ դասարաններու յատկացուած, դրան դիմացը ուրիշ խուց մը Թանգարանի որոշուած, որով վարի յարկը կ'ունենայ եօթն խուց եւ երկայն եւ բաւական լայն գաւիթ մը՝ յատակը մարմարիոն քարով հարթուած։ Գաւթիս աջ ու ձախ կողմերն եւ գրեթէ միջավայրն հաստատուած են վերնայարկը հանող՝ կրկին դարձուածով աստիճանները։ Երկրորդ յարկս կազ-

---

1 Տես այս ատենախօսութիւնները Արեւելեան Մամլոյ մէջ. 1886 Նոյեմբեր եւ Դեկտեմբեր ամիսներն։

մուած է երկայն սրահէ մը եւ ասոր աջ ու ձախը՝ դիմացէ դիմաց բաժնուած ութը խուցերէ։ Թան-գարանի մէջ՝ դրան դիմացը կախուած է Յովհաննէս Սպարթալեանի իւղաներկ պատկերը՝ մեծ եւ սի-րուն շրջանակով. իսկ աջ ու ձախ պատերուն կից դէպ ի վեր կանգնուած են պահարաններ, որոնց մէջ շարուած են բաւական թուով կարեւոր գրեանց հատորներ։ Այս գրքերը նուիրուած են այլ եւ այլ ժամանակ՝ զանազան անձինքներէ. կայ 477 կտոր հայերէն, 800 գաղղ., 155 իտալերէն, 88 անգղիերէն, 45 տաճկերէն, 35 յունարէն եւ 29 ռուսերէն գրքեր իրենց հատորներով։ Բաց աստնցմէ առանձին դարան մը յատկացուած է վարժարանի մանկանց համար, որուն մէջ կայ 100 կտորէ աւելի հայերէն գիրք։

Ունի Վիեննայի մեծ երկրագունդը եւ զա-նազան աշխարհացոյց տախտակներ, որոնց մէջ նշա-նաւոր է իւր հնութեամբն 1695ին Ամստերդամ տպուած հայերէն՝ արեւելեան եւ արեւմտեան կիսագունդները ներկայացընող տախտակը, շուրջը աստղաբաշխական եւ դիցաբանական պատկերնե-րով։ Տախտակիս միջավայրն գրուած է իւր յիշա-տակարանն հետեւեալ կերպով.

Նորոգ քանդակ գեղեցկավէպ Հանրազան
փոխաբերեաց Թօմայեան որդ Ոստ Վանան-
դեան.
Փորագրութիւն յոյժ ցանկալի,
ի ձեռն Եղբարց Հարազատի,
Ադրիանու Ըսկօն Բէկի,
Եւ Պետրոսի Քաջավարժի,
Ընդ Ղուկասու Հմտաւորի,
երկամբք բազմօք յայտածողի,
Եղբօր որդի իմ Անդրանկի,
Պահեսցէ Էն յիւրում ծոցի։

ՅԱմստէրտամ
1695։

Hadrianus et Petrus
Damianus Schonbeek
Fratres, Faciebant
Amstelodami
MDCXCV.

Թանգարանիս նուիրատուներուն մէջ նշանաւոր են Գրիգոր Կոստանեան, Գր. Աբէլ Գուլասքեանց, Շարլօ Նուպարեան, Կ. Վրդ. Շահնազարեան, Տր. Զայեան, Տ. Կիւլգասըն Շահումեան։ Թանգարանէս զատ՝ երկրորդ յարկի սենեակներէն միոյն մէջ կը պահուին բնագիտական այլ եւ այլ գործիքներ, որոնք բնագիտութեան ուսմանց փորձերու կը ծառայեն՝ նուիրուած կրթասէր անձինքներէ, ինչպէս Գալուստ Գ. Կոստանեանէ եւ ուրիշներէ։

Ի. Շքեղաշէն վարժարանիս մէջ առաջին անգամ իբր տեսուչ կը գտնենք զՄամուրեան որ երկու տարիէն յետոյ (1889) կը թողու իւր պաշտօնը Ռուսահայ՝ Աղեքսանդրոպոլսեցի Ց. Տէրմիրաքեանի, քանի մը տարի ետքը սոր ալ յաջորդած կը տեսնենք Պուրսացի Գէորգ Տէր Բարթուղէմոսեան (1894) եւ յետոյ Խաչիկ Գազազեան (1896), որ յաջորդ տարին 1897 փետ. 15 կը հրաժարի իւր պաշտօնէն եւ նոյն տարւոյ Մարտին կ'ընտրուի Պ. Մկրտիչ Սարեան։ Սարեան՝ տարի մը հազիւ իւր այս պաշտօնը կատարելէ յետոյ կը ստիպուի իւր հրաժարականը տալ եւ քաշուիլ դպրոցական ասպարէզէն։

Ազգային Ուսումնական խորհուրդը՝ 1898—1899 դպրոցական տարւոյս, Ս. Մեսրոպեան եւ Ս. Հռիփսիմեան վարժարանաց տեսչութիւնն իրարմէ բաժնելով՝ առաջնոյն վրայ իբր Տեսուչ կը կարգէ զԹովմաս Սիմոն Պօյաճեան, իսկ երկրորդին վրայ զԿ. Պալապան։ Թովմաս Ս. Պօյաճեան՝ բնիկ Էօտէմիշցի՝ իւր նախնական ուսմունքն Ս. Մեսրոպեան Վարժարանին մէջ ընդունած եւ ապա

երեք տարի Թուլուզի եւ երկու տարի Սէն Կլուի Համալսարանաց մէջ կատարելագործած է ուրվածը։ Քսան ու չորս տարուան աշխոյժ երիտասարդ մ'է. իւր կոխած պաշտօնին մէջ եթէ յարատեւութիւն գտնէ թէ՛ Ուսումնական Խորհրդոց կողմանէ եւ թէ՛ իւր կողմանէն, ունեցած գիտութեան վրայ փորձառութիւնն ալ աւելնալով, իւր գործունէութեամբ ապագային Ս. Մեսրոպեան Վարժարանը կրնայ գեղեցիկ արդիւնքներ յառաջ բերել։

Չենք խօսիր հոս իւրաքանչիւր տեսչի ունեցած առաւելութեան կամ թերի կողմերուն վրայ. այս միայն կ'աւելցընենք, թէ որոշ եւ հաստատուն ուսմանց ծրագրի պակասութեան պատճառաւ տեսուչներու ստէպ ստէպ փոփոխութեամբ վարժարանս չէ ունեցած այն բաղձալի յառաջադիմական արդիւնքը, զոր պէտք էր ունենալ, եւ այս Զմիւռնացւոց կողմնակցական ոգւոյն՝ ըստ մասին իրենց անտարբերութենէն եւ ըստ մասին եկամտից անձուկ կամ գէշ մատակարարութենէն յառաջ եկած հետեւութիւնն է։

Տեսուչներէ զատ վարժարանս ունեցած է բազմաթիւ դասատուներ, որոնցմէ ոմանք շատ կարճ ժամանակ կրցած են վարել իրենց յանձնուած պաշտօնը. աւելի յարատեւ եւ գործունեայ կեանք ունեցած են Ստեփան Չաքրեան, Բարսեղ Գ. Բարսեղեան, Սարգիս Այմէլէքեան, Աւետիս Տիվրիկեան, Գառնիկ Սարաֆեան, որոնցմէ ոմանք տասը, տասնըհինգ, քսան եւ աւելի տարիներ գործած են եւ կը գործեն տակաւին վարժարանիս մէջ։

Վերջին տարւոյ (1898) շրջանին մէջ վարժարանս ունէր տասնուվեց դասախօս եւ 300 աշակերտ։ Աշակերտներէն ոմանք թոշակաւոր են, ոմանք միայն գրքերնու ու կարեւորներ կը վճարեն, իսկ ոմանք ալ բոլորովին ձրի՝ որոնց գրքերուն եւն ծախքը կը հոգայ վարժարանը։ Աշակերտաց թիւն բնական է միշտ նոյն չէ եղած. իւր փայլուն ժա-

մանակը 400 աշակերտ ունեցած է կը պատմուի, 1876ին՝ 250։ 1879ին՝ 252։ 1890ին՝ 250 աշակերտ կը գտնենք տեղեկագրութեանց մէջ։ Աշակերտք կը բաժնուէին բարձր եւ ստորին դասարաններու. իւրաքանչիւրին ուսմանց եւ վերջին տարւոյ աւանդուած գիտութեանց վրայ որոշ տեղեկութիւն մ'ունենալու համար՝ կը դնենք 1897—1898 տարւոյ ուսմանց ծրագիրը, զոր տես էջ 135։

---

## ԳԼՈՒԽ ՏԱՍՆԵՐՈՐԴ

*Ս. Հռիփսիմեան Վարժարան: Առաջին, երկրորդ եւ երրորդ անգամ կառուցուած շէնքը. վերջին տարւոյ ուսմանց ծրագիրը:*

Ա. Մինչդեռ Մեսրոպեան Վարժարանն ոսկի շրջաններ կը բոլորէր եւ մանկտին ուսման ճաշակն առած կը դիմէր դէպ ի յառաջադիմութիւն, Զմիւռնացի հայ օրիորդը չունէր մասնաւոր վայր մ'իւր մտաւորական կարողութիւնները մարզելու, հասարակաց կրթութեան մասնակցելու։ Ծնողք՝ ըստ նախկին սովորութեան՝ իրենց աղջիկ զաւակաց ուսմունք սորվեցրնելն երկրորդական բան մը կը համարէին, անոնք միայն, որոնք ուսման ճաշակն առած էին, կը ղրկէին իրենց աղջկունքն իրենց տան երէցին կամ առանձնական տներ, այս կամ այն անձին քով պարզ կարդալ սորվելու։ Հազիւ 1820ի միջոցներն այս տխուր ընթացքին վերջ մը տալու համար՝ հիւանդանոցի մէկ սրահը կը յատկացուի աղջկանց համար իբր վարժարան, ուր կը հաւաքուէին ուսուցանուէր աղջկունք եւ տեղւոյն քահանային հսկողութեան ներքեւ կարդալու գրելու կը պարապէին։ Քանի մը տարի այսպէս անցնելէ յետոյ, Յակոբ աղա Սարգսեան, Վիեննա հաստատուած Զմիւռնացի հարուստ վաճառականը, իւր ծախքով կառուցանել կու տայ աղջկանց դպրոց մը, ուր կը

ԱԱ. Դասարան՝ կրօնք. Հայերէն. Թուաբան. Աշխարհգ.

ԱԲ. „ „ „ „ „ Նկարողութիւն

Բ. „ „ „ „ „ Պատմութիւն

Գ. „ „ „ „ „ „ Ֆրանս. Իրագիտութիւն

Դ. Դասարան՝ կրօնք. Հայերէն. Թուաբան. Աշխարհգ. Պատմութիւն. Ֆրանսերէն. Իրագիտութիւն. Տաճկ.

Ե. Դասարան՝ կրօնք. Հայերէն. Թուաբան. Աշխարհգ. Պատմութիւն. Ֆրանսերէն. Տաճկ. Երկրաչափութիւն.

Զ. Դասարան՝ կրօնք. Հայերէն. Թուաբան. Աշխարհգ. Պատմութիւն. Ֆրանսերէն. Ա. Բ., Տաճկ. Երկրաչափութիւն. Տոմարակալութիւն. Անգղիերէն.

Է. Դասարան՝ կրօնք. Հայերէն. Տեսական եւ գործնական Գրաճաշիւ. Աշխարհգ. Պատմութիւն. Ֆրանսերէն Ա. Բ., Տաճկ. Անգղիերէն Ա. Բ., Տարրաբանութիւն. Բնագիտութիւն. Բնական. Պատմութիւն:

Այսոնցմէ զատ ընդհանուրն ունի լաւ խրում կարողութեան՝ Գծագրութիւն, Գեղագրութիւն, Մարմնամարզութիւն:

փոխադրուին՝ Հիւանդանոցի սրահին մէջ ուսման պարապող աղջկունք, որոնց թիւը նոր շէնքին բացմամբ աւելի կը բազմանայ եւ եռանդ մը կ'իյնայ սրտերնուն մէջ կրթութեան եւ ուսման։







ՅԱՏԱԿԱԳԻԾ ՀՌԻՓՍԻՄԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

Բ. յարկ։ Ա. յարկ։

Վարժարանիս շինութեան նկատմամբ եղած արձանագրութիւնը կը կարդանք այսպէս․

"Ս․ Հռիփսիմեան Վարժարան Հայոց Զմիւռնիոյ։ Զմիւռնացի Մեծ․ Յակոբ Սարգսեան, վաճառական ի Վիեննա, իւրով արդեամբք ետ կառուցանել ի վերայ ազգային գետնոյ դպրոց աղջկանց միայարկ եւ գեղեցիկ։„

Ինչպէս կը տեսնուի, արձանագրութեանս մէջ շինութեան թուականը չէ նշանակուած, բայց կրնանք ըսել թէ հաւանականաբար 30–35ի



ՏԻԿԻՆ ՀՌԻՓՍԻՄԷ ԿՈՍՏԱՆԴԵԱՆ:

միջոցները տեղի ունեցած է շինութիւնը. արձանագրութիւնս կը գտնուի Առաջնորդարանի Դիւանատան յիշատակարանաց մատենին մէջ:

Նորաշէն վարժարանիս մէջ առաջին անգամ ուսուցիչ կը կարգուի Յովհաննէս Վարժապետ

Ղահինեան, որ՝ ինչպէս կ'ըսուի, առաջին անգամ Զմիւռնացի հայ աղջկանց քերականութիւն կը սկսի սորվեցընել։ Նոյն ժամանակներն՝ երբ Մեսրոպեան Վարժարանի աշակերտք կրթութեան գեղեցիկ պտուղներ կը ցուցընեն, աղջկանց սրտին մէջ նախանձ մը կը բորբոքի՝ իրենց եղբայրակցաց հաւասարելու. ուսման ճաշակը օր քան զօր կը զրգռի իրենց մէջ։ Իրաց այս վիճակին մէջ՝ վրայ կը հասնի 1845ին զարհուրելի եւ ապականիչ հրդեհը եւ կ'այրէ դպրոցիս շէնքը։

Բ. Այս ցաւալի դիպուածէն յետոյ՝ քանի մը տարի աղջկունք կը մնան առանց վարժարանի եւ խնամոց, որ մեծ ցաւ կը պատճառէ իրենց։ Սակայն կրթութեան սերմը ցանուած էր հայ տիկնոջ սրտին մէջ. ուսման ճաշակն առած էր. ուստի անտարբեր չէր կրնար կենալ, վարժարան մ'ունենալ կը տենչար ժողովուրդը, վարժարանի մը պէտք ունէր Ազգը եւ ահա ժողովրդեան սոյն փափաքը, Ազգին պէտքը կը լեցընէ ազնուափայլ Հռիփսիմէ Տիկին Կոստանդեան, որ իւր ծախիւք շինել կու տայ աղջկանց վարժարան մը (1849) կրկնայարկ եւ քարուկիր։ Նորակառոյց շէնքն իւր հիմնարկող՝ բարերարին անուամբ կը նուիրուի Ս. Հռիփսիմեանց եւ այնուհետեւ ուսումնարանս կ'անուանուի Ս. Հռիփսիմեան Վարժարան։

Վարժարանիս երկրորդ շինութեան արձանագրութիւնը կը կարդանք այսպէս.

“Զկնի այրմանն ի 1845, վերստին կառուցաւ նոր դպրոց աղջկանց կրկնայարկ եւ քարուկիր, արդեամբք Զմիւռնացի Ազնիւ Հռիփսիմէ Տիկին Գր. Կոստանդեանի, եւ կոչեցաւ Ս. Հռիփսիմեան վարժարան։ Բէշիտիէ փողոց թիւ 106։ Թուական շինութեան 1849 Փետրուար։„

Տիկին Կոստանդեանի ազնիւ օրինակը յառաջադիմութեան խթան մը կ'ըլլայ Զմիւռնացի իգական սեռին, հետզհետէ աղջկանց կրթութեան

հետամուտ եղողները կը բազմանան։ Նոր շէնքին հետ՝ ուսմանց նոր բարեկարգութիւններ կը մտնեն, վարժուհիները կը կրկնապատկուին։ Քանի մը տարի յետոյ Մեսրոպեան Վարժարանի Տնօրէնութեան հսկողութեան ներքեւ կը յանձնուի Հռիփսիմեան Վարժարանս եւ այնուհետեւ վարիչը կ'ըլլայ երկսեռ վարժարանաց վարիչ։

Ժամանակին հետ կ'ընէ իւր ընթացքը վարժարանս ալ. Թատերերգութիւն, հանդէսներ, պազարներ տեղի կ'ունենան իւր սրահին մէջ, որոնք բնականաբար յառաջադիմութեան նշաններ են։ Այս տարեկան հանդէսներէն, որոնք վարժարանիս սրահին մէջ տեղի ունեցած են, նշանաւոր է 1874ի Ապր. 28ին եղած պազարն աղջկանց ձեռագործներուն համար, եւ սոյն գաղափարը յղացող կը համարուի Տիկին Ե. Տայեան. յիշենք փակագծի մէջ, թէ սոյն պազարէն կը գոյանայ 18 հազար դահեկան։

Սոյն տարիներու մէջ վարժարանս յաճախող աշակերտուհիներու տարեկան թիւն հասած է մինչեւ 240, որոնք ամէնն ալ գրեթէ ձրի կ'ընդունէին իրենց կրթութիւնը. սակայն 1877ին Ուսումնական՝ Տնտեսական խորհրդոյ՝ դպրոցական թոշակի համար ըրած որոշումն ի գործ դրուեցաւ նաեւ Հռիփսիմեան Վարժարանի վրայ՝ հետեւեալ կերպով.

Ուսումնարան 3 կարգ. Ա. կարգէն 15 մէճիտ, Բ. կարգէն 10 մէճիտ, Գ. կարգէն 5 մէճիտ պիտի առնուի։

Նախակրթարան 3 կարգ. Ա. կարգէն 12 մէճիտ, Բ. կարգէն 8 մէճիտ, Գ. կարգէն 4 մէճիտ, պիտի առնուի։

Ծաղկոց 2 կարգ. Ա. կարգէն 6 մէճիտ, Բ. կարգէն 4 մէճիտ պիտի առնուի։

Լուսաւորութեան եւ կրթութեան ջահը որչափ որ կը սփռէր իւր ճառագայթներն, այնչափ ալ

Հռիփսիմեան Վարժարանին վրայ շատ մը նիւթական եւ բարոյական պարտաւորութիւններ ու պիտոյքներ կ'աւելցընէր: Վարժարանին երկու մեծ որահները հազիւ 280—290ի չափ աշակերտուհի կրնային պարունակել: Տեսչութիւնը ստիպուեցաւ շէնքին մէջ այլ եւ այլ բաժանումներ ընել, տախտակէ միջնորմով՝ վարժուհիներու թիւը միանգամայն կրկնապատկելով: Վարժարանին ներքին բարեկարգութեան աւելի հոգ տանելու համար՝ Ուսումնական խորհուրդը խնամակալուհիներ[1] կ'ընտրէ (1877), որոնց կը յանձնուի նաեւ դպրոցին ձեռագործութեան խնամքը: Մէկ երկու տարի յետոյ, աղքատ չունեւոր աղջկանց նիւթական պիտոյքը հոգալու համար՝ վերոյիշեալ խորհուրդը Հոգատար[2] անուամբ տիկնանց ընկերութիւն մը կը կազմէ, որ իր գործունէութիւնը կը ցուցընէ՝ մեծ եռանդեամբ զգեստներ եւ այլ կարեւորներ հոգալով աղքատ աշակերտուհիներու:

Գ. Այսպէս՝ երբ մէկ կողմանէ հարուստը կրթութեան յարգը ճանչցած՝ զայն իւրացընելու կը ճգնէր, եւ միւս կողմանէ աղքատը, շնորհիւ ունեւորին, կրթութեան ճաշակը կ'առնուր, ահա ուրիշ կարեւոր պէտք մը կը ծանրանայ Ազգին վրայ: Վարժարանին շէնքը անբաւական կ'ըլլայ աղջկանց համար. մտաւորական զարգացման համար՝ ֆիզիգական առողջապահական միջոցները ան-

---

1 Խնամակալուհիք՝ Տիկին Վարդուհի Գր. Չիլինկիրեան, Օր. Զարուհի Վարպետեան եւ Օր. Թագուհի Տամկաճեան:

2 Հոգատարք. անդամք՝ Թագուհի Գ. Էլմասեան, Տուտու Գր. Էլմասեան, Մարիամ Ա. Կարապետեան, Գայիանէ Յ. Սըվազլեան, Մարիամ Յ. Ճէլէպեան, Բէ[illegible]սաբէ Պ. Աւագեան, Տուտու Գ. Սըվազլեան, Մարիա[illegible] Մ. Ալփիարեան, Թագուհի Կ. Յակոբեան, Էլիզա[illegible] Տէտէեան, Սրբուհի Պ. Տիլպէրեան, Մարիամ Մ. Մ[illegible]րեան, Յուստինէ Յ. Նայեան:

հրաժեշտ կ'ըլլան. ընդարձակ շէնքի մը շինութիւնը անհրաժեշտ պէտք կը դառնայ։ Ժամանակին պահանջածը կատարելու համար՝ հուսկ ուրեմն 1882ին Յունիսին Հռիփսիմեան Վարժարանը վերստին շինելու որոշում կը տրուի եւ յանձնաժողովի մը ներքեւ հանգանակութեան ձեռք կը զարնուի։ Քիչ ժամանակուան մէջ՝ ժողովրդեան ըստ իւրում կարողութեան բրած նուէրներու գումարը կը հասնի 1526 ոսկւոյ. Հին շէնքը կը ծախուի եւ քիչ մ'ալ ազգային արկղէն վրան աւելցնելով, իբր 3500—4000 ոսկւով նոր գետնի վրայ կը շինուի այժմեան դպրոցը։ Շինութիւնը կ'աւարտի 1884ին եւ մեծ շքեղութեամբ կը կատարուի իւր բացումը։ Այսպէս երրորդ անգամ կառուցուած վարժարանս հնոյն անուամբ կ'անուանուի Ս. Հռիփսիմեան, թէ կրօնի նահատակ Ս. Հռիփսիմէ կուսին եւ թէ կրթութեան անխոնջ գործաւորին Տիկին Հռիփսիմէ Կոստանդեանի յիշատակը նուիրագործելու համար։

Ահաւասիկ նոր վարժարանիս արձանագրութիւնը.

“Ազգային կամօք եւ հաւանութեամբ ի 1882 քանդեցաւ վարժարանս վասն անձկութեանն եւ հնութեան, առ ի շինել նոր վարժարան առաւել ընդարձակ։ Արդէն ձեռնարկեալ է շինութիւն նոր վարժարանիս ի Չնարլը անուանեալ փողոցի, նուիրօք հանգանակութեան Զմիւռնացի Ազգայնոց։

Աւարտեցաւ շինութիւն նոր վարժարանիս եւ մեծահանդէս կատարեցաւ բացումն նորին ի 6 Մայիսի 1884։ Պատճէն Յիշատակարանի Վարժարանի որ ի վերայ աւագ դրան.

Ազգային Վարժարանս Ս. Հռիփսիմեանց կառուցաւ նուիրօք Հայազգեաց Զմիւռնիոյ յառաջնորդութեան Տեառն Մելքիսեդեկի Ս. Արքեպիսկոպոսի Մուրատեանց Զմիւռնիա 6 Մայիսի 1884։„

Նորակառոյց Վարժարանս իւր ունեցած ճարտարապետական յօրինուածութեամբ Զմիւռնիոյ կրթական հաստատութեանց մէջ առաջին տեղին կը բռնէ։ Թէպէտ եւ արտաքուստ պարզ է, բայց ի ներքուստ բաժանումները կանոնաւոր եւ գեղեցիկ են։ Շրջապատեալ պարտէզէ, որով այսպիսի հաստատութեան մը համար անհրաժեշտ եղած լոյսն՝ իւր ճառագայթներն անխափան ամէն կողմանէ կ'արձակէ դէպ ի ներս։ Գետնայարկն ունի ութը սենեակ, խաչաձեւ գաւթին վրայ դիմացէ դիմաց բաժնուած եւ այս խաչաձեւ գաւթին իւրաքանչիւր թեւին վրայ կան դռներ, որոնք պարտէզ կը հանեն։ Աւագ դրան դիմացը բարձրացած կը տեսնուին երկու թեւ սանդուխներու աստիճաններն, որոնք ի մի միանալով կը հանեն երկրորդ յարկը։ Երկրորդ յարկը բաժնուած է վեց մեծ ու փոքր սենեակներու եւ ընդարձակ սրահի մը։ Սրահս իւր ընդարձակութեամբ եւ մեծութեամբ շքեղութիւն մը կու տայ վարժարանի շէնքին։ Հասարակութեան այլ եւ այլ բարեգործական հիմնարկութեանց տարեդարձի հանդէսները, պարահանդէսները, երեկոյթ, նուագահանդէս, վիճակահանութիւն եւ այլն կը կատարուին սրահիս մէջ։ Վարժարանս ունի փոքրիկ թանգարան մ'ալ, վարի յարկի սենեակներուն մէկուն մէջ, ուր պահարաններու մէջ կը պահուին գրեթէ 200 կտորի մօտ հայերէն եւ գաղղիերէն գրքեր. այս կողմանէ չունի յիշատակելի հարստութիւն։

Դ. Ինչպէս ըսինք վերագոյն, տարիներ յառաջ վարժարանիս տեսչութիւնը միացուեցաւ Մեսրոպեան Վարժարանի տեսչութեան հետ, տեսուչ կարգուողն կ'ըլլար միանգամայն երկսեռ վարժարանաց տեսուչ. ուստի Մեսրոպեան Վարժարանի տեսուչներու յաջորդութեան համար ինչ որ ըսուեցաւ, նոյնն է նաեւ Հռիփսիմեան Վարժարանի համար։ Այս տեսուչներէն զատ կը դրուին

տեսչուհիներ, որոնց պարտքն է դպրոցին ներքին բարեկարգութեան վրայ հսկել եւ տալ պատասխան տեսչին. սակայն տեսչուհիներն չեն կրնար առանց գիտութեան տեսչին որեւիցէ կարգադրութիւն մ'ընել կամ եղածը փոխել։ Ասոնց մէջ կը յիշուին օրիորդ Սաթենիկ Հալէպլեան որ երկայն ժամանակ կատարած է այս պաշտօնն եւ եռանդեամբ աշխատած մինչեւ 1894։ Սոյն տարւոյ Նոյեմբերի Հռիփսիմեան խնամակալուհեաց կողմանէ կը կանչուի իբր տեսչուհի Օր. Եփփիմէ Օտեան՝ Պոլսեցի. տարի մը յետոյ իւր տեղը կ'անցնի (1896—1897) Օր. Թագուհի Խանճեան. սոր ալ կը յաջորդէ Պոլսեցի Օր. Սաթենիկ Պէյլիկճեան։ Ասոնցմէ զատ վարժարանս ունեցած է եւ ունի այցելու կամ մնայուն վարժուհիներ եւ դասատուներ. որոնց թիւն միշտ նոյն չէ եղած. վերջի տարւոյ (1898) մէջ ունէր ութը վարժուհի եւ հինգ դասատու. դասատուներն ընդհանրապէս Մեսրոպեան Վարժարանի ուսուցիչներն եղած են։

Վարժարանս յաճախող աղջկունք երեք կարգի կը բաժնուին, այնպիսիներ՝ որոնք ըստ կարողութեան մէկ, հինգ, տասը մէճիտ կամ աւելի թոշակ կը վճարեն. երկրորդ անոնք՝ որ միայն գրոց եւ մանր ծախուց սակ կը վճարեն եւ երրորդ այնպիսիներ՝ որոնք բոլորովին ձրի են, որոնց գրոց եւ կարեւորաց ծախքն անգամ կը հոգայ վարժարանս։ Վարժարանիս աշակերտուհիներու թիւն երբեմն աւելի երբեմն պակաս եղած է. 1876ին 250 եղած է. 1879ին 216. 1890ին 200 եւ վերջին տարւոյ շրջանին մէջ 136, հետեւեալ բաժանմամբ. ԱԱ. Դասարանի մէջ 42։ ԱԲ. Դասարանի մէջ 43։ Բ. Դաս.՝ 45։ Գ. Դաս.՝ 43։ Դ. Դաս. 23։ Ե. Դաս.՝ 12։ Զ. Դաս.՝ 9։ Է. Դաս.՝ 9։ Ը. Դաս.՝ 10։ Թ. դասարանն ունեցած չէ աշակերտ։

Վարժարանիս մէջ աւանդուած ուսմունք եւ գիտութիւնք միշտ մի եւ նոյնը չեն եղած, որ որոշ

ծրագրի պակասութեան նշան է. տեսչութիւն մը այս կամ այն գիտութիւնն կարեւոր համարած է, մինչդեռ երկրորդ տեսչութիւնն այս կամ այն գիտութիւնն աւելորդ նկատած է: Ժամանակ մը կ'աւանդուէր անգղիերէն լեզուն, դաշնակ, ձայնական երաժշտութիւն, սակայն այսօր չկան անոնց անունները: Վերջին տարւոյ դասարաններու մէջ աւանդուած ուսմունքները տես էջ 145:

---

## ԳԼՈՒԽ ՄԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

*Ս. Լուսաւորչեան Ազգային Հիւանդանոց: Հիւանդանոցին վայրը, Սպարթալեան երկու մեծ բարերարաց շիրիմները, Ս. Լուսաւորչայ Եկեղեցին. յարակից մատուռները, Ս. Լուսաւորչայ Պատկերը, Հիւանդանոցին շէնքը, երկրորդ եւ վերին յարկը, Հիւանդները, Հոգաբարձութիւն Հիւանդանոցին:*

**Ա.** Ազգային Հիւանդանոցը գրեթէ Հայոց Թաղին հիւսիս-արեւելեան կողմը կ'իյնայ: Բէշիտիէ մեծ փողոցէն դէպ ի Պասմախանէի (Գասապայի) երկաթուղւոյն կայարանը գացած ժամանակնիս, ձախ թեւերնուս վրայ, կողմնակի քանի մը փողոցներ անցնելէ յետոյ, կու գանք Տէրտէր անուանեալ կողմնակի փողոցն, որուն ծայրէն կը տեսնուի ընդարձակ շէնք մը եւ կարեւոր հիմնարկութիւն մ'ըլլալն իսկոյն կ'իմացուի: Տէրտէր փողոցին մէջ շեղելով՝ քանի մը քայլ առնելէ յետոյ, պարտէզի մը դրան առջեւը հասած կ'ըլլանք, որուն ճակատը գրուած կը տեսնենք.

### Ս. ԼՈՒՍԱՒՈՐՉԵԱՆ

### ԱԶԳԱՅԻՆ ՀԻՒԱՆԴԱՆՈՑ

Հոս է ուրեմն այն վայրն, ուր կը դիմէ ազգին կարօտ դասն՝ իր տառապանաց մխիթարութիւն

| | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| ԱԱ. | Դասարան՝ | Հայ. | Կրօնք. | Թուաբ. | Աշխարհգ. | | | | |
| ԱԲ. | " | " | " | " | " | | | | |
| Բ. | " | " | " | " | " | Պատմութիւն | | | |
| Գ. | : | " | " | " | " | " | Իրագիտութիւն | ֆրանսերէն | |
| Դ. | " | " | " | " | " | " | " | " | |
| Ե. | " | " | " | " | " | " | Երկրաչափ. | " | |
| Զ. | " | " | " | " | " | " | " | " | |
| Է. | " | " | " | " | " | " | " | " | Ա. ֆրանսերէն Բ. |
| Ը. | " | " | " | " | " | Գրահաշիւ, Տարրաբան. Բնական Պատմ. Բնագիտութեան, Առտնին Տնտես., ֆրանսերէն Ա. Բ. | | | |

Թ. Դասարան՝ Հայեր., Կրօնք., Թուաբ., Աշխարհ., Գրահաշիւ, Տարրաբան., Բնական Պատմ., Բնագիտութիւն, Առտնին Տնտես. ֆրանսերէն Բ.

Այս ուսմունքներէն զատ իւրաքանչիւր աշակերտուհի ըստ իւրում կարողութեան կը սորվի Ձեռագործ, Ձեւագիտութիւն, Գեղագրութիւն եւ Գծագրութիւն։

մը գտնելու, եւ ուր կը փութայ ունեւորը՝ հարուստը՝ սփոփելու եւ քաջալերելու այն վշտացեալները՝ իւր ազգասիրական եւ մարդասիրական սրտով։ Հիւանդանոցս շինուած է ընդարձակ գետնի մը վրայ եւ ունի իւր շուրջն այն ամէն կարեւոր մասերն, որոնք պէտք են այսպիսի գթասիրական մեծ եւ գովելի հիմնարկութեան մը։

Պարտէզէն բարձր եւ հսկայ երկաթապատ դունէն ներս մտնելով՝ ձախ կողմերնիս կը տեսնենք դռնապանին յատուկ խուցը, դեղարանն. իսկ աջ կողմերնիս ջրոյ ընդունարանն եւ աղբիւրն, որուն ճակատը քանդակուած է.

Աղբիւրս նորոգեալ շնորհիւ
երկ եղբարց. Յակոբայ Յով-
հաննու Վեհ Սպարթալեանց
1879.

Աղբիւրիս քովը կարգաւ շինուած են սենեակներ, որոնց վրայ գրուած է Սենեակ հոգաբարձուի, Սենեակ Քահանայից, Հիւրանոց։

Պարտէզին մէջ մէկ երկու քայլ յառաջ երթալով՝ առջեւնիս բարձրացած կը տեսնենք բուն հիւանդանոցի շէնքին աստիճանաւոր դուռը, աջ թեւերնուս վրայ եկեղեցին, քովը կանանչազարդ փոքրիկ պարտէզ մը՝ զանգակատան աշտարակով. իսկ ձախ թեւերնուս վրայ երկու շքեղ արձաններ, իրարմէ չափաւորապէս հեռու, երեսնին դէպ ի եկեղեցւոյ դրան դարձուցած՝ կարծես կը դիտեն եկեղեցւոյ այցելութեան եկողներն եւ հիւանդաց օգնութիւն ու մխիթարութիւն տանողները։

Արձանները քանդակուած են սպիտակ մարմարիոն քարէ, բնականէն քիչ մը մեծ, երկուքն ալ ոտքի վրայ՝ գեղեցիկ եւ սիրուն դիրքի մը մէջ։ Պատուանդաններն՝ որոնց վրայ կանգուն կեցած

են, երկու մետր բարձրութեամբ, չորեքանկիւն, կարմրախառն մարմարիոնէ յօրինուած՝ շքեղապէս կը փայլին։ Ո՞վ են արդեօք եւ որո՞նց յիշատա-



ՄԱՀԱՐՁԱՆ ՅՈՎՀԱՆՆԷՍ ԷՖ. ՍՊԱՐԹԱԼԵԱՆԻ:

կին են կանգնուած։ Սպարթալեան տոհմին երկու մեծ բարերարները կը ներկայացընեն արձանները։ Առաջինն՝ աջ ձեռքը կուրծքին վրայ դրած՝ ձա-

խովը գալարաձեւ թուղթ մը բռնած, որուն վրայ փորագրուած է հետեւեալ խորհրդաւոր խօսքը.

*Ած է որ յաջողէ*
*ի մեզ զկամելն*
*եւ զառնելն:*

Որչափ գեղեցիկ եւ քանինշանակալից խօսք. իւր բարեգործութեանց, բարիք ուզելուն եւ ընելուն յաջողութիւնն՝ Աստուծոյ կու տայ: Չի մեծամտիր, չի պարծենար այս մեծ բարերարն, որուն արձանին ոտից տակը, պատուանդանին խոյակին վրայ քանդակուած է իւր յիշատակն այսպէս.

Աստ հանգչի Յովսէփ Էֆ. Սպարթալեան
Ծնեալ 1825 Հոկ. 26: Մեռեալ 1882 Դեկ. 31:

Երկրորդ արձանն, աջ ձեռքը ազատ՝ դէպ ի վար բռնած, ձախովը նմանապէս գալարաձեւ թուղթ մը բռնած, որուն վրայ Իմաստնոյն հետեւեալ խօսքը քանդակուած է.

*Սկիզբն իմաստու-*
*թեան երկիւղ Տ՟ն*
*է:*

Աստուծոյ երկիւղը սրտին մէջ պահող սոյն մեծարելի անձը՝ իմաստութիւնն իւր բարերարութեանց սկիզբը դնելով, իրեն նմաններն ուրախացընելով անցուցած է կեանքը. եւ այժմ կը հանգչի սոյն կոթողին ներքեւ, թողլով իւր բարերարութեանց իբր յիշատակ՝ արձանն, որուն ոտից տակ նմանապէս գրուած է անունը.

Աստ հանգչի Յովհ. Էֆ. Սպարթալեան
Ծնեալ 1831 Յունվ. 10. Վախճ. 1887 Դեկ. 22:

Ազգային սոյն մեծ բարերարաց յիշատակներն արդարեւ յարմար եւ գեղեցիկ տեղ մ՚են

կանգնուած։ Այնպիսի վայր մը, ուր կը գտնուի հիւանդը, աղքատը, պանդուխտն եւ թշուառը, եւ որոնց այցելութեան եկողները տեսնելով նոյն կրկին



ՄԱՀԱՐՁԱՆ ՅԱԿՈԲ ԷՖ.Ի ՍՊԱՐԹԱԼԵԱՆ։

տոհմասէր բարերարաց կոթողները, թերեւս անոնց նմանելու բաղձանք, մարդասէր, տոհմասէր, աղքատասէր ըլլալու գրգիռ մ'ունենան սրտերնուն

մէջ։ Երանի թէ ազգը միշտ հրճուէր այսպիսի վեհ եւ տաճարական անձանց անուններով։ Երանի թէ նոր երիտասարդութիւնն եւ ապագայ սերունդն իր նախնեաց պատուական օրինակներուն



Ս. ԼՈՒՍԱՒՈՐՉԱՑ ԵԿԵՂԵՑԻՆ ԵՒ ՅԱՐԱԿԻՑ ՏԱՃԱՐԸ։

նմանելէ ետ չմնար. քանինե՜ր պիտի օրհնեն զիրենք, ինչպէս այս օրուան օրս որչափ դժբախտ-ներ կ'օրհնեն արձաններուս տակը հանգչողները։[1]

---

1 Յակոբ Էֆ.ի արձանը քանդակուած է յԱնգղիա. իսկ

Բ. Հիւանդանոցիս եկեղեցւոյն արտաքին տեսքը պարզ է. առջեւն ինչպէս նաեւ աջ ու ձախ կողմերն իբր զարդ կանգնուած են սիւնակներ՝ շէնքէն եւ իրարմէ չափաւորապէս հեռու, որոնք վեր կը բռնեն եկեղեցւոյ շուրջը հաստատուած հովանաւոր ծածկը եւ գեղեցիկ տեսք մը կու տան տեղւոյն։ Եկեղեցին ունի իրեն յատուկ երկու դուռն, աւագ դուռն եւ աջ կողմն երկրորդ դուռ մը։ Աւագ դրանս ճակատը հաստատուած է մարմարիոն քար մը, որուն վրայ քանդակուած է իւր շինութեան արձանագրութիւնն, այսպէս.

*Կառուցաւ Եկեղեցիս սրբոյն Գրիգորի*
*Լուսաւորչին արդեամբ համայն ժողովր-*
*դոցս ազգիս յառաջնորդութեան Տ. Մատթէոսի*
*Արքեպիսկոպոսի 1842*
*Եւ այժմ նորոգեցաւ արդեամբ երկուց*
*պայազատացս Յակոբայ եւ Յովհաննու Սպ-*
*արթալեանց Յառ. Տ. Մելքիսեդեկ Ծ. Վրդ. 1879։*

Եկեղեցւոյ երկաթաշէն ու կրկին փեղկերով ամրացուած աւագ դռնէն ներս մտնելով, ամբողջ եկեղեցւոյ ներքինն առջեւնիս բացուած կը տեսնենք. չունի բնաւ սիւն, որ արգելք ըլլայ աջ ու ձախ ակնարկ նետելու։ Շէնքը կամարակապ է, վերի կողմն երեք կարգ՝ զոյգ զոյգ երկաթեայ ձողեր պատէ պատ երկնցած են, որոնք կամարն ոտքերուն վրայ հաստատուն կը բռնեն։ Եկեղեցւոյս մեծութիւնն է՝ 12 մետր երկայնութիւն՝ դռնէ մինչեւ խորան. եւ 7.50 մետր լայնութիւն։ Քարաշէն եւ զօրաւոր պատերուն հաստութիւնն է 80 հարիւրամետր։ Չունի վերնատուն որ յատուկ է հայ եկեղեցւոյն։ Յատակը պարզ է եւ փայտաշէն, որուն վրայ փռուած են գորգերու կարպետներ եւ

---

Յովհաննէս Էֆ.ինը քանդակուած է Զմիւռնիա Իտալացի Previsani անուն քանդակագործէն։ Կ'ըսուի թէ Զմիւռնիա քանդակուածը յար եւ նման է, իսկ Անգղիա քանդակուածը չունի այնչափ նմանութիւն կենդանագրին հետ։

դրուած են երկու կարգ երկայն նստարաններ եւ աթոռներ։ Դասը յատակէն աստիճան մը բարձր է, միջավայրը կէս բոլորակ դուրս ելած, երկաթեայ զարդաձեւ վանդակով մը բաժնուած է եւ որուն







ՅԱՏԱԿԱԳԻԾ Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ԵԿԵՂԵՑԻՈՅ (ՀԻՒԱՆԴԱՆՈՑԻ):

երկու ծայրերը բաց են։ Դասին առջեւը բարձրացած է 80 հարիւրամետր բարձրութեամբ բեմ, որ իւր մարմարակուռ յօրինուածութեամբ՝ պարզ եկեղեցւոյս միակ զարդն ըլլալով՝ գեղեցիկ տեսք մը կ՚ընծայէ։ Բեմին վրայ մէկ կարգի մէջ՝ դէպ ի վեր բարձրացած են երեք խորան։ Խորաններս շինուած են գոգաւոր պատին մէջ, ճակատնին

կիսաբոլորակ եւ իւրաքանչիւր խորան աջ ու ձախն ունի զոյգ մը սիւներու, որոնք տեսք մը կու տան սեղանին: Աւագ խորանիս պատկերն է Ս. Յարութիւն, ձախակողմեանը Ս. Երրորդութիւն եւ աջակողմեանն Աստուածածին՝ Յիսուս մանուկը գիրկը: Աւագ խորանիս կամարակապ ճակտին վրայ գրուած կը կարդանք Քրիստոսի Տեառն մերոյ այս խօսքը.

*Զի զոր ինչ խնդրեցէք ի Հօրէ յանուն իմ տացի ձեզ:*

Դասին վրայ ձախ կողմը կը տեսնուի դուռ մը, որ աւանդատուն կամ փոքրիկ տաճարը կը հանէ զմեզ: Տաճարս ունի նաեւ պարտէզին վրայ իրեն յատուկ դուռն, որմէ՝ առանց եկեղեցին մտնելու, տաճարս կրնայ մտնել մէկը: Տաճարիս երկայնութիւնն է 2,50 մետր, իսկ լայնութիւնն 3 մետր: Տաճարս՝ որ իբրեւ աւանդատուն եւս կը գործածուի, ունի փոքրիկ խորան մը արեւելեան պատին մէջ, որուն պատկերը կը ներկայացնէ զՅիսուս, աջ ու ձախը Ս. Յակոբ եւ Ս. Յովհաննէս առաքեալներն: Իսկ ձախ պատին վրայ խոռոչի մէջ հաստատուած է մկրտարանը: Իբր աւանդատուն՝ կը տեսնուին մէկ կողմը դպրաց շապիկները կախուած, միւս կողմը բուրվառ, հոս աշտանակներ, անդին մոմեր եւ տեսակ տեսակ եկեղեցական զարդեր: Տաճարիս պարտէզին վրայ հայող դրան արտաքին ճակտին վրայ հաստատուած է մարմարիոն քար մը, որուն վրայ քանդակուած է հետեւեալ յիշատակարանը:

Մատուռս այս կառուցաւ
յանուն որդւոցն որոտ-
ման արդեամբք երկուց եղ-
բարց տոհմական հար-
ազատացն Յակոբայ եւ
Յովհաննու Սպարթալեանց
18 79:

Գ. Եկեղեցւոյ աջ կողմն՝ արտաքուստ՝ կը տեսնենք մատրանաձեւ քարուկիր շինութիւն մը, որ թէպէտ եւ ի ներքուստ եկեղեցւոյ հետ յարաբերութիւն չունի, բայց արտաքուստ եկեղեցւոյ շէնքին հետ մէկ մարմին կը կազմէ եւ ձախակողմն եղած տաճարին կամ աւանդատան իբր համապատասխանող թեւ մը դուրս ցցուած է պարտէզին մէջ: Մատուռս ունի միայն երեք կողմն որմեր, առջեւը վերէն վար բաց է. երկաթեայ զարդաձեւ վանդակ մը հաստատուած եւ ապակեայ փեղկերով եւ դռնակով գոցուած է, որով կրնայ մէկն անարգել դիտել մատրանս ներսը գտնուած պատուական առարկաները: Տեղւոյն մեծութիւնն է՝ 2·50 մետր երկայն եւ 1·78 մետր լայն. չունի զարդեր, սիւներ, խոյակներ, որ մեր մտադրութիւնը գրաւեն. քանի մը պատկերներ եւ աստոց վրայ կախուած նուէրներն են իւր զարդարանքը:

Միջավայրն արեւելեան պատին վրայ կախուած է մեր յարգութեան եւ սիրոյ արժանի սքանչելի անձի մը պատկերը: Լուսաւորչայ՝ բազմաչարչար Ս. Գրիգորի պատկերն է այս, որուն պաշտպանութեան յանձնուած են պատսպարանս, աշխատաւորներն եւ անկարները: Պատկերիս մեծութիւնն է՝ 1·84 մետր երկայն կամ բարձր եւ 1·28 մետր լայն: Ձեռաց լայնութեամբ՝ գեղեցիկ զարդաձեւ գործուած արծաթեայ շրջանակ մը չորս կողմը պատած է[1]: Պատկերս կը ներկայացընէ զՍ. Գրիգոր Լուսաւորիչ, հայրապետական թագը գլուխը, օձաձեւ գաւազանը ձեռքը բռնած, միջավայրը կեցած. առջեւը Տրդատ թագաւորը ծունկի եկած, պալատականներն ալ երկու կողմը. Ս. Գրիգոր կը մկրտէ զՏրդատ: Պատկերիս

---

1 Շրջանակս Ստեփան Սպարթալեանի Տիկինը՝ Տ. Փոլինա շինել տուած է 1893ին, ի ցոյց իւր սիրոյն առ Ս. Լուսաւորիչն եւ ի նշան իւր բարեպաշտական զգացմանց:

շուրջը՝ փոքրիկ բոլորակներու մէջ նկարուած կը տեսնուին սոյն բազմաչարչար Հօր 14 չարչարանքները. մտադրութեամբ նայելու է, հեռուէն չեն երեւար։ Այս չարչարանքները մի առ մի դիտած ժամանակնիս, պատկերին վերի կողմը, մոմլաթին վրայ գրուած կը տեսնենք հետեւեալը.

Ցշտկ Ղօնճաեան մՆի Պաղտասարին 1827 Իզմիւրի յիվանդանոցին:

Պատկերիս վրայ կախուած են զանազան նուէրներ, ինչպէս Ս. Գրիգորի բռնած օծագլուխ գաւազանը, Թագը, եմիփորոնը, ձեռքերը՝ արծաթեայ. են, բաց իասոնցմէ կը տեսնուին արծաթէ սրտեր, ձեռքեր, սրունքներ, ոտքեր եւ ուրիշ զանազան ընծաներ։ Պատկերս ժամանակին խնամքով նայուած չէ. տեղ տեղ մոմլաթին վրայէն գոյները թափուած են եւ տեղ տեղ ալ նուէրներ կախելու համար ծակծկուած։ Բարի են սուրբին ընծաներս, սակայն շատ աւելի աղէկ պիտի ըլլար, եթէ որ փոխանակ պատկերը ծակելու եւ հաստատելու, պատին վրայ տուփեր հաստատուէին եւ ասոնց մէջ կախուէին այս նուէրները, որով թէ կորսուելու վտանգէն ազատ կը պահուին եւ թէ պատկերս ալ կը մնար մաքուր եւ տարիներ կը դիմանար։ Կը պատմուի թէ նախկին հիւանդանոցի շէնքին սրահին ճակատը՝ կախուած էր Ս. Գրիգորի պատկեր մը, որուն վրայ հնութեան պատճառաւ ալ կերպարանքի հետք մնացած չըլլալուն՝ ուրիշ հնագոյն պատկերներու հետ թաղած են եւ տեղը կախած այժմեան պատկերը, զոր Ղօնճաեան կը պահէր իւր տունը։ Մատուռս չկառուցուած՝ ժողովուրդը սովոր էր նախկին հիւանդանոցին սրահին մէջ կախուած Ս. Գրիգորի թէ հին եւ թէ նոր պատկերիս այցելութիւն ընելու։ Եկեղեցին եւ մատուռս շինուելէ յետոյ՝ տեղս ալ կատարեալ ուխտատեղի մը դար-

ձած է։ Ամէն երկուշաբթի, մատրանս այցելութեան նուիրուած օրն, առաւօտընէ մինչ իրիկուն, վանդակաձեւ դռները բաց կ'ըլլան եւ հարուստն ու աղքատը, մեծն ու փոքրը կը փութան այցելութիւն մ'ընելու իրենց Հօր, Ս. Գրիգորի. ճրագ մը վառելու, պաղատանքներ դէպ ի երկինք ղրկելու եւ կրօնական մխիթարութիւն գտնելու։ Օրն ի բուն անպակաս է ժողովուրդն, ոչ նուազ է նաեւ հեռաւոր վայրերէ եկողներուն թիւը։ Տաճարիս չմերձեցած՝ հեռուէն կը տեսնուին արդէն պատկերաց առջեւ վառուած ճրագներու շողշողուն բոցերը, նորանոր ուխտաւորաց կամ ժողովրդեան գալստեամբը՝ նորանոր մոմեր կը տնկուին։ Նոյն օրը մատրանս առջեւ կը դրուի սեղան մը, վրան արծաթեայ պնակ մը՝ խաչահանգիստ (օրհնեալ) ջրով, քովն ալ արծաթի ափսէի վրայ երկու արծաթեայ դգալներ, որոնցմով ժողովուրդը կը խմէ օրհնած ջրէն։ Սեղանիս վրայ կը դրուին նաեւ արծաթեղէն տուփերու մէջ ամփոփուած մասունքներ։ Անոնցմէ մին, ձեռաց դաստակի մեծութեամբ, հաւկթաձեւ գործուած, ճառագայթաձեւ եզրներով[1], վրան ապակիով մ'ամրացուած շքեղ տուփ մ'է, որուն մէջ կը տեսնուի ձեռաց ճկոյթ մատի մ'երրորդ մեծագոյն ոսկրին նման մաքուր մնացած ոսկր մը։ Լուսաւորչայ մասունքը կը համարի այս Զմիւռնացի հայ ժողովուրդը, որուն ի համբոյր կը դիմէ ամէն երկուշաբթի օրերը[2]։

---

1 Այս ճառագայթաձեւ տուփը Տիկին Լեւոն Մկրտիչեան վերջին տարւոյս մէջ փոխել տալով՝ աւելի շքեղ եւ սիրուն տուփ մը նուիրեց, որուն մէջ ամփոփուած է այժմ մասունքը։

2 Մասունքիս վերաբերեալ որեւիցէ պատմական դրութիւն, արձանագրութիւն կամ յիշատակարան մը գտնելու որչափ ալ աշխատեցանք ամէն կողմ, չյաջողեցանք բան մը գտնել։

Մատրանս մէջ՝ աջ ու ձախ պատերուն վրայ կախուած են մոմլաթի վրայ նկարուած ուրիշ պատկերներ ալ։ Ատոնցմէ մին, որ է Աստուածածին՝ Յիսուս մանուկը գիրկը, ժողովրդեան մէջ մեծ յարգ ունի։ Ամբողջովին արծաթեայ ձուլուածոյ զարդով մը ծածկուած է, միայն Աստուածածնայ եւ Յիսուսի կերպարանքները կը տեսնուին։ Թէ ինչպէս պատկերս տեղւոյս նուիրուած է, կը պատմուի հետեւեալը, զոր փակագծի մէջ յառաջ կը բերենք։ — "Տարիներ յառաջ, նախնապէս պատկերս Զմիւռնիա բերուած է Կրետէ կղզիէն եւ այլազգւոյ մը ձեռքն ինկած։ Սա իրեն համար իբր աւելորդ բան համարելով՝ տան վերնայարկը կը ձգէ պատկերս։ Տարիներ անցնելէ ետքն՝ այլազգին կը սկսի գիշերներն անհանգստութիւն մ'ունենալ, տան մէջ վրդովում մը կը զգայ. պատճառն ուզելով իմանալ ամէն կողմ կ'որոնէ, եւ վերնայարկը՝ փոշիներու տակ ծածկուած կը գտնէ պատկերս։ Այս պատկերն իւր անհանգստութեան պատճառ համարելով՝ իսկոյն կը կանչէ յոյն ընտանիք մը եւ անոր կը յանձնէ պատկերս։ Այս յոյն ընտանիքը քանի մը տարի իրեն քով պահելէն ետքը դրացի հայ ընտանիքի մը ընծայ կու տայ, ըսելով միանգամայն, թէ մենք փայտի վրայ քաշուած պատկերներ ունինք եւ կը գործածենք, այս լաթի վրայ նկարուածը ձեզի պարգեւ։ Հայ ընտանիքս ալ քանի մը տարի իրեն տան մէջ կախելէն վերջն նուէր կու տայ Հիւանդանոցիս եկեղեցւոյն մատրանը։„ Այսպէս իբր 15 տարիէ ի վեր կը գտնուի պատկերս տաճարիս մէջ, իբրեւ հրաշագործ կը յարգուի ժողովրդեան կողմանէ, որուն այցելութեան կու գայ չորեքշաբթի օրերը։

Դ. Մինչեւ ցայս վայր ըսուածները բուն Հիւանդանոցին առաջակողմը գտնուած պարտէզին մէջ տեսնուածները կը ներկայացընէին. մերձենանք վայրկեան մ'ալ Հիւանդանոցին։ Հիւանդանոցիս

շէնքն է քարուկիր, եռայարկ եւ խաչաձեւ. իբր 65 մետր երկայնութիւն եւ 14 մետր լայնութիւն ունի առաջակողմը. խաչաձեւ դուրս ելած թեւե-



Ս. ԼՈՒՍԱՒՈՐՉԵԱՆ ՀԻՒԱՆԴԱՆՈՑԻ ՃԱԿԱՏԸ:

րուն մէջ՝ վերին յարկը ելելու աստիճանները շինուած են: Շուրջը պատած է պարտէզ մը, որով ամբողջ շէնքը բաց եւ օդաւէտ դիրք մ'ունի. ամե-

նկարեւոր իր մը՝ այսպիսի օգտակար հիմնարկութեան։ Ընդարձակ պարտէզին մէկ կողմը շինուած է յիմարանոցը, ասդին հիւանդանոցի շէնքին աւելի մօտ՝ հոգաբարձուաց խորհրդարանը եւ քանի մը սենեակներ։ Հիւանդանոցին դրան առջեւը՝ չորս սիւներ վեր կը բռնեն մինչեւ երրորդ յարկ՝ դրան վրայ շինուած հովանաւոր զարդաձեւ ծածկը։ Այս ծածկին վրայ՝ երկրորդ եւ երրորդ յարկին մէջտեղը՝ զետեղուած է երկայնաձեւ քար մը, որուն մէկ ծայրը գաղղիերէն, միւս ծայրը տաճկերէն գրերով, իսկ միջավայրը հայերէն քանդակուած է հիւանդանոցիս շինութեան յատուկ յիշատակարանը. այսպէս։

"Ի նշան ամենաջերմ երախտագիտութեան Ազգային Վարչութեան Հայոց Զմիւռնիոյ, կանգնէ զայս Յիշատակարան յանուն երկուց հարազատ Պայազատացն Յակոբայ եւ Յովհաննու Սպարթալեանց. որոց առատաձեռն ծախիւք եւ զուարթուն ջանիւք կառուցաւ հոյաշէն Հիւանդանոցս ամենայն պարագայիւք հանդերձ ի 1879 ամի, յԱռաջնորդութեան Տ. Մելքիսեդեկի Ծ. Վարդապետի Մուրատեանց եւ նուիրեցաւ ի պատսպարան անտէրունչ հիւանդաց եւ անկարողաց Ազգիս Հայոց. ի փառս Մարդասիրին Աստուծոյ, եւ ի յիշատակ ճշմարիտ ողորմածութեան եւ ազգասիրութեան ազնուատոհմ Գերդաստանին Սպարթալեանց, զոր պահպանեսցէ Տէր անսասան ի պարծանս Ազգիս. Ամէն։„

Այս արձանագրութիւնը կը յիշեցրնէ այժմեան հիւանդանոցին կառուցման տարին եւ զայն կառուցանող բարերարները։ Հիւանդանոցիս բացման հանդէսը տեղի ունեցաւ 1879 Յունր. 14ին մեծ շքեղութեամբ բազմաթիւ հանդիսականաց առջեւ, Մակար Ծ. Վարդապետ կարդացած է այս մեծ բարերարաց կողմանէ յօրինուած ճառ մը. Մելքիսեդեկ Առաջնորդ խօսած է իրեն նիւթ

ընելով "Բարիք, Բարերարք" ինչպէս նաեւ Արժ. Տ. Յակոբ քահանայ Պալապանեան եւ Մամուրեան ի դիմաց ազգային վարչութեան ատենաբանած են։ Հայ տիկնայք եւս մասնակցած են այս ուրախութեան եւ այն ամսոյ 17ին առանձին բացման հանդէս մ'ալ կատարած են իրենց կողմանէ, զանազան ճառախօսութիւններ ընելով։ Իսկ նախկին շէնքին վերաբերեալ յիշատակարանները՝ շրջանակի մը մէջ դրուած եւ կախուած են ներքը դաւթին կամ սրահին պատէն. Հին յիշատակարանին տակ գրուած է նաեւ ներկայ շէնքին վերաբերեալ երկրորդ գրութիւն մը։ Վերոգրեալ եւ հետեւեալ շրջանակի մէջ գտնուածները՝ Առաջնորդարանի Դիւանատան մատեաններու մէջ եւս արձանագրուած են յար եւ նման։

"Յիշատակարան Ս. Լուսաւորչեան Հիւանդանոցիս Զմիւռնիոյ։ Նախակառուցումն Հիւանդանոցիս եղեւ ի 1801 թուականի Փրկչին, ի Հայրապետութեան Տեառն Դաւթի կաթողիկոսի ամենայն Հայոց, ի Պատրիարգութեան Սրբոյ Երուսաղեմայ Տեառն Թէոդորոսի Արքեպիսկոպոսի, եւ ի Պատրիարգութեան կոստանդնուպոլսոյ Տեառն Յովհաննու Արքեպիսկոպոսի, եւ յԱռաջնորդութեան Զմիւռնիոյ Տեառն Մարտիրոսի Արքեպիսկոպոսի, արդեամբ եւ տրովք համայն ժողովրդեան քաղաքիս։

"Իսկ 1879 թուին ի հիմանց նորոգ կառուցաւ հոյակապ եւ շքեղ քան զառաջինն, ի Հայրապետութեան Տեառն Գէորգայ Դ. կաթողիկոսի ամենայն Հայոց, ի Պատրիարգութեան սրբոյ Երուսաղեմայ Տեառն Եսայեայ Արքեպիսկոպոսի, եւ ի Պատրիարգութեան կոստանդնուպոլսոյ Տեառն Ներսէսի Արքեպիսկոպոսի, եւ յԱռաջնորդութեան քաղաքիս Տեառն Մելքիսեդեկի ծայրագոյն Վարդապետի, մի միայն արդեամբք երկուց վեհազն

պայազատաց Ցակոբայ եւ Ցովհաննու Սպարթալեանց[1]։

---

1 Սոյն բարերարաց հիւանդանոցս կառուցանելու համար գրած նամակին պատճէնն է հետեւեալը։ "Արժանապատիւ Տ. Մելքիսեդեկ Վարդապետ Մուրատեանց եւ Նախագահ Քաղաքական ժողովոյ վիճակիս։ Արժանապատիւ Հայր, Մեք ստորագրեալ երկոքին հարազատքս՝ փափաքելով ըստ մերովսանն կարողութեան՝ ծառայութիւն մատուցանել մեր սիրելի Ազգին՝ եւ առ այժմ նշմարելով մանաւանդ որ քաղաքիս ազգային Հիւանդանոցի շէնքը հնացած եւ առողջապահիկ պայմաններէ զուրկ վիճակի մէջ կը գտնուի, խորհեցանք մեր ծախքով եւ վերահասութեամբ նախկին հիւանդանոցի տեղւոյն եւ սեպհական գետնոյն վրայ՝ նոր հիւանդանոց կառուցանել, եւ այս նպատակաւ յատուկ ճարտարապետի ձեռամբ գծագրել տուինք շինուելիք Հիւանդանոցի յատակագիծը։ = Բայց որովհետեւ օրինաւորութիւնը կը պահանջէ նախ պատկառելի ժողովոյդ հաւանութիւնն ընդունիլ եւ ապա ձեռնարկել շինութեան, ուստի եւ մեք կը փութամք ահա ներկայիւս մեր սոյն փափաքը յայտնելով հանդերձ՝ մատուցանել ընդ նմին նաեւ պատրաստուած յատակագիծը, յորմէ կարող էք տեսնել մտադրեալ շինուածոյն դիրքը, սենեկաց քանակութիւնը եւ այլն։ Առ այս եթէ հարկ տեսնուի մանրամասն բացատրութիւն (զոր չենք կարծեր) կարող է գոհացընել զպատկառելի ժողովդ սիրելի հօրեղբօրորդին մեր, Պարապետ աղա Ա. Սպարթալեան, որ մեր կողմէ գործակատար կարգուած է այս մասին։ Քաջայոյս եմք, Արժանապատիւ Հայր, որ պատկառելի ժողովդ պատուական Ցնտեսական խորհրդոյ խորհրդածութիւնն եւս ընդունելէն զկնի՝ կը փութայ յայտնել մեզ իւր բարեհաճ հաւանութիւնը, որպէս զի եւ մեք առանց ժամանակ կորուսանելու ձեռք չըհասած՝ յաւարտ հասուցանեմք յիշեալ շինութիւնն ի փառս մարդասիրին Աստուծոյ, ի կատարումն բաղձանաց մերոց եւ ի սփոփանս ամենայն պատսպարելոցն ընդ յարկաւ նոյն պատսպարանին։ = Անտարակոյս լինելով որ մեր սոյն առաջարկը քաջալերութեան կ'արժանանայ պատկառելի ժողովոյդ կողմէն, եւ հիւանդաց առժամանակեայ տեղափոխութեան մասին կը տնօրինուի ինչ որ

Հիւանդանոցիս անցեալոյն եւ ներկայէն պատկանող այս արձանագրութիւնները մեզի այլ եւս իւր սկիզբը հետազօտելու նիւթ չեն թողուր: Ըստ աւանդութեան՝ մինչեւ 1800, այս ընդարձակ տեղւոյն վրայ կարգաւորեալ շէնք մը չկար, այլ քանի մը տնակներ, ուր կը դարմանուէին ժանտահարները: Վերոյիշեալ Թուականին կարգաւորեալ շէնքի մը հիմ դրուած է, որ եւ յընթացս ժամանակաց նորոգուած եւ ընդարձակուած է: Ուստի շինութեան Թուականին համար յիշատակարաններովս գոհ ըլլալով՝ մտնենք շէնքին մէջ:

Ե. Հիւանդանոցիս ատրիճանաւոր դռնէն ներս մտնելով՝ առջեւնիս կ'ելլէ ընդարձակ սալայատակ սրահ մը, որուն երկու կողմը հաւասարապէս բաժնուած կը գտնուին ութը խուց: Առնցմէ՝ դիմացէ դիմաց եղող առաջին երկու խուցերն որոշուած են Տեսչութեան, որոնց միոյն ճակատը գրուած է, Գրասենեակ եւ միւսին Սենեակ Տեսչի. իսկ մնացած խուցերը յատկացուած են հիւանդաց, որոնց իւրաքանչիւրին մէջ կան երեքական մահճակալ, աթոռ մը եւ սեղան: Սալայատակ սրահիս դիմացը կը տեսնուի լայն եւ ընդարձակ խուց մը, որուն դրան ճակատը գրուած կը կարդանք Սեղանատուն, իսկ աւելի վարը հաստատուած կը տեսնենք մարմարիոն քար մը հետեւեալ քանդակով.

"Ի նուէր ազգիս Հայոց հոյակապ հիւանդանոցս ի հիմանց կառուցաւ յօժարակամ եւ առատաձեռն արդեամբ երկուց վեհանձն եղբարց բարերարաց Յակոբայ եւ Յովհաննու Սպարթալեանց 1878 ի Զմիւռնիա:"

---

կարեւորն է՝ ի ձեռն պատուարժան Տնտեսական խորհրդոյ, Մնամք,

Զմիւռնիա 23/4 Օգոստոս 1877:

Յակոբ եւ Յովհաննէս Ե. Սպարթալեան:

Սեղանատանս ներսի կողմը՝ նոյնպէս դրան ճակատը հաստատուած է մարմարիոն քար մը հետեւեալ քանդակով.

“Աչք ամենեցուն ի քեզ յուսան եւ դու տաս կերակուր նոցա ի ժամու։ Բանաս զձեռն քո եւ լցուցանես զամենեսեան քաղցրութեամբ կամօք քովք։ Գոհացարուք զՏեառնէ զի բարի է յաւիտեան է ողորմութիւն նորա։„

Սեղանատանս աջ կողմը կը գտնուին սպասաւորաց սենեակները. իսկ ետեւը խոհանոցը, մառանը, բաղանիքը, հիւանդ կանանց խուցերը եւն։ Այս ամէնը կը կազմեն երկրորդ յարկիս բաժանումները. առաջին կամ գետնայարկը կը գործածուի իբր փայտանոց, ածխանոց եւն։ Սեղանատան ետեւը գտնուած մասերուն վրայ չկայ ուրիշ յարկ, որով շէնքին կէսը եռայարկ եւ կէսն ալ կրկնայարկ ձեւ մ'առած է։

Շէնքին խաչաձեւ դուրս ելած թեւերուն մէջ հաստատուած են փայտաշէն սանդուխները, որոնք կրկին դարձուածներով երրորդ յարկը կը հանեն զմեզ։ Սանդուխներուս առաջին դարձուածին ճակատը՝ պատին վրայ գրուած է՝ միոյն Աւետարանի եւ միւսին Սաղմոսի խօսքերն։ Այնպէս որ մէկ թեւին սանդուխէն վեր ելլողն իւր դիմացը կը տեսնէ այս գրութեանց մին, եւ ապա երկրորդ թեւին աստիճաններէն վար իջնալով՝ առջեւը կը տեսնէ միւս գրութիւնը։ Ասոնք են հետեւեալները.

(Ա)

“Ջի քաղցեայ եւ ետուք ինձ ուտել. Ծարաւեցայ եւ արբուցիք զիս. Օտար էի եւ ժողովեցիք զիս, մերկ՝ եւ զգեցուցիք զիս. հիւանդ էի եւ տեսիք զիս. ի բանտի էի եւ եկիք առ իս։ Մատթ. ԻԵ. 35—36.„

ՅԱՏԱԿԱԳԻԾ ՀԻՒԱՆԴԱՆՈՑԻ (Բ. յարկ)։

1. Սենեակ տեսչի.
2. Գրասենեակ.
3. Սենեակ հիւանդաց.
4. Սեղանատուն.
5. Զգեստատուն.
6. Խոհանոց.
7. Մառան.
8. Ջրոյ ընդունարան.
9. Բաղանիք.
10. Սենեակ հիւանդաց։






(Բ)

“Երանի՛ որ խորհի զաղքատն եւ զտնանկն յաւուր չարէ փրկէ զնա Տէր։ Մութլու, քի փուքարալարը վէ սէֆիլլէրի տիւշիւնիւր. Ալլահ քէօթիւ կիւնլէրտէն քէնտիսինի գուրթարըր։ Սաղմ.։”

Սանդուխին առաջին եւ երկրորդ դարձուածներէն վեր ելլելով՝ լուսաւոր եւ ընդարձակ սրահ մը կը պարզուի առջեւնիս, որ դիմացէ դիմաց բարձրացած սանդուխներուն աջ ու ձախն՝ երկայնութեան կը տարածուի։ Սրահիս վրայ, երկայնութեան եւ լայնութեան, դիմացէ դիմաց հաւասարապէս բաժնուած են խուցերը, պարզ եւ մաքուր։ Լայնութեան վրայ գտնուած խուցերն, որոնք շէնքին ճակատը կ'իյնան, որոշուած են բժշկին, վիրաբուժութեան եւ բժշկական գործողութեանց. իսկ մնացած խուցերը հիւանդներու սեպհականուած են։ Ընդհանրապէս թէ երկրորդ եւ թէ երրորդ յարկին հիւանդաց սեպհական խուցերը նոյն մեծութիւնն ունին. իւրաքանչիւրը լուսատու պատուհանով մը լուսաւորուած եւ դռնով մը գոցուած է։ Ինչպէս երկրորդ, նոյնպէս երրորդ յարկի խուցերուն մէջ զետեղուած են երեքական երկաթեայ մաքուր մահճակալներ[1], եւ ամէն մէկ մահճակալին քով սեղանիկ մը եւ աթոռ մը։ Երրորդ յարկիս վրայ գտնուած խուցերն ընդ ամէնը 22 են, որոնցմէ չորսը շինուած են սանդուխներու վրայ։

Ընդարձակ սրահին ձեղունին միջավայրը՝ դէպ ի դուրս բարձրացած է քառանկիւն գմբէթ մը, որուն շուրջն եղած պատուհաններէն արեգակն իւր լուսատու ճառագայթները կը սփռէ դէպ ի

---

1 Տք. Տիգրան Սպարթալեան վերջին տարւոյս մէջ (1898)՝ իւր ծախիւք 25ի չափ նորաձեւ երկաթեայ մահճակալներ նուիրեց հիւանդանոցիս։





ՅԱՏԱԿԱԳԻԾ Գ. ՅԱՐԿԻ Ս. ԼՈՒՍԱՒՈՐՉԵԱՆ ՀԻՒԱՆ-ԴԱՆՈՑԻ:

ներս եւ կը լուսաւորէ յարկս՝ կենդանութիւն եւ ոգի տալով հիւանդաց եւ տկարաց։ Գմբէթիս ձեղունին վրայ՝ սիրուն գոյներով հրեշտակ մը նկարուած կը տեսնենք, առջեւն ալ հետեւեալ գրութիւնը՝ նոյնպէս գրուած ձեղունին վրայ։

Հրեշտակ եմ ես աստ թեւատարած,
Կարդացէք ալատզամն այս գիր արժանաց.
Զաւակ մի թռաւ յերկրէս վերասլաց
Խառնեցաւ ի գունդս դասուց հրեշտակաց:
Անունն Մարտիրոս ծետ Սպարթալեանց,
Գթած հօր որդեակ տեսլեամբ գեղապանծ.
Ցերկիր նայեցաւ յերկնից ի բարձանց,
Ցարտօսր շարժեցաւ վասն մահացուաց:
Հայր ու հօրեղբայր պատանւոյն հայկեան,
Ի խանդ յուզեցան սրտիւք միաբան.
Առ ինչ արտասուքդ որդեակ գթութեան
Գոչեցին անդէն եղբարքն երկոքեան:
Սրբել դու կամիս զարտասուս յաչաց
Որբոց տնանկաց հիւանդ աղքատաց.
Օն եւ մենք ի դոյն խորհուրդ սիրապանծ
Վառեալ կամք հոգւով ի բազում ամաց:
Ասացին եւ անդէն շինել սկսան
Զայս յարկ հոյակապ խորան գթութեան.
Տեսս Մարտիրոս, երեսքն ժպտեցան,
Հրեշտակք ընդ մարդկան եղեն օրհնաբան
1878:

Այս տապանաւորի ձեւով գրուած յիշատակարանս՝ բերնէ բերան պատմուածին հետ կը միաբանի։ Կ՚ըսուի թէ Սպարթալեանք Մարտիրոս անուն որդի մ՚ունէին, որուն վաղահաս մահուան յիշատակին համար իւր սիրելիները կանգնած են մեծաշէն հիւանդանոցս։ Հիւանդանոցիս շէնքն եւ յիշատակարանները աչքէ անցընելէ ետքը՝ կը մնայ վայրկեան մ՚ալ խուցէ խուց մտնել եւ հոն հանգչողներն ի մերձուստ դիտել։

Զ. Սրտաճմլիկ եւ տխրական է արդարեւ հիւանդաց այցելութիւն ընելը. բայց այցելու մը

ուրախ դէմքով եւ զուարթ երեսով պէտք է տառապելոց մերձենալ, որոնք կը սպասեն միշտ մխիթարութեան, նիւթական եւ բարոյական դարմանի: Խօսիլ անոնց հետ ուրախ դէպքերու վրայ եւ քաջալերել զիրենք ամենայն կերպով, մեծ մխիթարանք է վշտացեալներուն: Ընդհանրապէս հիւանդանոցս դիմողներն են պանդուխտներն, որոնք կամ երկաթուղւոյն վրայ իբր գործաւոր հիւանդացած եկած են հոս, եւ կամ քաղքին մէջ՝ խաներու, սրճարաններու մէկ անկիւնը, անխնամ ինկած են հիւանդագին եւ հոս փոխադրուած. կան նաեւ տեղացի աղքատ ընտանեաց հիւանդներ: Շատերը տենդէ բռնուած են, ոմանք յօդացաւութենէ կը տառապին, իսկ ոմանք ալ ներքին կրծող ախտէ մը կը հիւծին. ոմանք արտաքուստ մարմնոյ վիրաւոր մէկ անդամը կապած կը պառկին, ոմանք ալ ներքին վէրքէ մը, սրտի կամ աղեաց ցաւէ կը տառապին: Ի՜նչ արգահատելի տեսարաններ, մէկը համբերատար՝ լռիկ մնջիկ բժշկուելու յուսով օրերը կը համրէ, միւսն անբուժելի կ'երեւակայէ հիւանդութիւնը եւ երկայն ախ կը քաշէ: Ոմն հեռաւոր երկիր, իր հայրենի երդին տակ գտնուող սիրելիներուն մտածութեան մէջ ընկղմած է, իսկ ուրիշ մը ցաւերու կսկիծէն ամէն բան մոռցած, աջ ու ձախ դառնալով սփոփանք կը փնտռէ: Անդին ուրիշ խուց մը, մէկը հիւանդութենէ տկարացածու քնհատ՝ զօրանալու համար քնանալ կ'աշխատի, ուրիշ մը կէս ընկողմած կը մրափէ: Հոս մէկը բաւական ապաքինած, ոտքի վրայ ելած, խուցին մէջ մէկ երկու քայլ առնելով զօրութիւնը կը փորձէ եւ դարձեալ կ'իյնայ անկողնոյն վրայ. անդին ուրիշ մը մէկ երկու օրէն հիւանդանոցը պիտի թողում մտածութեամբ, երկայն եւ ընդարձակ շրջաններ կ'ընէ, սրունքները կը վարժեցընէ սրահին մէջ: Ո՜, ո՜վ գիտէ թէ քանի հազար խորհուրդներ կ'անցնին այս վշտահարներուն

մոքէն, որչափ իրարմէ տարբեր եւ տեսակ տեսակ. սակայն ամէնն ալ ունին ընդհանուր մտածութիւն մը, բաղձանք մը՝ օր մը յառաջ բժշկուելու եւ առողջանալու։

Ընդհանրապէս հիւանդանոցս կ՚ունենայ միշտ 30 — 40 հիւանդ, որոնք առողջանալով կը մեկնին մի առ մի, նորեկներու թողլով իրենց տեղերը։ Տարուոյն եղանակաց անհարթութեան կամ ուրիշ դէպքերու պատճառաւ, երբեմն հիւանդացթիւը 60—70 կ՚անցնի։ Ամբողջ տարուան մը մէջ՝ իբր 650—860 հիւանդ կը խնամէ հիւանդանոցս, որոնցմէ հարիւրին հինգ-վեցը չկրնալով օգտուիլ բժշկաց դարմաններէն՝ կը կնքեն իրենց մահկանացուն։

Հիւանդանոցիս արձանագրութեանց մատեանէն կ՚ընդօրինակենք հետեւեալը՝ հիւանդաց թուոյն վրայ ճշգրիտ գաղափար մը տալու համար։

1895 Յունիս 1 — 1897 Ապրիլ 30

| Եկեալք | | Մեկնեալք | |
|---|---|---|---|
| Հայ այր | 1136 | | 1214 |
| » կին | 120 | Վախճ. հայ. այր | 74 |
| Յոյն այր | 39 | » » կին | 12 |
| » կին | 4 | » յոյն այր | 6 |
| Բողոքական | 6 | » մահմ. այր | 1 |
| Գերմանացի | 5 | Խնամոց ներքեւ | 34 |
| Մահմետական | 28 | | |
| Հրեայ | 3 | | |
| | 1341 | | 1341 |

1897 Մայիս 1 — 1898 Մարտ 1

| Եկեալք | | Մեկնեալք | |
|---|---|---|---|
| | 764 | | 707 |
| | | վախճ. | 57 |

Այս հիւանդներէն զատ, հիւանդանոցս կը խնամէ նաեւ 10—15ի չափ ծերեր կամ անկարողներ եւ 20—25 յիմարներ, որոնց բնակարանը

հիւանդանոցիս շէնքէն հեռու՝ պարտէզին մէկ կողմը շինուած է։

Է. Հիւանդանոցիս մէջ պատսպարեալ այս ամէն թշուառներու հոգը՝ բնականապէս ազգային ամէն անհատի վրայ կ'իյնայ, ամէն անձ նախ նիւթապէս՝ Աւետարանին այրւոյն նաքարակիտը կրնայ եւ պէտք է տալ գթասիրական այս հիմնարկութեան, եւ երկրորդ երբեմն երբեմն այց ելլելով տեղւոյս՝ բարոյապէս կրնայ օգնել հիւանդաց, մխիթարելով եւ քաջալերելով զիրենք։ Սակայն այս ընդհանուրին հոգն ամփոփուած է մասնաւոր անձանց վրայ, որոնց պաշտօնն է ի մասնաւորի հիւանդանոցիս ելեւմուտից նայիլ, բարեկարգութեանց վրայ հսկել եւ աշալուրջ խնամքով հաստատութիւնս շէն պահել։ Այս մասնաւոր անձինքը կը կազմեն հիւանդանոցիս հոգաբարձութիւնը։ Հոգաբարձութեանս անդամներն երբեմն թուով հինգ՝ երբեմն աւելի կ'ըլլան. որոնք երկու տարին անգամ մը կ'ընտրուին քաղաքական ժողովքին կողմանէ։ Հիւանդանոցիս բարեյիշատակ հիմնարկողաց կտակին համաձայն՝ սոյն անդամոց մէջ պիտի գտնուի միշտ Սպարթալեան տոհմէն անձ մը. միացածները կրնան ըլլալ որ եւ իցէ ազգային՝ արժանաւոր հոգաբարձութեան։ Այս անդամները վերընտրելի են, իրենց երկու տարւան պաշտօնի ընթացքը կատարելէ յետոյ կրնան վերստին ընտրուիլ եւ յառաջ վարել այս գործը։ Ընդհանրապէս կիրակի օրերը կը ժողովին եւ կը խօսին ու կը խորհին կարեւորաց եւ բարենորոգութեանց վրայ։ Հոգաբարձութեանս նախկին անդամներն էին՝ Սպարթալեան Թագւոր Էֆ., Ճէլէպեան Բժիշկ Առաքել, Գալուստեան Յովհաննէս Օհանճան, Քէշիշեան Գէորգ, Գասպարեան Եփրեմ։ Իսկ 1898 տարւոյ սկիզբէն սկսեալ հոգաբարձութեանս գլուխը նոր գործունէութեամբ լի՝ եռանդուն անձինքներ անցած կը տեսնենք, այնպիսի

անձինքներ՝ որոնք իրենց երիտասարդական աշխոյժ գործունէութեան հետ՝ տոհմասիրական եւ մարդասիրական ոգին միացուցած, քաջալերիչ հակողութեամբ կը ճգնին հիւանդանոցիս յառաջադիմութեան համար: Եւ արդարեւ այս Նոր հոգաբարձութեան ընտրութեան օրէն ի վեր մեծ քայլ մը առած կը գտնենք հիւանդանոցս՝ մաքրութեան եւ բարեկարգութեան պահանջածն անթերի կատարուած եւ հասարակութիւնը գոհ մնացած: Նոր հոգաբարձութեանս օրումն եւ առաջին անգամն ըլլալով հիւանդանոցիս մէջ բժշկուհի մը եւս կը տեսնենք, եւ այս բաւական մեծ նշան մ՚է ազգի մը յառաջադիմութեան: Այժմեան հոգաբարձութեան անդամներն են. ՊՊ. Վաղարշակ Կ. Ոսկանեան, ատենապետ. Յովհաննէս Գ. Բաբազեան, ատենադպիր. Նազարէթ Ջամպաքճեան, գանձապետ. Բժ. Տիգրան Սպարթալը, բժշկապետ. Սարգիս Քեշիշեան. Արմենակ Մինասեան. Մագսուտ Պօղոսեան:

Ասոնցմէ զատ հիւանդանոցս ունի նաեւ վեց եօթն կամ աւելի անձինքներ՝ Խնամակալուհի անունով, որոնք կ՚ընտրուին հոգաբարձութեան կողմանէ, երկու տարին անգամ մը եւ կը վաւերացուին քաղաքական ժողովքէն: Խնամակալ Տիկնանցս գործն է՝ կարգաւ իւրաքանչիւրն հսկել շաբաթ մը հիւանդաց յատուկ ճերմակեղէն զգեստուց մաքրութեան, կարուելու կարկտուելու հանդերձից եւն[1]: Կան նաեւ հիւանդանոցիս մէջ տասնի չափ այր եւ կին ծառայողներ եւ մէկ դեղագործ.

---

1 Վերջին ընտրութեամբ խնամակալուհի կարգուած են՝ Տիկին Լուսի Շապուրօֆ, Պերճուհի Յ. Տէլլիղեան, Մարիամ Մ. Ճէլէպեան, Եղիսաբէթ Գալատազեան, Սրբուհի Աւագեան, Գայիանէ Է. Պասմաճեան, Շամ. Մ. Իսքէնտէրեան: Օր. Արուսեակ Սարրաֆեան, Մարի Սիմոնեան, Էվգարիա Սվազլեան, Մերսէտէս Զմիւռնակէսեան. Էպր. Աւագեան:

ատոնց վրայ իբր տեսուչ՝ Հոգաբարձութիւնը կ՚ընտրէ անձ մը, որ կրնայ տարիներով վարել այս պաշտօնն, եթէ Հոգաբարձութիւնը գոհ կը մնայ եւ իւր վրայ պարտաճանաչութեան թերութիւն մը չի տեսներ։ Դժուարին է ստուգիւ տեսչիս պաշտօնը, ազգին հիւանդները գրեթէ իրեն կը յանձնուին. հսկել անխոնջ ծառայից վրայ, մաքուր պահել տալ ամէն խորշն եւ անկիւնն, հիւանդներ ընդունիլ եւ խոհեմութեամբ անոնց տեղերն որոշել, ընել տալ ամէն բան իւր ժամանակին, օրական ծախքերն ընդօրինակել եւ տալ հաշիւ Հոգաբարձութեան. միով բանիւ՝ Հիւանդանոցիս ներքնոյն պատասխանատուութիւնը կը ծանրանայ իւր վրայ։

Հիւանդանոցիս վերաշինութենէ յետոյ՝ իբր տեսուչ կը յիշուին Փիրղալէմեան Վարդապետ, Մակար Վարդապետ եւ Սարգիս անուն անձ մը։ Իսկ այժմ այս պաշտօնը կը կատարէ Սարգիս Միրիճանեան, որուն աշալուրջ հսկողութեան եւ հաւատարիմ ծառայութեան ու յարատեւութեան իբր ցոյց, բաւական է ըսել, թէ տասը տարիէ աւելի՝ զոհած է իւր անձը հաստատութեանս համար, օրն ի բուն եւ նոյն իսկ գիշերները կ՚անցընէ հիւանդանոցս։

Հիւանդանոցս ունի իրեն մասնաւոր բժիշկները, Հոգաբարձութեան կողմանէ ընտրուած կամ հոգացուած։ Ազգային համբաւաւոր վիրաբոյժը, բժիշկ Ճէլէպեան Առաքել, տարիներով նուիրած էր ինք զինքը մարդասիրական հիմնարկութեանս եւ ձրիաբար կը նայէր տառապելոց, ունենալով իրեն օգնական բժիշկ Այրիրօբուլօ, ազգաւ յոյն եւ թոշակաւոր։ Նոր Հոգաբարձութեան ընտրութեամբ՝ նոր բժիշկներ կը տեսնենք գործունէութեան մէջ. ի մասնաւորի Տք. Սպարթալեան Տիգրան՝ մեծ եռանդ կը ցուցընէ հիւանդանոցիս մէջ եւ ամենայն խղճմտանօք կը հոգայ հիւանդներն՝ իրեն ընկերակից երկու երեք բժիշկներով։

Հիւանդանոցս ունի իրեն սեպհական կալուածներն, որոնց տարեկան հասոյթը կը հասնի գրեթէ 900 օսմանեան ոսկւոյ։ Սակայն Ազգային Վարչութիւնն այս դրամէն միայն 400 ոսկին կու տայ հիւանդանոցիս ծախուց համար։ Ասկից զատ Ս. Լուսաւորիչ եկեղեցւոյ մոմի ստակէն եւ զանազան նուէրներէ եւ հանգանակութենէ կը գոյանայ 500—600 ոսկւոյ գումար մը։ Կ՚ունենայ երբեմն երբեմն վճարող հիւանդներ։ Այտընի Երկաթուղւոյն Ընկերութեան հետ կնքած է համաձայնութիւն մը, որով նոյն երկաթուղւոյն գծին վրայ գործողներն երբ հիւանդանան, խնամուելու դարմանուելու համար պիտի գան հիւանդանոցս, որոնց համար Ընկերութիւնը պիտի վճարէ օրական երկու ֆրանկ։ Այս ամէնն ի մի առնելով՝ հիւանդանոցս տարեկան կ՚ունենայ 1000—1200 օսմանեան ոսկի, որով կը հոգացուի իւր տարեկան ծախքն եւ պիտոյքը։

Հիւանդանոցիս ընդարձակ պարտէզին մէկ կողմը շինուած է յիմարանոցը. քիչ մ՚անդին հիւանդանոցի շէնքին աւելի մօտ, կը տեսնուին խուցեր, որոնցմէ միոյն դրան ճակատը հաստատուած մարմարիոն քարին վրայ քանդակուած կը կարդանք. "Խորհրդարանս Հոգաբարձուաց կառուցաւ շնորհիւ երկուց եղբարց Յակոբայ եւ Յովհաննու Սպարթալեանց 1879։"

---

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

## ԽՕՍՔ

*Ի հանդիսի նորոգ բացման Ազգային Հիւանդանոցին Զմիւռնիոյ:*

Պատուական Հայ Ժողովուրդ.

Այս շքեղ հանդիսիս նպատակը նուիրական է։ Մեծ պարտաւորութիւն մը ունիմ կատարելու իմ եւ

Սիրելի Եղբօր Յովհաննու կողմէ, որ Եւրոպա գըտնուելուն իր զգացմանցը Թարգմանն եմ, բոլոր Զմիւռնիոյ Հայ Ժողովրդեան եւ Չեղմով բոլոր Հայ ազգին առջեւ, սոյն Նորակառոյց հաստատութեան մէջ, ուր գումարուած կը տեսնեմ խնդութեամբ ազգայնոց ընտիր բազմութիւն մը։ Մեր կենաց ամենաերջանիկ օրերէն մէկն է այսօր. վասն զի կը տեսնենք պսակուած խորհուրդ մը որ ի վաղուց մեր սրտին ու մտքին մէջ ծագեր էր եւ որ Ամենակարողին Աստուծոյ օգնութեան եւ հոգեշահ ձայնի մը ներգործութեան կարօտ էր, որպէս զի մարմին առնու։

Աստուած մեր ուխտն ու իղձը լսեց, հնչեց ու ներշնչեց այդ ձայնն մեր հոգւոյն մէջ եւ այս Նորաշէն ազգային շէնքն, տառապեալ մարդկութեան այս կայանը կանգնեցաւ։ Փառք կու տանք Աստուծոյ որ իր Նախախնամութիւնն ընտրեց մեզ երկոքին հարազատ եղբարքս այս վերաշինութեան։

Ազգին ներկայ վիճակին վերահասու՝ վշտակիր կը դիտէինք իր բազմատեսակ պիտոյքն եւ մեր կարողութեան չափովն այս պիտոյից մին լեցընելու հոգը մեր տիրական փափաքը դարձաւ։ Այս մեր փափաքը որչափ զօրանար նոյնչափ Աստուծոյ յաջողութեամբ կ՚աճէին՝ մեր ակնկալութենէ աւելի, մեր նիւթական կարողութեան միջոցներ, եւ մինչդեռ մեր ունեցածէն բաժին մի ազգիս շնորհելու խորհուրդը կը տածէինք՝ մեր Գերապատիւ Առաջնորդ Ս. Հօր Տ. Մելքիսեդեկ Ծ. Վարդապետի Մուրատեանց հոգեշահ եւ հայրապետական քարոզներն եկան եւ աւելի եւս բորբոքեցին մեր սիրտն եւ մեր Սիրելի Ազգին մշտնջենական ծառայութիւն մ՚ընելու տենչը։

Արդարեւ՝ մեր եկեղեցին, մեր վարժարաններն ու հիւանդանոցը կարօտ էին սատարութեան, բայց գլխաւորապէս ազգային հին ու խարխուլ Հիւանդանոցի շէնքն, անոր մէջ պատսպարեալ խղճալեաց վիճակն, Թշուառութեան հեծեծանքն մեր աչքին ներկայացան, մեր սիրտը շարժեցին, եւ երկու հարազատքս որոշեցինք ի հիմանց նորոգ կառուցանել ազգային շէնք մը որ ոչ ներքին բարեկարգ կազմաւորութիւն, ոչ կանոնաւոր մատակարարութիւն, եւ ոչ ողջապահութեան էական պայմաններն ունէր։

Այս մեր որոշումն ազգային Վարչութեան հաղորդելով՝ իր յօժարափոյթ հաւանութիւնը ստացանք եւ գործի սկսանք։ Չենք ուզեր երկարօրէն բացատրել թէ ինչ զգացումներ կը համակէին մեր սիրտն քանի կը յառաջանար այս ձեռնարկութիւնը, քանի կը մօտա-

ծէինք որ Աստուծոյ եւ մարդկութեան հաճելի եղող գործի մը սատարները լինելու բարեբաղդութիւնն ունէինք։ Եւ արդարեւ՝ կան գործեր որ աւելի եւս կը գրաւեն ու կը հրապուրեն մարդկային միտքն ու հոգին քան թէ փառասիրական յաղթանակներ, եւ վաղանցուկ յաջողութիւններ, եւ այս կարգէն է թշուառ մարդկութեան վիշտերն ըստ կարի սփոփելու գործը եւ անկէց ծագած մխիթարութիւնը։

Եւ ահա այսօր կը տօնենք կանգուն սոյն Նորաշէն Ս. Լուսաւորչեան ազգային հիւանդանոցն, որու կառուցման առթիւ վերանորոգեցաւ նաեւ յանուն Ս. Հօրն մերոյ Գրիգորի Լուսաւորչի հնակառոյց տաճարն, շինուելով նաեւ անոր կից նոր պահարան եւ սեղան, որ տարւոյս առաջին օրն յանուն Սրբոց Որդւոցն Զեբէթեայ Յակոբայ եւ Յովհաննու տեառնագրութեամբ օծուեցաւ Գեր. Առաջնորդ Հօր ձեռօք, եւ նուիրեցաւ ի փառս ճշմարտին Աստուծոյ, մշտնջենաւոր յիշատակ երկուց հարազատ եղբարցս անուան Յակոբայ եւ Յովհաննու։

Ազնիւ ժողովուրդ Հայոց, մեր ուխտն ու փափաքը կատարելով՝ կատարեցինք ազգային պարտաւորութիւն մը եւ փոխարէն վարձատրութիւն պիտի լինին մեզի մարդասիրական գործի մը պատճառած ներքին գոհունակութեան զգացումն եւ սոյն ազգային շէնքին մէջ պատսպարուելիք ազգին անկարող եւ անտէրունջ հիւանդաց աղօթքն ու օրհնէնքը։ Ուստի կը մնայ մեզ՝ ազգին հին Հիւանդանոցը հիմնովին նորոգուած Ազգին դարձընել, մեր յատուկ շնորհակալիքը յայտնելով մեր Գեր. Ս. Հօր եւ Ս. Հարց, նոյնպէս բոլոր ազգային Պաշտօնէից եւ համայն Ազգայնոց որ իրենց քաջալերական ու համակիր զգացումներով դիւրացուցին մեզի այս հիմնարկութեան շինութիւնը, եւ մանաւանդ Ազգ. Վարչութեան, որ Հիւանդանոցի նոր Հոգաբարձութիւն եւ Գեր. Հայր Ղեւոնդ Փիրղալէմեանն վերատեսուչ հաստատելով՝ իբրեւ պարտաւորիչ կանոն դրաւ մեր ազգատոհմէն միշտ երկերկու հոգի իբրեւ անդամակից ընդունիլ ամեն հոգաբարձութեան ընտրութեան ժամանակ։ Այս որոշումն իբրեւ ազգային վստահութեան եւ երախտագիտութեան նշան ընդունելով՝ յատկապէս կը յայտնենք որ այս մեր կտակն գլխովին գործադրած պիտի լինին ազգն ու ազգային Վարչութիւններն եթէ միշտ սոյն հաստատութեան ներքին բարեկարգութեան եւ բարւօք մատակարարութեան ջանադիր գտնուին, եւ ներուի մեզ յատկապէս աղաչել Հոգաբարձութիւնն որ նոյնպէս իր ուշադրութիւնը

դարձընէ թագուն խորշերու մէջ գտնուող ազգային տնանկ ընտանիքներու, նոցա հիւանդաց ձրի բժիշկ, դեղ եւ կարեւոր պիտոյք յուղարկելով, որպէս զի այսպիսի թշուառներն իսկ անմխիթար չմնան։ Ազգն այս ամէն բարիքը կը վայելէ ընդ հովանաւորութեամբ Օսմանեան Պետութեան, որու Վեհապետն Սուլթան Համիտ՝ միշտ մարդասիրական զգացումներով լի՝ իր բոլոր հպատակաց ազգային հիմնարկութիւններն ու արտօնութիւնները պահպանելով՝ մեր առջեւ ազատ ասպարէզ կը բանայ մեր եկեղեցիներն, մեր վարժարաններն ու հիւանդանոցը զարգացընելու, ինչպէս նաեւ իր արժանաւոր ներկայացուցիչն, գաւառիս Վսեմափայլ Կուսակալն Համտի Փաշան՝ որու արդարակորով կառավարութեան ժամանակ այս հիմնարկութիւնն յաջողութեամբ կանգնեցաւ։

Արդ՝ Սուրբ Հարք ու Քահանայք, Ազգ. Ժողովք ու Խորհուրդք եւ Հոգաբարձութիւն եւ համայն ժողովուրդ, այս հանդիսական ժամուս, Նորաշէն Հիւանդանոցի նաւակատեաց առթիւ կը յայտարարեմ որ Ձեզի պէս հանդիսական հայ մ'եմ այս տեղ, ազգային անհատ մը, որ լոկ պարտաւորութիւն մը կատարած եղաւ իր հարազատ եղբօր հետ սոյն շէնքը բարձրացընելով, որ Աստուծոյ պարգեւն է, եւ զոր կը նուիրենք սրտի խնդութեամբ Սիրելի Ազգիս Հայոց ի փառս ամենամեծ անուան Աստուծոյ եւ ի յիշատակ յաւիտենական։

Ուստի, Գերապատիւ Ս. Հայր, առէք, կ'աւանդենք Ձեզի սոյն Նորաշէն հաստատութեան բանալիներն եւ Ձեզմով համօրէն Ազգիս, եւ ուրիշ փառասիրութիւն մը չունինք այլ միայն տեսնել հեռուէն սոյն հաստատութեան պայծառութիւնն ու հրճուիլ, լսել բուժեալ տառապելոց օրհնենքն ու մխիթարուիլ, տեսնել ազգային տան ուրիշ կարեւոր պիտոյքը հոգալու հետամուտ բարերարներ եւ զԱստուած փառաբանել։

Այս է մեր իղձը, մեր ուխտն ու կտակը, որու գործադրութիւնը կը յանձնենք ամենայն վստահութեամբ մեր Սիրելի Ազգին եւ անոր յառաջադիմութեան միշտ բարեմաղթու կը մնանք

Եղբարք Յակոբ եւ Յովհաննէս Սպարթալեան

Զմիւռնիա, 14 Յունվար 1879։

# ԳԼՈՒԽ ԵՐԿՈՏԱՍԱՆԵՐՈՐԴ

*Ազգային կրթական եւ բարեգործական հիմնարկութիւնք եւ ընկերութիւնք:*

Մեսրոպեան եւ Հռիփսիմեան կրթական կարեւոր հաստատութիւններէն զատ՝ Զմիւռնիոյ Հայ հասարակութիւնն ունեցած է յանցելում եւ ունի այժմ այլ եւ այլ հիմնարկութիւններ եւ ընկերական կազմակերպութիւններ, որոնք կրթական եւ բարեգործական սկզբանց վրայ հիմնեալ՝ ազգին կարօտը լեցընելու եւ ազգը յառաջացընելու եւ զարգացընելու ձեռնտու կ'ըլլան։ Այս հաստատութեանց սկիզբը բռած են վարժարանք ուր կրթութեամբ օժտեալ եւ լուսաւորեալ պատանիք եւ օրիորդք՝ սկսած են զանազան նպատակաւ ընկերութիւններ հաստատել, որոնցմէ ոմանք դժբախտաբար շատ կարճ ժամանակ գոյութիւն ունեցած են։ Ասոնցմէ կը յիշուին Սիւնեաց, Արագածունեաց, Հաշտենից, Աղքատասիրաց, Հայ Ընթերցատուն, Անձնուէր, Վահանեան, Հոգատար-Որբախնամ, Կրթասէր, Ուսումնասէր, Արեւելեան Ակումբ, Մեսրոպեան Գրասիրաց, Աղքատախնամ, Արուեստանոց, Գթասիրաց, Ներսէսեան Որբանոց անուամբ ընկերութիւններն եւ հիմնարկութիւնները։ Ասոնց իւրաքանչիւրին սկզբան եւ նպատակին վրայ համառօտ գաղափար մը տալ պատշաճ համարած ենք։

## 1.

*Սիւնեաց Ընկերութիւն (1841–1845, 1879–1880):*

Ը. Անցեալ տարիներու մէջ նշանաւոր եղած է Սիւնեաց ընկերութիւնն[1], որ Զմիւռնիոյ վիճա-

[1] Տես Société de Sunie, formée à Smyrne pour la propagation de l'instruction morale parmi la nation Arménienne. Smyrne 1844.

կին կրթական հոգն իւր վրան առած՝ քանի մը տարի բաւական ծառայութիւն մատուցած է ազգին։ Մեսրոպեան վարժարանի ամենապայծառ ժամանակն՝ իւր ծոցէն ելլող խումբ մը աշակերտներ՝ իրենց վարժապետին՝ Անդրէասի յորդորներով քաջալերուած, ուսումնականութիւնն ազգայնոց մէջ տարածելու նպատակաւ ընկերութիւն մը կը հաստատեն Սիւնեաց անուամբ, 1841ին։ Այս ընկերութեան նպատակը կ՚ըլլայ ի մասնաւորի Զմիւռնիոյ շրջակայ թեմերուն մէջ դպրոցներ բանալ։ Ընկերութեանս հիմնադիր անդամները քիչ ժամանակուան մէջ մեծ յաջողութիւն կը գտնեն, այնպէս որ երեւելի վաճառականք եւ նոյն իսկ օտար ազգէ ուսումնականք բաժանորդ կը գրուին, որով գոհացուցիչ դրամագլխի մը տէր ըլլալով՝ իրենց նպատակին համաձայն՝ կը յաջողին Այտըն, Պայընտըր, Մանիսա եւ Մէնէմէն դպրոցներ բանալ։ Սակայն դժբախտաբար այս յաջողութիւնն երկայն չի տեւեր։ Ժամանակին առաջնորդը՝ Մատթէոս Եպիսկոպոս, ինչ ինչ կրօնական խնդիրներ յարուցանելով՝ արդէն վերջին ժամանակներն իրարու հետ գժտեալ անդամներու սրտին մէջ պաղութիւն մը կը ձգէ, մի եւ նոյն ժամանակ (1845) աւերիչ հրդեհը վրայ գալով, անբուժելի եւ վերջնական հարուած մը կու տայ ընկերութեանս եւ կործանումը յառաջ կը բերէ։

Բ. Տարիներ սահելէ յետոյ, երբ Պոլիս եւ գաւառները կրթական գործը զարգացընելու նպատակաւ ընկերութիւններ կը կազմուէին, Զմիւռնիոյ մէջ եւս սկսած էր՝ հասարակաց կրթութեան աջակից ըլլալու փափաք մը տարածուիլ։ Այսպիսի ժամանակ (1879)՝ քանի մը երեւելի անձինք, որոնց մէջ նշանաւոր են Գ. Ց. Բաբազեան, Մ. Ալփիարեան, Բժ. Պ. Կոստանդեան, իրարու հետ միանալով եւ հասարակութեան հրաւէր կարդալով, գրեթէ երեսունի մօտ անդամակիցներու

աջակցութեամբ՝ ընկերութիւն մը կը կազմեն "Միու-նեաց ընկերութիւն" անուամբ։ Այսպէս երկրորդ անգամ վերակազմեալ ընկերութեանս նպատակը կ'ըլլայ ազգին եւ խեղճ ազգայնոց բարոյական եւ նիւթական յառաջադիմութեան նպաստել, դրամական օգնութեամբ եւ մտաւորական զարգացման աջակցելով։ Բայց դժբախտաբար յիշատակելի արդիւնք մը չէ ունեցած եւ շատ կարճ ժամանակ տեւած է. այսպէս ըսենք՝ ծնանիլն ու մեռնիլը մէկ եղած է։

## 2.

*Արագածունեաց Ընկերութիւն (1843–1846)։*

Ընկերութիւնս նոյնպէս Մեսրոպեան Վարժարանի փայլուն ժամանակները կազմուած է. յառաջ կը բերենք հեղինակի մը՝ ընկերութեանս նկատմամբ գրած տողերը։ "1843ին քանի մ'ուսումնասէր Զմիւռնիացիք Արագածունեաց ընկերութիւնն հաստատեցին եւ նոր տպարան մը բացին ազգին օգտակար գրքեր հասցընելու նպատակաւ։ Այս ընկերութեան երախայրիքն եղաւ "Հայրենասէր, օրագիր քաղաքական, բանասիրական եւ առեւտրական" անուն աշխարհաբար շաբաթաթերթն որ 1843 Մայիս 28ին Խաչատուր Յ. Մելիքսելումեանցի խմբագրութեամբ սկսաւ հրատարակուիլ շաբաթն անգամ մը։ Վեց ամիս ետքն՝ նոյն տարւոյ Հոկտ. 15ին խափանուեցաւ, որչափ կ'երեւայ հակառակորդաց հնարիւքն։ 1844 Ապրիլ 10ին սկսաւ վերստին հրատարակուիլ, սակայն Զմիւռնիոյ 1845 Յունիս 21ի զարհուրելի հրդեհն Հայրենասիրի տպարանին ալ հասաւ...։ Քիչ մը ետքը նիւթական կարօտութեանց պատճառաւ ընկերութիւնն վերջանալով, Հայրենասէր ալ դադրեցաւ 1846 Թուականին[1]"։

[1] Պատմութիւն հայ լրագրութեան, Հ. Գրիգորիս Վ. Գալէմքեարեան։ Վիեննա 1893, էջ 79։

Նոյն վախճանն ունեցած է նաեւ Հօշըենեց Մէօ–Նէօն անուամբ յիշուած ընկերութիւնն, որ հմուտ եւ աշխոյժ երիտասարդներէ կազմեալ՝ քանի մը տարի "Միութիւն Հաշտենից„ անուն թերթ մը հրատարակած է 1861—1862½։ Նիւթական պիտոյքն երկայն ապրիլ չէ թողուցած, ժամանակէն յառաջ կտրած է ընկերութեանս կապն եւ քայքայած բոլորովին։

### 3.

*Աղքատասիրաց Ընկերութիւն (1861—1894):*

*Աղքատախնամ ընկերութիւն (1896):*




Ա. Զմիւռնիոյ ազգայնոց մէջ երեւան ելած բարեգործական եւ մարդասիրական ընկերութեանց մէջ առաջին տեղին կը բռնէ Աղքատասիրաց Ընկերութիւնն, որ երկայն տարիներու շրջան տեւած, մեծ ծառայութիւն մատուցած եւ բազմաթիւ թշուառներու օրհնութեանց արժանացած է. կրնանք ըսել թէ Զմիւռնացին չէ ունեցած ասկէ աւելի օգտակար եւ արդիւնաւոր ընկերութիւն մը։ Ընկերութիւնս 1861 թուականին՝ ունեւոր եւ ազդեցիկ տասն անձանց նախաձեռնութեամբ կազմուած է, որոնց նպատակն եղած է կարօտեալներու, մանաւանդ թաքուն եւ ծածկեալ աղքատ-

ներու օգնութեան ձեռն կարկառել՝ հիւանդութեանց ժամանակ ձրի բժիշկ եւ դեղ մատակարարելով՝ մասնաւորաբար տաներէց քահանային յանձնարարութեամբ եւ խնդրանօք։

Հիմնադիր անդամք յաջորդ տարին իրենց մէջ դաշնագիր մը կը կնքեն՝ այս գեղեցիկ մարդասիրական նպատակին գործադրութեան համար՝ ամենայն զգուշութիւն յանձն առնելով։ Սոյն դաշնագիրն եղած է հետեւեալը[1]։

“Ստորագրեալքս անդամք աղքատասիրաց ընկերութեան, բարեպաշտական նպատակով մը ուզելով ազգերնուս մէջ հիւանդանոցէ դուրս գտնուած անկար հիւանդները ըստ կարի խնամել կը խոստանանք որ եւ իցէ պարագայի մէջ թէ ընկերութիւնը կարող ըլլայ սոյն նպատակին համար բաժանորդութիւն գտնել թէ ոչ՝ եղած ծախքը վճարել մեր քսակէն եթէ բաժանորդութիւնը չը բաւէ կամ բնաւ չը գտնուի։

“Ընկերութեանս գանձապետն է Պ. Պօղոս Պերկամալեանը. ընկերութեան ընելու ծախքը հետեւեալները պիտի ըլլան. Ա. Բժշկին տարեկան ծախք։ Բ. Առնուած դեղերուն ծախքը։ Գ. Հիւանդաց այլ եւ այլ պիտոյից համար եղած ծախքը, ըստ կարողութեան ընկերութեան։ Դ. Մասնաւոր ծառայի մը տարեկան վարձքը։

“Առնցմէ դուրս եթէ պարագայ մի պատահի որոյ համար ընկերութիւնը յարմար տեսնէ ծախս ընել իւր նպատակին նկատմամբ ընկերութեան ամբողջ անդամոց հաւանութեամբը կ'որոշուի։„

“Սոյն դաշնագրին ուժը պիտի տեւէ մինչեւ 1863 Մայիս 1։

“Իզմիր 1 Մայիս 1862։ Ս. Չելիկ, Պ. Պերկամալեան, Գ. Մ.յ. Խայեան, Գ. Վէմեան,

---

[1] Դաշնագրիս բնագիրն ընդունած ենք Ս. Չելիկէն։ Իսկ ընկերութեանս նկատմամբ գրաւոր քանի մը տեղեկութիւն տուած է մեզ՝ Պ. Ա. Ցիվրիկեան։

Գ. Մ. Խասյեան, Պ. Ս. Միրզա Վանանդեցի, Ս. Թ. Չնլըկեան, Պօղոս Կ. Տիլպերեան, Ս. Աւետիքեան, Յակոբ Մարկոսեան:„

Դաշնագրես ակն յայտնի կ'երեւայ թէ քանի՜ն անձնուէր եռանդեամբ ընկերութեան անդամները սկսած են գործի ձեռք զարնել, նոյն իսկ ամէն ծախք իրենց քսակէն վճարելու պատրաստակամութեամբ եւ հաւանութեամբ: Իրենց այս բարի եւ գովելի նպատակը՝ մարդասէր սրտերու մէջ արձագանգ գտնելով՝ քիչ ժամանակուան մէջ անդամներու թիւն երթալով բազմացած է. շատերը բաժանորդագրութեամբ եւ նուէրներով մասնակցած են ընկերութեանս, այնպէս որ հետզհետէ ասոնց թիւն ալ աճելով, բաւական պատկառելի դրամագլխոյ տէր եղած է ընկերութիւնը, որով իւր գոյութիւնը քանի մը տասնեակ տարիներու համար ապահովցուցած:

Ընկերութեանս հասոյթը կը գոյանար նախ հիմնադիր եւ պատուոյ անդամոց դրամով. երկրորդ՝ բաժանորդագրութենէ եւ նուէրներէ հաւաքուած դրամէ եւ երրորդ՝ ընկերութեան կողմանէ տրուած պարահանդէսներէ եւ ուրիշ հանդէսներէ ժողուած դրամով: Ընկերութեանս ունեցած գործունէութեան, տուած հանդէսներուն եւ մատուցած ծառայութեան վրայ փոքր գաղափար մ'ունենալու համար, կը յիշատակենք հոս ասոնցմէ մէկ քանին. այսպէս՝ 1875ին ընկերութեան տեղեկագրին մէջ կը տեսնենք թէ մէկ տարուան մէջ 253 հիւանդ՝ կանոնաւորապէս դարմանած է. իսկ պատահական՝ ոտքի վրայ նայուածներուն թիւն եղած է 603: Իւր տասն եւ հինգ տարւոյ շրջանին մէջ (1877 Յունուարի) պարահանդէս մը տալով, 110 ոսկի զուտ արդիւնք ունեցած է: Մինչդեռ 1882 Դեկտ. ծաղկի հիւանդութիւնը կը ճարակէր Զմիւռնիոյ մէջ, Աղքատասիրաց ընկերութիւնը իւր յատուկ բժշկին ձեռօք, Մեսրոպեան Վարժարանի 46 աշ-

քատրկաշակերտներն եւ Հռիփսիմեան Վարժարանի 55 կարօտ աշակերտուհիները պատուաստել կու տայ։ Ի Նպաստ Հիւանդանոցի՝ Հռիփսիմեան Վարժարանի սրահին մէջ տրուած պարահանդէսի հոգն (1885) Աղքատասիրաց ընկերութիւնն իւր վրան առնելով՝ 121 օսմ. ոսկի կը յանձնէ հիւանդանոցի։ Այս մասնական դէպքերը մէկդի թողլով. բաւական է յիշել ընդհանուրին վկայութիւնը մեր պանդուխտ եղբայրները, խաներու անկիւնն, հեծող թշուառներն եւ Մօրթաքեայի նկուղներու մէջ տառապող ընտանիքները դեռ օրհնութեամբ կը յիշեն այն օրերն՝ երբ Բոլիս Յակոբ՝ ընկերութեան ժրաջան գործակալը՝ կ'երեւար բժշկին հետ՝ հիւանդին սնարին մօտ՝ իբր երկնային Նախախնամութենէ ղրկուած հրեշտակ մը։ Քանի՜ քանի մարդկային էակներ մահուան ճիրաններէն կորզուած են՝ ի շնորհս այս ընկերութեան, եւ դեռ քանինե՜ր, աւա՜ղ, կենաց լոյսը պիտի վայելէին այսօր, եթէ ընկերութիւնս՝ հաւատարիմ իւր ազնիւ նշանաբանին, շարունակէր մութ խաւերու մէջ սփռել մխիթարանք եւ երջանկութիւն։ 1894 թուականին ընկերութեան անկումը շանթի տպաւորութիւն գործեց զգայուն սրտերու վրայ, յուսահատութեան պէս բան մը ծանրացաւ հոգիներու վրայ, կարծես գթութեան երկնային ոգին էր որ իւր թեւերը կ'ամփոփէր թշուառներու վրայէն եւ արտասուալից աչերով կը հեռանար առ յաւէտ։ Սակայն պէտք է խոստովանիլ՝ ի պատիւ այն հիմնադիր անդամոց, որոնք տակաւին կենդանի են՝ բաց ի Վանանդացիէ, թէ այդ անկումը յանկարծական չեղաւ. ընկերութիւնը գերագոյն ճիգեր ըրաւ իւր գոյութիւնը պահպանելու համար։ Երկարատեւ խուլ եւ յամառ պայքար մը մղեց մեծատանց սառնասրտութեան դէմ, պահ մը իր վերջին ոյժերն ամփոփելով վերստին երեւցաւ ասպարէզի վրայ՝ իր յառաջուան փայլուն օրերը յիշեցնելով։ Բայց

այդ երեւումը շատ կարճատեւ եղաւ, առկայծեալ ճրագի մը կը նմանէր, որ իւր յետին շողերն արձակելէ ետքը՝ կը մարէր ի սպառ։

Ընկերութիւնս ունէր իւր առանձին կանոններն, որոնց բովանդակութիւնն ինքնին կը ցուցընէ ընկերութեան գեղեցիկ կազմակերպութիւնը. այս կանոններն եղած են հետեւեալները։

---

## «Կանոնագիր Աղքատասիրաց Ընկերութեան Զմիւռնիոյ:

---

### Նպատակ ընկերութեանս:

1. Ընկերութիւնս բաժանորդական է, եւ իւր առաջին ու գլխաւոր նպատակն է Քաղաքիս աղքատ հիւանդները ձրիապէս խնամել, որք թշուառ են եւ կամ գործել ոչ կարեն, մուրանալ ամաչեն։

2. Եթէ իւր դրամական վիճակը ներէ՝ Ընկերութիւնս մտադիր է նաեւ յապագային ուրիշ բարեգործութեանց եւս ձեռնարկել։

3. Հիւանդ աղքատք երկու կարգի կը վերածին, նախ անոնք որ անկարող են իրենց բնակութենէն դուրս ելնել՝ որոց ընկերութեան բժիշկն ամէն օր այցելութիւն կ'ընէ, երկրորդ անոնք որք անձամբ ընկերութեանս դեղարանը կը դիմեն որոշեալ ժամուն, ուր պէտք եղած խնամքը կ'ընդունին։

4. Առաջին կարգի հիւանդք հայ են միայն. երկրորդ կարգին համար ամէն Ազգէ անխտիր կ'ընդունուին, բաւական է որ իրենց թշուառութիւնը վկայեալ լինի։

5. Ընկերութիւնս չէզոք է, եւ ուրիշ որեւէ իւր նպատակին չպատասխանող ազգային գործողութեանց չմասնակցիր պաշտօնապէս։

6. Ընկերութիւնս կը յարգէ միշտ ձայնից հաւասարութիւնն ու կարծեաց ազատութիւնը.

իւր միակ սկզբունքն է անաչառ եւ անկողմնակալ ոգւով յարգել իրաւունքը, ճանաչել իւր պարտքն եւ իւր նպատակին արդիւնաւորութեան ջանադիր լինել անձանձիր։

7. Ընկերութիւնս որչափ որ կը տեւէ անկախ է եւ ամենայն ազատութեամբ իւր հասոյթներն ու գոյքը կը գործածէ ի պէտս աղքատ հիւանդաց, բայց եթէ ոեւէ անակնկալ պատճառաւ մի լուծուի, իւր բոլոր գոյից միակ տէրն է Քաղաքիս ազգային Հիւանդանոցը։

*Թիւ Անդամոց, Դիւան եւ Պաշտօնեայք ընկերութեանս:*

8. Ընկերութիւնս առ նուազն երկոտասան Անդամէ կը բաղկանայ, ի բաց առեալ քաղաքիս ազգային երեւելի բժիշկները, որք ըստ ամենայնի խորհրդական Անդամ են ըստ տնօրէնութեան եւ ընտրութեան ժողովոյս։

9. Ի պահանջել հարկի ընկերութիւնս համահաճ հաւանութեամբ կարող է սոյն թիւն աւելցընել յառաւել, եւս արդիւնաւորութիւն իւր նպատակին։

10. Եթէ Անդամ մի կամովին հրաժարի եւ կամ իւր կանոնազանցութեամբ հրաժարեալ համարուի, անմիջապէս նոր Անդամոյ ընտրութիւն կը լինի գաղտնի քուէարկութեամբ։

11. Ընկերութեանս դիւանը կը կազմեն Ատենապետն ու Ատենադպիրը, Փոխատենապետն ու Փոխատենադպիրը, նոյնպէս պաշտօնեայքն են Գանձապետն եւ Տեսուչք Դեղարանին։

12. Դիւանի Անդամոց եւ Պաշտօնէից պաշտօնավարութեան տեւողութիւնը տարի մի է. ի լրանալ տարւոյն հրաժարեալ կը համարուին եւ նորերու ընտրութիւն կը լինի գաղտնի քուէարկութեամբ։ Հրաժարեալք վերընտրելի են։

### Պաշտօն Ատենապետի։

13. Ատենապետի պաշտօնն է որոշեալ ժամանակին անխափան Անդամներն ի ժողով հրաւիրել, ատեանը բանալ ու գոցել, ժողովոյն նախագահել, Ատենաբաններու կարգաւ խօսք տալ, հաստատեալ կանոնաց անթերի գործադրութեան եւ վիճաբանութեանց օրինաւորութեան հսկել։

14. Ատենապետը պատասխանատու է Դիւանին բարեկարգութեան։

### Պաշտօն Ատենադպրի։

15. Ատենադպրի պաշտօնն է Ատենի մէջ Անդամոց խօսքերն ու վիճաբանութիւններն իւրաքանչիւրին անունովն ըստ կարգի համառօտիւ նշանակել, խնդրոց կարգի ցանկը պատրաստել եւ ժողովոյն ներկայացընել եւ ամէն որոշումն ու տնօրէնութիւն ճշտիւ արձանագրել։

16. Ատենադպիրը պատասխանատու է արձանագրութեանց ճշտութեանն ու օրինաւորութեան։

17. Արձանագրութեանց, նոյնպէս եւ բոլոր պաշտօնական գրութեանց Ատենապետն ու Ատենադպիրը կը ստորագրեն ի դիմաց ժողովոյն։

18. Ի բացակայութեան Ատենապետին՝ փոխատենապետն, եւ ի բացակայութեան Ատենադպրին՝ փոխատենադպիրն անոնց պաշտօնը կը վարեն։

### Պաշտօն Գանձապետի։

19. Գանձապետի պաշտօնն է ընկերութեանս բոլոր դրամական գործողութեանց օրինաւորութեան հսկել, անոնց կանոնաւոր հաշիւը բռնել, առձեռն պատրաստ դրամոց եւ հետզհետէ հանգանակեալ բաժանորդագրութեանց աւանդապահն լինել։

20. Գանձապետը պատասխանատու է առձեռն պատրաստ դրամոց եւ գոյից ապահովութեանն եւ արդիւնաւորութեան։

Պաշտօն Տեսչաց:

21. Տեսչաց պաշտօնն է ստէպ այցելութեամբ Դեղարանի բարեկարգութեան հսկել, պակսած դեղերուն ցանկն առնուլ եւ ներկայացընել ժողովոյն, եւ ընկերութեանս բժշկին եւ Դեղարանի Գործակալաց վրայ իրենց տեղեկութիւնները հաղորդել ի նկատողութիւն։

22. Տեսուչք պատասխանատու են Դեղարանի բարեկարգութեան։

Պարտիք Անդամոց:

23. Անդամք պարտաւոր են Ատենապետին ազդարարութեամբ գումարելի ժողովոց ներկայ գտնուիլ։

24. Ներելի է Անդամոց բացակայ լինել միայն հիւանդութեամբ, ճանապարհորդութեամբ եւ կամ կարի բանաւոր պատճառաւ մի, բայց նախ կը պարտաւորին գրով ծանուցանել Ատենապետին իրենց բացակայութեան պատճառը։

25. Վերոնշանակեալ երեք պատճառներէ դուրս եթէ Անդամ մի երեք անգամ իրարու վրայ ժողովէ բացակայ գտնուի, Դիւանին ստորագրութեամբ ազդարարութեան գիր կ'ընդունի, եւ եթէ յաջորդ ժողովոյն ներկայ չգտնուի դարձեալ, հրաժարեալ կը համարուի։

26. Անդամք կը պարտաւորին զոհել ամէն անհատական թիւր կարծիք եւ ընկերութեանս մարդասիրական նպատակին առաւել արդիւնաւորութեան խնամ տանիլ ամենայն անձնուիրութեամբ։

27. Անդամք պարտաւոր են առանց բացառութեան համակերպիլ ըստ ամենայնի հաստատեալ կանոնաց եւ իրենց ստանձնեալ պաշտօնը կատարել խղճի մտօք։

28. Ըստ օրինի տուգանաց դատապարտեալ Անդամք պարտաւոր են անթերի հատուցանել։

29. Ի բացակայութեան Անդամոց մեծագոյն մասին, կարելի է ընկերութեանս նպատակին արդիւնաւորութեան նկատմամբ առաջարկութիւններ ընել ու խորհրդածել, բայց որոշում մի չտրուիր։

30. Երբ խնդիրն սակայն ստիպողական է, ներկայ Անդամոց հաճութեամբ, նոյնին ընդունելութեան կամ մերժման նկատմամբ անհրաժեշտ հարկ է Ատենապետէ ստորագրեալ գրով անմիջապէս բացակայ Անդամոց գոնէ մեծագոյն մասին կարծիքն իմանալ եւ ըստ այնմ գործադրել։

31. Առանց մեծագոյն մասին հաւանութեան որեւէ որոշումն անվաւեր է եւ անընդունելի։

32. Ատեանը բացուելէն յետոյ, նոյնպէս եւ լրանալէն առաջ ընկերութեանս նպատակէն դուրս ուեւէ խնդրոյ վրայ խօսիլն խստիւ արգիլեալ է։

33. Ամէն խնդիր պէտք է նախ արձանագրուի առաջարկողին անուամբ եւ ըստ կարգի ներկայացուի ժողովոյն ի նկատողութիւն։

34. Ներելի չէ խնդիր մը չլուծուած՝ ուրիշ խնդրով զբաղիլ, ի բաց առեալ կարի ստիպողականները, այն ալ Անդամոց մեծագոյն մասին հաւանութեամբ։

35. Խնդիր մը մեծագոյն մասին հաւանութեամբ ընդունուելէն ու գործադրութեան որոշումէն յետոյ, հակակարծիք Անդամք կը պարտաւորին զայն յարգել, բայց կրնան իրենց դժկամակութիւնը պատճառաբանութեամբ հանդերձ արձանագրել տալ։

36. Ատենապետէն խօսք չխնդրած ու չառած ներելի չէ խօսիլ Ատենի մէջ։

37. Խնդրատուք հարկ է որ իրենց որոշեալ խնդրէն չշեղին, պարզ ու չափաւոր խօսին եւ անձնականի դպչելէ զգուշանան, եւ սոյն պարտուց զանցառութեան միջոցին Ատենապետին ազդարարութիւնը սրտի մտօք յարգեն։

38. Արգիլեալ է խստիւ Ատենաբանին խօսքն ընդմիջել անհամբերութեամբ եւ շփոթութիւն պատճառել:

39. Ընդերկար վիճաբանեալ խնդրոյ մի լուծումն ի պահանջել հարկի գաղտնի քուէարկութեան կ'ենթարկուի Ատենապետին առաջարկութեամբ:

40. Երբ Ատենապետը կամ Ատենադպիրը խնդիր մ'ունենան ներկայացընել ժողովոյն, կամ ամբաստանութեան ենթարկուին մինչեւ ցվերջնական լուծումն՝ փոխանորդք կը վարեն իրենց պաշտօնը:»

* * *

*Աղքատախնամ Ընկերութիւն 1896:*

Բ. Մինչդեռ Աղքատասիրաց ընկերութիւնն անմոռանալի յիշատակներ թողուցած՝ կը դադրէր գործելէ՝ երկու տարի ետքը սոյնպիսի գթասիրական ընկերութիւն մը ասպարէզ ելած կը գործէր, այս էր Աղքատախնամ ընկերութիւնը: Ընկերութեանս հաստատման նպատակն նախկին Աղքատասիրացին շարունակութիւնն ըլլալ չէր: Բացառիկ պարագաներու բացառիկ ծնունդն էր այս. ներքին գաւառներէ գաղթական Հայերու հոսանքին առջեւ, որ գունդագունդ կը դիմէր Զմիւռնիա, տեղւոյս հայ երիտասարդաց մէջ փափաք մը կ'արթննայ, անօգնական չքաւոր պանդուխտներու գործ հայթայթել, ապրուստի միջոցներ ցոյց տալ, աշխատասիրութեան ոգին արծարծել, միով բանիւ մուրացկանութեան առաջն առնուլ եւ ասոր համար հարկ եղած նիւթական միջոցները դիւրացընել:

Սոյն ազնիւ խորհուրդն մի քանի ազնիւ երիտասարդաց մէջ յղացուած եւ ահա կը գործադրուի. խկոյն ընկերութիւն մը կը կազմուի, որ նախկին Աղքատասիրաց ընկերութեան նպատակին հետ չշփոթելու համար՝ Աղքատախնամ անունը

Նոյն վախճանն ունեցած է նաեւ Հ․ ․․ Մի․․․ անուամբ յիշուած ընկերութիւնն, որ հմուտ եւ աշխոյժ երիտասարդներէ կազմեալ՝ քանի մը տարի “Միութիւն Հաշտենից„ անուն թերթ մը հրատարակած է 1861—1862½։ Նիւթական պիտոյքն երկայն ապրիլ չէ թողուցած, ժամանակէն յառաջ կտրած է ընկերութեանս կապն եւ քայքայած բոլորովին։

## 3.

*Աղքատասիրաց Ընկերութիւն (1861—1894)։*

*Աղքատախնամ ընկերութիւն (1896)։*




Ա․ Զմիւռնիոյ ազգայնոց մէջ երբեւան ելած բարեգործական եւ մարդասիրական ընկերութեանց մէջ առաջին տեղին կը բռնէ Աղքատասիրաց Ընկերութիւնն, որ երկայն տարիներու շրջան տեւած, մեծ ծառայութիւն մատուցած եւ բազմաթիւ թշուառներու օրհնութեանց արժանացած է․ կրնանք ըսել թէ Զմիւռնացին չէ ունեցած ասկէ աւելի օգտակար եւ արդիւնաւոր ընկերութիւն մը։ Ընկերութիւնս 1861 թուականին՝ ունեւոր եւ ազդեցիկ տասն անձանց նախաձեռնութեամբ կազմուած է, որոնց նպատակն եղած է կարօտեալներու, մանաւանդ թաքուն եւ ծածկեալ աղքատ-

ներու օգնութեան ձեռն կարկառել՝ հիւանդութեանց ժամանակ ձրի բժիշկ եւ դեղ մատակարարելով՝ մասնաւորաբար տաներէց քահանային յանձնարարութեամբ եւ խնդրանօք։

Հիմնադիր անդամք յաջորդ տարին իրենց մէջ դաշնագիր մը կը կնքեն՝ այս գեղեցիկ մարդասիրական նպատակին գործադրութեան համար՝ ամենայն զգուշութիւն յանձն առնելով։ Սոյն դաշնագիրն եղած է հետեւեալը[1]։

“Ստորագրեալքս անդամք աղքատասիրաց ընկերութեան, բարեպաշտական նպատակով մը ուզելով ազգերնուս մէջ հիւանդանոցէ դուրս գտնուած անկար հիւանդները ըստ կարի խնամել կը խոստանանք որ եւ իցէ պարագայի մէջ թէ ընկերութիւնը կարող ըլլայ սոյն նպատակին համար բաժանորդութիւն գտնել թէ ոչ՝ եղած ծախքը վճարել մեր քսակէն եթէ բաժանորդութիւնը չը բաւէ կամ բնաւ չը գտնուի։

“Ընկերութեանս գանձապետն է Պ. Պօղոս Պերկամալեանը. ընկերութեան ընելու ծախքը հետեւեալները պիտի ըլլան. Ա. Բժշկին տարեկան ծախք։ Բ. Առնուած դեղերուն ծախքը։ Գ. Հիւանդաց այլ եւ այլ պիտոյից համար եղած ծախքը, ըստ կարողութեան ընկերութեան։ Դ. Մանաւոր ծառայի մը տարեկան վարձքը։

“Ասոնցմէ դուրս եթէ պարագայ մի պատահի որոյ համար ընկերութիւնը յարմար տեսնէ ծախս ընել իւր նպատակին նկատմամբ ընկերութեան ամբողջ անդամոց հաւանութեամբը կ'որոշուի։„

“Սոյն դաշնագրին ուժը պիտի տեւէ մինչեւ 1863 Մայիս 1։

“Իզմիր 1 Մայիս 1862։ Ս. Չելիկ, Պ. Պերկամալեան, Գ. Մ. յ. Եսայեան, Գ. Վէմեան,

---

[1] Դաշնագրիս բնագիրն ընդունած ենք Ս. Չելիկէն։ Իսկ ընկերութեանս նկատմամբ գրաւոր քանի մը տեղեկութիւն տուած է մեզ՝ Պ. Ա. Ցիվրիկեան։

Գ. Մ. Եսայեան, Պ. Ս. Միրզա Վանանդեցի, Ս. Թ. Չնլըկեան, Պօղոս Կ. Տիլպէրեան, Ս. Աւետիքեան, Յակոբ Մարկոսեան:„

Դաշնագրէս ակն յայտնի կ'երեւայ թէ քանի՜ն անձնուէր եռանդեամբ ընկերութեան անդամները սկսած են գործի ձեռք զարնել, նոյն իսկ ամէն ծախք իրենց քսակէն վճարելու պատրաստականութեամբ եւ հաւանութեամբ: Իրենց այս բարի եւ գովելի նպատակը՝ մարդասէր սրտերու մէջ արձագանգ գտնելով՝ քիչ ժամանակուան մէջ անդամներու թիւն երթալով բազմացած է. շատերը բաժանորդագրութեամբ եւ նուէրներով մասնակցած են ընկերութեանս, այնպէս որ հետզհետէ աւոնց թիւն ալ աճելով, բաւական պատկառելի դրամագլխոյ տէր եղած է ընկերութիւնը, որով իւր գոյութիւնը քանի մը տասնեակ տարիներու համար ապահովցուցած:

Ընկերութեանս հասոյթը կը գոյանար նախ հիմնադիր եւ պատուոյ անդամոց դրամով. երկրորդ՝ բաժանորդագրութենէ եւ նուէրներէ հաւաքուած դրամէ եւ երրորդ՝ ընկերութեան կողմանէ տրուած պարահանդէսներէ եւ ուրիշ հանդէսներէ ժողուած դրամով: Ընկերութեանս ունեցած գործունէութեան, տուած հանդէսներուն եւ մատուցած ծառայութեան վրայ փոքր գաղափար մ'ունենալու համար, կը յիշատակենք հոս աւոնցմէ մէկ քանին. այսպէս՝ 1875ին ընկերութեան տեղեկագրին մէջ կը տեսնենք թէ մէկ տարւան մէջ 253 հիւանդ՝ կանոնաւորապէս դարմանած է. իսկ պատահական ոտքի վրայ նայուածներուն թիւն եղած է 603: Իւր տասն եւ հինգ տարւոյ շրջանին մէջ (1877 Յունուարի) պարահանդէս մը տալով, 110 ոսկի զուտ արդիւնք ունեցած է: Մինչդեռ 1882 Դեկտ. ծազկի հիւանդութիւնը կը ճարակէր Զմիւռնիոյ մէջ, Աղքատասիրաց ընկերութիւնը իւր յատուկ բժշկին ձեռօք, Մեսրոպեան Վարժարանի 46 աղ-

քառիկաշակերտներն եւ Հռիփսիմեան Վարժարանի 55 կարօտ աշակերտուհիները պատուաստել կու տայ։ Ի նպաստ հիւանդանոցի՝ Հռիփսիմեան Վարժարանի սրահին մէջ տրուած պարահանդէսի հոգն (1885) Աղքատասիրաց ընկերութիւնն իւր վրան առնելով՝ 121 ոսմ. ոսկի կը յանձնէ հիւանդանոցի։ Այս մասնական դէպքերը մէկդի թողլով. բաւական է յիշել ընդհանուրին վկայութիւնը. մեր պանդուխտ եղբայրները, խաներու անկիւնը հեծող թշուառներն եւ Մօրթաքեայի նկուղներու մէջ տառապող ընտանիքները դեռ օրհնութեամբ կը յիշեն այն օրերն՝ երբ Բօլիտ Ցակոբ՝ ընկերութեան ժրաջան գործակալը՝ կ՚երեւար բժշկին հետ՝ հիւանդին սնարին մօտ՝ իբր երկնային նախախնամութենէ ղրկուած հրեշտակ մը։ Քանի՜ քանի մարդկային էակներ մահուան ճիրաններէն կորզուած են՝ ի շնորհս այս ընկերութեան, եւ դեռ քանինե՜ր, աւա՜ղ, կենաց լոյսը պիտի վայելէին այսօր, եթէ ընկերութիւնս՝ հաւատարիմ իւր ազնիւ նշանաբանին, շարունակէր մութ խաւերու մէջ սփռել մխիթարանք եւ երջանկութիւն։ 1894 թուականին ընկերութեան անկումը շանթի տպաւորութիւն գործեց զգայուն սրտերու վրայ, յուսահատութեան պէս բան մը ծանրացաւ հոգիներու վրայ, կարծես գթութեան երկնային ոգին էր որ իւր թեւերը կ՚ամփոփէր թշուառներու վրայէն եւ արտասուալից աչերով կը հեռանար առ յաւէտ։ Սակայն պէտք է խոստովանիլ՝ ի պատիւ այն հիմնադիր անդամոց, որոնք տակաւին կենդանի են՝ բաց ի Վանանդացիէ, թէ այդ անկումը յանկարծական չեղաւ. ընկերութիւնը գերագոյն ճիգեր ըրաւ իւր գոյութիւնը պահպանելու համար։ Երկարատեւ խուլ եւ յամառ պայքար մը մղեց մեծատանց սառնասրտութեան դէմ, պահ մը իր վերջին ոյժերն ամփոփելով վերստին երեւցաւ ասպարէզի վրայ՝ իր յառաջուան փայլուն օրերը յիշեցընելով։ Բայց

այդ երեւումը շատ կարճատեւ եղաւ, առկայծեալ ճրագի մը կը նմանէր, որ իւր յետին շողերն արձակելէ ետքը՝ կը մարէր ի սպառ:

Ընկերութիւնս ունէր իւր առանձին կանոններն, որոնց բովանդակութիւնն ինքնին կը ցուցընէ ընկերութեան գեղեցիկ կազմակերպութիւնը. այս կանոններն եղած են հետեւեալները:

---

## ‟Կանոնագիր Աղքատասիրաց Ընկերութեան Զմիւռնիոյ:

*Նպատակ ընկերութեանս:*

1. Ընկերութիւնս բաժանորդական է, եւ իւր առաջին ու գլխաւոր նպատակն է Քաղաքիս աղքատ հիւանդները ձրիապէս խնամել, որք թշուառ են եւ կամ գործել ոչ կարեն, մուրանալ ամաչեն:

2. Եթէ իւր դրամական վիճակը ներէ՝ Ընկերութիւնս մտադիր է նաեւ յապագային ուրիշ բարեգործութեանց եւս ձեռնարկել:

3. Հիւանդ աղքատք երկու կարգի կը վերածին, նախ անոնք որ անկարող են իրենց բնակութենէն դուրս ելնել՝ որոց ընկերութեան բժիշկն ամէն օր այցելութիւն կ'ընէ, երկրորդ անոնք որք անձամբ ընկերութեան դեղարանը կը դիմեն որոշեալ ժամուն, ուր պէտք եղած խնամքը կ'ընդունին:

4. Առաջին կարգի հիւանդք հայ են միայն. երկրորդ կարգին համար ամէն Ազգէ անխտիր կ'ընդունուին, բաւական է որ իրենց թշուառութիւնը վկայեալ լինի:

5. Ընկերութիւնս չէզոք է, եւ ուրիշ որեւէ իւր նպատակին չպատասխանող ազգային գործողութեանց չմասնակցիր պաշտօնապէս:

6. Ընկերութիւնս կը յարգէ միշտ ձայնից հաւասարութիւնն ու կարծեաց ազատութիւնը.

իւր միակ սկզբունքն է անաչառ եւ անկողմնակալ ոգւով յարգել իրաւունքը, ճանաչել իւր պարտքն եւ իւր նպատակին արդիւնաւորութեան ջանադիր լինել անձանձիր։

7. Ընկերութիւնս որչափ որ կը տեւէ անկախ է եւ ամենայն ազատութեամբ իւր հասոյթներն ու գոյքը կը գործածէ ի պէտս աղքատ հիւանդաց, բայց եթէ ոեւէ անակնկալ պատճառաւ մի լուծուի, իւր բոլոր գոյից միակ տէրն է Քաղաքիս ազգային Հիւանդանոցը։

*Թիւ Անդամոց, Դիւան եւ Պաշտօնեայք ընկերութեանս:*

8. Ընկերութիւնս առ նուազն երկոտասան Անդամէ կը բաղկանայ, ի բաց առեալ քաղաքիս ազգային երեւելի բժիշկները, որք ըստ ամենայնի խորհրդական Անդամ են ըստ տնօրէնութեան եւ ընտրութեան ժողովոյս։

9. Ի պահանջել հարկի ընկերութիւնս համաձայն հաւանութեամբ կարող է սոյն թիւն աւելցընել յառաւել եւս արդիւնաւորութիւն իւր նպատակին։

10. Եթէ Անդամ մի կամովին հրաժարի եւ կամ իւր կանոնազանցութեամբ հրաժարեալ համարուի, անմիջապէս նոր Անդամոյ ընտրութիւն կը լինի գաղտնի քուէարկութեամբ։

11. Ընկերութեանս դիւանը կը կազմեն Ատենապետն ու Ատենադպիրը, Փոխատենապետն ու Փոխատենադպիրը, նոյնպէս պաշտօնեայքն են Գանձապետն եւ Տեսուչք Դեղարանին։

12. Դիւանի Անդամոց եւ Պաշտօնէից պաշտօնավարութեան տեւողութիւնը տարի մի է. ի լրանալ տարւոյն հրաժարեալ կը համարուին եւ նորերու ընտրութիւն կը լինի գաղտնի քուէարկութեամբ։ Հրաժարեալք վերընտրելի են։

### Պաշտօն Ատենապետի:

13. Ատենապետի պաշտօնն է որոշեալ ժամանակին անխափան Անդամներն ի ժողով հրաւիրել, ատեանը բանալ ու գոցել, ժողովոյն նախագահել, Ատենաբաններու կարգաւ խօսք տալ, հաստատեալ կանոնաց անթերի գործադրութեան եւ վիճաբանութեանց օրինաւորութեան հսկել:

14. Ատենապետը պատասխանատու է Դիւանին բարեկարգութեան:

### Պաշտօն Ատենադպրի:

15. Ատենադպրի պաշտօնն է Ատենի մէջ Անդամոց խօսքերն ու վիճաբանութիւններն իւրաքանչիւրին անունովն ըստ կարգի համառօտիւ նշանակել, խնդրոց կարգի ցանկը պատրաստել եւ ժողովոյն ներկայացընել եւ ամէն որոշումն ու տնօրէնութիւն ճշտիւ արձանագրել:

16. Ատենադպիրը պատասխանատու է արձանագրութեանց ճշտութեանն ու օրինաւորութեան:

17. Արձանագրութեանց, նոյնպէս եւ բոլոր պաշտօնական գրութեանց Ատենապետն ու Ատենադպիրը կը ստորագրեն ի դիմաց ժողովոյն:

18. Ի բացակայութեան Ատենապետին՝ փոխատենապետն, եւ ի բացակայութեան Ատենադպրին՝ փոխատենադպիրն անոնց պաշտօնը կը վարեն:

### Պաշտօն Գանձապետի:

19. Գանձապետի պաշտօնն է ընկերութեանս բոլոր դրամական գործողութեանց օրինաւորութեան հսկել, անոնց կանոնաւոր հաշիւը բռնել, առձեռն պատրաստ դրամոց եւ հետզհետէ հանգանակեալ բաժանորդագրութեանց աւանդապահն լինել:

20. Գանձապետը պատասխանատու է առձեռն պատրաստ դրամոց եւ գոյից ապահովութեանն եւ արդիւնաւորութեան:

Պաշտօն Տեսչաց:

21. Տեսչաց պաշտօնն է ստէպ այցելութեամբ Դեղարանի բարեկարգութեան հսկել, պակսած դեղերուն ցանկն առնուլ եւ ներկայացընել Ժողովոյն, եւ ընկերութեանս բժշկին եւ Դեղարանի Գործակալաց վրայ իրենց տեղեկութիւնները հաղորդել ի նկատողութիւն։

22. Տեսուչք պատասխանատու են Դեղարանի բարեկարգութեան։

Պարտիք Անդամոց:

23. Անդամք պարտաւոր են Ատենապետին ազդարարութեամբ գումարելի Ժողովոց ներկայ գտնուիլ։

24. Ներելի է Անդամոց բացակայ լինել միայն հիւանդութեամբ, ճանապարհորդութեամբ եւ կամ կարի բանաւոր պատճառաւ մի, բայց նախ կը պարտաւորին գրով ծանուցանել Ատենապետին իրենց բացակայութեան պատճառը։

25. Վերոնշանակեալ երեք պատճառներէ դուրս եթէ Անդամ մի երեք անգամ իրարու վրայ Ժողովէ բացակայ գտնուի, Դիւանին ստորագրութեամբ ազդարարութեան գիր կ'ընդունի, եւ եթէ յաջորդ Ժողովոյն ներկայ չգտնուի դարձեալ, հրաժարեալ կը համարուի։

26. Անդամք կը պարտաւորին զոհել ամէն անհատական թիւր կարծիք եւ ընկերութեանս մարդասիրական նպատակին առաւել արդիւնաւորութեան խնամ տանիլ ամենայն անձնուիրութեամբ։

27. Անդամք պարտաւոր են առանց բացառութեան համակերպիլ ըստ ամենայնի հաստատեալ կանոնաց եւ իրենց ստանձնեալ պաշտօնը կատարել խղճի մտօք։

28. Ըստ օրինի տուգանաց դատապարտեալ Անդամք պարտաւոր են անթերի հատուցանել։

29. Ի բացակայութեան Անդամոց մեծագոյն մասին, կարելի է ընկերութեանս նպատակին արդիւնաւորութեան նկատմամբ առաջարկութիւններ ընել ու խորհրդածել, բայց որոշում մի չտրուիր։

30. Երբ խնդիրն ստիպողական է, ներկայ Անդամոց հաճութեամբ, նոյնին ընդունելութեան կամ մերժման նկատմամբ անհրաժեշտ հարկ է Ատենապետէ ստորագրեալ գրով անմիջապէս բացակայ Անդամոց գոնէ մեծագոյն մասին կարծիքն իմանալ եւ ըստ այնմ գործադրել։

31. Առանց մեծագոյն մասին հաւանութեան որեւէ որոշումն անվաւեր է եւ անընդունելի։

32. Ատեանը բացուելէն յետոյ, նոյնպէս եւ լրանալէն առաջ ընկերութեանս նպատակէն դուրս ոեւէ խնդրոյ վրայ խօսիլն խստիւ արգիլեալ է։

33. Ամէն խնդիր պէտք է նախ արձանագրուի առաջարկողին անուամբ եւ ըստ կարգի ներկայացուի ժողովոյն ի նկատողութիւն։

34. Ներելի չէ խնդիր մը չլուծուած՝ ուրիշ խնդրով զբաղիլ, ի բաց առեալ կարի ստիպողականները, այն ալ Անդամոց մեծագոյն մասին հաւանութեամբ։

35. Խնդիր մը մեծագոյն մասին հաւանութեամբ ընդունուելէն ու գործադրութեան որոշումէն յետոյ, հակակարծիք Անդամք կը պարտաւորին զայն յարգել, բայց կրնան իրենց դժկամակութիւնը պատճառաբանութեամբ հանդերձ արձանագրել տալ։

36. Ատենապետէն խօսք չխնդրած ու չառած ներելի չէ խօսիլ Ատենի մէջ։

37. Խնդրառուք հարկ է որ իրենց որոշեալ խնդրէն չշեղին, պարզ ու չափաւոր խօսին եւ անձնականի դպչելէ զգուշանան, եւ սոյն պարտուց զանցառութեան միջոցին Ատենապետին ազդարարութիւնը սրտի մտօք յարգեն։

38. Արգիլեալ է խստիւ Ատենաբանին խօսքն ընդմիջել անհամբերութեամբ եւ շփոթութիւն պատճառել։

39. Ընդերկար վիճաբանեալ խնդրոյ մի լուծումն ի պահանջել հարկի գաղտնի քուէարկութեան կ'ենթարկուի Ատենապետին առաջարկութեամբ։

40. Երբ Ատենապետը կամ Ատենադպիրը խնդիր մ'ունենան ներկայացընել ժողովոյն, կամ ամբաստանութեան ենթարկուին մինչեւ ցվերջնական լուծումն՝ փոխանորդք կը վարեն իրենց պաշտօնը։»

* * *

Աղքատախնամ Ընկերութիւն 1896։

Բ. Մինչդեռ Աղքատասիրաց ընկերութիւնն անմոռանալի յիշատակներ թողուցած՝ կը դադրէր գործելէ՝ երկու տարի ետքը սոյնպիսի գթասիրական ընկերութիւն մը ասպարէզ ելած կը գործէր, այս էր Աղքատախնամ ընկերութիւնը։ Ընկերութեանս հաստատման նպատակն նախկին Աղքատասիրացին շարունակութիւնն ըլլալ չէր։ Բացառիկ պարագաներու բացառիկ ծնունդն էր այս. ներքին գաւառներէ գաղթական Հայերու հոսանքին առջեւ, որ գունդագունդ կը դիմէր Զմիւռնիա, տեղւոյս Հայ երիտասարդաց մէջ փափաք մը կ'արթննայ, անօգնական չքաւոր պանդուխտներու գործ հայթայթել, ապրուստի միջոցներ ցոյց տալ, աշխատասիրութեան ոգին արծարծել, միով բանիւ մուրացկանութեան առաջն առնուլ եւ ասոր համար հարկ եղած նիւթական միջոցները դիւրացընել։

Սոյն ազնիւ խորհուրդն մի քանի ազնիւ երիտասարդաց մէջ յղացուած եւ ահա կը գործադրուի. իսկոյն ընկերութիւն մը կը կազմուի, որ նախկին Աղքատասիրաց ընկերութեան նպատակին հետ չշփոթելու համար՝ Աղքատախնամ անունը

կ'առնու եւ կը սկսի գործել. ափ յափոյ հաւաքուած նուիրատուութիւններով անմիջապէս հարկ եղած միջոցներն ու դիւրութիւնները կ'ընծայուին կարօտելոց։

Յաջորդ տարւոյ (1897ի) տեղեկագիրն աչքի առաջ ունենալով՝ կ'իմանանք թէ ընկերութիւնն աւելի քան երկու հարիւր անձանց օգնած է այդ տարին, “Ընկերութեանս այս շրջանի տարեկան հասոյթն իբր նպաստ՝ ճանապարհի ծախքի, գործի համար դրամագլխի, անհրաժեշտ հարկի բերմամբ հացագնի, գաղթականաց սենեկի վարձքի եւ պանդուխտ հիւանդաց դեղագնի համար բաշխուած է՝ կարելի եղած ամէն խղճմտութիւն եւ անաչառութիւն ի գործ դրուելով„։

Ինչպէս կ'երեւի սոյն տեղեկագրէն Աղքատախնամը միայն բաւական չէ համարած գործ հայթայթել աղքատիկ պանդուխտներու, հապա նաեւ գոյութենէ դադրած Աղքատասիրացին ալ պաշտօնն ի գործ դրած է, մերթ խաներու անկիւնն հիւանդ պառկողներու՝ դեղօրայք, ուտեստ եւն տալով եւ քանիցս պանդուխտներն իրենց հայրենիքն ղրկելու գործին նիւթապէս աջակցելով։

Սոյն ընկերութեան 97—98 տարւոյ տեղեկագիրն որ պերճախօս վկայ մ'է իր փայլուն գործունէութեան, համակրութեամբ կը լեցընէ Զմիւռնիոյ հայ հասարակութեան բանիբուն եւ տոհմասէր անձնաւորութեանց սրտերն։ Համակրութեան ցոյցեր մինչեւ իսկ արձագանգ կը գտնեն պաշտօնական շրջանակներու մէջ եւ ահա 1898ի Սեպտեմբերին Ազգ. վարչութեան Քաղաքական ժողովն գնահատելով ընկերութեան անդամոց անձնուէր գործունէութիւնն, ի նշան իւր բարձր վստահութեան եւ ի քաջալերութիւն այս ջանքերուն, Ազգային Առաջնորդարանի արկղէն 4600 ղրշ. գումար մը տարեկան կը յատկացընէ Աղքատախնամին, որպէս զի իւր նպատակն աւելի ընդար-

ձակօրէն կարենայ իրագործել եւ այսպէս Տնտեսական խորհուրդն ազատել աղքատներն խնամելու ծանր մտահոգութենէն. այս առթիւ Աղքատախնամն կը նկատէ իբր օժանդակ մարմին սոյն խորհրդոյն։

Համակրական այսպիսի նշաններէ քաջալերուած, երիտասարդք իրենց ոյժերն կը կրկնապատկեն եւ յանձն կ'առնուն նաեւ Նախկին Աղքատասիրացին նպատակն եւս իրագործել, պահելով իրենց տրամադրութեան տակ մասնաւոր բժիշկ մը, ծանկեալ աղքատներուն՝ բժշկական խնամք, դեղօրայք եւ ի հարկին կարեւոր սնունդ եւ այլն մատակարարելով։ Սոյն վերջին պարտականութիւնն ընկերութիւնս սկսաւ ի գործ դնել 1898ի Հոկտեմբեր ամսէն։

Ընկերութեանս Նախկին գործունեայ Տնօրէն խորհրդոյ անդամներէն կը յիշուին Յովհաննէս Էլմասեան, Տիգրան Տօնիկեան, Մինաս Մինասեան, Ռուբէն Որբերեան, Արմենակ Ծերունեան։ Իսկ այժմ, քանի մը ամսէ ի վեր ընկերութեանս գլուխն անցած կը գտնենք Նոր Տնօրէն խորհուրդ մը՝ կազմեալ եռանդուն եւ աշխոյժ անդամներէ եւ որոնք են՝ Տիգրան Գասպարեան Ատենապետ, Յովհաննէս Ահարոնեան Ատենադպիր, Երուանդ Կիւրինեան Գանձապետ, Սիմօն Պարտիզպանեան, Յովհաննէս Ունճեան, Մարգար Միրզա։

Աղքատախնամ ընկերութիւնս այսպիսի Տնօրէն խորհուրդ մ'ունենալէն ետքը՝ կրնայ Ազգը քաջայոյս ըլլալ որ անդամոց յարատեւ ջանիւք եւ բարի կամեցողութեամբ՝ բազմաթիւ թշուառներ պիտի գտնեն մխիթարութիւն եւ սփոփանք իրենց դառն օրերուն մէջ. որոնցմով ընկերութիւնս պիտի գտնէ այն համբաւն եւ գովասանքներն, զորս Նախկին Աղքատասիրաց ընկերութիւնն ստացած էր իր յարատեւ գործունէութեամբ եւ մատուցած ծառայութեամբ։

# 4.

## Հայ Ընթերցատուն (1868):

Ա. Իր տեսակին մէջ իբր հին հաստատութիւն մը՝ նշանակելի է Զմիւռնիոյ հայ ընթերցատունը: Երեսուն արդիւնաւոր տարիներ բոլորած, քառորդ դարու յոբելեանը տեսած՝ այս կարեւոր հաստատութիւնն իւր գոյութեան պատմութիւնն ունի այսպէս¹:

Ընթերցատունս իր գոյութիւնը կը պարտի 1868ի երիտասարդական կորովի այն ոյժերուն, որոնք ժամանակի պահանջմանց ժամ մ'առաջ գոհացում տալ նկրտած են: Այդ թուականներուն երբ Զմիւռնիա իբր գրական կեդրոն՝ անուն ու համբաւ ունէր, երբ երիտասարդութիւնն ընթերցասիրութեան եռանդով վառուած, օր օրին նոր գիրք եւ թերթ լափելու բաղձանքով լեցուած էր, ահա այնատեն ընթերցատուն մը հիմնելու գաղափարը կը յղանան Գարեգին Յ. Բաբազեան եւ Գալուստ Կոստանդեան հայ գիտնականներն, որ՞ եւ ապա ընդարձակուելով՝ իրենց շուրջը կը բոլորին մեծանուն անձնաւորութիւններ ալ:

Ընթերցարանիս նպատակն այսպէս կը սահմանէ ժամանակին վարչութիւնը, ինչպէս կը գտնենք Արձանագրութեան Տումարին մէջ: "Հայ ընթերցատունը՝ որուն նպատակն է ազգին մէջ ընթերցասիրութիւն եւ ուսմունք տարածել, զանազան օգտակար հանդէսներ, լրագիրներ, եւ գրքեր պիտի ունենայ իւր թանգարանին մէջ, ի ծառայութիւն Հասարակութեան:

"Սոյն Հաստատութեան կազմուիլը կը պարտաւորինք նախ Մեծ. Գարեգին Յ. Բաբազեանի որ առաջին անգամ այս խորհուրդը յղացաւ, եւ

¹ Ընթերցատանս նկատմամբ գրաւոր ինչ ինչ տեղեկութիւններ հաղորդած է մեզ Պր. Տիրան Գասպարեան, ժամանակին ընթերցատան Ատենապետը:

զայն ազգայիններու հաղորդելով, սկսաւ համոզել զանոնք եւ յորդորել, մասնակցելու այս կարեւոր հիմնարկութեան։ Երկրորդ Մեծ. Գալուստ Կոստանդեանի, որ յիշեալ յարգելի անձին աջակցելով, ամէն ջանք ի գործ դրաւ սոյն հաստատութեան յառաջադիմութեան համար։

"Ի սկզբան՝ երբ տակաւին ընթերցատան հիմնադիր Անդամներուն թիւը 14—16 հոգիէ կը բաղկանար, ժողով մը կազմուեցաւ Ղոնճաեան եղբարց տունը եւ հոն ընթերցատան վերաբերեալ քանի մը կարեւոր եւ էական կէտերու վրայ խօսուելով, Գործադիր ժողով մը կազմելու որոշումը տրուեցաւ եւ անմիջապէս անդամոց ընտրութեամբը հաստատուեցաւ։ Սակայն երբ ընթերցատան հիմնադիր Անդամոց թիւը հետզհետէ բազմանալով, ընթերցատունն աւելի մեծ կերպարանք մ'առաւ, այն ժամանակ 14—16 հոգւոյ ընտրութեամբը կազմուած Գործադիր ժողովոյ անդամներն, իրենց հրաժարականը տուին, որպէս զի աւելի ընդհանուր եւ կատարեալ կերպով ընտրութիւն մ'ըլլայ, բովանդակ Հիմնադիր Անդամոց համաձայնութեամբ եւ հաւանութեամբ եւ այս տեղի ունեցաւ 1869 տարւոյ Նոյեմ. 18/30 գիշերը։„

Սոյն թուականին առ Գարեգին Յ. Բաբազեան գրուած նամակին պատճէնը կը դնենք ստորեւ՝ օրինակելով բնագրէն, յորում կը տեսնուին ժամանակին թափուած ճիգերն եւ գովելի ոգին[1]։

---

1 Մեծարոյ Գարեգին Յ. Բաբազեան։

Հայ ընթերցատան հիմնադիր ժողովը կը փութայ իւր խորին շնորհակալութիւնը յայտնել ձեզ սոյն հաստատութեան համար ձեր կրած աշխատանքներուն եւ ի գործ դրած ժրութեանը համար։ Շիտակը, անուրանալի է որ Հայ ազգը ո՞րչափ պէտք ունէր այսպիսի հաստատութեան մը։ Հաստատութիւն մը՝ որուն սկզբունքը եւ նպատակը ինչպէս արդէն ծանօթ է ամենուն, ազգին մտային եւ բա-

Բ. Ընթերցատունս ունի իրեն յատուկ կանոնները՝ որ Հիմնադիր Անդամոց կողմանէ յօրինուած եւ բոլոր անդամակիցներու կողմանէ ընդունուած են։ Այս կանոնները կը բաժնուին երեք կարգի, ընդհանուր, Ընթերցարանի, Մատենադարանի, եւ են հետեւեալները։

*Ընդհանուր կանոնագրութիւնք:*

Ա. Հայ ընթերցատան նպատակն է, Հայոց թաղին մէջ կեդրոն մը հաստատել ուր ազգայինք կարենան գտնել հայերէն եւ օտար լեզուաւ լրագիրներ եւ գրքեր եւ ընթերցանութեան պարապիլ։

---

րոյական բարելաւութեանը համար պէտք աշխատի, որմէ ընտիր արդիւնքներ ապահով եմք պիտի չպակսին։

Հիմնադիր ժողովը մեծ համակրութեամբ գիտեց երեքշաբթի գիշերուան ընդհանուր ժողովին մէջ ձեր ցուցուցած գովելի եռանդը, եւ յօգուտ հաստատութեան գեղեցիկ սկզբունքներ եւ կանոններ հաստատելու համար ըրած ճիգը. յիրաւի բաւական դժուար եւ փափուկ կէտ մըն էր ընթերցատան կանոնագրութիւնը հանդիսականներուն ազատ վիճաբանութեան ներքեւ ձգած ժամանակնիդ անոնց դիտողութիւններուն եւ կարծիքներուն տեսակը անմիջապէս ճշտօրէն զանազանելը, անոնցմէ ուղիղը պաշտպանելով եւ սխալը հերքելով, առանց մասնաւոր անհատի մը իսկ գժտութեան տեղի տալու որով գործը այսպէս գեղեցիկ վախճան մը ստացաւ. ասիկա խելացի մտքի, ուղիղ դատողութեան եւ համոզիչ լեզուի մը գործն էր զորոնք երեքն ալ ժողովը ձեր վրայ գտաւ։

Հիմնադիր ժողովը կրկին անգամ իւր շնորհակալութիւնը յայտնելով՝ կ'աղաչէ որ իւր սիրոյ եւ յարգանաց հաւաստիքը ընդունիք։

Իզմիր 3 Դեկտ. /69։

Ի դիմաց հիմնադիր անդամոց
Հայ Ընթերցատան Զմիւռնիոյ

Խոսրով Մարկոսեան, Յ. Կոստանդեան, Գ. Եսայեան, Ց. Միրզա, Խ. Զաքեան, Մ. Մկրկերեան, ՍՀկ. Աւետիքեան, Ադամ Ղոնճաեան։

Բ. Ամէն անոնք որ ընթերցատան կանոնագրութեան կը հպատակին կրնան անոր անդամ ըլլալ։

Գ. Անոնք, որոնք տարեկան երկու օսմանեան ոսկի կը վճարեն կը կոչուին հիմնադիր անդամք, եւ կ՚ունենան ամէն իրաւասութիւն ընթերցատան վրայ. իսկ անոնք որ միայն մէկ օսմանեան ոսկի կը վճարեն տարեկան, իբրեւ բաժանորդ՝ պիտի յաճախեն ընթերցատունը։ Անդամոց եւ բաժանորդացմէ գանձուած դրամն, ընթերցատան պիտոյքն հոգալու պիտի գործածուի։

Դ. Անդամակցութենէ կամայ կամ ակամայ հրաժարողն իւր բաժանորդագրութեան գումարը չի կրնար յետս պահանջել։

Ե. Երկու եղբարք զատ զատ բաժանորդագին պիտի վճարեն. երկուքէ աւելի եղող եղբարք նմանապէս երկու բաժանորդագին միայն պիտի վճարեն, որով միւս եղբայրներն ինչպէս նաեւ հայրերնին իրաւունք պիտի ունենան ընթերցատուն յաճախելու իբրեւ բաժանորդ։

Զ. Կղերական դասը, ազգային ուսուցիչք եւ լրագրապետք, ինչպէս նաեւ վերոյիշեալ դրամը վճարելու վիճակը չունեցող ազգայինք, ընթերցատունն ձրի յաճախելու արտօնութիւն պիտի ունենան, իբրեւ սոսկ բաժանորդ։ Ասոնցմէ զատ Մեսրոպեան վարժարանին առաջին դասու աշակերտաց արտօնութիւն տրուած է մի միայն շաբաթ օրերը՝ կէսօրէն ետքը երեկոյեան ժամ 6, ազատ ընթերցատուն յաճախելու։

Է. Ընթերցատան հիմնադիր անդամք գաղտնի քուէարկութեամբ 10—12 գործադիր անդամք կ՚ընտրեն, որոնց վրայ պիտի ըլլայ գործադրութեան ընդհանուր պատասխանատուութիւնը եւ ընթերցատան նկատմամբ ամէն որոշմունքները։

Ը. Գործադիր անդամք գաղտնի քուէարկութեամբ իրենց մէջ կ՚ընտրեն ատենապետ մը,

փոխ-ատենապետ մը, ատենադպիր եւ փոխ-ատենադպիր մը, թանգարանապետ մը, գանձապետ մը եւ մէկ մատակարար, որոնք պատասխանատու են միայն իրենց պաշտօնին վերաբերեալ մասերուն մէջ։

Թ. Ընթերցատանս կանոնագրութիւնը հիմնադիր անդամոց մեծագոյն մասէն ընդունուած է ազատ վիճաբանութեամբ։ Կանոնագրութիւնը վերաքննելի է ամէն տարեդարձի։

Կանոնագիր Ընթերցարանի:

Ա. Ընթերցատունս բաց է՝ ձմեռը ամէն օր կէսօրէն ետք ժամ 5էն մինչեւ 10ը. եւ ամառը ժամ 6էն մինչեւ $10^{1}/_{2}$. իսկ կիրակի օրերը առաւօտեան ժամ $9^{1}/_{2}$էն մինչեւ 12. կէսօրէն ետքը 1—10։

Բ. Ընթերցատան մուտքը աղքատ դասուն միայն ձրի է, իսկ կարող անձինք պարտին տարեկան բաժնեգին մը վճարել։

Գ. Ընթերցարանին մէջ ամէն անհատ հաւասար է եւ պարտաւոր՝ քաղաքավարութիւնն ամէն կերպիւ յարգել։

Դ. Արգիլեալ է խմբակներ կազմել ընթերցատան մէջ, բարձրաձայն կարդալ՝ խօսիլ կամ գրել։

Ե. Ընթերցող մը իրաւունք չունի սրահէն որ եւ է թերթ մ'առնելու։

Զ. Բացարձակապէս արգիլեալ է թերթերու վրայ թշնամական ոգւով որ եւ է դիտողութիւն գրել։

Է. Սրահին մէջ արգիլեալ է զիրար նշաւակել։

Ը. Այս կանոններուն դէմ վարուողն երեք անգամ ազդարարութիւն կ'ընդունի, իսկ եթէ ուշ չդնէ ընթերցատուն յաճախելէ կ'արգիլուի։

Թ. Որ եւ է զանգատի կամ դիտողութեան համար դիմել առ Տնօրէն խորհուրդն։

Զմիւռին 1 Յունուար 1893.

Տնօրէն Խորհուրդ Հայ Ընթերցատան։

Կանոնագիր Մատենադարանի:

Ա. Ամէն անհատ կարող է մատենադարանին բաժանորդ գրուիլ ամսական 3 ղուրուշ՝ արծաթ դրամ վճարելով։

Բ. Ով որ մասնաւորապէս մատենադարանի բաժանորդ չէ իրաւունք չունի որ եւ է գիրք պահանջելու։

Գ. Բաժանորդ մը այն ժամանակ կրնայ ուրիշ գիրք մ'առնել երբ իր քովի ունեցածը վերադարձնէ։

Դ. Եթէ բաժանորդ մը իւր քով ունեցած գիրքը կորսնցընէ կամ պատռէ, պարտի այդ գրքէն օրինակ մը տալ եւ կամ արժէքը վճարել։

Ե. Որ եւ է բաժանորդ եթէ առած գիրքը պայմանօրին չը վերադարձնէ, պարտաւոր է անցած օրերուն համար դրամ վճարել։

Զ. Իբր նուէր ընդունելի են այն գրքերն որք ամբողջ են եւ որոնց պարունակութիւնք չեն հակառակ կայսերական բարեխնամ կառավարութեան օրինաց եւ շահուց։

Է. Առանց կարեւոր պատճառի մատենադարան մտնելը ընթերցողաց արգիլեալ է.

Զմիւռին, 1 Յունուար 1893.

Տնօրէն Խորհուրդ Հայ Ընթերցատան։

* * *

Գ. Ընթերցատունս ժամանակին աւելի փայլուն եղած կը թուի քան հիմակ, քանի որ ազգին

գրական եւ նիւթական բարձր կարողութիւններէ բաղկացեալ վարչական մարմիններով օժտուած էր, որոնցմէ զուրկ է այժմ։ Իւր յիշատակարան-ներուն մէջ կը հանդիպինք Մամուրեան, Չիլին-կիրեան, Մսերեան, Աղաթոն, Սվազլեան, Եսայ-եան, Մարկոսօֆ եւ այլ շատ մ՚անուններու, որոնք գուրգուրանօք այս հաստատութեան յառաջա-ցուցման չեն զլացած իրենց ջանքերը։ Ժամանակ մը Մամուրեան, Սրուանձտեանց, Իփէքճեան, Աղաթոն սահմանեալ օրեր գրական ակումբի կը վերածեն ընթերցատունն, ուր այլ եւ այլ ատե-նախօսութիւններ կ՚արտասանեն խուռն բազմու-թեան առջեւ։ 1873ին գործադիր խորհրդոյ ան-դամոց կողմանէ եղած ատենախօսութիւններէն կը յիշուին Մամուրեանի “Սահմանադրական դրու-թեան„ վրայ խօսածը, Տոքթոր Կիրակոսեանի՝ “Ընդհանուր Սահմանադրութեան„ վրայ, Ղեւոնդ վարդ. Փիրղալէմեանի “Ժամանակի„ վրայ ըրած ատենախօսութիւնները։ Երբ Խրիմեան Հայրիկ կ՚անցնէր Զմիւռնիայէն (1875 Մայ. 20)՝ խուռն բազմութեան առջեւ խօսած է “Հաստատութեանս նպատակը գովելով„, ինչպէս նաեւ Գարեգին վարդ. Սրուանձտեանց խօսած է “Մեր նախնիք եւ մենք„ նիւթին վրայ։ Նշանաւոր է նաեւ Վիեննայի Մխիթարեան միաբաններէն Հ. Կղեմէս Վ. Սիպի-լեանի բանախօսութիւնն ընթերցատանս մէջ (1876 Մարտ 15), որուն նիւթն եղած է “Կիլիկիա ըրած ուղեւորութեան հնագիտական արդիւնքը„։

Եղած է ժամանակ մը, յորում գիտնական օրիորդներ եւս ատենախօսած են ընթերցատանս մէջ, ինչպէս կը յիշուի օրիորդ Վէստի (1877ին) կանանց բազմութեան առջեւ “Դաստիարակու-թեան„ վրայ խօսածը։ Երբեմն նաեւ ընթերցատան սրահի անձկութեան պատճառաւ այսպիսի ատենա-խօսութիւններ կը կատարուէին Հռիփսիմեան վար-ժարանի սրահին մէջ. ինչպէս 1879ին երկսեռ

վարժարանաց տեսուչ Համբարձում Իփէքճեան ատենախօսած է՝ իրեն նիւթ ընելով «Թէ ինչ պէտք է ըլլալ Զմիւռնիոյ վարժարանաց նպատակը եւ որոնք են այդ նպատակին հասնելու միջոցները»։

Հետաքրքրութեամբ եթէ աւելի յառաջ երթանք եւ գտնալ ուզենք ընթերցատանս մէջ կատարուած բանախօսութիւնները, մատենադարանի արձանագրութեան գրքին մէջ յիշատակուած կը գտնենք՝ Մամուրեանի ժամանակ ժամանակ ըրած ատենախօսութեանց հետեւեալ նիւթերը. «Տնտեսական գիտութեանց վրայ», «Թէ Հայ մանկտին օտար վարժարաններ յաճախելով, օգո՞ւտ թէ վնաս ունի ազգին», «Զմիւռնիոյ Հայ հասարակութիւնը օտարաբնակ Հայ հասարակութեան նկատմամբ յառաջադէ՞մ է թէ յետադէմ», «Աշխատութեան վրայ» եւ այլն։

Դ. Ընթերցատան բարգաւաճ վիճակը կամաց կամաց կորսուած կ'երեւայ՝ հիմնադիր անդամոց հրաժարելովն. իրարու յաջորդող վարչութիւնք չեն կրցած պահել տալ այն նախնական բարձրութիւնն եւ անունն, զոր ունէր եւ պիտի աւելնար հետզհետէ։ Ամէն վարչութիւն՝ որ կ'ընտրուէր, միշտ տրտունջներ արձակելով կը հրաժարէր, գլխաւորաբար շէնքի վարձքէն ահաբեկելով, որ ամէն տարեգլխին վհատեցուցիչ ճիւաղի մը պէս կը տնկուէր վարչութեան անդամոց առջեւ, որոնք յուսահատ խուճապի կը դիմէն, թողլով իրենց աթոռներն ուրիշ նորեկներու։ Այսպիսի տարիներ անցնելէն եւ խել մը վարչութիւններ փոխուելէն ետքը՝ կը հասնի 1891 տարին։ Սոյն թուականին ընթերցատան գլուխն անցած վարչութիւնն ամենաերկար կեանք ունեցողն եղած է. որ եւ կը յաջողի միանգամայն ազգային գետնի վրայ, Ս. Ստեփանոս եկեղեցւոյ պարտէզին մէջ, ժամարարի սենեակներուն կից շէնք մ'ունենալ 1896 թուականին, որով վարձատրութեան նեղութենէն ազատած

ընթերցատան գոյութիւնը կատարելապէս ապահովուած եղաւ[1]։

Նորակառոյց ընթերցատան շէնքը բաժնուած է կրկին սրահներու, մին մատենադարանի յատկացուած, ուր դիմացէ դիմաց կանգնուած դարաններուն մէջ շարուած են գրքեր. երկրորդ սրահն ալ ընթերցանութեան որոշուած է, որուն պատերը կը զարդարեն աշխարհացոյց տախտակներ, նշանաւոր անձնաւորութեանց մէկ քանիին՝ ինչպէս Այտնեանի, Ադամեանի, Զուխաճեանի պատկերներն, եւ ուր կը տեսնուին սեղաններու վրայ դրուած օրաթերթեր, շաբաթաթերթեր եւ հանդէսներ։

Ընթերցատունս 1894 փետ. 6ին կատարած է իւր քառորդ դարու յոբելեանը՝ բաւական փառաւոր շքով. ի գովեստ այսպիսի օգտակար հաստատութեան մը՝ խուռն բազմութեան առջեւ ճառախօսած են Գեր. Ներսէս Ծ. Վ. Արսլանեան առաջնորդը, Մխիթարեան Հարք եւ Մամուրեան։

Ե. Ինչպէս յիշեցինք ընթերցատունն երկու մասի կը բաժնուի. ընթերցարահ եւ մատենադարան։ Ընթերցարահի մէջ կը գտնուին գրեթէ ամէն թոյլ տուեալ հայ թերթեր, ինչպէս նաեւ գաղղիերէն, անգղիերէն եւ թուրքերէն օրագիրներ եւ հանդէսներ։ Մատենադարանը 3,000է աւելի գիրք ունի, որոնց մեծ մասը մատենախօսական եւ գրական է. բայց դժբախտաբար ընթերցողներու մեծ մասը վէպերով կը սնանի. վէպերն են որ գործածութեան մէջ կը պատռին, կը մաշին եւ նորոգուելու պէտք կ'ունենան. իսկ մատենախօսական-

---

1 Սոյն տարւոյ վարչութեան անդամներն եղած են. Մարգար Միրզա, Տիրան Հ. Գասպարեան, Սուր Յ. Թօքաթլեան, Յովհաննէս Մ. Ունճեան, Աւետիս Կ. Ափրոեան, Յարութիւն Գազազեան, Գրիգոր Ս. Պօյաճեան եւ Յովհաննէս Մ. Խայեան։

ներէ շատերը գրեթէ իբր վարդ յոխորտաբար իրենց մաքուր դիրքին մէջ կը մնան. տեսնենք մինչեւ ե՞րբ։ 1.000 կտորէ աւելի գաղղիերէն եւ 4—500ի չափ անգղիերէն գրքեր կան, որոնց մեծ մասը դասական մեծ հեղինակութիւններ են եւ որոնք նմանապէս իբր վարդ կը կենան։

Մատենադարանի գրեանց մեծ մասը նուիրատուութեանց արդիւնք են Վենետիկի ու Վիեննայի միաբանութիւններէն, Էջմիածնի կաթողիկոսներէն, Երուսաղեմայ վանքէն եւ ուրիշ գրասէր անձնաւորութիւններէ։

Ընթերցատանս նիւթապէս եւ բարոյապէս պաշտպան հանդիսացող բազմաթիւ անձանց մէջ նշանաւոր տեղ կը բռնեն հանգուցեալ Յակոբ եւ Յովհաննէս էֆէնտիք Սպարթալեան, հանգուցեալ Վսեմ. Թագւոր փաշա Յակոբեան, որ իբր Զմիւռնացի՝ մինչեւ իւր մահն՝ քսանամեայ միջոցի մէջ՝ տարեկան հինգ—ութ ոսկի անընդհատ վճարած է, նոյնպէս իւր եղբայրն Մարգար աղա Յակոբեան որ բաւական թուով գաղղիերէն ընտիր գրքեր նուիրելէն զատ՝ երկար տարիներ 100 ֆրանք նպաստ կը ղրկէր։ Դարձեալ մշտապէս օգնած են Տեարք Յովսէփ Չէլէպի Եուսուֆեան, Եսայեան Եղբարք՝ Գէորգ եւ Ղուկաս էֆէնտիք, Մատթէոս էֆէնտի Պալեօզեան, Կարապետ էֆ. Արապեան, եւ ուրիշ բազմաթիւ անձեր, որոնց անուններն արձանագրուած են Ընթերցատան տումարին մէջ։ Ասոնցմէ ոմանք, ինչպէս Բաբազեան Յովհաննէս էֆ. եւ իւր համեստափայլ ամուսինն՝ Տիկին Լիւսի, Տեարք Եսայեան եւ այլք Ընթերցատանս սկիզբէն սկսեալ՝ ցարդ դադրած չեն իրենց անձնական ծախիւք եւրոպական այլ եւ այլ ընտիր լրագիրներ նուիրել։ Յիշատակաց արժանի է նաեւ Տիկին Տիրուհի Պետրոս Եուսուֆեանի անունն, որ հաճած է նուիրել Ընթերցատանս գաղղիերէն դասական բազմահատոր եւ ծանրագին գրքեր։

## 5.

*Անձնուէր Ընկերութիւն (1873—1882)։*

Կրթութիւն եւ ուսմունք ազգային շրջանակին մէջ ընդհանուր ընելու, դպրոցէ զուրկ եւ ուսման կարօտ անձինքներու օգնելու, չքաւոր աշակերտաց դպրոցական պիտոյք մատակարարելու, ի մի բան պանդուխտ եւ անուս ազգայնոց ուսում ջամբելու նպատակաւ՝ քանի մը երիտասարդներ ի մի գալով ընկերութիւն մը կը կազմեն Ուսումնասիրաց անուամբ (1873)։ Առանձին տեղ մը վարձելով՝ իրենց վախճանին համաձայն կը սկսին դասախօսութեանց, հայերէնէ զատ կը սորվեցընեն նաեւ գաղղիերէն եւ տաճկերէն լեզուները՝ ձրիաբար։ Հաստատութեանս առաջին տարին՝ Գեր. Եղեսեան եպիսկոպոս՝ ընկերութեանս դպրոցը ստէպ այցելութեան գալով եւ անոր նպատակն ու ուղղութիւնը դիտելով եւ անդամոց գոհողութիւնը գնահատելով՝ կ՚առաջարկէ եւ կը յորդորէ Անձնուէր անունը յատկացընել ընկերութեան, որ աւելի կը համապատասխանէ նպատակին եւ ուղղութեանը քան թէ Ուսումնասիրաց անունը։ Այսպէս ընկերութիւնս կը փոխէ իւր անունն, իւր կենաց առաջին տարւոյ վերջերն, եւ Անձնուէր անուամբ յառաջ կը վարէ իւր գործքերը։ Քանի մը տարի անցնելէն ետքն՝ ընկերութեան Տնօրէն խորհուրդը կ՚որոշէ Կ. Պոլիս հաստատուած համանուն (Անձնուէր) ընկերութեան հետ միացած գործել եւ անոր մէկ ճիւղը կազմել։ Կեդրոնին հետ կազմուած այս յարաբերութիւնը շատ կարճ ժամանակ կը տեւէ։ Նոր Տնօրէն խորհուրդը Կ. Պոլսոյ նոյն ընկերութեան հետ հաստատուած յարաբերութիւնները դադրեցընելով՝ իբրեւ բոլորովին զատ ընկերութիւն մը, Զմիւռնաբնակ անտէրունչ եւ աղքատ ազգայնոց մտաւորական զարգացման կը դարձնէ իւր մտադրութիւնը։

Թէպէտ եւ այս օրս չի յիշուիր Անձնուէր ընկերութեանս անունը, բայց սա ժամանակին բաւական ծառայութիւն մատուցած է տեղւոյս. բաւական թուով աշակերտներ յաճախած են ընկերութեանս դասարանն եւ իրենց սորվածին շնորհիւ քիչ շատ ապրուստնին ճարած։ Եռամեայ 1877—1880 տեղեկագրութեան եւ հաշուեցոյցին մէջ կը գտնենք որ 8,935 դահ. ընթացիկ մուտք ունեցած է, 6,308 դահ. ընթացիկ ելք, եւ 188 աշակերտ։ Ընկերութիւնս իւր տարեկան ծախքը կը հոգար անդամոց նիւթական եւ բարոյական օգնութիւններէ զատ՝ նուիրատուներու եւ տարեկան բաժանորդներու դրամով. բաց ի ասոնցմէ ժամանակ ժամանակ վիճակահանութիւններ ըրած է եւ ներկայացումներ տուած, այնպիսի ներկայացումներ՝ որոնց մէջ ընկերութեան անդամները դերասանի դեր կատարած են, ի նպաստ ընկերութեան։ Ընկերութեանս անդամոց տուած ներկայացումներէն զատ կը յիշուի՝ Պ. Ե. Մ. Զաքրաստճեանի դերասանական խումբն՝ որ 1880 Յուլ. 14ին ներկայացում տուած է՝ ի նպաստ ընկերութեանս։

## 6.

*Վահանեան Ընկերութիւն (1874—1878):*

Վահանայ Գողթնացւոյ անունն իւր վրան կրող ընկերութիւնս՝ իսկոյն իւր կազմակերպութեան գեղեցիկ նպատակը մատնանիշ կ'ընէ։ Քառորդ դար յառաջ (1874) Մեսրոպեան վարժարանի սաներէն քանի մը անձինք՝ երաժշտութեան ճաշակն առած եւ երգերու ներգործիչ վեհ զգացմանց՝ ու զօրութեանց քաջ տեղեակ, կը հաստատեն ընկերութիւն մը, Վահանայ Գողթնացւոյն հովանաւորութեան ներքեւ, նպատակ դնելով իրենց՝ երաժշտութեան ոգին արծարծել ազգին մէջ, նախ ձայնական երաժշտութենէ սկիզբն ընելով։

## 5.

*Անձնուէր Ընկերութիւն (1873—1882):*

Կրթութիւն եւ ուսումնք ազգային շրջանակին մէջ ընդհանուր ընելու, դպրոցէ զուրկ եւ ուսման կարօտ անձինքներու օգնելու, չքաւոր աշակերտաց դպրոցական պիտոյք մատակարարելու, ի մի բան պանդուխտ եւ անուս ազգայնոց ուսում ջամբելու նպատակաւ՝ քանի մը երիտասարդներ ի մի գալով ընկերութիւն մը կը կազմեն Ուսումնասիրաց անուամբ (1873)։ Առանձին տեղ մը վարձելով՝ իրենց վախճանին համաձայն կը սկսին դասախօսութեանց, հայերէնէ զատ կը սորվեցընեն նաեւ գաղղիերէն եւ տաճկերէն լեզուները՝ ձրիաբար։ Հաստատութեանս առաջին տարին՝ Գեր. Եղեսեան եպիսկոպոս՝ ընկերութեանս դպրոցը սաէպ այցելութեան գալով եւ անոր նպատակն ու ուղղութիւնը դիտելով եւ անդամոց զոհողութիւնը գնահատելով՝ կ'առաջարկէ եւ կը յորդորէ Անձնուէր անունը յատկացընել ընկերութեան, որ աւելի կը համապատասխանէ նպատակին եւ ուղղութեանը քան թէ Ուսումնասիրաց անունը։ Այսպէս ընկերութիւնս կը փոխէ իւր անունն, իւր կենաց առաջին տարւոյ վերջերն, եւ Անձնուէր անուամբ յառաջ կը վարէ իւր գործքերը։ Քանի մը տարի անցնելէն ետքն՝ ընկերութեան Տնօրէն խորհուրդը կ'որոշէ Կ. Պոլիս հաստատուած համանուն (Անձնուէր) ընկերութեան հետ միացած գործել եւ անոր մէկ ճիւղը կազմել։ Կեդրոնին հետ կազմուած այս յարաբերութիւնը շատ կարճ ժամանակ կը տեւէ։ Նոր Տնօրէն խորհուրդը Կ. Պոլսոյ նոյն ընկերութեան հետ հաստատուած յարաբերութիւնները դադրեցընելով՝ իբրեւ բոլորովին զատ ընկերութիւն մը, Զմիւռնաբնակ անտէրունչ եւ աղքատ ազգայնոց մտաւորական զարգացման կը դարձնէ իւր մտադրութիւնը։

Թէպէտ եւ այս օրս չի յիշուիր Անձնուէր ընկերութեանս անունը, բայց սա ժամանակին բաւական ծառայութիւն մատուցած է տեղւոյս. բաւական թուով աշակերտներ յաճախած են ընկերութեանս դասարանն եւ իրենց սորվածին շնորհիւ քիչ շատ ապրուստնին ճարած։ Եռամեայ 1877—1880 տեղեկագրութեան եւ հաշուեցոյցին մէջ կը գտնենք որ 8,935 դահ. ընթացիկ մուտք ունեցած է, 6,308 դահ. ընթացիկ ելք, եւ 188 աշակերտ։ Ընկերութիւնս իւր տարեկան ծախքը կը հոգար անդամոց նիւթական եւ բարոյական օգնութիւններէ զատ՝ նուիրատուներու եւ տարեկան բաժանորդներու դրամով. բաց ի ասոնցմէ ժամանակ ժամանակ վիճակահանութիւններ ըրած է եւ ներկայացումներ տուած, այնպիսի ներկայացումներ՝ որոնց մէջ ընկերութեան անդամները դերասանի դեր կատարած են, ի նպաստ ընկերութեան։ Ընկերութեանս անդամոց տուած ներկայացումներէն զատ կը յիշուի՝ Պ. Ե. Մ. Չափրաստճեանի դերասանական խումբն՝ որ 1880 Յուլ. 14ին ներկայացում տուած է՝ ի նպաստ ընկերութեանս։

## 6.

### Վահանեան Ընկերութիւն (1874—1878)։

Վահանայ Գողթնացւոյ անունն իւր վրան կրող ընկերութիւնս՝ իսկոյն իւր կազմակերպութեան գեղեցիկ նպատակը մատնանիշ կ'ընէ։ Քառորդ դար յառաջ (1874) Մեսրոպեան վարժարանի սաներէն քանի մը անձինք՝ երաժշտութեան ճաշակն առած եւ երգերու ներգործիչ վեհ զգացմանց՝ ու զօրութեանց քաջ տեղեակ, կը հաստատեն ընկերութիւն մը, Վահանայ Գողթնացւոյն հովանաւորութեան ներքեւ, նպատակ դնելով իրենց՝ երաժշտութեան ոգին արծարծել ազգին մէջ, նախ ձայնական երաժշտութենէ սկիզբն ընելով։

Ընկերութեանս խնդրանօք Փափազեան Վարդան՝ հմուտ երաժշտական արուեստի, յանձն կ'առնու կրթութեան այս կարեւոր ճիւղը մշակել վարժարանաց մէջ, ձայնաւոր տիրացուներ եւ աշակերտներ կը հաւաքուին եւ մեծ ոգեւորութեամբ երգիչներու խումբ կը կազմեն։ Ընկերութիւնս իւր հաստատութեան առջի երկու երեք տարիներուն մէջ՝ իւր գործունէութեան ցոյցերն անպակաս ըրած է։ Այլ եւ այլ տոհմային՝ կրօնական տօներու առթիւ, ինչպէս Ս. Մեսրոպայ, Ս. Վարդանանց եւն. մեծ շքեղութիւն տուած է իւր երգերու կանոնաւորութեամբ. երբեմն նաեւ մասնաւոր հանդէսներ կատարած է վարժարանաց մէջ։

Դժբախտաբար այս եռանդը մշտատեւ եղած չէ. արդէն իւր առջի տարուան՝ միամեայ հաշուեցոյցը (135 օսմ. ոսկի մուտք եւ 185 օսմ. ոսկի ելք) երկայն ապագայ մը չէր խոստանար, եւ իրօք ազգային երաժշտութեան այս նոր թուականն հազիւ երեք չորս տարի տեւած է եւ այնուհետեւ անունն անգամ մոռացութեան մէջ թաղուած։ Ցընթացս ժամանակաց՝ վարժարանս ունեցած է երգի ուսուցիչներ եւ քաջ տիրացուներ, ինչպէս այժմ Լ. Չիլինկիրեան՝ երգիչ մանկտւոյն գլուխն անցած կը սորվեցընէ քառաձայն Ս. Պատարագի երգեցողութիւնն, որ եւ յաջողութեամբ մէկ քանի անգամ երգեցին եկեղեցւոյ մէջ, բայց երաժշտութեան կողմնակից՝ մասնաւոր ընկերութիւն մը այնուհետեւ չէ կազմուած։ Վերջին տարիներուս մէջ հայ երիտասարդաց երաժշտաց խումբ մը կազմելու ձայներ լսուեցան, սակայն այս ձայներն արձագանգ չունեցան եւ այս գովելի բաղձանքն իրականութեան չանցած՝ յօդս ցնդեցաւ։

# 7.

*Հոգատար — Որբախնամ Ընկերութիւն.*
*Որբանոց Աղջկանց (1879—1891):*

Ա. Ինչպէս անունէն ալ կ'երեւայ՝ սոյն կարեւոր հաստատութեան վարչութիւնը կազմուած է՝ երկու միացեալ ընկերութիւններէ, այսինքն Հոգատար եւ Որբախնամ՝ կրթական եւ գթասիրական ընկերութիւններէ: Միացեալին վրայ չխօսած ակնարկ մը նետենք նախ Հոգատարին վրայ եւ համառօտիւ յիշենք թէ ինչ եղած է իւր անջատ գոյութեան մէջ:

Տիկնանց սոյն ընկերութիւնը 18 տարուան չափ առանձին կեանք մ'ունեցած է եւ հաստատուած է Զմիւռնիոյ նախկին Առաջնորդ Գեր. Մելքիսեդեկ Մուրատեանցի յորդորներովն եւ քաջալերութեամբը: Հիմնադիրներն եղած են Չիլինկիրեան, Մարկոսեան, Վարպետեան, Սվազլեան, Տիւպէրեան Տիկնայք եւ Օրիորդք: Ընկերութեան բուն նպատակն էր՝ Հռիփսիմեան եւ Մեսրոպեան վարժարանաց աղքատիկ սաներու զգեստ եւ գրական պիտոյք հոգալ եւ երկրորդաբար աղջկանց ձեռագործի ճիւղին մշակութիւնը հոգածութեանց առարկայ ընել: Ընկերութիւնս ազատ եւ անկախ ուրիշ ընկերութիւններէ՝ 18 տարի անդադար գործեց իւր նպատակին համաձայն: Իւր տարեկան ծախքը հոգալու համար՝ բաժանորդագրութենէ զատ՝ անուղղակի հասութից նորանոր աղբիւրներ ալ գտած եւ իւր վախճանին հասած է, այս աղբիւրներն եղած են պազար, պարահանդէս, նուագահանդէս, վիճակահանութիւն եւն:

Զմիւռնիոյ հասարակութեան սոյն ընկերութեան նկատմամբ տածած համակրանքն ու վստահութիւնը սա պարագայէն աւելի յայտնի կ'երեւայ, որ ընկերութիւնն իւր նպաստին համար կազմած մէկ պազարին առթիւ՝ 400 ոսկիէն աւելի արդիւնք

գոյացուցած է մէկ օրուան մէջ։ Ասկէ բնական է եզրակացընել թէ Հոգատարի անդամներն այսպիսի առատ նպաստներէ քաջալերուած, հետզհետէ իրենց գործունէութեան ասպարէզն ընդարձակած են։ Ընկերութեան 1882 թուականին հրատարակած տեղեկագրին մէջ կը կարդանք որ չէ թէ միայն նիւթապէս այլ նաեւ բարոյապէս օգնած է վարժարանաց սաներուն, անուղղակի ուսմանց յարատեւութեան ձեռն կարկառելով. Ծննդեան եւ Զատկի տօներու առթիւ կանոնաւորապէս զգեստեղէն մատակարարած եւ տարուան շրջանին մէջ գրական պիտոյքը հոգացած է։ Նոյն տարւոյ տեղեկագրին միացած հաշուեցոյցէն կ'իմանանք որ 18 ամսուան մէջ ունեցած է 903 արծաթ մեճիտ եւ 498 մեճիտ ծախսած է[1]։ Երկու երեք տարի ետքը տուած տեղեկագրութեան մէջ (1885—86) կը տեսնենք որ աղքատ աղջկանց զգեստ եւ գիրք տալէ զատ, վարժուհի մ'ալ հայթայթած է Հռիփսիմեան վարժարանին համար՝ անոր ամսականը տալով (երկամեայ մուտքն եղած է 2103 մեճիտ, ելքն 1149[2])։ Ասոնցմէ զատ՝ տարեկան տեղեկագրութիւններէն կը հասկցուի որ երկու աղքատիկ օրիորդներ իբր վարժուհի պատրաստած է, որոնք մինչեւ ցայսօր յաջողութեամբ իրենց պաշտօնը կը կատարեն, մին Հռիփսիմեան վարժարանի եւ միւսն Որբանոցի մէջ։ Իւր ծախքով շինել տըրուած է Հռիփսիմեան Նորակառոյց դպրոցի ամբողջ պատուհանի փեղկերը, ներկել տուած է գրասեղանները, յարդարած է պարտէզը, գնած է ամբողջ կահերն ու հայելիները։ Իւր յորդորանքով՝ Թա-

---

1 Նոյն տարւոյ Հոգատարի Ատենապետն էր Վարդուհի Գր. Չիլինկիրեան, իսկ Ատենադպիր՝ Մարիամ Մ. Մամուրեան։

2 Ատենապետ՝ Վարդուհի Գ. Չիլինկիրեան, Ատենադպիր՝ Ագապի Պ. Մաղաղաճեան։

*դուր էֆ. Սպարթալեան դպրոցին նուիրած է շքեղ գրադարան մը, Սահակ էֆ. Աւետիքեան ներկել տուած է ամբողջ շէնքն եւ Տիկին Հռիփսիմէ Կոստանդեան նուիրած է սիրուն ջահեր։ Այսպիսի գործունեայ կենաց ընթացքին մէջ, առաջնորդութեան երկպառակութեանց տխուր հետեւանքով՝ Հոգատարը խոհեմութիւն համարած է պահ մը տեղական ասպարէզէն քաշուիլ եւ իւր գործունէութիւնը նուիրել Գարաթաշի եւ Երզնկայի վարժարաններուն, որոնց նիւթապէս նպաստած է, մինչեւ որ պաշտօնական մարմինները շրջապատող կրից հոսանքը կ՚անցնի եւ ընկերութիւնը նորէն գործի կը սկսի։ Ահա այս միջոցին էր* (1893, 1 *Ապրիլ) որ վերջապէս կը միանար նորահաստատ Որբախնամ ընկերութեան հետ եւ միացեալ ընկերութիւնք Հոգատար — Որբախնամ անուամբ կը սկսէին նոր կենաց ընթացք մը։*

*Բ. Տարբեր պարագաներու տակ կազմուած է Որբախնամը.* 1891 *տարւոյ ձմրան օրերն, երբ Պ. Ա. Տիվրիկեան՝ հայերէնի եւ գրականութեան ուսուցիչ, Հռիփսիմեան վարժարանի բարձրագոյն կարգի աշակերտներու կը բացատրէր ընկերական միասիրտ եւ միահոգի գործակցութեան բարիքներն, օրիորդներէն մին՝ Օր. Լուսի Տիլպէրեան՝ ոգեւորուած կը գոչէ "Ինչո՞ւ մենք եւս չունենանք ընկերութիւն մը մեր համեստ շրջանակին մէջ„. այս ձայնն արձագանգ կը գտնէ ընկերակիցներուն փափուկ սրտին մէջ եւ ահա նոյն վայրկենին դպրոցական գրասեղաններու վրայ տասնի չափ դեռահաս օրիորդներ կը յղանան հաստատել ընկերութիւն մը Որբախնամ անուամբ, նպատակ դնելով իրենց՝ որբ աղջիկներ խնամել, նիւթապէս եւ բարոյապէս անոնց կրթութեան հոգը վրանին առնուլ։ Ի սկզբան անդ իւրաքանչիւր անդամ ամիսը մէկ քառորդ մէճիտիէ պիտի վճարէր եւ ընկերութիւնը մինչեւ որ կարեւոր գումար մը չգոյացնէր՝ իւր նպա-*




ՀՈԳԱՏԱՐ-ՈՐԲԱԽՆԱՄ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ։ ԱՆԴԱՄՈՒՀԻՔ ԵՒ ՈՐԲՈՒՀԻՔ։

տակն իրագործելու ձեռք պիտի չզարնէր։ Աւելորդ է յիշել թէ ինչպէս ամէն նորակազմ հաստատութիւն, նոյնպէս այս նորածիլ ընկերութիւնը դեռ գործքի չսկսած, խուլ եւ յամառ հալածանքի ենթարկուեցաւ թէ՛ պաշտօնական եւ թէ՛ անպաշտօն անձանց կողմանէ եւ ուրիշ ընկերութիւններէ, որոնց խօսքերովը նորակազմ ընկերութեան անդամներէն քանիններ իսկոյն վհատած բաժնուած են մարմինէն, այնպէս որ եղած է ժամանակ, յորում հինգ անդամ միայն մնացած է ընկերութեան մէջ, որոնք իրենց սկզբան վրայ հաստատուն՝ ամէն ճիգ թափած են՝ իրենց առաջադրեալ բարի նպատակին հասնելու։

Այսպէս երեք տարի առանձին մաքառելէ ետքը՝ 1893 Ապրիլ 1ին Հոգատար ընկերութիւնն արժան համարեցաւ աջակից գտնուիլ այս որբասիրական գործին յաջողութեան եւ միացաւ անոր հետ. այս միութիւնը նոր ոգի եւ շունչ տուաւ ընկերութեան եւ այնուհետեւ Հոգատար — Որբախնամ անուամբ սկսաւ ձեռնարկել։ Միացեալ ընկերութիւնս ողորմելի դրամագլխով բացաւ աղջկանց Որբանոց մը։ Իւր առաջին տարւոյ (1893 Ապր. 1—1894 Ապր.) տուած տեղեկագրութենէն կ'իմանանք որ նիւթական անձուկ վիճակին բերմամբ ի սկզբան անդ հարկ եւ խոհեմութիւն դատած է միայն ցերեկօթիկ վարժարան մը բանալ, հոգալով որբ աղջկանց գրական պիտոյքն, զգեստեղէն, ցերեկուան ճաշն եւ նախ 12 որբ աղջիկներ ընտրելով սկսած է իւր նպատակի գործադրութեան. նոյն տարւոյ վերջերն 12ն եղած է 14։ Ահա այս կերպով միացեալ ընկերութիւնս կը մտնէ իւր կենաց դժուարին ընթացքին մէջ։ Ժամանակին բերմամբ այսպիսի հաստատութեան մը կարեւորութիւնն եւ օգտակարութիւնն անուրանալի կը դառնայ. հասարակութիւնը մեծ համակրանք կը ցուցընէ, որմէ ընկերութիւնը քաջալերուած պարզ

հանդէսով մը՝ 1894ին Դեկտ. 5ին Որբանոցը գիշերօթիկի կը վերածէ։ Յաջորդ տարին որբերու թիւը կը հասնի 18ի, 1898ի սկիզբները 33ի, եւ այսօր 40ի մօտ ծնողազուրկ աղջիկներ պատսպարուած են մարդասիրական այս յարկին տակ։ Այս որբերն են Զմիւռնիոյ շրջակայ քաղաքներէն եւ Կարին, Խարբերդ, Ակն, Եվէրէկ, Արաբկիր, Սղերդ, Տիգրանակերտ եւ Մարաշ քաղաքներէն բերուած որբեր։

Ընկերութիւնս կարճ ժամանակուան մէջ իւր նիւթականը բաւական շիտկած է. 1895—96 տըւած տեղեկագրութեան մէջ կը տեսնենք որ նախորդ շրջանին մէջ 66.267 ընթացիկ դահեկան մուտք ունեցած է եւ 30.000 ընթացիկ դահեկան ծախք։ Իւր ծախուց մէջ առաջին տեղին կը բռնէ տան վարձքը, այնպէս որ եթէ բարերարի մը շնորհիւ ազատ տուն վարձու բռնելէ՝ երկայն եւ գեղեցիկ ապագայ մը կ'ունենայ[1]։

Որբանոցս ունի երկու միայուն վարժուհի. մին ցերեկեայ եւ միւսն գիշերօթիկ. ընկերութեան անդամներն, մինչեւ իսկ մեծահարուստ ընտանեաց պատկանող օրիորդներ կը խոնարհին իրենց թշուառ քոյրերուն նիւթական եւ բարոյական պէտքերն անձամբ հոգալ. դասերու մեծ մասը, ձեւագիտութիւն, ձեռագործ, գաղղիերէն, նկարչութիւն, աշխարհագրութիւն, թուաբանութիւն, բնական պատմութիւն, կրօնք եւ այլն անդամոց կողմանէ կը տրուին անձնուիրաբար։

---

1 1895 թուականին միացեալ ընկերութեանս գործունեայ անդամներէն կը յիշուին Օր. Աղնիւ Ալթունեան, որ ամէն կերպով դաստուութեան աշխատած է, Տէր Յարութիւն Քհ. Եղիվարդեան, Որբանոցի տեսչութեան պաշտօն կատարած, Աւետիս Տիվրիկեան, Հայրական խնամք թափած, Օր. Մերսէտէս Զմիւռնակէսեան, Եւքարիս Սվազլեան, Մարթա Պերկամալեան, Մարիամ Սիվրիսարեան. Խսկուհի Թօքաթլեան որ եռանդեամբ աշխատած են։

Հաստատութիւնս ունի ներքին զանազան պաշտօնէութիւններ, ինչպէս մատակարարութիւն, հանդերձապետութիւն, հսկողութիւն, հիւանդապահութիւն, դիւանական եւ ուսումնական պիտոյից մատակարարութիւն, որոնք ամէն տարի փոխն ի փոխ կը կատարուին անդամուհեաց կողմանէ։

Ընկերութիւնս ունի Ընդհանուր Ժողով մը, Ատենապետով եւ Ատենադպրով. ասիկա ի պահանջել հարկին ժողովներ կը կազմէ՝ ըստ վաւերացեալ կանոնագրի՝ իր իրաւասութեան պատկանող խնդիրները լուծելու եւ կարգադրելու։ Ընդհանուրն երկու տարին անգամ մ'իր (անդամոց) մէջէն կ'ընտրէ Գործադիր կոչուած ժողովն, որուն հսկողութեան կը յանձնուի Հաստատութիւնս։ Գործադիրը շաբաթը անգամ մը, եւ ի հարկին աւելի, ժողովներ կը կազմէ ընդ նախագահութեամբ Տեսչին. ունի Ատենապետ մը, Ատենադպիր մը, Գանձապետ եւ Մատակարար, որոց պաշտօններն ու պարտականութիւնները մասնաւոր կանոնագրով մը գծուած են։ Գործադիր անդամոց թիւն է 7—9, իւր դիւանը տարին անգամ մը կը փոխուի՝ մասնաւոր քուէարկութեամբ։

Ընկերութեան դրամական աղբիւրներն են՝ բաժանորդագրութիւնք, դրամական եւ ուտեստի վերաբերեալ նուէրներ, պարահանդէս, նուագահանդէս, տարեկան հանդէս եւ այլն։ Տեղեկագրին մէջ, որ ամէն տարի կը տրուի հասարակութեան, յականէ յանուանէ կը նշանակուին նուէրներու քանակը, տեսակը, նուիրատու անձինք, բաժանորդք եւ անդամք, ծախուց տեսակներն եւ այլն։ Որբանոցի տարեկան ծախքը կը հաշուի՝ նուիրուած ուտեստներու արժէքն ալ ի միասին առեալ, մօտ 450 օսմ. ոսկի։

Միացեալ ընկերութեանս բուն նպատակն է իւր պաշտպանութեան տակ գտնուող որբերուն տալ նախնական կրթութիւն մը, որ կը տեւէ 5



Հիմնադիր եւ Ատենապետ Հոգատար Ընկերութեան
(այժմ միացեալ Որբախնամի հետ):

տարի։ Այս շրջանն աւարտողներուն մէջ եթէ գտնուին ուսուցչութեան ընդունակութիւն ունեցողներ, ընկերութիւնն ամէն միջոց ի գործ կը դնէ՝ զանոնք ուսուցչութեան պաշտօնին պատրաստելու. իսկ մնացեալք պարտաւոր են հետեւիլ իգական ձեռարուեստներու եւ գործնական տնտեսագիտութեան՝ մինչեւ 4 տարի, որմէ յետոյ շրջանաւարտք պարտաւոր են 2 տարի ձրի ծառայել Որբանոցին մէջ՝ ի փոխարէն իրենց վայելած խնամոց. ապա զանազան ընտանիքներու քով յարմար պաշտօններու կը յատկացուին։

Ընկերութիւնս ունի 43էն աւելի անդամուհի. 50ի չափ բաժանորդ եւ բազմաթիւ նուիրատուներ, որոնք իրենց կարողութեան համաձայն՝ որ եւ իցէ նպաստով մը չեն մոռնար օգնել Որբանոցիս պատսպարեալ կարօտեալներուն։

Ընկերութեանս Նախագահ եւ Տեսուչն է Աւետիս Տիվրիկեան, իսկ Գործադիր Ժողովոյ անդամուհիներն են Վարդուհի Զիլինկիրեան՝ ատենապետ, Խիկուհի Թօքաթլեան՝ ատենադպիր, Քրիստին Պ. Յակոբեան՝ գանձապետ, Զապէլ Ս. Սիմոնեան՝ մատակարար, Աղաւնի Գույումճեան, Մարի Սիմոնեան, Մարի Արապեան, Մարինա Պագըրճեան, Լուսի Պարտիզպանեան։ Ընդհանուր Ժողովոյ ատենապետն է Խիկուհի Աղազարեան, ատենադպիրն է Մերսէտէս Զմիւռնակէսեան։

## 8.

*Հռիփսիմեան Կրթասէր Ընկերութիւն (1881).*
*Մանկական Պարտէզ (1888):*

Ա. Շքեղ դպրոցներ ունենալ եւ հրճուիլ աշակերտաց բազմութեան վրայ՝ բաւական չէ, այլ նաեւ վարժարանաց կրթական եւ բարոյական վիճակը նախանձելի ընել՝ անհրաժեշտ է հաստակութեան յառաջադիմութեան եւ զարգացման

համար. եւ զայս կրնան մի միայն ունենալ եւ կրթեալ եւ բարոյականի տէր ուսուցիչներն եւ վարժուհիներն ընել։ Այս կէտը լաւ ըմբռնած էին խումբ մը կրթեալ ազնիւ օրիորդներ, Հռիփսիմեան վարժարանի վաղեմի սանուհիք, որոնք իրենց փոքր քոյրերուն բարոյականն ու մտաւորականը բարձրացընելու անզուսպ փափաքով՝ կը կազմեն ընկերութիւն մը Հռիփսիմեան Կրթասէր անուամբ 1881ին[1], որուն նպատակը կ'ըլլայ ազգային կրթական գործին աջակցիլ, ի մասնաւորի աղջկանց վարժարանի աշակերտներու կրթութեան ձեռնտու ըլլալ եւ վարժուհիներ պատրաստել[2]։ Այս վսեմ եւ օգտակար նպատակին հասնելու համար՝ ընկերութեան անդամուհիներն իրենց նախագահ կ'ընտրեն զՄատթէոս Էֆ. Մամուրեան, որուն նախագահութեան ներքեւ կը բացուի ընկերութեան առաջին ժողովը 1881ին փետր. 3ին։ Այս ժողովոյն մէջ առաջին անգամ ընկերութեան դիւանը կ'ընտրուի, յետոյ խմբագրուած կանոնագրութիւնը քննութեան կ'ենթարկուի եւ ուղղուելով ձայնից բացարձակ առաւելութեամբ կ'ընդունուի։ Այս կանոններն եղած են հետեւեալները։

*Հիմնական կանոնագիր Հռիփսիմեան կրթասէր ընկերութեան:*

Ա. Այս ընկերութեան նպատակն է նախ, Հռիփսիմեան վարժարանի սանուհեաց կրթու-

---

[1] Ընկերութեանս վերաբերեալ արձանագրութիւններն եւ կարեւոր տեղեկութիւններն տուած է մեզի Կ. Վ. Պալապան։

[2] Ընկերութեանս առաջին հիմնադիր անդամներն եղած են Օր. Քէօլէեան Խոսրովուհի, Զաքրեան Սրբուհի, Հիւսէնեան Մարիամ, Քէչիչեան Վերոնիքա, Սվազլեան Զապէլ, Էլմասեան Վիրգինէ, Հալէպլեան Տիրուհի, Գարագաշեան Սրբուհի եւ Շահումեան Սրբուհի։

թեան աջակցիլ. երկրորդ վարժուհիներ պատրաստել։

Բ. Ընկերութեան անդամակցութեան բաժինն է քառորդ մէճիտ։

Գ. Ամէն հայուհի ու հայ որ այս բաժինը վճարէ ընկերութեան անդամ է. ով որ կ'ուզէ կրնայ մէկ բաժինէն աւելի գրուիլ։

Դ. Ընկերութիւնս կ'ընդունի նաեւ երկուսեռ նուիրատուներ։

Ե. Ընկերութիւնս ունի ընդհանուր ժողով մը եւ Տնօրէն խորհուրդ մը։

Զ. Ընդհանուր ժողովը կը կազմեն միայն ամէն բաժանորդ անդամուհիներ։

Է. Ընդհանուր ժողովոյ պաշտօնն է.

1. Ամէն տարուան սկիզբ Տնօրէն խորհրդոյ համարատուութիւնը լսել։

2. Երկու տարին անգամ մը Տնօրէն խորհրդոյ ընտրութեան ձեռնարկել եւ անոր տեղեկագիրն անխտիր ամէն անդամոց ու նուիրատուաց բաժնել։

3. Ընկերութեան ծախուց գումարը որոշել։

Ը. Տնօրէն խորհուրդը կը բաղկանայ ինն անդամէ եւ իր պաշտօնը կը տեւէ երկու տարի։

Թ. Տնօրէն խորհրդոյ անդամները վերընտրելի են։

Ժ. Տնօրէն խորհրդոյ պաշտօնն է.

1. Բաժնեգիններն ու նուէրները ժողուել։

2. Ընկերութեան հասոյթները արդիւնաւորելու ջանալ։

3. Դաստիարակութեան կարող ընկերուհիներ ընտրել, Հռիփսիմեան վարժարանին մէջ ձրիաբար դաս տալու, Տեսչութեան կարգադրութեան համեմատ։

4. Տարւոյն սկիզբը իր տեղեկագիրը ընդհանուր ժողովին ներկայացընել եւ անոր որոշումներն ի գործ դնել։

5. Վարժուհի լինելու փափաքող եւ ընդունակ աշակերտուհիներ որոշել եւ այդ պաշտօնին պատրաստել տալ նիւթական եւ ուսումնական պէտքերը հոգալով։

ԺԱ. Տնօրէն խորհուրդը վարժուհի պատրաստելու նպատակը իրապէս ի գործ դնելու կը սկսի՝ երբ ընկերութեան դրամագլուխը 200 մէճիտի հասնի։

ԺԲ. Ընկերութեան դրամագլխոյն 1/5 մասը իբր պահեստի գումար շահու կը դրուի։

ԺԳ. Ընդհանուր ժողովն ու Տնօրէն խորհուրդը ունին իրենց յատուկ դիւանները։

ԺԴ. Ընդհանուր ժողովն օրինաւոր նիստ կը կազմէ երբ անդամուհիներուն 3/4ը ներկայ գտնուին։

ԺԵ. Մեծամասնութեան սկզբունքը կը յարգուի եւ ամէն ընտրութիւն գաղտնի քուէարկութեամբ կ'ըլլայ։

ԺԶ. Ընդհանուր ժողովն տարին անգամ մը կը գումարուի, եւ ի հարկին նիստերը կը շարունակուին։

ԺԷ. Բացառիկ նիստեր կրնան կազմուիլ երբ ընդհանուր ժողովին դիւանն, կամ Տնօրէն խորհուրդը եւ կամ 13 անդամ արժան դատին։

ԺԸ. Տնօրէն խորհուրդը իր շինած եւ ընդհանուր ժողովէն վաւերացած ներքին կանոնագրոց համեմատ կը վարէ իւր պաշտօնը։

ԺԹ. Սոյն հիմնական կանոնագիրը՝ առանց նպատակի փոփոխութեան՝ վերաքննելի է երկու տարուան միջոցի մէջ, եթէ ընդհանուր ժողովոյ 3/4 մասը արժան դատէ։

* * *

Արթասէր ընկերութիւնը դեռ գործի ձեռնամուխ չեղած՝ Գեր. Առաջնորդ հօր գիր մը կ'ուղղէ եւ ընկերութեան կազմակերպութիւնը կը ծանուցանէ։ Ի պատասխանի սոյն թղթոյն՝ Գեր. Առաջնորդ Հայրը կ'ուղղէ ընկերութեան քաջալե-

րական գրութիւն մը եւ իւր հայրական օրհնութիւնը։ Այն երկու գրութեանց օրինակներն են հետեւեալները։

“Գերապատիւ Տ. Մելքիսեդեկ Եպիսկոպոս Մուրատեանց. Սրբազան Հայր.

Ինչպէս արդէն յայտնի է Ձերդ Սրբազնութեան, ներկայ տարւոյս սկիզբը հայ օրիորդաց ընկերութիւն մը կազմուեցաւ Հռիփսիմեան Կրթասէր անուամբ։ Ընկերութիւնն արդէն իր Տնօրէն խորհուրդը ընտրած, կանոնագիրը շինած եւ գործի սկսած է։ Այն կանոնագրոյն մէկ օրինակը յարգանօք Ձերդ Սրբութեան կը ներկայենք։ Անոր մէջ պիտի տեսնէք ընկերութեանս նպատակը, որ համեստ ու օգտակար է։ Ստուգիւ, թէեւ ընկերութիւնս դեռ նորակազմ ու անվարժ է, սակայն կը յուսայ որ իր բարենպատակ խորհուրդը օգտակար արդիւնք մը պիտի կարենայ արտադրել, եթէ քաջալերութիւն ու աջակցութիւն գտնէ ազնուախոհ ազգայնոց կողմէ, բայց ամենէ առաջ նոյն իսկ Ձեր բարձր հովանաւորութեան ու աջակցութեան կը կարօտի։ Ձեր պաշտպանութեան ու աջակցութեան ապացոյցը տուիք արդէն փութալով Ձեր առատասիրտ նուէրը շնորհել, որոյ համար մեր խորին շնորհակալիքը յայտնելէ զատ, կը խնդրենք որ Ձեր նիւթական օգնութեան միացնէք նաեւ Ձեր բարոյական օգնութիւնն եւ Ձեր խորհուրդներով մեզ առաջնորդէք, որպէս զի մեր դոյզն ջանքերը կարենան արդիւնք մը յառաջ բերել յօգուտ ազգային կրթութեան։

Խորին ակնածութեամբ Ձեր աջն համբուրելով մնամք Ձեր օրհնութեան կարօտ

Ի դիմաց Հռիփս. Կրթասէր ընկերութեան տնօրէն խորհրդոյ

1 Ապրիլ 1881 Զմիւռնիա։

Ատենապետ Խոսրովուհի Քէօլէեան,

Ատենադպիր Մարիամ Հիւսենեան։„

"Ազնուափայլ Օրիորդ Խոսրովի Քէօլէեան Ատենապետ տնօրէն խորհրդոյ Հռիփսիմեան Կրթասէր ընկերութեան. Ազնուափայլ Ատենապետ։

Ընդունեցի Ձեր շնորհալի գիրը զոր ուղղած էիք ամսոյս 1ին ի դիմաց Հռիփսիմեան Կրթասէր ընկերութեան եւ ընդ նմին մի օրինակ կանոնագիր, որոյ համառօտագիծ պարզութեան մէջ լիովին բացատրուած է ընկերութեանդ օգտակար նպատակը, գործողութեան սահմանն ու պայմանը։

Զմիւռնիոյ վիճակին առաջնորդութեան պաշտօնն ընդունելէս ի վեր, առաջին եւ ամենամեծ բաղձանքս էր երկու դասարան բանալ, մին՝ Մեսրոպեան եւ միւսն՝ Հռիփսիմեան վարժարանաց մէջ եւ դաստիարակութեան պաշտօնի ընդունակ ու փափաքող ուսումնաւարտ աշակերտներէն ու աշակերտուհիներէն ուսուցիչ եւ վարժուհի պատրաստել թէ քաղաքիս եւ թէ Գաւառիս տղայոց համար։ Կը ցաւիմ ասել, որ այս իմ սուրբ ու հանրաշահ փափաքս, զանազան ազգային ու դպրոցական դիպաց առթիւ անկատար մնաց։

Մեծ ուրախութեամբ կը տեսնեմ այսօր, որ նորահաստատ ընկերութիւնդ ձեռնարկած է իրագործել փափաքանացս մէկ մասը, որ է ուսուցչուհի կամ վարժուհի պատրաստել. իցիւ թէ քաղաքիս երիտասարդք եւս Ձեր ազնիւ եւ բարի օրինակին հետեւելով՝ ձեռնարկէին ընկերութիւն մը կազմել եւ Մեսրոպեան ուսումնաւարտ եւ ընդունակ սաներէն ուսուցիչներ պատրաստել։

Ես համոզուած եմ եւ կը խոստովանիմ որ, մեր Հայոց ազգին ամենէն առաջ եւ ամենուրեք երկու բան պէտք են վարժապետ եւ վարժուհի։ Ամէն հայաբնակ գաւառ պարտաւոր է մտածել այս մասին եւ ամէն բան Պոլսոյ կեդրոնէն չսպասել։

Անպատում կերպիւ ուրախ եմ, որ Զմիւռնիոյ հայ օրիորդաց Հռիփսիմեան նորակազմ ընկերութիւնը, իրեն կէտ նպատակի ընտրած է ուսու-

ցանել եւ ուսուցչուհի պատրաստել։ Ընկերութեան սոյն գործնական նպատակն ինքնին կը խօսի թէ՝ որչափ լաւ խորհած են դորին բարեսուն անդամուհիք եւ թէ ի՛նչ սուրբ ասպարէզ ընտրած են իրենց սիրտն ու միտքը ազգին նուիրելու համար։ Եւ միթէ կա՞յ արդեօք քան զայս մեծ խորհուրդ փրկարար, ուսուցանել անձնուիրաբար եւ ուսուցչուհիներ պատրաստել ընկերաբար հայ իգական սեռի մտաւորական եւ բարոյական զարգացման համար։ Գիտէք արդէն որ երկու տարիէ ի վեր մի հոգատար ընկերութիւն կայ քաղաքիս մէջ, որոյ անդամոց մէջ ոչ միայն կան Ձեր մայրերէն ըստ մարմնոյ, այլ եւ բոլոր անդամք մայր կը համարուին Ձեզ բարոյապէս։ Այս ընկերութիւնն ճշմարիտ ողորմասիրական գործ մը կը կատարէ, իր բաժանորդագրութեան եւ բարեպաշտից նուիրաց շնորհիւ, ամէն տարի հագուստ պատրաստելու 40էն աւելի աղքատ աշակերտուհեաց համար, եւ բաց յայսմանէ մայրական ճշմարիտ խնամակալութեամբ կը հսկէ ուսումնարանի եւ ուսանողուհեաց մաքրութեան եւ վարուց ու բարուց ուղղութեան վրայ։

Հոգատար ընկերութիւնն իբր մայր կը գործէր ու կը գործէ, իսկ այժմ Կրթասէր ընկերութիւնդ կը սկսի գործել իբր քո՛յր՝ իւր քո՛յրերուն համար, նպատակ ունենալով՝ ինչպէս յիշեցինք Հռիփսիմեան սանուհեաց կրթութեան աջակցիլ, ուսուցանելով Տեսչութենէն կարեւոր դատուած ուսումները եւ վարժուհիներ պատրաստել։ Ակներեւ կը տեսնուի որ ընկերութեանդ բարեսուն անդամք... գործաւորներ կը հանդիսանան, իրենց կենաց թարմ ու անբիծ շրջանին մէջ։ Հարկ չեմ տեսներ գովեստներ կարդալ այս մասին, բայց եւ չեմ կարող հայրական խանդաղատանքս ծածկել բարենպատակ ընկերութեանդ համար։ Ես կը սիրեմ ուրախանալ, քան թէ գովեստներ կարդալ եւ ուրախութիւնս իմ ամենամեծ գոհունակու-

թեան ու գովութեան յայտարարն է։ Գովեստներն բերանէն կ'արտասանուին, իսկ ուրախութիւնք սրտէն կը բղխեն։ Ուստի եւ կը հաւատամ սիրելի դստերք իմ, որ դուք եւս հայրական խնդակցութեանս կը սպասէք՝ քան թէ գովաբանութեանս։ Ուրախ եմ ես եւ շատ ուրախ ընկերութեանդ հաստատուելուն համար, քանզի այնպէս կը հաւատամ թէ՝ ամէն անհատ եւ ընկերութիւն, որ անձնուիրաբար կ'աշխատի հայոց աղջիկներու... կրթութեան համար, նա մեծ գործ կը գործէ, նա այն մեծ եւ փրկարար նշանաբանն կ'ընտրէ, զոր մեր Տէրն ու փրկիչ արտասանեց մի մեռած աղջիկ յարուցանելու համար, “Տալիթա կումի, աղջիկ, քեզ ասեմ ել կանգնէ։ Քանզի ճշմարիտ դաստիարակութիւն եւ կրթութիւն ասելով ես ուրիշ բան չեմ հասկնար, եթէ ոչ թմրեալն զարթուցանել, մարմնական, չասեմ անասնական՝ կեանքի մէջ մեռեալ կամ տատանեալ սիրտը եւ միտքը յարուցանել, հոգեւոր կարողութեան թռիչներ տալ եւ լայն արժանաւորութիւն բարձրացնել, որուն համար ստեղծուած է մարդը։ Հետեւապէս բարձր է ընկերութեանդ նպատակը եւ ես բոլոր սրտովս կը փափաքիմ, որ իւր բարձր նպատակը պսակուի ոչ միայն քաղաքիս, այլ եւ բովանդակ Գաւառիս հայ օրիորդաց կրթութեան նկատմամբ։

Կ'աղօթեմ որ ընկերութիւնդ հաստատ մնայ երկար տարիներ, քանզի երկար տարիներ պէտք են հայ դստրիկներու բարոյական եւ մտաւոր կրթութեան համար։ Կը խոստանամ նաեւ կենդանութեանս բոլոր օրերուն մէջ եւ բոլոր կարողութեամբս, ուր որ լինիմ, օժանդակել ընկերութեանդ բարի նպատակին, քանզի ամենէն կարեւոր եւ ամենէն իրական նպատակը կը համարիմ ընկերութեանդ նպատակը... ազգի (մը) վերակենդանութեան համար։

Ընդունեցէք ուրեմն, Աղնիւ Օրիորդ, ուրախութեանս հետ նաեւ հայրական օրհնութիւնս եւ հաղորդեցէք զայն ընկերութեանդ բարեսուն անդամներուն, մեր հայրասէր եւ ուսումնասէր դստրիկներուն, որոց բարի ձեռնարկին յաջողութեան եւ յարատեւութեան համար ի բոլոր սրտէ

Ի 28 Ապրիլի 1881 ամի ի Զմիւռնիա։

Աղօթարար

Մելքիսեդեկ Արքեպիսկոպոս Մուրատեանց։

* *
*

Կրթասէր ընկերութեանս իր այս նախապատրաստողական գործերէն ետքն՝ առաջին հոգը կ՚ըլլայ հաստյթի աղբիւրներ ստեղծել, ընկերութեան բուն նպատակն իրագործելու համար։ Գալով Հռիփսիմեան սանուհեաց կրթութեան աջակցելու գործին, ընկերութիւնն իր անդամուհիներէն կ՚ընտրէ Օր. Ս. Գարագաշեան՝ գրավարժութեան դասատու, Օր. Սրբուհի եւ Հռիփսիմէ Չաքրեաններն եւ Օր. Արուսեակ Սարաֆեանը՝ գծագրութեան դասատու, որոնք 1881 Մարտ 14ին իրենց պաշտօնին գլուխը կ՚անցնին ձրիաբար։ Կրթասէր ընկերութեան անդամուհիք՝ այս աշխատութեանց մէջ, չեն դեդեւիր նաեւ ընթերցասրահ մը բանալ իրենց համար, ուր կը յաճախէին իրենց միտքը զարգացընելու համար[1]։

Երկու ամբողջ տարիներ կը սահին, ընկերութիւնն ամէն ջանք եւ ճիգ կ՚ընէ իր նիւթականը հաստատ հիմանց վրայ դնելու, սակայն իր նպատակին երկրորդ մասին գործադրութիւնը կը յա-

[1] Կրթասիրաց ցուցուցած գովելի եռանդը պերճօրէն ստորագրած է Արեւելեան Մամուլ 1881 տարւոյ Մայիսի թուոյն մէջ։

պաղի։ Սոյն երկու տարուան մէջ (1881—1882, Դեկտ. 31) միայն ընկերութեան անդամուհիներէն մէկ քանին ձրիաբար դասախօսութիւններ կը կատարեն Հռիփս. Վարժարանի մէջ։ 1882ի վերջերն արդէն 150.000 դահեկան գանձած էր հասարակութենէն. գումար մը՝ որ իւր նպատակին երկրորդ մասը գործադրելու համար՝ կանոնագրին տրամադրածէն շատ աւելի էր։ Ինչո՞ւ ուրեմն կը դանդաղէր վարժուհիներ պատրաստելու նպատակն իրագործելու։ Այս հարցման իբր պատասխան՝ ընկերութեան երկամեայ տեղեկագրին մէջ կը կարդանք հետեւեալը։

"Կրթասիրաց Բ. նպատակի գործադրութիւնն, այն է վարժուհիներ պատրաստելու խնդիրը, բաւական նիւթեր գրաւեց եւ վերջնական որոշման մը չի յանգեցաւ, հարկ եղած տեղերու հետ ունեցած բանակցութեանց անհամաձայնութեան պատճառաւ։ Թէեւ ընկերութեան կանոնագիրը կը տրամադրէր եւ վարժուհի պատրաստել տալու ժամանակը հասած էր, սակայն այլ եւ այլ դժուարութեանց հանդիպելով՝ սոյն խնդրոյն վերջնական որոշում մը չի կրցաւ տալ։"

Սոյն տողերուն մէջ յիշուած անհամաձայնութիւններն եւ դժուարութիւններն եղած են մի միայն՝ օրիորդաց վարժուհի ըլլալ յանձն չառնուլն՝ այլ եւ այլ դժուարութիւններ յարուցանելով, ինչպէս ընկերութեան արձանագրութեանց մէջ յայտնի կը տեսնուի։ Թէպէտ եւ չորս օրիորդ իրենց հաւանութիւնը ցուցուցած են առ այս վախճան, սակայն անոնք ալ քիչ մ'ետքը չէ թէ միայն իրենց խոստմունը դրժած, այլ նաեւ Կրթասէրէն բոլորովին հեռացած են։ Այսպէս այլ եւ այլ խոչընդոտներու հանդիպելով Կրթասէր ընկերութեան նպատակի երկրորդ կէտը՝ անգործադրելի կը մնայ։ Այս խոչընդոտներէն մին կը համարուի նաեւ Հոգատար ընկերութեան՝ Կրթասէրի դէմ ունեցած

խուլ հակառակութիւնն որ ուզելով վերապահել իրեն ամէն ձեռներիցութիւն՝ կը ջանար միացընել Կրթասէրն իրեն հետ, ըսելով թէ միութեամբ աւելի օգտակար կ'ըլլան կրթական գործին։ Թէպէտ եւ եղած է ժամանակ, յորում Կրթասէրի Նախագահն իսկ բաղձանք ցուցուցած է միանալ Հոգատարի հետ, նպատակի գործադրութեան աւելի կարող գտնուելու համար, սակայն ընկերութիւնը բացարձակ մերժած է միութեան գաղափարը։

Բ. Գործերն այս վիճակի մէջն էին երբ Կրթասէրի ժողովներէն միոյն մէջ նոր գաղափար մ'երեւան կու գայ՝ յարատեւութիւն ընկերութեան՝ նպատակի փոփոխութեամբ։ Աւստի 1884 Օգոստոս 31ի նստին մէջ՝ նախագահը կ'առաջարկէ՝ որ իւրաքանչիւր անդամուհի իր նպատակը գրաւոր ներկայացընէ։ Օրիորդներէն ոմանք պէսպէս առաջարկութիւններ կ'ընեն, որոնք Կրթասէրի ոչ անուան եւ ոչ նիւթականին կը համապատասխանեն. ժողովը ձայնից առաւելութեամբ կ'ընդունի Օր. Վերոնիքա Քէշիշեանի Մանկական Պարտէզ մը բանալու գաղափարը։

Մանկական Պարտիզի մը գաղափարն ընդունելէ յետոյ ընկերութիւնը ծրագիր մը պատրաստած կ'ուղղէ առ նախագահն՝ քննութեան կամ վաւերացման. այս ծրագիրն եղած է հետեւեալն։

“Մեծապատիւ Մ. էֆ. Մամուրեան.

Նախագահ Հռիփսիմեան Կրթասէր ընկերութեան Ընդհանուր ժողովոյ։

“Ընկերութեանս ընդհանուր ժողովոյն մէջ Տնօրէն խորհուրդս արդէն իսկ որոշ նպատակին ցարդ անգործադրելի մնալուն պատճառաբանեալ տեղեկագիր մը ներկայելով Ձեր Մեծապատուութեան, խնդրեց որ դիւրագործելի եւ մեր ձեռնհասութեան յարմար նպատակ մը որոշելու շնորհն ընէք։ Դուք բարեհաճելով նկատողութեան առ-

նուլ մեր դիտողութիւններ եւ խրատացի գտնելով արդի նպատակին անգործադրելի մնալուն պատճառները, ընդհանուր ժողովոյ մէջ ձայնից մեծամասնութեամբ երբ սկզբունք ընդունեցինք Մանկանց Վարժոց մը հաստատելու առաջարկութիւնը եւ պարտք դրինք մեր վրայ յիշեալ նպատակի գործադրութեան համար ծրագիր մը ներկայացնել Ձեզ։

“Խորհուրդս անդրդուելի կերպով համոզուած է որ, որ եւէ ձեռնարկի մը մէջ հիմնապէս եւ բարւոք յառաջացման գլխաւոր եւ էական պայմանն է շրջահայեցութեամբ մտածել եւ փոքրէն սկսելով տակաւ առ տակաւ զարգացընել. Նմանապէս աներկբայ է որ Ձեր հասուն եւ լուրջ խորհուրդներէն զուրկ չի պիտի մնայ իր մտադրած Մանկանց Վարժոցի նպատակը գործադրելու համար։ Անժխտելի ճշմարտութիւն մ՚է որ անհատի մը կրթութիւնը որքան մատաղ հասակէն սկսի, այնքան հիմնական եւ օգտակար կրնայ ըլլալ, նոյնպէս կը տեսնուի որ ամեն յառաջադէմ ու լուսաւորեալ ազգաց մէջ խիստ մեծ ուշադրութեան առարկայ է դեռատի մանկանց կրթութիւնը. որոյ համար իրաւամբ ըսած է մեծանուն հայ մանկավարժ մը թէ՝ “մանուկներն են վարժարանին եւ ժողովրդեան հիմունք, անոնց կրթութեան որչափ աւելի խնամք տանինք, վարժարանը այնչափ կը բարեկարգի, ժողովուրդը այնչափ կ՚ազնուանայ եւ իր ապագան այնչափ կ՚ապահովի„։ Ուստի մեր կազմելիք վարժոցը ոչ միայն դաս մը արմատացած հին սովորութեանց ու նախապաշարմանց առաջն առնելով՝ դարուս ոգւոյն ու պահանջմանց համեմատ կրթութիւն ու դաստիարակութիւն պիտի տայ, այլ եւ մանկիկը պատրաստած պիտի լինինք ազգ. վարժարանաց աւելի դիւրութեամբ ընթացքը շարունակելու եւ այս միջոցով վարժարանաց մէկ բեռը մեր վրայ առած ըլլալով՝ կարեւոր ծառայութիւն մը մատուցած կ՚ըլլանք Ազգ. վարժարանաց։

“Մանկանց վարժոցն բոլորովին պատրաստ ու աշակերտաց ընդունելութեան յարմար ընելու համար, առնուազն վեց ամիս նախապատրաստութեանց զբաղիլ հարկ է մեզ, որոշելու համար բոլոր այն առարկաներ որոնք անհրաժեշտ են եւ որոց առաջինն է վարժոցին շէնքը։ Այն ձեռնարկութեան կարեւորութիւնն ու օգտակարութիւնը նկատելով՝ ընկերութեանս իրաւունքը եւ ազգին պարտքը կը պահանջեն որ Ազգ. վարչութիւնը ձեռնտու գտնուի մեզ եւ հարկ եղած աջակցութիւնը չի խնայէ. փոխանակ տարին 20—30 լիրա վարձք վճարելու, վարչութիւնը պէտք է մեր տրամադրութեան տակ դնէ իր կալուածներէն մէկը կամ այնպիսի տեղ, որուն վրայ երկու ընդարձակ սրահ եւ պարտէզ մը հաստատելով, ընկերութիւնս կարողանայ հոն ամփոփել քաղաքիս երկսեռ մանկտին։ Եթէ տեղւոյ մը շինութեան ձեռնարկենք, ծախքը հանգանակութեամբ ձեռք պիտի բերուի։

“Բ. Գործի ձեռնարկելէն յառաջ ընկերութիւնս յանձնառու պիտի ըլլայ, ծնողաց դիմելով, անոնց զաւակները իբր աշակերտ արձանագրել։

“Գ. Ընդունիլ 4—7 տարեկան մանուկներ, երեք տարուան շրջանի համար, յետ որոյ յանձնել Ազգ. վարժարանաց։

“Դ. Երկսեռ մանկանց թիւն ըլլայ 100—120։

“Ե. Վարժոցին իբր պաշտօնեայ՝ երկու վարժուհի դաստիարակ, մէկ կառավարչուհի՝ մանկիկները կառավարելու եւ անոնց զանազան պիտոյից ծառայելու համար. մէկ դռնապան՝ վարժոցը մաքուր պահելու եւ մանկանց երթեւեկութեան հսկելու համար։ (Երկու վարժուհիներուն 500ական ղուրուշէն՝ ամսական 1000 ղրշ. կառավարչուհւոյն՝ 400, դռնապանին՝ 300, ընդամենը 1700 ղուրուշ պաշտօնէից ամսական։) Ուսմանց ծրագիրը քաղաքիս Ուսում. խորհրդոյ քննութեան ենթարկել։

“Ա. տարւոյն համար, ծանօթութիւն գրոց, թուանշանաց եւ հեգել մինչեւ չորս գրէ բաղկացեալ բառերը. բարոյական մանր եւ զուարճալի պատմութիւններ:

“Բ. տարւան համար, պարզ ընթերցում, թուաբանական գործողութիւններէն գումար եւ հանում, կրօնական պատմութիւնք, ազգ. պատմութիւն, ծանօթութիւն աշխարհագրութեան, զուարճալի պատմութիւններ:

“Գ. տարւան համար, շարունակութիւն ընթերցանութեան, թուաբանական չորս գործողութիւնք, կրօնք, աշխարհագրութիւն, իրաբանութիւն, ծանօթութիւնք զանազան ազգաց, հետաքրքրաշարժ եւ զուարճալի պատմութիւնք:

“Զբօսանք ամեն օր առ նուազն երկու ժամ. ատէպ գովել ամենուն առջեւ ժրաջան ու աշխատասէրը եւ անոնց փոքր պատկերներ, խաղալիքներ եւ այլն պարգեւել:

“Արդ գալով ծախուց, ընկերութիւնս չորս պաշտօնէից ամիսը պիտի վճարէ 1700 ղուրուշ. տարին կ'ընէ 20.400. դարձեալ 5000 ղուրուշ նստարաններու. 4600 ղուրուշ պատահական ծախքերու, ընդամենը տարեկան ծախք պիտի ունենանք 30.000 ղուրուշ, որոյ փոխարէն պիտի ընդունինք երեք կարգի բաժնուած աշակերտներէն թոշակ՝ ծնողաց կարողութեան համեմատ. Ա. 1 մէճ. Բ. $^{3}/_{4}$ մէճ. Գ. $^{1}/_{2}$ մէճ.: Միջին հաշուով աշակերտաց թոշակներէն պիտի գոյանայ 20.000 ղուրուշ, որով մեր հաստատութեան ելքը պիտի հաւասարի մուտքին: Ասկէ զատ ընկերութիւնը հասոյթ պիտի ունենայ բաժնեգիններէ, նուիրատուներէ, տարին մէկ, երկու ներկայացումներէ եւն:

“Մանկանց վարժոցի հաստատութենէն մէկ տարի յետոյ, եթէ ընկերութեանս դրամական վիճակը ներէ, մասնաւոր սենեակ մը վարձելով ընդունի չքաւոր ընտանեաց զաւակներէ 20—30ի

չափ մանկիկներ եւ ձրիաբար անոնց կրթութեան հոգ տանի։

"Խորհուրդս աներկբայ ըլլալով որ վարժոցի մը հաստատութիւնը անհրաժեշտ է, ազգային մանկտւոյն կրթութեան ու դաստիարակութեան նոր ասպարէզ մը կը բանայ, ուստի կը յուսայ որ կրթութեան եւ յառաջադիմութեան նախանձախնդիր ամեն ազգայինք, մանաւանդ ծնողք, պիտի փութան յօժարակամ իրենց նուէրներով քաջալերել սոյն օգտակար ձեռնարկութիւնը։

"Արդ. Մեծ. Տէր, խորհուրդս Ձեր բարոյական աջակցութեան վստահելով կը համարձակի ներկայ ծրագրի մասին Ձեր դիտողութիւնը խնդրել։

Զմիւռնիա 31 Դեկ. 1884. Ի դիմաց

Տնօրէն խորհրդոյ Կրթասէր ընկերութեան

Ատենադպիր Ատենապետ

Վերոնիքա Քէշիշեան Երանուհի Պ. Տիլպէրեան„։

Սոյն ծրագիրն կ'երեւայ թէ անգործադրելի մնացած է. արձանագրութեանց մէջ չի տեսնուիր անոր վաւերացումը, որով Կրթասէրը կը հասնի մինչեւ 1888 թուականն՝ առանց յիշատակելի գործք մը թողլու իւր պատմութեան մէջ։ Սոյն տարւոյ Փետր. 12ին Հոգատար ընկերութեան կողմանէ միութեան առաջարկութիւն մը կ'ըլլայ տակայն Կրթասէրի ընդ. ժողովը՝ երկու ընկերութեանց նպատակն իրարմէ բոլորովին տարբեր ըլլալն յիշեցընելով՝ կը մերժէ Հոգատարի առաջարկութիւնը։

Քանի մը ամիս յետոյ Սեպտ. 22ին (1888) Կրթասէրն ուրիշ խնդրով մը զբաղած կը գտնենք։ Գեր. Մելքիսեդեկ Հայրը կ'առաջարկէ ընկերութեանս՝ թէ Ժընէվի համալսարանի մէջ ուսումնաւարտ օր. Մարգարիտ Պայազատեան յանձն կ'առնու 100 ֆր. ոսկւոյ փոխարէն Հռիփսիմեան վար-

ժառանի տեսչութիւնն ստանձնելու։ Ընկերութիւնս նկատելով որ այս առաջարկն իր նպատակին մասամբ իսկ կը համաձայնի, կ'ընդունի եւ հեռագրաւ կը հրաւիրէ նոյն օրիորդն գալ Զմիւռնիա՝ իր պաշտօնին գլուխն անցնելու։ Սակայն օր. Պայազատեանի պաշտօնավարութիւնն երկար չի տեւեր, իրմէ անկախ պատճառներէ՝ վեց ամիս յետոյ կը ստիպուի մեկնիլ իր հայրենիքն ի Կովկաս։

Նոյն տարւոյ մէջ Մ. Մամուրեան նախագահութենէ կը հրաժարի, առարկելով թէ իր ժամանակը չի ներեր այդ ծանր պաշտօնը կատարելու։

Գ. Այսպիսի խնդիրներու ժամանակ Կարապետ Վ. Պալապան Զմիւռնիա գտնուելով եւ Կրթասէր ընկերութեան անդամուհիներուն հետ ծանօթանալով՝ նոր ծրագրով Մանկական Պարտիզի մը գաղափարը կը յայտնէ անոնց։ Ուսումնասէր անդամուհիք իրենց նպատակի գործադրութեան գեղեցիկ եւ յարմար առիթը տեսնելով՝ Կ. Պալապանի հետ բանակցութեան մէջ կը մտնեն եւ 1888 Մարտ 12էն մինչեւ Յունիս 22 մերթ ընդ մերթ նիստեր գումարելով, Պալապանի ներկայացուցած նոր ծրագիրը քննելով՝ կ'ընդունին, Մանկական Պարտիզի կարասեաց, դասական առարկայից, գործիներու, տան, պաշտօնէութեանց վրայ խորունկ խորհրդածութիւններ ընելէ ետքն, հուսկ ուրեմն կ'որոշեն բանալ Մանկապարտէզ մը։ Թէպէտ եւ վարժուհի մը գտնելու համար իրենց Պոլիս ըրած դիմումն ապարդիւն կը մնայ, ուր Կ. Պալապան անձամբ գացած էր առ այս վախճան, սակայն ընկերութիւնն այս անգամ իր որոշման վրայ հաստատուն՝ 1888 Օգոստ. 20ին Զմիւռնիոյ մէջ կը ցրուէ հետեւեալ յայտարարութիւնը.

"Կրթասէր ընկերութիւնն, որոյ էական նպատակն է ձեռնտու գտնուիլ Ազգ. կրթութեան, պատիւ ունի յայտարարել Արդոյ հասարակութեան որ, որոշած է յառաջիկայ դպրոցական տարեշրջա-

նին սկիզբը՝ փոքր աղջկանց եւ տղոց համար Մանկապարտէզ մը բանալ, ազգային հիմնական դաստիարակութիւն եւ նոր մէթոտներու համաձայն նախնական կրթութիւն տալու համար։

“Ընկերութիւնս երկու շարժառիթ ունեցաւ այս կարեւոր որոշումը ընելու համար, նախ՝ դիտեց որ քաղաքիս փոքր մանկանց կրթութիւնը անգոհացուցիչ վիճակի մէջ կը գտնուի։ Առ հասարակ ծնողք այնպէս կը կարծեն թէ մանկանց կրթութիւնը 7 տարեկանէն կ՚սկսի, երբ Ազգ. վարժարանաց դռներն անոնց առջեւը կը բացուին, հետեւապէս 4—7 տարեկան մանկունք կը յանձնուին ատէպ այնպիսի անձերու, որոց ձեռօք մանկան բարոյական ու մտաւոր ընդունակութիւնները զարգանալու տեղ կը կորնչին։ Այժմ ընտանեկան խուցերն են սովորաբար մատաղ մանկանց ապաստանարանները, ուր մանկան կենսական ուժերը կը ջլատին անգործութեամբ կամ կը խամրին առտնին անյարմար ծառայութեամբ։ Երկրորդ՝ ընկերութիւնս նկատեց որ դաս մը ծնողք գիտնալով որ մանկան դաստիարակութիւնը խիստ կանուխէն պարտի սկսիլ, կը դիմեն օտարին եւ իրենց զաւակները Հայոց Թաղը բացուած մի քանի օտար վարժարաններ կ՚ուղարկեն, ուր Հայ մանկտին ոչ միայն ամէն ազգային ու կրօնական զգացումներէ հեռի կ՚օտարանայ, այլ եւ չ՚ընդունիր այն կրթութիւնը, որ անհրաժեշտ է մտաւոր զարգացման։

“Ահա այս անպատեհութեանց ըստ կարի դարման տանելու, Հայ մանկտին օտար ու վնասաբեր ազդեցութիւններէ ազատելու եւ միանգամայն Ազգ. վարժարանաց համար ընտիր աշակերտներ ու աշակերտուհիներ պատրաստելու համար, Կըրթասէր ընկերութիւնը Մանկապարտէզ մը բանալու որոշումն ըրած է եւ զայն պիտի գործադրէ յառաջիկայ Սեպտ. ամսոյ 12ին։ Մանկական Պարտէզը պիտի բաղկանայ երեք դասարանէ, պիտի

ունենայ փորձառու եւ հմուտ վարժուհիներ, որ պիտի աւանդեն Գր. Մէթոտի բոլոր դասերը։

«Մանկական Պարտէզը պիտի ընդունուին 2—8 տարեկան երկսեռ մանկունք։ Ամսական թոշակն է մէն մի աշակերտի եւ աշակերտուհւոյ համար անխտիր 1 արծաթ մէճիտ։

«Կրթասէրն այս կրթարանը կը հիմնարկէ այն վստահութեամբ, որ կրթասէր ու զաւակասէր ծնողք պիտի փութան իրենց քաջալերութեամբ ձեռնտու գտնուիլ ընկերութեան, որ յատուկ խնամք պիտի տանի իր նպատակի անթերի գործադրութեան։

«Մանկապարտէզի բացումը պիտի կատարուի Սեպ. 12ին. Շիրին փողոց թիւ 44 տունը։

Զմիւռնիա 20 Օգոստոս 1888.

Կրթասէր ընկերութիւն։

Սոյն յայտարարութեան վրայ Կրթասէր ընկերութիւնը կը բանայ Մանկական Պարտէզը 1888 Սեպտ. 12ին, ի ներկայութեան բազմաթիւ հանդիսականաց։ Բացման օրն եօթն աշակերտ միայն կ'արձանագրուին մուից տետրին մէջ. Թէպէտ վհատեցուցիչ էր սկզբնաւորութիւնն, եւ Կրթասէրի ըրած հաշուէն եւ ունեցած յոյսէն շատ հեռի, սակայն անդամուհիներն չեն վհատիր իրենց գործունէութեան մէջ. տարեկան շրջանին վերջը աշակերտաց թիւը կը հասնի 34ի։ Երկրորդ շրջանին սկիզբը ընկերութեան առաջին գործքը կ'ըլլայ՝ ամսաթոշակներն աստիճանաւորել, ծնողաց կարողութեան համեմատ երեք կարգի վերածել. Ա. 1 մէճիտ, Բ. 3/4 մէճիտ եւ Գ. 1/2 մէճիտ։ Այս կարգադրութեան վրայ աշակերտաց թիւը կը հասնի 80—90 եւ այնուհետեւ տարուէ տարի աւելնալով այսօր անոնց թիւը հասած է 175ի։

Կրթասէրն իբր ազգային կրթութեան սատարող ընկերութիւն, իրեն սուրբ պարտք համա-

րած է նաեւ կրթել իր յարկին տակ 40—50 ձրիավարժ աշակերտներ, որոնց տարին քանի մ'անգամ կը բաշխէ ճերմակեղէն, կօշիկ, գլխարկ եւն: Այս ձրիավարժներն աղքատ ընտանեաց զաւակներն են կամ որբեր, մանաւանդ վերջին տարիներուս մէջ Զմիւռնիա գաղթող թշուառ ընտանեաց մանկիկներ, որոնք կը վայելեն ամէն խնամք այս օգտակար հաստատութեան մէջ:

Մանկապարտիզի ծրագիրն է հետեւեալը.



ՄԱՆԿԱՊԱՐՏԻԶԻ ՄԱՆՈՒԿՆԵՐԷՆ ՄԻՆ:

## “Ա. ԴԱՍԱՐԱՆ

(4—6 տարեկան տղաք)

1. Կրօն. — Կրօնական խօսակցութիւններ: 2. Երգ. — Պար. — Մարմնամարզական խաղեր: 3. Պարտիզագործութիւն. — Եղանակին համեմատ ծաղիկներ սերմանել ու խնամել: 4. Ա. Նուէր. — Գունաւոր գնդակներ. գնդախաղ: 5. Բ. Նուէր. — Գունդ. խորանարդ եւ գլան, զննութիւն ու բաղդատութիւն: 6. Գ. Նուէր. — Ա. տուփ շինու-

թեան. Խորանարդ 8 խորանարդիկներու բաժնուած։ 7. Է. Նուէր. — Խճանկար. քառակուսիներ։ 8. Ը. Նուէր. — Ծալք կենսական առարկայից քառակուսի թղթով։ 9. Ժ. Նուէր. — Թղթէ երիզներով հիւսուածք։ 10. ԺԴ. Նուէր. — Առձիգ փայտեր։ 11. Թուղթ. — Շարան փոխն ընդ փոխ։ 12. Ժժմունք. — շարք գեղեցիկ ձեւերու։ 13. Ուլունք. — շարք թուաբանական եւ գեղագիտական։ 14. Պատմութիւն. — Մանր բարոյական պատմութիւններ։

## Բ. ԴԱՍԱՐԱՆ

*(4—6 տարեկան տղաք)*

1. Կրօն. — Կրօնական խօսակցութիւններ. Մանր աշխարհաբար աղօթքներ։ 2. Երգ. — Պար. — Մարմնամարզական խաղեր։ 3. Պարտիզագործութիւն։ 4. Գ. Նուէր. Բ, տուփ շինութեան. Խորանարդը 8 աղիւսի բաժնուած։ 5. Ե. Նուէր. — Գ. տուփ շինութեան. Խորանարդը 27 խորանարդիկներու բաժնուած։ 6. Է. Նուէր. — Խճանկար. Եռանկեանց տեսակները։ 7. Ը. Նուէր. — Ծալք կենսական առարկայից ձեւերու։ 8. Թ. Նուէր. - Կտրուածք. Կտրածը տետրակի մէջ փակցնել։ 9. Ժ. Նուէր. — Թղթով ստայնանկութիւն։ 10. ԺԱ. Նուէր. — Ձողիկներ (թիւ եւ հաշիւ)։ 11. ԺԲ. Նուէր. — Օղակներ (ուսումն կտորակաց)։ 12. ԺԳ. Նուէր. — Սիսեռով ու ձողիկներով շէնքեր։ 13. ԺԴ։ Նուէր. — Հիւսուածք։ 14. ԺԶ. Նուէր. — Գերձանով նկարչութիւն. Կոր գծի ուսումն։ 15. ԺԷ. Նուէր. — Գծագրութիւն գրաւէմի վրայ։ 16. ԺԸ. Նուէր. — Ծակուածք խաւաքարտի վրայ։ 17. ԺԹ. Նուէր. — Կարուածք խաւաքարտի վրայ։ 18. Ի. Նուէր. — Կաւի գործ։ 19. Ուլունք։ 20. Ժժմունք կամ խխունջ։ 21. Գիտական խօսակցութիւն. — Բնական պատմու-

թիւն։ 22. Պատմութիւն. — Մանր բարոյալից պատմութիւններ։ 23. Հայերէն։ — Խօսակցութիւն, գրել եւ կարդալ, առաջին կիսամեակին մէջ պատրաստութիւն գծերով ու շարժական տառերով, երկրորդին մէջ՝ կարդալ ու կարդացածը գրել։ 24. Թուաբանութիւն. — 1—20 թուերով չորս գործողութիւն, մանր կոտորակներ։

## Գ. ԳԱՍԱՐԱՆ

*(6–8 տարեկան տղաք)*

1. Կրօն. — Բերանացի պատմութիւն պատկերներու վրայ, Քրիստոսի ծնունդէն մինչեւ Համբարձում. Բացատրութիւն տօներու։ 2. Երգ. — Պար. — Մարմնամարզական խաղեր։ 3. Պարտիզագործութիւն. — Փորձական բուսաբանութիւն։ 4. Զ. Նուէր։ — Դ. տուփ շինութեան եւ կրկնութիւն նախորդ շինութեան տուփերու։ 5. Է. Նուէր. — Կրկնութիւն բոլոր ձեւերու։ 6. Ը. Նուէր. — Ծալք գեղեցիկ ձեւերու, կենսական առարկայից. Քառակուսի, քառանկիւն եւ եռանկիւն թղթիկներով։ 7. Թ. Նուէր. — Կտրուածք, կտրածը փակցընել մասնաւոր տետրի մէջ։ 8. Ժ. Նուէր. — Ոստայնանկութիւն թղթով։ 9. ԺԱ. Նուէր. - Ձողիկներ, փորձական թուաբանութիւն։ 10. ԺԲ. Նուէր. — Օղակներ. կոտորակներու ուսում եւ շինութիւն գեղեցիկ ձեւերու։ 11. ԺԳ. Նուէր. — Սիսեռի գործ. ձողիկներով, սիսեռով։ 12. ԺԴ. Նուէր. — Հիւսուածք։ 13. ԺԵ. Նուէր. — Թղթէ երիզներով գեղեցիկ հիւսուածքներու եւ ծաղիկներու շէնք։ 14. ԺԷ. Նուէր. — Նկարչութիւն գունաւոր մատիտով կամ գրաներկով տետրակներու մէջ։ 15. ԺԸ. Նուէր. — Ծակուածք դեղեցիկ օրինակներու կամ կիտանկար։ 16. ԺԹ. Նուէր. — Խաւաքարտի գործ։ 17. Ի. Նուէր. — Կաւ, ազատ ստեղծագործութիւն։ 18.

Գիտական խօսակցութիւն, շրջակայ բոյսերու, հանքերու, կենդանիներու եւ բնական երեւոյթներու վրայ խօսակցութիւն։ 19. Պատմութիւն. — Զմիւռնիոյ պատմութիւնը, նշանաւոր մարդոց կեանքը, նշանաւոր մանուկներ։ 20. Աշխարհագրութիւն. — Յատակագիծ դասարանի, դպրոցի, թաղի, Զմիւռնիոյ եւ Այտընի նահանգի. ծով, ծոց, լիճ, գետ եւն։ 21. Հայերէն. — Ընթերցում եւ ուղղագրութիւն, մանր պատմութեանց շարադրութիւն։ 22. Թուաբանութիւն. — 1—100 թուերու վրայ չորս գործողութիւն մտաւոր եւ գրաւոր. մանր կոտորակներ։ 23. Գեղագրութիւն. — Արտագրութիւն գեղեցիկ օրինակներու քառագիծ տետրակաց մէջ։»

---

Ահա այսպէս Կրթասէր ընկերութիւնը կը սկսի 1881ին գեղեցիկ նպատակով մը. 1884ի վերջերը գաղափար մը կ'ունենայ Մանկանց վարժոց մը բանալու եւ հուսկ ուրեմն 1888ի դպրոցական տարւոյ սկիզբը՝ Կ. Վ. Պալապանի աջակցութեամբ կը բանայ Մանկական Պարտէզ մը, որ այսօր Զմիւռնիոյ կրթական հաստատութեանց ծաղիկն է։ Այսօրս եթէ Կրթասէր ընկերութիւնն ունի փափաք մը՝ այն է ունենալ սեփհական շէնք մը Հայոց թաղին կեդրոնը եւ կրթել քաղքին ամբողջ հայ մանկտին։ Այս նպատակին հասնելու համար դիմումներ ըրած է թէ՛ հոս եւ թէ՛ այլուր. իր այս դիմումներուն արդեամբ պատասխանած են Վսեմաշուք Եսայեան եղբարք (Զմիւռնիոյ) որոնք իրենց մէկ ընդարձակ կալուածն ընկերութեան տրամադրութեան տակ դրած են, Վսեմաշուք Նուպար փաշա որ 100 դաղ. ոսկի նուիրած է ընկերութեանս շէնքին համար։ Չմոռնանք յիշել Բատաւիոյ պատուարժան ժողովն Յանձանձանաց Ազգային Հաստատութեանց, որ երկու տարիէ ի վեր, տարեկան նպաստ մը որոշած է ընկերութեան։

Հռիփսիմեան Կրթասէր ընկերութեան մեծ քաջալերութիւն տուած է Կ. Վ. Պալապան, որուն գործունէութեամբ բացուած է Մանկապարտէզն եւ որուն Տեսչութեան ներքեւ այսօրս՝ Ազգային երկսեռ վարժարանաց համար աշակերտներ կը պատրաստուին։ Անուրանալի է նաեւ Կրթասէր ընկերութեան անդամուհիներուն եւ ուրիշ ազնիւ Տիկնանց մատուցած անձնուիրութիւնն, ի մէջ այլոց յիշատակելի է Տիկին Մարիամ Կ. Վէմեանի անպատմելի եռանդն եւ անվհատ աշխատութիւնն ի նպաստ Մանկական Պարտէզի յառաջադիմութեան եւ բարգաւաճման, որուն անունը հաստատութեանս բարերարաց եւ աշխատաւորաց կարգին մէջ անջինջ դրոշմուած պիտի մնայ։

## 9.

### Արեւելեան Ակումբ (1886):

Զմիւռնացիք եւրոպական քաղաքաց ընկերական առաւելութիւններէն ետ չմնալու համար՝ տարիներէ ի վեր հաստատած են ակումբներ, քլիւպներ, որոնց նպատակն է՝ անդամ եւ բաժանորդ գրուողներու՝ զբօսանաց միջոցներ հայթայթել, տեղական եւ ի մասնաւորի եւրոպական թերթերու ընթերցանութիւնը դիւրացընել։ Այս ընկերութիւններն համազգային ըլլալով, ամէն ազգէ անհատներ կրնան անոնց անդամ գրուիլ։ Հայոցմէ, հարուստ դասակարգէն բաւական թուով անձինք ժամանակ մը Անգղիական քազինօ անուանեալ ակմբին անդամակից եղած էին. սակայն 1886ին՝ օտարներէ ցուցուած անքաղաքավարական վարմունքէ՝ եւ ինչ ինչ պարագաներէ ստիպեալ՝ սկսան հեռանալ նոյն տեղէն, բայց որպէս զի ետ չմնան օտարներէն՝ խորհեցան հաստատել իրենց մէջ ուրոյն ակումբ մը։ Ուստի կարող եւ ձեռնհաս ազգայնոց, ինչպէս Սպարթալեանի, Եսայեանի եւ

Պալեօզեանի միջնորդութեամբ կը կազմեն Արեւելեան Ակումբը։ Նոյն տարւոյ Ապրիլ 2ին՝ 20էն աւելի անդամակիցք ի մի գալով՝ կը կազմեն առաջին դիւանը, որուն ատենապետը կ'ըլլայ Մ. Մարտիրոս Ալփիարեան. նոյն ժամանակ Լողոփէթ էֆ. Պալեօզեան գեղեցիկ ատենաբանութեամբ կը բացատրէ Ակմբին նպատակն եւ վախճանր։ Բնական է այսպիսի նշանաւոր անձանց օգնութեամբ, քիչ ժամանակուան մէջ Ակումբի պէտք եղած կարասիքը կը հոգացուի եւ կը վարձուի սրահ մը. եւ տարւան վերջերը անդամոց թիւը կը հասնի 50—80։

Ակումբն կ'ունենայ մասնաւոր կանոնագիր մը, խմբագրուած Մեծ. Լողոփէթ էֆ. Պալեօզեանի եւ Դոկտոր Պ. Կոստանդեանի ձեռօք, որուն գլխաւոր կէտերը կ'ըլլան հետեւեալները։ Անդամակից գրուողն առ նուազն պիտի ըլլայ 21 տարեկան. անդամակցութիւնն երկու կարգի կը բաժնուի, առաջին կարգը պիտի վճարէ 8 օսմ. ոսկի տարեկան, երկրորդ կարգը 5 օսմ. ոսկի եւ իւրաքանչիւր անդամակից պիտի վճարէ մէկ անդամուան համար մուտք 2 օսմ. ոսկի։ Ակումբը պիտի ունենայ 5 հոգիէ բաղկացեալ Տնօրէն խորհուրդ մը, որուն պաշտօնը պիտի ըլլայ Ակումբի վարչական եւ դրամական գործերը հոգալ, եւ 9 հոգիէ կազմեալ ընտրողական ժողով մը, որուն պաշտօնը պիտի ըլլայ առաջարկեալ անդամոց ընդունելութեան հանդամանքները քննելով ընդունիլ կամ մերժել։

Նոյն տարւոյ եւ առաջին անգամ Տնօրէն խորհրդոյ անդամ կ'ընտրուին Գրիգոր էֆ. Եսայեան, Խաչատուր էֆ. Վարպետեան, Լողոփէթ էֆ. Պալեօզեան, Յարութիւն էֆ. Երամ եւ Պետրոս էֆ. Տիլպէրեան։

Արեւելեան Ակումբը Զմիւռնիոյ հայ հասարակութեան պատուաբեր կազմակերպութեանց մէջ առաջին տեղին կը բռնէ. այսօր իւր անդամոց թիւը կը հասնի 86—90ի մօտ. ունի առանձին կանոններ

եւ կարգադրութիւններ. այժմեան կանոնները նախնակէն մէկ երկու աննշան կէտերու մէջ կը տարբերին։ Ակումբին վրայ աւելի ընդարձակ գաղափար մ'ունենալու համար կը դնենք անոր կանոնագիրն։

---

## Կանոնագիր Արեւելեան Ակմբոյ:

---

### Կազմութիւն:

Յօդ. Ա. Արեւելեան Ակմբոյ Անդամները երկու կարգի կը բաժնուին, առաջին կարգի անդամները տարեկան 6 օսմ. ոսկի բաժանորդագին կը վճարեն եւ երկրորդ կարգի անդամները 4 ոսկի։ Այս տարեկան բաժանորդագնէ զատ իւրաքանչիւր անդամ մէկ անգամի համար իբր մուտք 2 ոսկի կը վճարէ։ Առաջին կարգի կը պատկանին այն ամէն անձինք որոնց նիւթական վիճակը անկախ է. իսկ երկրորդ կարգի կը պատկանին ամէն անոնք որք՝ որ եւ է կերպիւ ուրիշէ մը կախում ունին։ Այս վերջին կարգի կը վերաբերին նաեւ ամէն տեսակ միջնորդութեամբ պարապողք։

Յօդ. Բ. Ակմբոյ տարեկան շրջանը կը սկսի Սեպտ. 1ին։ Ամէն անդամ որ իր տարեկան բաժանորդագինը մինչեւ Հոկտ. 1 չէ վճարած, եւ այն ամէն նորընտիր անդամ որ իր ընտրութեան թուականէն մինչեւ մէկ ամիս իր բաժանորդագին եւ մուտք չէ վճարած հրաժարեալ կը համարուի։ Այս պատճառաւ հրաժարեալ անդամք՝ պարզապէս իրենց գոյացեալ պարտքն վճարելով՝ վերստին անդամակցելու իրաւունք ունին։

### Վարչութիւն:

Յօդ. Գ. Ակմբոյ Տնօրէն խորհուրդը ընդհանուր ժողովէ կ'ընտրուի եւ հինգ անդամներէ կը

բաղկանայ՝ որոնցմէ մին Բ. կարգի անդամոց չորս երեսփոխաններէ առաւելագոյն քուէ ստացողն է, որ իբր խորհրդակից անդամ Տնօրէն ժողովոյ կը մասնակցի։ Տնօրէն խորհուրդը՝ ամէն տարի ամբողջովին կը նորոգուի եւ իր դիւանը ինքն իր մէջ կը կազմէ։ Հրաժարեալ անդամք վերընտրելի են։

Յօդ. Դ. Տնօրէն Խորհրդոյ պաշտօնն է Ակմբոյ ելեւմտից հսկել, ընդհանուր ժողով գումարել եւ նոյն ժողովոյ որոշումները գործադրել, ներքին կանոնագրութիւնները խմբագրել, ներքին պէտքերը հոգալ, ծառաները փոխել, լրագրաց բաժանորդագրել, խաղերու վրայ հսկել եւ այդ խաղերէ առնուելիք տրոց քանակութիւնը որոշել եւ կանոնագրով չնախատեսեալ ամէն դիպուածոց մասին որոշում տալ։ Տնօրէն Խորհուրդը առնուազն ամիսը երկու անգամ կանոնաւոր նիստ կ'ընէ եւ Դիւանն իրաւունք ունի ի հարկին արտաքոյ կարգի ժողով գումարելու։

Յօդ. Ե. Տնօրէն Խորհրդոյ որոշումները քուէից բացարձակ առաւելութեամբ կը կատարուին եւ կանոնաւորապէս կ'արձանագրուին, քուէից հաւասարութեան պահուն Ա. Ատենապետը վճռող ձայն ունի։ Վաւերական են այն ամէն նիստերը որոց առ նուազն երեք անդամ ներկայ գտնուին։

Յօդ. Զ. Տնօրէն Խորհուրդը առանց Ընդհ. ժողովոյ դիմելու դրամական ո՛ եւ է փոխառութիւն ընելու արտօնեալ չէ։

Յօդ. Է. Ակմբոյ ներքին տեսչութիւնը յանձնուած է Ատենապետի, Ատենադպրի եւ Գանձապետի, որոնք պարտաւոր են թէ անհատաբար եւ թէ հաւաքաբար՝ մասնաւորապէս հսկել Ակմբոյ ներքին բարեկարգութեան, անդամոց ամէն կերպով համեստ եւ վայելուչ ընթացքին։ Իրաւունք ունին առժամանակեայ կերպով արտաքսելու այն ամէն անդամ որ կանոնաց հակառակ կը գործէ եւ

կամ որ եւ է կերպով ներքին բարեկարգութեան խանգարման առիթ կու տայ։ Որ եւ իցէ բողոք կամ գանգատ այն երեք պաշտօնէից միոյն պէտք է ուղղուիլ։

Յօդ. Ը. Գանձապետը Ակմբոյս գանձին պահապանն է։ Պարտաւոր է մանաւորապէս ներքին տնտեսական գործողութեանց վրայ հսկել. երեք ամիսը մի անգամ Տնօրէն Խորհրդոյ եւ տարին մի անգամ ընդհ. ժողովոյ ներկայացնել Ակմբոյ ելեւմտական վիճակը եւ արտօնութիւն չունի առանց Տնօրէն Խորհրդոյ հաւանութեան 10 ոսկիէ աւելի ծախք ընելու։

Նոր Անդամոց Ընտրութիւն։

Յօդ. Թ. Նոր անդամոց ընտրութիւնը կը կատարուի Սեպտ. սկիզբէն մինչեւ Յունվարի վերջը։ Օտարական մը չէ կարող անդամ ընտրուիլ առանց առ նուազն երեք ամիս քաղաքիս մէջ բնակելու։

Յօդ. Ժ. Նոր անդամոց ընտրութիւնը կը կատարուի ընդհ. ժողովոյ գաղտնի քուէարկութեամբ, որոց կը մասնակցին Ա. կարգի բոլոր անդամք եւ Բ. կարգի չորս երեսփոխանք։ Քուէարկուաց ամբողջ թուոյն երեք քառորդ մասէն մէկ աւելի հաստատ քուէ ստացողը Ակմբոյ անդամ ընտրուած կը համարուի։

Յօդ. ԺԱ. Նոր անդամոց ընտրութիւնը հետեւեալ եղանակաւ կը կատարուի։ Ընտրելի անձը՝ որ պարտի 20 տարին լրացուցած ըլլալ, Տնօրէն Խորհրդոյ դիւանին ուղղեալ նամակաւ մը կամ բերանացի իր խնդիրը կը ներկայացնէ։ Տնօրէն Խորհուրդը առաջարկեալ անձին անունը 8 օր Ակմբոյ սրահին մէջ ի տես անդամոց դնելէ յետոյ գաղտնի քուէարկութիւնը կը կատարէ եւ արդիւնքը առաջարկելոյն կը հաղորդէ։

Յօդ. ԺԲ. Ակումբէս հրաժարեալ անդամ մը, եթէ երեք տարուան միջոցին մէջ վերստին

անդամակցիլ փափաքի, պարզապէս Տնօրէն Խորհրդոյ որոշմամբ կրնայ ընդունուիլ. բայց եթէ աւելի ժամանակ հրաժարեալ մնայ ընդհ. քուէարկութեան դիմելու պարտաւոր է: Սակայն ներկայ կանոնագրութեան ընդհ. ժողովէ վաւերացման թուականէն առաջ հրաժարեալ անդամք եթէ վերստին անդամակցիլ կամենան, անպատճառ ընդհ. քուէարկութենէ անցնիլ կը պարտաւորին:

Արտաքսումն Անդամոց:

Յօդ. ԺԳ. Հետեւեալ պատճառներն միայն կրնան անդամոց արտաքսման առիթ տալ. — ա. Որեւէ դատարանէ մը անուանարկիչ պատժոյ մը դատապարտուիլ: բ. Ակմբոյ մէջ բարի կենցաղավարութեան եւ համեստութեան օրինաց խիստ եւ յանդուգն կերպիւ հակառակ գործել: գ. Ակմբոյ մէջ գոյացեալ խաղի պարտքը երեք օրուան մէջ չը վճարել: դ. Ակմբոյ պատւոյն եւ համբաւին վնասելու բնութիւն ունեցող ընթացից հետեւիլ: Այս ամեն պատճառները կրնան տեղի տալ առժամանակեայ եւ կամ վերջնական արտաքսման:

Յօդ. ԺԴ. Առժամանակեայ եւ վերջնական արտաքսման որոշումները Տնօրէն Խորհրդոյ կողմէ կը տրուին եւ կը գործադրուին: Վերջնական արտաքսման դատապարտուած անձն իրաւունք ունի մի անգամ ընդհ. քուէարկութեան ներկայանալու:

Օտարականաց առժամանակեայ Ընդունելութիւն:

Յօդ. ԺԵ. Կառավարական պաշտօնեայներէ մի միայն Կուսակալն եւ Տեֆթերտարն արտօնութիւն ունին ձրիաբար Ակումբս յաճախելու: Նոյնպէս իրաւունք ունին ձրիաբար յաճախելու որ եւ է տէրութեան մարտանաւուց պաշտօնեայք:

Յօդ. ԺԶ. Զինուորական բարձրագոյն պաշտօնեայն, դատարանաց եւ թաղապետութեանց

նախագահք, մաքսի եւ հեռագրատան տեսուչները, ընդհ. դատախազն եւ օգնականը, արտաքին յարաբերութեանց տեսուչն եւ ոստիկանապետն առանց ընտրութեան ներկայանալու, պարզապէս Ա. կարգի տուրք վճարելով Ակումբիս անդամակցելու իրաւունք ունին։ Բայց անոնցմէ կանոնաւոր քուէարկութեամբ ընդունուածները միայն ժողովոյ եւ վարչութեան մասնակցելու իրաւունք ունին։

Յօդ. ԺԻ. Եթէ Ակումբս պարահանդէս տայ պիտի հրաւիրուին. ա. Անդամոց ընտանիքը եւ որդիքը որք 20 տարին լրացուցած են եւ ամէն անոնք որոնք իրենց հետ միեւնոյն յարկի ներքեւ կը բնակին. բ. Մարտանաւուց պաշտօնակալք. գ. Անդամոց կողմէ ներկայացեալ օտարականք. դ. Քաղաքիս մէջ հաստատեալ այլ Ակմբոց Տնօրէն Խորհրդոց անդամք, փոխադարձութեան պայմանաւ. ե. Մեռեալ անդամոց այրիները եւ աղջիկ զաւակները։

Յօդ. ԺԸ. Քաղաքիս մէջ առժամանակեայ կերպիւ բնակող օտարականները Ակումբիս որ եւ է անդամի մը ներկայացմամբ կրնան միամսեայ ձրի յաճախման տոմսակ ընդունիլ. յաջորդ ամսոյ համար մինչեւ վեցերորդ ամիսը ամսական մէկ ոսկի կանխիկ վճարելու պարտական են։ Եթէ փափաքին աւելի երկար ժամանակ շարունակել ընտրութեան ներկայանալ կը պարտաւորին։

Յօդ. ԺԹ. Ակմբոյ սրահը որ եւ է բարեգործական ձեռնարկութեան համար, զոր օրինակ նուագահանդէսի, գրական եւ գիտական ատենախօսութեանց եւ այլն, կրնայ փոխադրուիլ երբ Տնօրէն Խորհուրդը յարմար դատէ։

Խաղք, Լրագիրք եւ Գրատուն:

Յօդ. Ի. Ակմբոյ մէջ թոյլատրեալ խաղերն հետեւեալներն են. Հուիսթ, իւր տեսակներով, Բրեֆերանս, Բիքէթ, Պեզիկ, Բօքէր, Նաբօլէօն

եւ Միստիկրի եւ այլ այս տեսակ խաղեր։ Էքարթէի խաղը մի միայն բարեկենդանի ժամանակ ներեալ է, որոյ ժամանակն ու տեւողութիւնը Տնօրէն Խորհուրդը կ՚որոշէ։

Յօդ. ԻԱ. Վերոյիշեալ խաղերու համար դրուած սակները ներելի չէ սեղանի վրայ ի տես դնել, ի բաց առեալ էքարթէի խաղը։

Յօդ. ԻԲ. Թուղթ եւ ամեն ուրիշ խաղեր ձրիաբար կը խաղացուին, ի բաց առեալ էքարթէի խաղն որոյ տուրքը Տնօրէն Խորհուրդը կ՚որոշէ։

Յօդ. ԻԳ. Ակումբս պիտի ունենայ գրատուն մը որոյ համար իւրաքանչիւր տարի մինչեւ 20 ոսկի ծախսել յանձնարարեալ է Տնօրէն Խորհրդոյ։

Յօդ. ԻԴ. Ակումբս ունի նաեւ լրագիրներ, որոց թիւը եւ տեսակը որոշել Տնօրէն Խորհրդոյ կը պատկանի. եթէ անդամները օրագիրներէ եւ հանդէսներէ զատ, ուրիշ լրագիր մը փափաքին ունենալ առ նուազն 25 Անդամոց ստորագրութեամբ խնդրագրով մը պարտին Տնօրէն Խորհրդոյ դիմել։

Յօդ. ԻԵ. Ակմբոյ անդամներէն եւ ոչ մին իրաւունք ունի Ակումբի վերաբերեալ գիրք կամ լրագիր դուրս տանելու։

Յօդ. ԻԶ. Ակումբս բաց է առաւօտեան ժամը 9էն մինչեւ ժամը 1 կէս գիշերէն վերջ։

### Ընդհանուր ժողով։

Յօդ. ԻԷ. Տնօրէն Խորհուրդը ամեն տարի Դեկտ. սկիզբէն մինչեւ 15ը, օր մը յԸնդ. Հ. ժողով կը գումարէ բոլոր Ա. կարգի անդամները եւ Բ. կարգի անդամներէն առաջուց որոշեալ չորս երեսփոխանները, ընդ Ատենապետութեամբ իր դիւանի անդամներէն միոյն, եւ սոյն ժողովոյ կը ներկայացնէ անցեալ տարւոյ հաշուեցուցակը եւ յառաջիկայ տարւոյ ենթադրական ելեւմտացոյցը,

*որոնց վրայ ընդհ. ժողովը որոշում կու տայ։ Ցետոյ ընդհ. ժողովը յառաջիկայ շրջանի համար Տնօրէն Խորհուրդ կ'ընտրէ, պարահանդէսներու թիւը եւ տեսակը կ'որոշէ, եւ յաջորդաբար օրակարգի բոլոր խնդիրները լուծելէ ետքը, մասնաւոր անդամոց կողմէ ներկայացեալ խնդիրները նկատողութեան կ'առնու։*

**Յօդ. ԻԸ.** *Դեկտ. 15էն մինչեւ 31 Տնօրէն Խորհրդոյ դիւանը Բ. կարգի անդամները ի ժողով կը գումարէ, որոնք իրենց մէջէն յառաջիկայ շրջանի մէջ գումարելի ընդհ. ժողովոյ մասնակցելու համար չորս երեսփոխան կ'ընտրեն եւ այս չորս անդամներէ առաւելագոյն քուէ ստացողն Տնօրէն Խորհրդոյ կ'անդամակցի։*

**Յօդ. ԻԹ.** *Ընդհ. ժողովը տարեկան կանոնաւոր նիստէն ի զատ արտաքոյ կարգի նիստեր ալ կ'ունենայ՝ երբ Տնօրէն Խորհուրդը պատշաճ դատէ եւ կամ երբ Ա. կարգի անդամոց քառորդմասը միաձայնութեամբ խնդրեն։ Արտաքոյ կարգի գումարեալ ընդհ. ժողովները իրենց օրակարգէն դուրս խնդիրներով զբաղելու իրաւունք չունին։ Տնօրէն Խորհուրդը ընդհ. ժողովոյ գումարման որոշեալ թուականէն առ նուազն չորս օր առաջ մասնաւոր նամակաւ բոլոր անդամները կը հրաւիրէ եւ սոյն հրաւիրագրերը միանդամայն վիճաբանելի խնդրոց ցանկը, այսինքն ժողովոյ օրակարգը պէտք է պարունակեն։*

**Յօդ. Լ.** *Ընդհ. ժողովոյ նիստը օրինաւոր ընելու համար քուէարկելու իրաւունք ունեցող անդամոց գէթ մէկ երրորդը պէտք է ներկայ գտնուիլ։ Եթէ առաջին գումարման մը մէջ անդամոց սոյն թիւը չկարենայ ամբողջանալ, հետեւեալ ութն օրուան միջոցին երկրորդ գումարում մը տեղի կ'ունենայ, որոյ մասնակցողաց թիւը ինչ որ ալ ըլլայ, որոշումները վաւերական եւ Ակմբոյ բոլոր անդամոց համար պարտաւորիչ են։*

Յօդ. ԼԱ. Ընդհանուր ժողովոյ որոշումները քուէից բացարձակ առաւելութեամբ կը կատարին: Քուէարկութեան ձեւը ձեռնամբարձն է. բայց եթէ հինգ անդամ պահանջեն եւ կամ ձեռնամբարձի արդիւնքը տարակուսելի ըլլայ յայնժամ գաղտնի քուէարկութիւն մը կը կատարուի:

Յօդ. ԼԲ. Ընդհանուր ժողովոյ տուած որոշումները մի եւ նոյն տարւոյ մէջ անփոփոխելի կը մնան:

Յօդ. ԼԳ. Քուէարկութեան իրաւունք ունեցող անդամոց երեք քառորդին միաձայն հաւանութեամբ է որ միայն Ակումբիս լուծումը կրնայ որոշուիլ եւ այս յօդուածը մի եւ նոյն պայմանով միայն կրնայ փոփոխուիլ:

Յօդ. ԼԴ. Եթէ երբէք Ակումբիս լուծումը որոշի, հետ գոյացեալ պարտուց վճարման, յաւելեալ դրամ ու կարասիք Ազգային հիւանդանոցին պիտի նուիրուին:

Ներկայ կանոնագրոյն տրամադրութիւնները ի բաց առեալ Յօդ. ԼԳ. քուէի իրաւունք ունեցող անդամոց 2/3րդ մասին ներկայութեամբ կազմեալ ընդհ. ժողովոյ մէջ միայն կրնան փոփոխիլ:

Յօդ. ԼԵ. Այն ամէն խնդիր, որ ներկայ կանոնագրութենէ դուրս մնացած է եւ կամ նախատեսեալ չէ, Տնօրէն Խորհրդոյ կողմէն կը կարգադրի:

## 10.

*Ուսումնասէր ընկերութիւն (1887):*

Ընկերութեանս նպատակը կարի գեղեցիկ, բարձր եւ գովելի է. կրթութեան գործին ձեռնտու գտնուիլ ուզելով՝ քանի մը ուսումնասէր անձինք ընկերութիւն մը կը կազմեն, որոնց նպատակը կ՚ըլլայ՝ ըստ ներելոյ դրամական օգնութեան՝ ժամանակ ժամանակ Մեսրոպեան կամ Հռիփսիմեան վարժարանի աշակերտներէն մէկ երկուքը

ղրկել Եւրոպայի այս կամ այն վարժարանն, ուսմունք սորվելու, կրթուելու եւ ապա՝ ըստ կարգադրութեան եւ դաշանց ընկերութեան՝ քանի մը տարի Մեսրոպեան կամ Հռիփսիմեան վարժարանաց մէջ ուսուցչութեան պաշտօն վարելու։

Թէ քանի՛ օգտակար է ընկերութիւնս Զմիւռնիոյ վարժարանաց համար՝ նպատակն ինքնին կը ցուցունէ։ Ընկերութիւնս իւր նպատակի գործադրութեան համար՝ պէտք եղած դրամը հոգալու վախճանաւ, ունի բաժանորդներ. երբեմն երբեմն կու տայ նաեւ երեկոյթներ եւ հանդէսներ, որոնցմէ բաւական հասոյթ կ՚ունենայ։

Ընկերութեանս գլխաւոր գործն եղած է՝ 1895 սեպ. ի Հռիփսիմեան վարժարանի սանուհիներէն Թագուհի Երկանեան եւ Վառվառէ Մկրտիչեան օրիորդները ղրկել ի Մոնբելիէ, վարժուհւոյ պաշտօնին պատրաստուելու համար։ Նոյնպէս 1896 փետ. ին Մեսրոպեան Վարժարանի սաներէն մին, Պ. Թագւոր Միքայէլեան պատանին ղրկած է Թուլուզի վարժարանը՝ ուսուցչութեան պատրաստուելու համար։

Ընկերութեանս օգուտն այն ատեն միայն պիտի տեսնուի, երբ Եւրոպա կրթուած սոյն օրիորդաց եւ պատանւոյն գործունէութեան պտուղը վայելեն ազգային վարժարանները. այն ատեն ընկերութիւնս իւր ջանքերը պսակուած տեսնելով, յաջորդներ պատրաստելու եւ անոնց թիւը կրկնապատկելու պիտի աշխատի եռանդեամբ։

## 11.

*Մեսրոպեան Գրասիրաց Ընկերութիւն (1891):*

Ա. Ս. Մեսրոպեան Վարժարանի բարձրագոյն կարգի աշակերտք, ի ժամանակի ընդունած ուսման եւ կրթութեան օգուտը քաջ ըմբռնած ըլլալով եւ տեսնելով թէ քանիներ զուրկ մնա-

ցած են մանկական տարիներու մէջ՝ գոնէ կարդալ եւ գրել սորվելէ, ընկերութիւն մը կը հաստատեն 1891 Ապր. 1ին, նպատակ դնելով իրենց կիրակի օրերն՝ որոշ ժամանակ մը՝ Մեսրոպեան Վարժարանին մէջ՝ անուս հասակաւոր ազգայնոց դասեր տալ, կարդալ գրել եւ հաշիւ սորվեցընել։ Ընկերութեանս հիմնադիր անդամներն եղած են ԳԳ. Թովմաս Պօյաճեան, Վահան Ղազարոսեան, Սարգիս Յ. Գույումճեան, Հիրամ Յ. Գույումճեան, Պօղոս Զմիւռնակիսեան եւ Ղազարոս Պարոնեան[1]։

Ընկերութեանս անդամները գործի սկսելով՝ 1891—1893 տարուան գարունը՝ եռանդեամբ շարունակած են իրենց դասախօսութիւններն եւ ունեցած են բաւական թուով աշակերտ։ Երբ 1893ին մաղձայոյզ հիւանդութիւնն Զմիւռնիոյ մէջ աջ ու ձախ սպառնալիքներ կ'ընէր, ընկերութեանս անդամները յակամայս կը ստիպուին դադրեցընել՝ դասախօսութիւններն եւ այնուհետեւ գրեթէ մէկ ու կէս տարի՝ չըսեմ քայքայեալ, այլ անգործ կը մնան։

Բ. Երկրորդ տարին Գ. Յ. Բաբազեան՝ 1894ին Եւրոպա ըրած ուղեւորութենէն դառնալէ ետքն՝ եւրոպական կիրակնօրեայ դպրոցներու յիշատակով տոգորուած՝ կը սկսի ինքն ալ մէկ երկու ընկերներու հետ, անուս ազգայնոց դասեր տալ՝ Մեսրոպեան Վարժարանի մէջ։ Շատերն արդէն յառաջագոյն օգուտ քաղած էին այսպիսի դասախօսութիւններէ. ուստի քիչ ժամանակուան մէջ 20 – 30ի չափ չափահաս անձինքներ կը ժողովին՝ կիրակի օրերն դաս առնելու։

Քանի մը ամիս այսպէս անցնելէ ետքն՝ օր մը քննութեանց առթիւ, Բաբազեան՝ դպրոցին մէջ

---

[1] Ընկերութեանս նկատմամբ՝ գրաւոր տեղեկութիւններ հաղորդած եր մեզի Հայկ Յ. Շահինեան՝ ընկերութեան անդամներէն մին։

Մեսրոպեան Գրասիրաց ընկերութեան անդամնե-
րու մէկ երկուքին կը հանդիպի եւ կ'առաջարկէ
անոնց որ միանան իրեն հետ։ Բաբազեանի այս
առաջարկութիւնը Գրասիրաց ընկերութեան նպա-
տակին համաձայն ըլլալով, անդամներն իսկոյն
կ'ընդունին այս առաջարկն եւ միանալով Բաբա-
զեանի հետ, կը սկսին իրենց Կիրակնօրեայ դա-
սախօսութիւնները՝ Մեսրոպեան Վարժարանի մէջ՝
ժամը 10½—12։

Նոյն տարւոյ մէջ անդամոց թիւն էր եօթը,
1895ի Հոկտեմբերի մէջ՝ չորս նոր անդամոց աւել-
նալովը կ'ըլլան 11 հոգի. ամէնքը մեծ եռան-
դեամբ կը կատարեն իրենց պարտքը։ Աշակերտաց
թիւն ալ երթալով կը բազմանար, շատերը կ'օգ-
տուէին եւ արդիւնքը գոհացուցիչ էր։ Ընկերու-
թիւնս՝ աշակերտաց բազմանալը տեսնելով՝ ան-
բաւական կը նկատէ մի միայն կիրակի օրերը դաս
տալ, ուստի կ'որոշէ շաբթուան մէջ երկու անգամ
եւս իրիկունները դասախօսել։ Սոյն որոշումը գոր-
ծադրելու համար կը դիմէ Կրթասէր ընկերութեան
եւ կը խնդրէ որ Մանկապարտիզի սրահը՝ շաբ-
թուան մէջ երկու իրիկուն իւր տրամադրութեան
ներքեւ դրուի։ Գրասիրաց այս առաջարկը հաճու-
թեամբ կ'ընդունուի Կրթասիրաց կողմանէ, որով
կիրակի օրերը միայն Մեսրոպեան Վարժարանի մէջ,
իսկ շաբթուան մէջ երկու իրիկուն Մանկապար-
տիզի սրահը տեղի կ'ունենան դասախօսութիւն-
ները։ Ստորեւ կը դնենք տեղական թերթի մը՝
ընկերութեանս նկատմամբ հրատարակածն[1]։ Այս

[1] "Քաղքիս մէջ քանի մը տարիէ ի վեր հաստա-
տեալ Գրասիրաց ընկերութեան անդամք կիրակի օրերն
անձնուիրութեամբ Մեսրոպեան Վարժարանի մէջ ձրի
դասախօսութիւն կ'ընեն, չուկան արուեստով զբաղող
անուս պատանիներու, անոնց գիրք, թուղթ, գրիչ ձրի
մատակարարելով։ Ընկերութեան գործադիր ժողովոյ ան-
դամք են Պօղոս Ջմիւռնակիսեան, Վարդան Փափազեան,

կերպով դասերը կը շարունակուին մինչեւ 1896ի Հոկտեմբեր ամիսը։

Աշակերտաց թիւն հետզհետէ բազմացած էր, Մանկապարտիզի սրահն այլ եւս անյարմար եւ փոքր էր բազմութեան, ուստի երեկոյեան դասախօսութիւններն եւս՝ Մեսրոպեան Վարժարանին մէջ կատարելու համար՝ ընկերութիւնս կը դիմէ Ազգ. Ուսումնական խորհրդոյ եւ արտօնութիւն կը խնդրէ։ Լսելի կ՚ըլլայ այս խնդիրքը եւ 1897ի Յունուար ամսէն սկսեալ՝ բոլոր դասախօսութիւնները Մեսրոպեան Վարժարանի մէջ կը սկսին կատարուիլ։ Այս առթիւ՝ դպրոցական կարգ մը աշակերտներ ալ կը սկսին յաճախել երեկոյեան դասախօսութեանց, որոնցմով ընդհանուր աշակերտաց թիւը կը հասնի 80ի։

Գ. Ազգային անհատներ, ինչպէս նաեւ երբեմն երբեմն օտարներ, իրենց այցելութեամբ՝ ընկերութեանս նպատակը քաջալերած են։ Զմիւռնիոյ Անգղիական Եկեղեցւոյ երէցը Պտ. Պէլլօթ մէկ երկու անգամ ներկայ գտնուելով սոյն դասախօսութեանց եւ տեսնելով որ Գրասիրաց ընկերութեան նպատակը կը համապատասխանէ Եւրոպիոյ մէջ կազմուած "Երիտասարդաց Քրիստոնէական Միութիւն" (Union Chrétienne de jeunes gens) կոչուած ընկերութեան նպատակին, Գրասիրաց ընկերութեան կ՚առաջարկէ որ եթէ կը փափաքին միանալ Եւրոպիոյ վերոյիշեալ ընկերութեան հետ, ինք պատրաստ է դիմել Լոնդոն, ուր կը գտնուի սոյն ընկերութեան մէկ ճիւղն եւ խնդրել որ իւր միջնորդութեամբ՝ Զմիւռնիոյ Գրասիրաց ընկերութիւնը միանայ ծրնէվ գտնուած գլխաւոր կեն-

---

Սարգիս Յ. Քույումճեան, Հայկ Շահինեան, Յարութիւն Ահարոնեան։ Երեքշաբթի եւ հինգշաբթի օրեր ալ սկսած են քանի մը շաբթէ ի վեր մանկապարտէզի սրահին մէջ դաս տալ։" (Արեւելեան Մամուլ 1896, Մարտ 1։)

դրոնին հետ եւ ըլլայ ճիւղ մը համազգային այս ընկերութեան։

Գրասիրաց ընկերութիւնը 1897 Մայիս 25ին ընդհանուր ժողովք գումարելով՝ Պ. Պէլլօթի առաջարկութիւնն ընդունեցաւ. սա դիմեց իսկոյն ուր որ անկ էր եւ ստացաւ կենդրոնական մասնաճիւղէն ընդունելութեան նամակ մը, ուղղեալ առ Գրասիրաց ընկերութիւն։ Նամակը կարդացուեցաւ ընկերութեան ընդհանուր ժողովքին մէջ 1897 Օգոստ. 3ին, որուն կը նախագահէր Գեր. Ներսէս Ծ. Վ. Արսլանեան։ Այսու գրութեամբ ընկերութիւնս կ'ըլլար եւ կ'անուանուէր 5383րդ ճիւղն Եւրոպիոյ մէջ գտնուած "Երիտասարդաց Քրիստոնէական Միութիւն„ անուանեալ ընկերութեան, եւ պահելով իւր նախկին անունը՝ կ'ունենար երկրորդ տիտղոս մը։

Դ. Ինչպէս վերագոյն յիշեցինք ընկերութիւնս կիրակի օրերն եւ շաբթուան մէջ երկու իրիկուն միայն որոշած էր դասախօսութեանց. 1897ի վերջերը շաբթուան մէջ չորս անգամ դաստալ որոշեց իրիկունները, կիրակնօրեայ դասերն ալ շարունակելով։ Դասերու նիւթերն են հայերէն, տաճկերէն, գաղղիերէն եւ անգղիերէն լեզուները կարդալ գրել եւ անոնց մէջ կրթուիլ եւ թուաբանութիւն։ Աշակերտներն իրենց կարողութեան համաձայն, այլ եւ այլ կարգի բաժնուած են, որոնց թիւն երբեմն աւելի, երբեմն պակաս՝ 50ի կը հասնի։ Իսկ այն դպրոցական աշակերտներն, որոնք սկսած էին յաճախել միանգամայն երեկոյեան դասախօսութեանց, որոշուեցաւ չընդունիլ՝ կրկին պարտաւորութիւններով անոնց դպրոցական ուսմանց արգելք չըլլալու համար։

Այս աշակերտներն ամէնն ալ ձրի են, նաեւ ձրիաբար կը տրուի գիրք, թուղթ, գրիչ՝ անոնց, որոնք չունին կարողութիւն վճարելու։ Իւր հիմնարկութեան օրէն սկսեալ մինչեւ ցայսօր գրեթէ

չորս հարիւրէն աւելի գիրք նուիրած է։ Այսպիսի ծախքերու համար ընկերութիւնս տակաւին հասարակութեան դիմում չէ ըրած, այլ ինք իւր մէջ հոգացած է դրամը։ Իւրաքանչիւր անդամ ամէն ամիս կը վճարէ քառորդ մէճիտիէ մը. ասկէ գոյացած դրամով կը հոգացուին գրքերը, տետրները, մանր ծախքերը, դռնապանին ամսչէքը եւ այլն։ Իսկ գործերու կանոնաւոր կատարման համար՝ ընկերութիւնը ժողովքով կ՚ընտրէ եօթը հոգի, որոնք կը կոչուին Տնօրէն անդամք. ասոնց պաշտօնն է հսկել ընկերութեան կարեւոր գործերուն վրայ, հաշիւները կարգի դնել եւն։

Ընկերութեան անդամներն ըստ իւրեանց կարողութեան, ոմն այս եւ ոմն այն դասը վրան առած՝ անձնուիրաբար կը դասախօսեն, զոհելով իրենց երեկոյեան հանգստի ժամերն՝ այս կրթական եւ եղբայրսիրական վախճանին։ Ընկերութեանս անդամները հետզհետէ աւելնալով՝ այսօրս իրենց թիւը 25ն անցած է։ Ընկերութիւնս ունի իւր յատուկ կանոնագրութիւնն, զոր աւելորդ չենք համարիր դնել յառաջ բերել։

---

## Կանոնագիր

*Մեսրոպեան Գրասիրաց Ընկերութեան*

*Հաստատեալ 1891 1 Ապրիլ:*

---

*Նպատակ.*

Յօդ. Ա. Երիտասարդաց Քրիստոնէական Միութեան նպատակն է՝ թէ ընկերութիւնը կազմող երիտասարդներու եւ թէ ընդհանրապէս բոլոր երիտասարդներու բարոյական եւ մտաւորական զարգացման, եւ ի հարկին մարդասիրական ձեռնարկներու մասնակցութիւնն։

Յօդ. Բ. Երիտասարդաց Քրիստոնէական Միութեան իբր գործօն անդամ ընտրելի են առ

նուազն 17 տարին լրացուցած քրիստոնեայ երիտասարդները։

## Ընդհանուր ժողով.

Յօդ. Գ. Ընդհանուր ժողովի պարտականութիւնն է Երիտասարդաց Քրիստոնէական Միութեան բարոյական նեցուկ մ'ըլլալ հասարակութեան առջեւ, օրինակելի ընթացք մը ցոյց տալով։

Յօդ. Դ. Ժողովը հսկողութիւն ի գործ կը դնէ ընկերութեան վրայ. առ նուազն տարին երկու անգամ կը գումարուի թէ Տնօրէն խորհրդոյ գործառնութեանց տեղեկանալու եւ թէ անդամներ հրաժարեցնելու կամ նոր անդամներ ընդունելու համար, որոնք կ'ընտրուին ընդհ. ժողովոյ անդամներու քուէից առաւելութեամբ։

Յօդ. Ե. Ընդհ. ժողովը Տնօրէն խորհուրդ մը կ'ընտրէ երկու տարւան համար։

Յօդ. Զ. Ընդհ. ժողովը տարին անգամ մը կ'ընտրէ իւր դիւանը որ կը բաղկանայ Ատենապետէ, փոխ-ատենապետէ, Ատենադպրէ եւ փոխ-ատենադպրէ։

Յօդ. Է. Ընդհ. ժողովոյ դիւանը ընկերութեան տարեկան տեղեկագիրը վաւերացընելով կ'ստորագրէ Տնօրէն խորհուրդի հետ։

Յօդ. Ը. Ընդհ. ժողովոյ մեծամասնութեամբ անդամակցութենէ կը մերժուին անոնք որ յաջորդաբար երեք նիստերէ կը բացակային առանց բանաւոր պատճառի. ինչպէս նաեւ անոնք որ՝ անհատական կեանքով կը հակասին ընկերութեան ընդգրկած նպատակին։

Յօդ. Թ. Ընդհ. ժողովը պարտի տարին անգամ մը հասարակութեան ներկայացընել ընկերութեան գործառնութեանց տեղեկագիրը։

Յօդ. Ժ. Ընկերութեան անդամոց թիւը անսահման է։

### Տնօրէն Խորհուրդ.

Յօդ. ԺԱ. Տնօրէն Խորհուրդը երկու տարին անգամ մը կ'ընտրուի ընդհ. ժողովոյ անդամոց քուէից առաւելութեամբ։

Յօդ. ԺԲ. Տնօրէն Խորհուրդը եօթ անդամներէ կը բաղկանայ որոնց թիւը անփոփոխ է եւ որք իրենց մէջ կը բաժնեն Ատենապետի, Փոխատենապետի, Ատենադպրի եւ Գանձապետի պաշտօնները։

Յօդ. ԺԳ. Խորհուրդը պարտաւոր է առնուազն 15 օրը անգամ մը գումարուիլ իւր առանձնեալ գործին ընդհանուր շահերով զբաղելու համար։

Յօդ. ԺԴ. Խորհուրդը ամէն ամիս ժողովի կը կոչէ մասնաժողովներու Ատենապետները անոնց տեղեկագիրները լսելու եւ յաջորդ ամիսներու գործառնութեանց ծրագիրները պատրաստելու համար։

Յօդ. ԺԵ. Տնօրէն Խորհուրդը պարտաւոր է, վեց ամիսը անգամ մը, ներկայացնել իւր գործառնութեանց տեղեկագիրը Ընդհ. ժողովոյ։

### Անդամակցութիւն.

Յօդ. ԺԶ. Երիտասարդաց Քրիստ. Միութեան անդամներն զանազան դասակարգերու բաժնուած են, գործօն անդամ, պատուոյ եւ բաժանորդ անդամ։

Յօդ. ԺԷ. Գործօն անդամներն միայն քուէի իրաւունք ունին որոնցմէ կախում ունի ընկերութեան ընդհ. ուղղութիւնը։

Յօդ. ԺԸ. Պատուոյ անդամ կը կոչուին անոնք որոնք նիւթապէս կամ բարոյապէս կը նպաստեն ընկերութեան։

Յօդ. ԺԹ. Բաժանորդ անդամները միւս անդամներու բոլոր իրաւունքը կը վայելեն. բայց

քուէի իրաւունք չունին եւ ընկերութեան վարչական ժողովներու չեն մասնակցիր։

Յօդ. Ի. Ընդհ. ժողովոյ անդամք պարտին վճարել, առնուազն ամիսը մէկ քառորդ արծաթ մէճիտ, իսկ բաժանորդաց համար ամսականք ըստ կամս են։

Յաւելուածական կանոններ.

Յօդ. ԻԱ. Ընդհ. ժողովը իրաւունք չունի պահանջելու ընկերութեան լուծումը, բայց եւ այնպէս ընկերութիւնը առժամանակեայ կերպիւ լուծուած կը համարուի երբ ընդհ. ժողովոյ անդամոց թիւը հինգէն պակաս է. այս պարագայիս մէջ ընկերութեան գոյքն ու ստացուածքը կրնան գրաւուիլ Ազգ. վարչութենէն՝ որ ընկերութեան նպատակին համեմատ ուրիշ բարեգործական կամ կրթական պիտոյից կը յատկացընէ, եթէ հինգ տարուան ընթացքին մէջ միեւնոյն կանոնագրութեամբ եւ սկզբունքներով ընկերութիւն մը չկազմուի։ Հակառակ պարագային՝ վերոյիշեալ գոյքերը կը յանձնուին նորակազմ ընկերութեան, Ազգ. վարչութեան կողմանէ։

Յօդ. ԻԲ. Կանոնագիրը երկու տարին անգամ մը վերաքննելի է[1]։

Զմիւռնիա 9/21 Նոյեմ. 1898.

Նախագահ

Գ. Յ. Բաբազեան

Մ. Պ. Թէքաթլեան — Ատենադպիր

Յկր. Միքայելեան — Ատենապետ

Քրիստոնէական Միութեան (Գրասիրաց ըն-

---

1 Կանոնագիրս օրինակած ենք բնագրէն։

կերուլթեան) սոյն կանոնագիրը Ազգ. կնքով կը վաւերացունեմք.

Զմիւռնիա 5 Մայիս 1898.

Դիւան Ազգ. Քաղ. Ժողովոյ

Ատենադպիր — Ատենապետ

Զ. Թագթագեան — Կ. Արապեան

Տ. Կ.

## 12.

*Արուեստանոց (1895).*

Վարժարանները մանկտւոյն միտքը գիտութիւններով կը զարդարեն, տեսական եւ գործնական ծանօթութիւններով կը զարգացնեն՝ սակայն շահելու արուեստը թողլով՝ շուկայի։ Դպրոցաւարտ երիտասարդ մը վարժարանին սեմէն՝ հրապարակ ելած ժամանակ՝ կարող է իսկոյն գործի մը գլուխն անցնիլ, եթէ ունի պաշտպան մը, իսկ աղքատը կը մնայ անգործ կամ երկրորդ վարժոց մը մտնել կը ստիպուի, այսինքն. արուեստաւորի մը քով՝ քանի մը տարի կենալով՝ արուեստ մը սորվելու հարկին տակ կ՚իյնայ. շատ անգամ՝ սա ալ չգտնելով՝ կը մնայ անգործ, կը մեծնայ խեղճ ու աղքատ։ Աղքատիկ մանկտւոյն իւր մանուկ տիոց մէջ արուեստ մը սորվեցընելն անհրաժեշտ ըլլալն Զմիւռնացին ի վաղուց հետէ ըմբռնած էր, մանաւանդ վերջին տարիներս ազգային արուեստանոցի մը պէտքը այնչափ զգալի դարձած էր, որ ժողովրդեան ամէն դասակարգի՝ մանաւանդ աղքատ ընտանեաց բերնէն յաճախ կը լսուէր սա խօսքը թէ Արուեստանոց մ՚անհրաժեշտ պէտք է Ազգին մէջ՝ աղքատ ընտանեաց ապագան բարւոքելու համար։

Ժողովրդեան այս գեղեցիկ բաղձանքն ու փափաքն իրագործելու համար՝ Կարապետ էֆ. Արապեան շինել կու տայ իր ծախիւք Արուեստանոց մը։ Արուեստանոցս կը գտնուի Ս. Ստեփանոս եկեղեցւոյ պարտէզին մէջ, Առաջնորդարանի եւ Մեսրոպեան վարժարանի մէջտեղն։ Շէնքն է քարուկիր, միայարկ, երեք զատ զատ սրահներու բաժնուած եւ իւրաքանչիւր սրահ ունի իր յատուկ դուռն, ներքինը ընդարձակ եւ լուսաւոր։

Սրահներուն մին յատկացուած է հիւսնութեան, երկրորդը՝ թիթեղագործութեան, եւ երրորդը՝ կօշկակարութեան։ Արուեստանոցիս մէջ աղքատիկ ուսանողք՝ հմուտ վարպետներու առաջնորդութեան ներքեւ պիտի սորվէին ըստ իւրեանց կարողութեան՝ այս կամ այն արուեստը։ Իրենց աշխատութեան արդեանց մէկ մասը յատկացուած էր վարպետներուն եւ մէկ մասը պիտի մնար Արուեստանոցի արկղին մէջ՝ յօգուտ շրջանաւարտ աշակերտաց։

Հաստատութեանս առաջին եւ երկրորդ տարիները ժողովուրդը մեծ համակրանք ցոյց տալ սկսաւ. այս երեք արուեստներու վերաբերեալ բանի մը պէտք ունեցած ժամանակ՝ հոս կը դիմէր եւ շինել կու տար։ Սակայն Արուեստանոցն չունենալով մասնաւոր դրամագլուխ մը՝ չկրցաւ յարատեւութեամբ վարել իր ընթացքն. անցեալ տարւոյ վերջերը արուեստանոցի առաջին երկու ճիւղերու վարպետները դադրեցուցին իրենց գործերն, երրորդն ալ դեդեւմանց մէջ կը գտնուի։

Արուեստանոցս անհրաժեշտ պէտք ունի երկրորդ բարերարի մը, որ յատկացընէ որոշ դրամագլուխ մը, որուն տոկոսով վարպետներ հոգացուին եւ այս օգտակար հաստատութիւնը կանոնաւոր ընթացքի եւ յարատեւութեան մէջ դրուի։

Կը լուի թէ Արուեստանոցիս շէնքին վրայ երկրորդ յարկ մ'եւս պիտի բարձրացուի եւ յատ-

կացուի որբերու բնակութեան, իսկ վարի յարկը պիտի մնայ միշտ Արուեստանոց, ուր որբերը պիտի սորվին զանազան արուեստներ։ Սքանչելի խորհուրդ, որուն իրագործութիւնը կը մաղթենք մենք ալ։

Արուեստանոցիս մէկ կարգի վրայ շինուած դռներուն՝ մէջտեղի դրան ճակատը հաստատուած է մարմարիոն քար մը հետեւեալ արձանագրութեամբ.

“Ազնուաշուք Կարապետ էֆէնտի Արապեան իւրով զուարթառատ ծախիւք նուիրեաց զայս արուեստանոց եւ զգործիսն յօգուտ եւ ի վարժ Ազգ. աղքատիկ մանկանց յամի Տեառն 1895 Սեպ. 24. Յառաջնորդութեան Տ. Ներսիսի Ծ. վարդապետի Արսլանեան։„

## 13.

*Գթասիրաց Ընկերութիւն (1896—1898).*

Ընկերութիւն մը որ հազիւ տարի մը կեանք ունեցած է, սակայն իւր այս կարճ կենաց ընթացքին մէջ իւր նպատակին համաձայն գործած եւ շատերու սիրտը մխիթարած է։ Ընկերութիւնս կազմուած է 1896 Դեկտեմբերին։ Հռիփսիմեան վարժարանի առաջին դասարանի բարձրագոյն կարգի սանուհիք իրենց աղքատ եւ թշուառ ընկերակիցներու վիճակը տեսնելով՝ ընկերսիրական վեհ զգացմամբ վառեալ, թշուառներուն վիճակը փոքր ինչ ամոքելու վախճանաւ ընկերութիւն մը կը կազմեն իրենց մէջ՝ Գթասիրաց անուամբ, ամսական քառորդ մէճիտիէ վճարմունք դնելով անդամակցողներու վրայ, նպատակ ունենալով՝ գոյացած արդիւնքով Զատկի եւ եթէ կարելի ըլլայ Ծնունդի տօներու առթիւ՝ աղքատ աշակերտուհիներու զգեստ մը նուիրել։

Ընկերութիւնս Թէպէտ եւ ի սկզբան անդ-դպրոցական շրջանի մէջ գտնուողներու կողմանէ հիմնուած էր, բայց քիչ ժամանակուան մէջ՝ արտաքուստ ալ անդամուհիներ աւելնալով՝ իրենց Թիւը մինչեւ 30ի հասած է։

Յաջորդ տարին (1897) Ծննդեան տօնին առԹիւ իրենց գործունէութիւնը կը ցուցընեն՝ 63 զոյգ գուլպայ կը նուիրեն աղքատ աշակերտուհիներու։ Նոյն տարւոյ (1897) Մարտի մէջ ընկերութեանս դեռահաս օրիորդները նուագահանդէս մը կը կազմակերպեն, որ մեծ յաջողութիւն կ'ունենայ. հանդէսէն գոյացած արդիւնքով եւ ընկերութեան բաժանորդագիններով՝ նոյն տարւոյ Ս. Զատկի տօնին առԹիւ 70—80ի՝ չափ Թշուառ աշակերտուհեաց կը հոգան զգեստ, գլխարկ, կօշիկ եւն։ Տարւոյս սկիզբներն (1898) 90 աղքատ աղջիկներու կը նուիրեն նոյնպէս զգեստեղէն, գլխարկ, գուլպայ եւն։ Ընկերութիւնս մտադիր էր իւր գործունէութեան շրջանակն ընդարձակել. սակայն ազգային վարչութիւնը նկատելով որ նոյն նպատակաւ կան ուրիշ ընկերութիւններ, խոհեմութիւն համարեցաւ՝ պաշտպան չհանդիսանալ ազնիւ օրիորդաց փափաքին. ընկերութիւնս ձեռնտուութիւն չգտնելով ստիպուեցաւ ցրուիլ, Թողլով միշատակ՝ տարուան մը մէջ ցուցուցած բարիքները։

## 14.

*Ներսէսեան Որբասիրաց ընկերութիւն (1897).*

Վերջին եւ ժամանակին պահանջմանց համապատասխանող կազմակերպութիւն մ'է Ներսէսեան Որբասիրաց ընկերութիւնը։ Տնտեսական տագնապներէ յառաջ եկած Թշուառութեանց՝ մասամբ իւիք դարման տանելու եւ ազգին մէկ բեռը Թեթեւցընելու նպատակաւ՝ խումբ մը գԹա-

սիրտ երիտասարդներ կը խորհին կազմել ընկերութիւն մը եւ բանալ Որբանոց մը, ուր որբեր ժողվելով կարենան անոնց կրթութիւն տալ եւ անոնց ապագան ապահովել[1]: Այս օգտակար գաղափարն իրագործելու որոշում կու տան 1897 Մարտի 30ին եւ իսկոյն ձեռք կը զարնեն գործելու: Ի սկզբան անդ բաւական դժուարութեանց հանդիպելէ եւ ամէն արգելքներու յաղթելէ ետքը՝ կը յաջողին բարեսիրտ ազգայիններէ բաւական գումար մը հաւաքել, որով կարող կ'ըլլան նոյն տարւոյ Օգոստոսի մէջ տուն մը վարձել եւ իբր Որբանոց ամէն կարեւորները պատրաստել: Յաջորդ ամիսը (Սեպտ.) բերել կու տան 19 Տիգրանակերտցի որբ, որոնց վրայ կ'աւելնան հետզհետէ ուրիշ կողմերէ բերուած որբեր ալ եւ այսօրս 50ի չափ ծնողազուրկ տղաքներ կը խնամուին սոյն մարդասիրական յարկին տակ:

Ընկերութեանս կազմակերպութեան վրայ ճշգրիտ գաղափար մ'ունենալու համար՝ յառաջ կը բերենք կանոնագիրն, զոր օրինակած ենք բնագրէն:

### Կազմական կանոնագիր.

Ա. Ստորագրեալքս հայաբնակ գաւառներու մէջ արկածեալ մանչ որբերէն ըստ իւր կարողութեան մաս մը մանաւոր յարկի տակ պատսպարելով՝ ատոնց բարոյական եւ նիւթական պէտքերն հոգալու համար ընկերութիւն մը հաստատած ենք, որու անունն է Ներսէսեան Որբասիրաց ընկերութիւն: Ա. մասէն յետոյ ամէն անդամ բերուելիք որբերուն համար Ազգ. վարչութեան կա-

---

1 Ընկերութեանս հիմնադիր անդամներն եղած են Պ.Պ. Աւետիս Տիվրիկեան, Հայրապետ Շահում, Արմենակ Մինասեան, Թագւոր Մաղաքեան, Տիրան Գասպարեան, Պետրոս Եաղճիեան, Ռուբէն Որբերեան, Յովհաննէս Գ. Բաբազեան, Յովհաննէս Ս. Աւագեան, Յովհաննէս Մ. Շահինեան, Յովհաննէս Տէրպետերեան եւ Ստեփան Սիմոնաքեան:



Մ. Թէքաթեան Ա. Մինասեան Գ. Քէչէչեան Ց. Փափազեան Ց. Տէրպէտէրեան
Հ. Շահնուսեան Ց. Միքայէլեան Տ. Տօնիկեան Պ. Արշարունի

ՆԵՐՍԻՍԵԱՆ ՈՐԲԱՆՈՑ ԳՈՐԾԱԴԻՐ ԺՈՂՈՎՈՑ ԱՆԴԱՄՔ ԵՒ ՈՐԲԵՐ (1896 ՄԱՅԻՍ)։

բեւոր զեկոյցը լինելով՝ նորա հրահանգաց համեմատ պիտի շարժի ընկերութիւնը եւ որբոց պահպանման եւ կրթութեան պարագայից մէջ միշտ սոցա իրենց բնավայրերը ապրելու եւ փափուկ կեանքի չվարժելու աւագ կարեւորութիւն ունեցող խնդիրը ի նկատի պիտի առնուի ։

Բ. Ընկերութիւնս ունի երկու ժողով, մին ընդհանուր եւ միւսն գործադիր ։

Գ. Ընդհանուր ժողովի դիւանն ունի Ատենապետ մը եւ Ատենադպիր մը, որք քուէից առաւելութեամբ կ՚ընտրուին ։

Դ. Գործ. ժողովի դիւանն ունի Ատենապետ մը եւ Ատենադպիր մը, Գանձապետ մը եւ Հաւաքիչ մը ։ Սոյն ժողովը կը բաղկանայ հինգ անդամներէ, որք կ՚ընտրուին նոյնպէս Ընդհ. ժողովի քուէարկութեամբ ։

Ե. Հաստատելի Որբանոցն ուղղակի Գործ. ժողովի տնօրինութեան ներքեւ կը կառավարուի, այս իր գործողութեանց մասին ամէն տարեգլխին տեղեկագիր պիտի մատուցանէ Ընդհ. ժողովին ։

Զ. Ընդհ. ժողովն՝ գործ. ժողովին ներկայացուցած տեղեկագիրն յետ քննութեան վաւերացընելէ յառաջ, կը ներկայացընէ Ազգ. քաղ. ժողովոյ նկատողութեան եւ վաւերացման եւ ապա զայն հրատարակութեան կ՚տայ ի գիտութիւն հասարակութեան ։

Է. Գործ. ժողովն պիտի գործէ ամէն տարի ընդհ. ժողովին կողմէ գծեալ պիւտճէի համաձայն ։ Գործ. ժողովն պիւտճէէն դուրս ըլլալիք ծախուց, իր դրամապահի կարգման, շէնքի փոխադրութեան, որբերու ընտրութեան ու ընդունելութեան եւ ի նպաստ ընկերութեան կազմակերպելի ո եւ է հանդէսներու մասին՝ պարտի ընդհ. ժողովին հաւանութիւնն ունենալ ։

Ը. Ընկերութիւնս իր նպատակի իրագործման համար, բաց ի իր անդամոց բաժնեգիններէն,

կարելի եղած ամէն օրինաւոր միջոցներ ի գործ պիտի դնէ, եկամտի նորանոր աղբիւրներ հայթայթելու համար։

Թ. Ընկերութիւնս իր նպատակի գործադրութեան համար կը գործակցի քաղաքիս մէջ արդէն նոյն եւ սակայն աղջիկ որբեր պահելու նպատակով կազմակերպեալ եւ նոյնպէս Ազգ. գաւ. վարչութեան քաղ. ժողովէն հաստատեալ Հոգ.— Որբախնամ ընկերութեան։ Կարելի է երկու Որբանոցներու շէնքերը յարակից ընել, խոհանոցները միացընել, մանչ որբերու հագուստ, ճերմակեղինաց եւն հոգը Հոգ.— Որբախնամ ընկերութեան յանձնել՝ մասնակցելով համեմատական ծախուց ըստ Թ. յօդուածի։

Ժ. Երկուց ընկերութեանց գործակցութեան պարագային մէջ տրուելիք նուագահանդէսի, թատրոնի, պարահանդէսի, վիճակահանութեան եւ պազարի հասոյթներն երկու ընկերութեանց մէջ կիսովին կը բաժնուին համերաշխ գործակցութեամբ։

ԺԱ. Գործ. ժողովին շրջանն է երկու տարի, յետ որոյ ընդհ. ժողովն նոր ընտրութեամբ կը կազմէ իր գործ. խորհուրդն։ Հին անդամք վերընտրելի են։

ԺԲ. Ընդհ. ժողովի դիւանին ալ տեւողութիւնն երկու տարի է։

ԺԳ. Երբ ընկերութիւնս լուծուի, իւր բոլոր գոյք եւ դրամագլուխ եւ հաստատութիւն Ազգ. գաւ. վարչութեան քաղ. ժողովոյ իրաւասութեան կ՚ենթարկուի։

Իզմիր 28 Մայիս 1897.

Ի դիմաց ընդհ. ժողովոյ

| Ատենադպիր | Ատենապետ |
| --- | --- |
| Տ. Պ. Պարտիզպանեան | Մկ. Սարըեան |

Ի դիմաց գործ. ժողովոյ

| | |
|---|---|
| Ատենադպիր | Ատենապետ |
| Ռ. Որբերեան | Յ. Պ. Ընքապապեան |

Ազգային վարչութեան քաղաքական ժողովս Ներսէսեան Որբասիրաց ընկերութեան սոյն կանոնագիրը օրինաւոր գտնելով կը վաւերացընէ.

4 Յունիս 1897 յԱզգ. Առաջնորդարան

Դիւան Ազգ. Քաղ. ժողովոյ
Ատենապետ՝ Յ. Ս. Իփլիքճեան
Տ. Կ. Ատենադպիր՝ Մ. Ղազարոսեան։

## Ներքին կանոնագիր.

---

### Նպատակ Ընկերութեան.

Ա. Ընկերութեանս նպատակն պիտի լինի՝ մանչ որբեր մասնաւոր յարկի մը տակ ամփոփել եւ անոնց նիւթական եւ ուսումնական պիտոյքին հոգ տանելով՝ իւրաքանչիւրին իր կոչման համեմատ վիճակ մը պատրաստել։

Բ. Ընկերութիւնս իր նպատակին իրագործման համար՝ պիտի ունենայ Որբանոց մը, որ պիտի ծառայէ իբր պատսպարան որբոց։

Գ. Որբերու արհեստագործութեան մասին ընկերութիւնս կարեւորը պիտի տնօրինէ։

Դ. Ընկերութեանս մասնաւոր հոգածութիւնն վայելող շրջանաւարտներու հետ մասնաւոր պայմանագրութիւն պիտի կնքէ, որ հիմնուած պիտի ըլլայ պարտուց եւ իրաւանց սկզբունքին վրայ։

### Պայմանք անդամակցութեան.

Ա. Ընկերութիւնս երեք կերպ անդամակցութիւն կ'ընդունի, ընդհանուր ժողովոյ անդա-

մակցութիւն, պարզ եւ նուիրատու անդամակցութիւն եւ պատուոյ անդամակցութիւն։

Բ. Ընդհանուր ժողովոյ անդամք թուով յիսուն կը լինին, որք ներկայ անդամոց երկու երրորդին քուէովը կ'ընտրուին եւ որք մի ամսական կամ տարեկան գումար մը կը նուիրեն ընկերութեան։

Գ. Ընկերութեանս նուիրատու եւ բաժանորդ անդամ կը նկատուին բոլոր անոնք, որք՝ առանց ցեղի, սեռի եւ կրօնի խտրութեան, տարեկան կամ ամսական եւ կամ միանուագ որեւէ գումար մը կը նուիրեն ընկերութեանս։

Դ. Պատուոյ անդամ կը լինին ամեն անոնք, որք կարեւոր գումար մը կը նուիրեն ընկերութեան եւ կամ մի շատ կարեւոր ծառայութիւն կը մատուցանեն, եւ կ'ընտրուին ընդհ. ժողովոյ մեծամասնութեամբ։

Ե. Ընկերութիւնս իր Որբանոցի նիւթական եւ բարոյական զարգացման համար, կարեւոր դատած հասոյթի աղբիւրներէն պիտի օգտուի ի պահանջել հարկին։

Զ. Ընկերութիւնս իւր յարմար դատած տեղերը մասնաճիւղեր կը հաստատէ։

## Ընդհանուր ժողով.

Ա. Ընդհանուր ժողովոյ անդամք միայն կը մասնակցին վարչական գործոց, որք են միայն ընտրող եւ ընտրելի։

Բ. Ընդհանուր ժողովին պաշտօնն է. 1. երկու տարին անգամ մը գործ. ժողովոյ ընտրութեան ձեռնարկել։ 2. իւրաքանչիւր եռամսէի գործ. ժողովոյ համարատուութիւնը ստանալ։ 3. տարւոյն մէջ հարկ տեսնուած ատեն կարեւոր նիստեր կազմել եւ կարեւորութիւն ունեցող խնդիրներն կարգադրել։

Գ. Ընդհ. ժողովն դիւան ունի՝ Ատենապետ մը եւ Ատենադպիր մը, որք՝ գաղտնի քուէարկութեամբ միայն կ՚ընտրուին՝ երկու տարի պաշտօնավարելու համար։

Դ. Ընդհ. ժողովին անդամներն Ատենապետին հրաւիրագրին համեմատ՝ որու կը կցուի եւ օրակարգն՝ պարտաւոր են նիստերու ներկայ գըտնուիլ։ Առանց բանաւոր պատճառի՝ երեք անգամ նիստերէ բացակայ եղողն, հրաժարեալ կընկատուի։

Ե. Բանաւոր պատճառով մը բացակայ եղող անդամ մը կրնայ նամակով մը իր կարծիքն յայտնել ատենապետին։

Զ. Ժողովէն բացակայ եղող անդամ մը իրաւունք չունի ժողովով կատարուած որոշումներու դէմ ոեւէ դիտողութիւն ընել։

Է. Ներելի չէ ժողովին ատեն օրակարգէն դուրս խնդիրներու վրայ խօսիլ կամ վիճել։

Ը. Ընդհ. ժողովոյ անդամոց մէկ երրորդին գրաւոր դիմումին վրայ, Ատենապետը ընդհ. ժողովը ի նիստ կը հրաւիրէ։

Թ. Ընդհ. ժողովոյ որոշմունք ձայնից առաւելութեամբ վաւերական են։

Ժ. Ժողովին նիստերն պէտք է արձանագրուին օրն օրին, եւ Ատենապետին պարտքն է հսկել ատոնց վրայ։ Նախորդ նստի ատենագրութիւնք պարտին կարդացուելով դիւանի արձանագրութեան արժանանալ։

ԺԱ. Ընդհ. ժողովի նստին եկող ամեն անդամ պարտի ներկայութեան տետրին մէջ ստորագրել։

ԺԲ. Երբ ընդհ. ժողովի ատենապետն բացակայ է նիստէն, մեծամասնութեամբ առժամեայ ատենապետ մը կ՚ընտրուի, ժողովն չըյետաձգելու համար։

Գործադիր ժողով.

Ա. Գործադիր ժողովը պարտաւոր է իր կանոնաւոր նիստերը ընել շաբաթը մէկ անգամ եւ պէտք եղած ատեն՝ ընկերութեանս գործերը վարելու։ Գործ. ժողովը կը բաղկանայ ինն անդամներէ։

Բ. Ժողովին մեծամասնութեամբ տրուած որոշմունք վաւերական են։

Գ. Ժողովոյ ատենապետին բացակայութեան, նոյն նստին համար առժամանակեայ ատենապետ մը կ՚որոշուի։

Դ. Ժողովի ատենապետին պարտականութիւնն է՝ նիստեր գումարել եւ ժողովին կանոնաւոր ընթացքն եւ անոր որոշմանց գործադրութեան հսկել։

Ե. Ատենադպրին պարտքն է՝ ժողովի նիստերուն արձանագրութիւններն կատարել՝ յօդուած առ յօդուած առանձին տետրակի մէջ եւ յաջորդ նստին վաւերացումէն ետք՝ դիւանին ստորագրել տալ։

Զ. Գանձապետին պարտականութիւնն է՝ ընկերութեան դրամը պահպանել, պէտք եղած ծախքերն գործ. ժողովին որոշմամբ եւ արձանագրութեամբ ընել, բռնել ելից եւ մտից տետրակ մը որ կանոնաւոր պիտի ըլլայ եւ ըստ ամենայնի համապատասխան գործ. ժողովի արձանագրութեան եւ գանձուած դրամոց ընկալագիրներու կտորներուն։ Եթէ ընդհ. ժողովն երեք ամիսը մի անգամ մատակարարութեան հաշիւները պահանջէ պարտաւոր է ցոյց տալ։

Է. Վերոյիշեալ տետրակն պիտի մնայ խորհրդարանի մէջ եւ ուղղակի գործ. ժողովին տրամադրութեան տակ։

Ը. Գործ. ժողովն իր գանձումներուն կանոնաւոր ուղղութիւն տալու համար, իր մէջէ մէկուն հաւաքիչի պաշտօն պիտի տայ։

Թ. Դրամական գործառնութեանց համար գործ. ժողովին գրութիւններն պիտի ստորագրեն Ատենապետ եւ Գանձապետ, իսկ դիւանի գրութեանց համար Ատենապետ եւ Ատենադպիր։

Ժ. Գործ. ժողովն ամեն տարեշրջանին իր հաշիւներն պիտի յանձնէ Ընդ. Հ. ժողովին։

Վերաքննութիւն. Այս կանոնագրութիւնն երկու տարին անգամ մը վերաքննելի է։

Իզմիր 23 Յունիս 1897։

Ի դիմաց Ընդ. Հ. ժողովոյ

| Ատենադպիր | Ատենապետ |
|---|---|
| Տ. Պ. Պարտիզպանեան | Մկ. Սարըեան |

Ի դիմաց Գործ. ժողովոյ

| Ատենադպիր | Ատենապետ |
|---|---|
| Ռ. Որբերեան | Յ. Պ. Ընքապապեան |

Տ. Կ.

---

## ԳԼՈՒԽ ԵՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ

*Տպարանք եւ այլ եւ այլ հրատարակութիւնք:*

Ա. Զմիւռնացիք կրթական, բարեգործական եւ գթասիրական ընկերութիւններէ զատ ունեցած են գրական եւ ուսումնական հաստատութիւններ եւ ձեռնարկներ։ Զմիւռնիոյ հայերն երբեք անտարբեր չեն գտնուած գիտութեան արձակած ճառագայթներուն. իրենց մէջ գտնուած են տաղանդաւոր անձինքներ, սահուն գրչի տէր եւ գիտութեամբ օժտեալ անձնաւորութիւններ, որ գրական աշխատութեամբ, տպարաններու միջնորդութեամբ մեծ ծառայութիւն մատուցած են ազգին։

Բ. Անցեալ դարու կէսին Զմիւռնիոյ մէջ հայ տպարանի մը գոյութիւնը կը գտնենք՝ այլ եւ

այլ հրատարակութեանց մէջ։ Մարկոս անուն անձ մը 1759ին (Նալեան Յակոբայ պատրիարքութեան ժամանակ) մասնաւոր տպարան մը կը բանայ, ուր առաջին անգամ կը տպուի Մեկնութիւն Ժամակարգութեան. նոյն տպարանին մէջ 1762 եւ 1782 տարիներն տպուած կը գտնենք առաջին անգամ Եզնկայ Ընդդէմ Աղանդոց ոսկեղէնիկ մատեանն եւ Խորհրդատետր մը։

Գ. Դարուս մէջ աւելի բազմաթիւ են տպարաններն եւ հրատարակութիւնները։ 1832—40ի միջոցները Ս. Մեսրոպեան վարժարանի տպարանը կը յիշուի. Պետրոս Եուսուֆ վարժարանին տպարան մը կը պարգեւէ. եւ նոյն ժամանակ դպրոցի մէջ ուսումնասէր աշակերտներ ի մի եղած, Անդրէաս վարժապետի վերատեսչութեամբ տպարանն օգտակարապէս կը գործածեն։ Նոյն ժամանակները կը տպուին այլ եւ այլ գրեանք. Հեգերէն, Սաղմոս, Նարեկ, Քերական, Կորիւն։ Հոն լոյս տեսան Տէր Յովհան Վանանդեցւոյ Ոսկեդարը, Արկածք Արիստոնովսի եւ Տրամաբանութիւն մը, առաջինը Գրիգոր Կոստանդեանի ծախիւք եւ վերջին երկուքն ալ անկէ թարգմանուած. Ադալաՙ թարգմանութիւն Հայրապետ Սավալանեանի։

Դ. Նոյն միջոցներնՙ ամերիկեան եւ անգղիացի բողոքական ընկերութիւններըՙ Մալթայէ Զմիւռնիա փոխադրելով իրենց տպարանը, հայկական տառերով բայց տաճկերէն լեզուաւ կը հրատարակեն այլ եւ այլ աննշան տետրակներ։ Սոյն տպարանին մէջ Ամերիկեան միսիոնարք հրատարակած են 1839ին Յունուար 1ին Շտեմարան պիտանի գիտելեաց ամսաթերթն իրենց կարծեաց համաձայն, որ 16 տարուան միջոցի մէջ երբեմն երբեմն դադրելով եւ վերստին հրատարակուելով, գրեթէ 7 տարի միայն հրատարակուած է եւ դադրած է 1854ին։

Ե. Շտեմարանի լոյս տեսած օրէն տարի մը

ետքը հրատարակուած կը գտնենք Արշալոյս Արարատեանը։ Թերթիս նկատմամբ "Պատմութիւն Հայ Լրագրութեան„ հեղինակը կը գրէ հետեւեալները. "Ղուկաս Պալթազարեան "ազգասէր բարեկամներէն բաւական քաջալերութիւն ընդունելով ըստ ամենայն մասին„ ձեռք զարկաւ Զմիւռնիոյ սեպհական ազգային լրագրոյ։ 1840 Օգոս. 10ին Ստեփանոս Պապօեանցի տպարանին մէջ սկսաւ հրատարակուիլ Արշալոյս Արարատեան անուամբ Օրագիր Քաղաքական, Բանասիրական եւ Առեւտրական։ Ի սկզբան անդ Արշալոյս Արարատեան երկշաբաթաթերթ էր. 1840 Նոյ. 20էն սկսեալ շաբաթաթերթ եւ հետզհետէ զարգանալով՝ այնչափ յառաջ գնաց որ 1844 Մայիս 20ին ունեցաւ սեպհական տպարան՝ Տպարան Արշալոյս Արարատեան անուամբ, եւ հոն սկսաւ տպուիլ։ Բայց 1845ի հրդեհը տպարանս ալ այրեց մոխիր դարձուց։ Պալթազարեան չյուսահատեցաւ եւ առանց ընդհատելու նոր տպարան բանալով՝ սկսաւ դարձեալ շարունակել, սակայն այնուհետեւ երկու շաբաթն անգամ մը եւ. մնաց մինչեւ վերջը այնպէս։ Պալթազարեանի մահուանէ ետքը (Սարգիս Պալապանեան, Հայրապետ Սաւալանեան եւ Նշան Միրզա հետզհետէ ստանձնած են թերթին խմբագրութիւնը) յետոյ Յարութիւն Սրվաճեան շարունակեց լրագիրը. բայց 1886ին՝ հակառակորդաց կողմանէ կառավարութեան ձեռօք դադրեցաւ Արշալոյս. յաջորդ տարին ինքն ալ մեռնելով, լրագիրն այլեւս չկենդանացաւ։ Արշալոյս Արարատեանի անունը Զմիւռնիոյ իրենց նախնի գրասիրութեան պատկառելի յիշատակ մը պիտի մնայ միշտ[1]։„

Զ. Աւելի յարատեւ եւ արդիւնալից գործարան մ'եղած է Տէտէեան Եղբարց տպարանը

---

[1] Պատմութիւն Հայ Լրագրութեան. Վիեննա 1893 էջ 47։

1850ին Տիգրան Յարութիւն Տէտէեան տպարան մը բանալու գեղեցիկ գաղափարը կը յղանայ. իւր երկու եղբայրներն Կարապետ եւ Սարգիս՝ իրեն ձեռնտու օգնական գտնելով, տպարանի բացման համար տէրութենէ պահանջեալ հրամանը կը խնդրէ. յաջորդ տարին իւր անուամբ հրամանը կ՚ընդունի, եւ Հայոց Թաղին Բէշիտիբէ անուանեալ մեծ փողոցին վրայ տպարանը կը բանայ։ Տպարանի պէտք եղած գրերը բերել կու տայ Վենետիկէ, Վիեննայէ եւ Պոլսէ (Միւհէնտիսեան գրեր). Բարիզ երթալով կը գնէ մամուլ մը եւ այլ եւ այլ գործիքներ, միանգամայն հոն զանազան գրերու մայրեր փորել տալով՝ վերջէն գրեր թափել կու տայ. տպագրական հրատարակութեանց սկիզբ կ՚ըլլայ 1853ին։ Քանի մը տարի ետքն իւր եղբարքը կը թողուն զինքն առանձին եւ իրենք վաճառականութեամբ կը զբաղին։ Յարութիւն Տէտէեան անխոնջ աշխատութեամբ առանձինն յառաջ կը տանի տպարանը, իւր հսկողութեան ներքեւ կը տպուին դպրոցական գրքեր, վէպեր, պատմութիւններ եւ գրագէտներու ամէն տեսակ աշխատութիւնները. 1868ին մահը վրայ հասնելով կը կտրէ Յ. Տէտէեանի կենաց թելը, բայց չի կրնար ընդհատել տպարանը. իւր եղբայրն Ստեփան Տէտէեան վրան կ՚առնու տպարանի հոգը եւ յառաջ կը տանի սոյն օգտակար հաստատութիւնը։

Սոյն տպարանէն՝ Յարութիւն Տէտէեանի խմբագրութեամբ 1853 Յուլիսին լոյս տեսաւ Արփի Արարատեան անուամբ Օրագիր բանասիրական, ազգային, ուսումնական եւ տնտեսական թերթը, որուն մէջ մաս առ մաս հրատարակուած են նշանաւոր հեղինակներու թարգմանութիւնները, ինչպէս Մոլիէր, Շէքսփիր, Հազար ու մէկ գիշերներ եւն։ Դժբախտաբար օրագիրս երկայն կեանք չէ ունեցած. 1856ին՝ իւր շրջանը չբոլորած օրագիրս արդէն դադրած էր հրատարակուելէ։

Տպարանիս մէջ լոյս տեսած են գրեթէ 80ի չափ վէպեր, պատմութիւններ, իրենց հատորներով, 20ի չափ դպրոցական զանազան գրքեր եւ 10ի չափ կրօնական գրեանք։



Հոս տպուած են Մատթէոս էֆ. Մամուրեանի թարգմանութիւններն՝ Ամուրիի մը երազները, Ամօրի, Անիծեալը, Աշխարհի շրջանն ութսուն օրուան մէջ, Գաղտնիք Բարիզու, Երեք հրացանակիրք, Իվանհօէ, Խորհրդաւոր կղզի, Հազար ու մէկ գիշերներ, Վէրթէր, Քսան տարի ետք,

Պրաժլօն Դերկոմս, Միքրօ Մեղաս, եւ Հայկական նամականի եւ Անգղիական նամականի երկասիրութիւնները։

Գրիգոր էֆ. Մսերեանի թարգմանութիւնները, Աղքատ երիտասարդի մը վէպը, Բարիզն յԱմերիկա, Լէօն Լէօնի, Հետվիճի երդումը, Գլավի՝ վէպ։

Տիգրան Ց. Տէտէեանի թարգմանութիւնները, Ագահն եւ Ակամայ բժիշկ (կատակերգութիւնք Մոլիէրի), Անգեղա Գա.ճիոլի, Ժընըվիեվ, Լուքրէցիա Պորճիա, Հազար եւ մէկ գիշերներ, Մոնթէ Քրիսթոյ կոմս։

Գրիգոր էֆ. Չիլինկիրեանի թարգմանութիւնները, Դարուս մէկ զաւակի խոստովանանքը, Թշուառներ, Մաթիլտ, Մանօն Լէսգօ, Մարիօն Տըլօրմի խոստովանանքը, Ռափայէլ, Օրիորդ Լաքէնթինի, Պարօն տը Գամոր։

Գ. Պատկանեանի հեղինակութիւնները, Անուշաւան, Ջաւան եւ Փառնակ, Մահ Պարէտի, Պարոյր կամ Առումն Նինուէի։

Մեսրոպ էֆ. Նուպարեանի թարգմանութիւնները, Դատասէրք, Նօդր-Տամ-Բարիզի։

Խորէն Եպիսկոպոս Մխիթարեանի աշխատասիրութիւնները, Արկածք Կատարինէի, Թեսաւրոսի բարոյախօսութիւն, Իմացական փիլիսոփայութիւնն, Նետահար Աղաւնի, Ուղեւորութիւն Վիրալի Սիրաքայ, Տիեզերական Պարտէզ։

Թադէոս Ճերմակեանի՝ Բօլ նաւապետը եւ Բօլինը։ Սարգիս Տէր Գասպարեանի՝ Կիւլիվէրի ճամբորդութիւնը։

Նշան Միրզաեանի յօրինած Տօրան (վէպ)։

Հ. Ց. Տէտէեանի թարգմանած՝ Գաղտնիք Բարիզու՝ Թատերգութիւն, Հասկաքաղ աղջիկը, Նասրէտին Խօճա։

Օրիորդ Լիւսի Ս. Պալասանեանի թարգմանած Ագնէսը։

Օր. Մարիամ Յ. Ճերմակեանի՝ Անթօնին։

Օր. Կոռնելիա Ս. Փափազեանի՝ Լիոնի Սուրհանդակը։

Կ. Պ. Շէրիտճեանի թարգմանած՝ Այտան։

Խ. Ե. Պուրնուզեանի թարգմանած՝ Արիւնալի Մարքիզուհին։

Փիլիպպոս Վարդանեանի թարգ. Գէորգ Ուաշինկթըն։

Յ. Սրվանձեանի գրած Դրախտահարսն։

Ա. Կ. Տէտէեանի թարգմանած՝ Թարթիւֆ (կատակերգութիւն Մոլիէրի), Հռոմէոս եւ Ճուլիէտ (ողբերգութիւն), Հռասէլաս Ճօնսընի։

Նոյն տպարանէն լոյս տեսած են Գարուն Հայաստանի թերթը 1862ին, Տիգրան Յ. Գարագաշեանի եւ Գր. Պ. Պարտիզպանեանի խմբագրութեան ներքեւ, որ նոյն տարւոյ վերջերը դադրած է։ Յաւերժահարս հանդէսը 1862ին՝ Սարգիս Փափազեանի եւ Թ. Աւետիսի խմբագրութեամբ, որ նոյնպէս տարի մը տեւած է։ Ծաղիկ՝ 1862—67, Մ. Չիլինկիրեանի խմբագրութեամբ։ Միութիւն (1861—62½) եւ Դիմակ (1862) հանդէսները, որոնք շատ կարճ ժամանակ կեանք ունեցած են։ Ասոնց դադրելէն քանի մը տարի ետքը հրատարակուած է Սարգիս Միրզաեանի՝ Իրաւունք քաղաքական լրագիրն (1867—8), որ նմանապէս երկայն չէ ապրած։

Հոս հրատարակուած են Մուսայք Ս. Մեսրոպեան Վարժարանի անուանեալ երկու տետրներն (Ա. 1865, Բ. 1866), որ կը բովանդակեն Մեսրոպեան վարժարանի Ա. դասարանի աշակերտներու գրաբար ոտանաւորներն. այս աշակերտներն էին՝ Սմբատ Կարապետ Ստեփանեան, Արամ, Սարգիս Կ. Դուլիթեան, Յակոբ Մաղաքեան, Գարեգին Յովհ. Գ. Ճէզայիրեան, Արմենակ Նիկողայոս Գասպարեան, Վահան Եղիազար Կ. Եղիազարեան, Միհրդատ Աւագ Կարապետեան, Երուանդ Թագւոր Ս. Պար-

տիզպանեան, Պարոյր Կարապետ Եղիվարդցիեան, Պ. Նշան Միրզա Վանանդեցի, Կարապետ Գ. Չիվիճեան։

Է. 1854 Թուականին կը յիշուին Թութակի եւ Երկասէրի տպարանները։ Մեսրոպեան վարժարանի աշակերտներն երկու խումբ եղած տպարան կը հաստատեն. առաջին խումբը Անդրէաս վարժապետի առաջնորդութեան տակ, Տ. Վրթանէսի անուամբ կը հրատարակէ Թութակ օրագիր բարոյական, բանասիրական եւ ուսումնական, իւր առանձին տպարանին մէջ. սակայն տարի մը ետքը՝ 1855ին կը դադրի։ Երկրորդ խումբը իբր Թութակի մրցորդ, նոյնպէս իւր առանձին տպարանին մէջ կը հրատարակէ Երկասէրը։ Այն կրկին տպարանաց վրայ գաղափար մ՚ունենալու համար, յառաջ կը բերենք Մեսրոպ էֆ. Նուպարեանի տողերն, որ նոյն իսկ Երկասէրի հրատարակիչներուն խմբին մէջ գտնուած է, եւ գեղեցիկ կերպով կը ստորագրէ նոյն ժամանակուան դպրոցական աշակերտներու գործունէութիւնը։ "Թութակի եւ Երկասէրի տպարաններ որ կ՚ըսենք, որեւէ պատրանք պէտք չէ ազդեն ընթերցողներու մտքին մէջ։ Դպրոցականներէ հիմնուած անշուք եւ ամենախեղճ հաստատութիւններ էին անոնք, որեւէ տան մը որեւէ նետուած մէկ սենեկի մէջ եւ հազիւ տպարանի մը երեւոյթը կ՚ընծայէին այցելուի աչքին։ Իսկ անոնց վերաբերեալ մամուլնե՞րը։ . . . Երեւակայեցէք վաճառատանց մէջ տեսնուած երկաթէ մամլակը նամակներու նմանահանութեան յատկացած, այն ալ պարզապէս տախտակէ։ . . . Թութակի մամուլն ալ նոյնպէս տախտակ չէ՞ր միթէ։ Հայրս՝ ուսումնասէր եւ միշտ կամակատար որեւէ խնդիրիս՝ Երկասէրի մամուլն ապսպրեց ուրեմն մեր տան տաղձագործին . . . ։ Իսկ հարկ եղած գրերը հայթայթուեցան մեզ Յարութիւն Տէտէեանէ։ Բազմարդեան տպարանապետը եւ ապագայ անուանի հրատարա-

կիչը Հայերու՝ Արփի Արարատեանի հրատարակման համար հանգուցեալ հօրս հանգանակած դրամական նպաստին փոխարէն կու տար մեզ Միւհէնտիսեան կիսամաշ տառեր . . ., նոյնպէս ինք եղաւ Երկաթէր կոկիկ անունը մեզ թելադրողը։ Այսպէս ուրեմն դպրոցական պատանեակներ՝ . . . յանկարծ մէյ մէկ խմբագիրներ դարձած օրագրի յօդուած կը գրէինք կամ կը թարգմանէինք, եւ մեր պարապոյ օրերն ու ժամերն այդ գրուածները տպելու կը գործածէինք։ Երկաթէրի՝ ինչպէս նաեւ Թութակի տպագրութիւնն՝ մանուկ արհեստաւորներու ձեռքով եւ փայտեայ անշնորհ մամլակի միջոցաւ ի գործ դրուած՝ արդէն խեղճ ու տգեղ՝ ատեն ատեն անտանելի կերպով աղտոտ եւ գրեթէ անընթեռնելի հանգամանք կը ստանար . . . ։ Երկաթէր ամսեայ հանդէսը՝ որուն բաժանորդագինն ամենաչնչինն էր (տարեկան 14 ղրուշ) ունէր քանի մը տասնեակ բաժանորդներ . . .[1]։

Ը. Զմիւռնիոյ մէջ հաստատուած հայ տպարանաց մէջ ամէնէն կատարելագործեալը կրնայ համարուիլ Թաթիկեան Տպարանը, որ ի սկզբանն անդ Վիմագրատուն անուամբ սկսած եւ ժամանակին հետ իւր քայլերը փոխած՝ յառաջացած է։ Պօղոս Թաթիկեան՝ պատկերահան իւղաներկի եւ ջրաներկի՝ 1844ին ձեռք կը զարնէ՝ վիմագրական զանազան գործերով եւ պատկերներով զբաղիլ։ Տասուիրեք տարի իւր ձեռաց արդասիքը Զմիւռնացւոյն նուիրելէ ետքը՝ 1857ին ճանապարհորդութեամբ Եւրոպա կ'անցնի, ուր նորանոր գաղափարներով տոգորուած՝ Զմիւռնիա դառնալէն ետքը՝ 1859ին առաջին անգամ Լուսանկարչատուն մը կը հաստատէ, իսկ վիմագրատունը կը թողու իւր եղբօր Պետրոս Թաթիկեանի։

---

1 Մանկական Յիշատակներ, Մեսրոպ Նուպարեան. Արեւելեան Մամուլ 1894, Դեկտ. էջ 703։

Պետրոս Թաթիկեան իւր եղբօր տեղը վիմագրատան գլուխն անցնելէ քանի մը տարի վերջը, ուրիշ գեղեցիկ գաղափար մը կը յղանայ, նոր գործիքներ հոգալով, 1864ին հաստատութեան մէջ տպագրութիւն ալ կ'աւելցրնէ եւ տեսակ տեսակ տառեր գնելով, Հայերէն, Յունարէն, Գաղղիերէն, Անգղիերէն, Իտալերէն, Տաճկերէն եւ Եբրայեցերէն լեզուներով այլեւայլ թերթեր, տետրներ, տեղեկագիրներ եւ դպրոցական գրքեր կը տպէ։ Ի մէջ այլոց, երբեմն հոս կը տպուէր La Réforme անուն ֆրանսերէն թերթը, Ստեփան էֆ. Ոսկանեանի խմբագրութեամբ (որ այժմ ունի իւր առանձին տպարանը)։ Հոս լոյս տեսած է քանի մը տարի انتباه (Ինթիպահ) անուն տաճկերէն լրագիրը Գէորգ էֆ. Պուպլեանի խմբագրութեամբ եւ ապա բոլորովին դադրած։

Հոս հրատարակուած են Revue de Smyrne, Journal de Smyrne, The Report, Մէսարէթ Նովէլիստը (հրէերէն), ترقی (Թէրագգը) թերթերը եւ Courrier de Smyrne որ ցարդ լոյս կը տեսնէ տպարանիս մէջ։ 1883ին Պետրոս Թաթիկեանի մահուամբ քանի մը տարի ժառանգորդաց տնօրինութեամբ տպագրատան գործքերը շարունակուելէ ետքը՝ 1889ին ամբողջ հաստատութիւնը կ'անցնի Կարապետ Թաթիկեանի վրայ, որ մինչեւ այս օր մեծ յաջողութեամբ կը յարատեւէ տպել վերոյիշեալ լեզուներով՝ վիմագրական եւ տպագրական ամէն տեսակ գործեր։

Տպարանս ունի ամէն լեզուէ տառերու հաւաքածոյ մը, արագատիպ մամուլ եւ զանազան գործիներ. իսկ վիմագրութեան մէջ ունեցած մաքրութեամբ եւ գեղեցկութեամբ կը մրցի քաղաքիս մէջ հաստատուած գաղղիական կամ յունական տպագրատանց հետ։

Թ. Յարատեւ գործունէութիւն ունեցող տպարանաց քով, կը գտնենք կարճատեւ կեանք

ունեցողներ ալ. այսպիսիներու կարգէն է Մսերեան Տպարանը։ 1877ի միջոցները Գրիգոր Մսերեան տպարան մը կը բանայ եւ քանի մը տարի գործելէ վերջը՝ չկարենալով տոկալ մրցակիցներուն դէմ, կը ստիպուի դադրեցընել ցմիշտ։ Տպարանիս երախայրիքն եղած է Մէտէօրա անուն ուսումնական թերթը (1880), որ վեց ամիսն անգամ մը կը հրատարակուէր՝ խմբագրութեամբ Գրիգոր էֆ. Մսերեանի եւ Մեսրոպ էֆ. Նուպարեանի։ Թերթս՝ մեծագոյն մասամբ կը պարունակէ պատմական տեսութիւններ եւ իմաստասիրական գրուածներու թարգմանութիւններ։ Տպարանիս մէջ տպուած է տարի մը ամբողջ (1878) “Արեւելեան Մամուլը„։ Ունի նաեւ աննշան տետրներ եւ տեղեկագիրներ՝ հրատարակուած իւր մամուլներով։

Ժ. Նորագոյն հաստատութիւն մըն է Մամուրեան տպարանը, սակայն գաղափարը շատ հին։ Մատթէոս էֆ. Մամուրեան վաղուց տպարան մը եւ թերթ մը հիմնելու խորհուրդը յղացած էր. ինչպէս իւր հրատարակած թերթին — թուոյն մէջ “Նպատակ„ վերնագրով նախաբանին մէջ բացատրած է. սակայն իւր այս խորհուրդը հազիւ 1871 Յունուար 1ին կը յաջողի իրագործել եւ նախ Արեւելեան Մամուլ անուամբ հանդէսը հրատարակելու ձեռք կը զարնէ՝ Տէտէեան եղբարց տպարանին մէջ, իսկ մամուլի կամ տպարանի հաստատութիւնն կը թողու ուրիշ նպաստաւոր ժամանակի մը։

Պաշտօնական արտօնագիրն ոչ միայն տպարան մը հիմնել այլ եւ Ա. Մամուլն շաբաթը երկու անգամ հրատարակելու արտօնութիւն կը շնորհէր, սակայն պարագաներն ու խմբագրին զբաղմունքը չներեցին այդ արտօնութիւնն լիովին ի գործ դնել, հետեւապէս Ա. Մամուլ 1871—1894 իբր Միամսեայ հանդէս հրատարակուած կը գտնենք. իսկ 1894էն սկսեալ մինչեւ ցայսօր ամիսն երկու ան-

գամ կը հրատարակուի, միշտ հաստչին խմբագրութեան ներքեւ եւ կը պարունակէ Ազգային, Գրական եւ Քաղաքական տեսութիւններ եւ թարգմանութիւններ։

Արեւելեան Մամուլ՝ ինչպէս յիշեցինք՝ Տէտէեանի տպարանը լոյս տեսաւ եւ շարունակեց իւր այս ընթացքը մինչեւ 1878։ Սոյն թուականին՝ զանազան պատճառներով փոխադրուեցաւ Գրիգոր Մսերեանի տպարանն եւ տարի մ'ամբողջ հոս հրատարակուելէ վերջը՝ յաջորդ տարին 1879ին վերստին Տէտէեանի տպարանը սկսաւ տպուիլ։

Հասած էր ժամանակը, Մատթէոս էֆ. Մամուրեանի երկրորդ բաղձանքն ալ իրագործելու ժամը զարկած էր։ Տպարան մը բանալու համար՝ սոյն գիտնական անձը՝ այլ եւ այլ աղնուամիտ անձինքներէ ձեռնտուութիւն գտնելով, 1883 Մայիս 1ին Մամուրեան անուամբ բացաւ տպարան մը, եւ իւր առաջին գործքն եղաւ Արեւելեան Մամուլը նորակազմ տպարանին մէջ հրատարակել։ Այսպէս Ա. Մամուլ 1883 Մայիս 1էն սկսեալ մինչեւ ցայսօր կը տպուի Մամուրեանի տպարանը. իւր հրատարակութեան 28ամեայ ընթացքին մէջ միայն 2 անգամ բարձրագոյն հրամանաւ՝ 3 եւ 6 ամիս դադրած է։

Մամուրեան տպարանը չէ թէ միայն Ա. Մամուլ, այլ զանազան դպրոցական գրքեր, տետրներ, տեղեկագիրներ տպած է։ Անոնց մէջ կը յիշուին հետեւեալները՝

Գարնան մի Ասուպ, վիպակ. գրեց օր. Մենիկ։

Առողջաբանութիւն աղջկանց, դասագիրք. յօրինեց Մ. Մամուրեան։

Իրաբանութիւն, դասագիրք. յօրինեց Մ. Մամուրեան։

Գիտելիք ու պարտիք տղոց, դասագիրք. յօրինեց Մ. Մամուրեան։

Ընտիր աղջիկ մը, բարոյական վէպ. Թրգմ. օր. Արապեան։

Մանկական պարտէզ. յօրինեց Կ. Պալապան։

Նոր Այբբենարան. յօրինեց Կ. Պալապան։

Բանալի Հայ շարադրութեան. յօրինեց Մ. Մամուրեան։

Հայոց պատմութիւն. յօրինեց Մ. Մամուրեան։

Ուսումն քրիստոնէական. գրեց Ա. Պ. Վարժապետեան։

Նուաձայն երգեցողութիւն Ս. Պատարագի. յօրինեց Լ. Չիլինկիրեան։

Բերուզակ, վէպ. Թրգմ. Մ. Մամուրեան։

Կարապի երգ, վէպ. Թրգմ. Մ. Մամուրեան։

Տեղեկագրութիւն Հող-Որբախնամ ընկերութեան։

Տեղեկագրութիւն Աղքատախնամ ընկերութեան։

Տեղեկագրութիւն Հռիփսիմեան Վարժարանի վերաշինութեան յանձնաժողովոյ։

Կանոնագիր ու ծրագիր Ժառ. Վարժարանին Կեսարիոյ։

Տեղեկագրութիւն Իզմիրի Քաղ. Ժողովոյ տարեկան։ Ասոնցմէ զատ տպած է եւ կը տպէ տպարանս հայերէն, գաղղիերէն, տաճկերէն եւ յունարէն յայտարարութիւններ, ամէն տեսակ տոմսակներ եւ թղթեր։

---

## ԳԼՈՒԽ ՉՈՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ

*Ազգային Նուիրատուներ։*

Զմիւռնացի Հայ ժողովուրդն իւր կրօնական եւ ազգային կարեւոր հաստատութեանց միշտ բարերարութիւն ըրած է։ Այսպիսի բարերար անձանց շնորհիւն է որ եկեղեցիները, հիւանդանոցը եւ

դպրոցները կանգնուած եւ կալուածոց տէր եղած են եւ որոնցմով ապահովուած է իրենց գոյութիւնը։ Իւր գաղթականութեան սկիզբէն մինչեւ այսօր՝ ժամանակ ժամանակ եղած են բարերարներ, որոնք իրենց ստացուածոց մէկ մասը նուիրած են ազգային կարեւոր հիմնարկութեանց։ Առաջնորդարանի Դիւանատան մէջ պահուած կը գտնենք ցանկ մը, որուն մէջ նշանակուած են 1850էն ասդին եղող նուիրատու անձանց անուններն. իսկ այս թուականէն յառաջ եղող բարերարաց անուններու ցանկ մը գտնելու մեր աշխատութիւնն ապարդիւն եղաւ. անտարակոյս 1845ին պատահած հրդեհը մոխիր դարձուցած է ուրիշ արձանագրութեանց հետ։

Ցուցակ անուանց նուիրատու բարերաց ազգիս ի Զմիւռնիա:

Մեծ. Խաչատուր Ղազէրեան Բալուցի, նուիրատու քարուկիր տան, որ ի փողոցն Հալիլիէ։ Եւ մթերանոցին որ ի Կիրիտ խան։

Նոյն անձն, որոյ արդեամբք, զկնի մահուանն, կառուցաւ Ազգային Առաջնորդարանն։

Վսեմաշուք Յակոբ եւ Յովհաննէս Սպարթալեան, կառուցողք նորաշէն Հիւանդանոցի Ս. Լուսաւորչեան ի 1879։

Բարեպաշտուհի Մարիամ Տիկին հոգելոյս Անդրէաս Վարժապետի, նուիրատու տան որ ի Մոստա փողոց թիւ 1։

Մեծ. Պաղտասար Մանկրեան, նուիրատու տան, որ ի Ֆէթհիէ փողոց։

Նոյն անձն, նուիրատու քարուկիր սենեկին, որ ի Տէրվիշ օղլու խան, յանուն ազգային դպրոցին ի Գարաթաշ։

Բարեպաշտուհի Յուստինէ Տիկին Գր. Ազարեան, նուիրատու տան որ ի Ֆէթհիէ փողոց։

Պ. Յակոբ Գր. Պալապանեան, նուիրատու տան որ ի Ֆէթհիէ փողոց։

Պ. Ղազարոս Չէքիրկեան, նուիրատու տան որ ի Մօտա փողոց։

Պ. Ալեքսան Էօրիւճի, նուիրատու տան որ ի փողոցի Արալըք։

Նոյն անձն նուիրատու տան որ ի փողոցն Նեվրէս։

Պ. Պօղոս Աքկէր, նուիրատու տան, որ ի Գարաթաշ, յանուն Ս. Լուսաւորչեան Հիւանդանոցի։

Բարեպաշտուհի Հռիփսիմէ Տէր Գրիգորեան, նուիրատու տան որ ի Գարաթաշ, կէսն յանուն Հիւանդանոցի եւ կէսն Եկեղեցւոյն Գարաթաշի։

Մեծ. Գրիգոր Պերկամալեան, նուիրատու տան որ ի Նեվրէս փողոց։

Նոյն անձն, նուիրատու մթերանոցին որ ի մեծ վէզիր խան։

Մեծ. Յովհաննէս Միսքճեան՝ Գաղատացի, նուիրատու մթերանոցին որ ի փողոց Սուլթանիէ, թիւ 141։

Նոյն անձն, նուիրատու քարուկիր կրպակին՝ որ ի Եօլ Պէզէսթէն, թիւ 22։

Նոյն անձն, նուիրատու մթերանոցին որ ի Մեծ վեզիր խան, թիւ 25։

Մեծ. Մկրտիչ Ղօնճաեան, նուիրատու մթերանոցին, որ ի Մեծ վեզիր խան, թիւ 2։

Բարեպաշտուհի Մարիամ Տիկին Յօհ. Աղազարեան, նուիրատու յերկոտասան բաժնից միոյն հինգուկէսին տան Թշըրիֆիէ եւ Ճրճր փողոց։

Նոյն անձն, նուիրատու կէս խանութատեղւոյ, որ ի փողոցն Մահմուտիէ։

Բարեպաշտհ. Մարգարիտ Տիկին Գաբրիէլեան, նուիրատու տան, որ ի փողոցն Եօքուշ պաշը։

Մեծ. Յովհաննէս Շողակաթեան, նուիրատու տան, որ ի Մէհբարէ փողոց։

Մեծ. Թօրիկ Սեղբոսեան, նուիրատու տան եւ ներքեւի երկու խանութիցն, որ ի փողոցն Մօրթաքի։

Ամենապատիւ Տ. Պօղոս Ս. Արքեպիսկոպոս Թագթագեան, նուիրատու մթերանոցին, որ ի փողոցն Եօլ Պեզէսթէն, գնեալ նորին կտակադրամով։

Բարեպաշտուհի Շահզատէ Տիկին Պետրոս Վէմեան, նուիրատու կէս տան որ ի փողոցն Մօտա։

Մեծ. Մ. Աւետիս Էքիզեան, նուիրատու տան, որ ի փողոցն Ռուշէն։

Մեծ. Յովհաննէս Յովսէփեան, նուիրատու մէկ երրորդ բաժնին սրճարանի, որ ի Բէշտիմալճրլար փողոց, թիւ 180։

Պ. Գալուստ Կարապետեան, նուիրատու տան որ ի փողոցն Պէտիհավապաղչէ։

Մեծ. Եղբարք Հօպճանեան՝ Աֆիոն-Գարահիսարցի, նուիրատուք մէկ հինգերորդ բաժնի մթերանոցին, որ ի Եմիշ շուկայ։

Վսեմաշուք Պետրոս Եուսուֆեանց, նուիրատու 40.000 ֆիորինի, որով գնեցան երկու տունք, մին՝ յԱյի Եօրքի փողոց, միւսն՝ ի Տէրվէշ փողոց։ Նաեւ շինեցան քարուկիր խանութքն՝ որ ի ներքոյ Շահին խանի։

Բարեպաշտուհի Կիւլհանըմ Տիկին Մկրտիչ Նուպարեանի, նուիրատու խանութին, որ ի Պալըք Բազար կոչուած շուկայն։

Մեծ. Գէորգ Սուլթանեան, կառուցող սուրբ Յարութիւն Մատրան, որ ի Նոր Գերեզմանատան։

Մեծ. Աւագ Մ. Աւագեան Ամճա, նուիրատու հետեւեալ կալուածոց յանուն հիւանդանոցին։ Տուն մի ի փողոցն Մէլէս։ Սրճարան մի ի փողոցն Ռէշիտիէ։ Խանութ մի ի նոյն փողոց։ Կառատեղի մի ի նոյն փողոց։ Եւ խանութ մի ի նոյն փողոց։ Խանութ մի ի շուկայն Քալէ-Արտը։ Համայն եօթն կտոր կալուածք։

Բարեջան դերձակ Հայ արհեստաւորք, նուիրատուք քարուկիր սենեկին Թիւ 57 ի Գըզլար աղա խան, լինել եկամուտք Ս. Եկեղեցւոյն Հայոց ի Գարաթաշ։

Բարեպաշտուհի Իսկուհի Տիկին Ե. Սպարթալեան, նուիրատու տան, որ ի Մէլէս փողոց, Թիւ 7։

Վսեմաշուք Յովհաննէս էֆ. Սպարթալեան, վերաշինող Ս. Մեսրոպեան Վարժարանի։

Մեծ. Մ. Խաչատուր Կէմճեան՝ դարբին, նուիրատու տան որ ի Բուշէն փողոց։

Բարեպաշտուհի Տուտու Տիկին Աւետիս Տամկաճեան, նուիրատու տան ի Սուզան փողոց։

Մեծ. Եղիա Շողակաթեան նուիրատու մի տան ի Գարաթաշ, Օսմանիէ փողոց։

---

## ԳԼՈՒԽ ՀՆԳԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

*Վաճառականութիւն եւ արուեստք։*

Զմիւռնիոյ Հայոց մէջ ամէն դասակարգէ անձինք թէ յանցեալում գտնուած են եւ թէ ներկայիս կը գտնուին։ Պակաս եղած չեն այնպիսի անձնաւորութիւնք, որ տեղական կառավարութեան առջեւ՝ իրենց դիրքովը մեծ ազդեցութիւն ունեցած եւ օտարներէ մեծ պատիւ գտած են։ Դարուս առաջին քառորդին մէջ կը յիշուին Պապօեան եւ Էքիզեան ընտանիքներն, որոնք իրենց ազդեցիկ ձայնով մեծ ծառայութիւն մատուցած են ազգին։ Քանի մը տասնեակ տարիներ յառաջ Սպարթալեան Յակոբ եւ Յովհաննէս Էֆէնտիներն մեծ անուն ունէին ամէնուն առջեւ։

Ներկայիս քանիներ իրենց հմտութեամբ՝ կառավարութեան այլ եւ այլ պաշտօններու բարձրացած են, եւ որոնք հաւատարմութեամբ եւ յաջողութեամբ կը ծառայեն տէրութեան. քիչ

չեն այն անձինք որ Հիւպատոսաց քով պատիւ գտած են իբր առաջին թարգման։ Աւելի բազմաթիւ են այնպիսիներն որոնք Հանրօգուտ Հաստատութեանց եւ ընկերութեանց մէջ՝ իբր առաջին կամ երկրորդ կարգի պաշտօնեայ կը գործեն։

Այսպիսի պաշտօններէ եւ երկրորդական գործերէ զատ՝ Հայն գլխաւորաբար աւելի նշանաւոր եղած է իւր վաճառականութեամբ։ Երկու դար յառաջ Հայոց՝ Հոլանտացւոց հետ ունեցած վաճառականութիւնը կը յիշէ Շարտէն գովութեամբ։ Շատ հին է նաեւ Հայոց Պարսկաստանի հետ հաստատած առեւտրական յարաբերութիւնը։ Դարուս սկիզբէն աւելի ընդարձակուած կը գտնենք այս վաճառականական յարաբերութիւնները։ Թրիեստ եղած է հայ վաճառականներուն գլխաւոր մէկ վայրն, ուր բարեյիշատակ Պետրոս Եուսուֆեան՝ ազնուասիրտ մեծահոգի անձը՝ տարիներով կեցած եւ հոն գտնուած հայ վաճառականաց իբր պաշտպան եւ հայր հանդիսացած է։ Թրիեստէ ետքը կու գայ Մանչեստր, ուր Զմիւռնացի Կարապետ Էքիզեան առաջին անգամ (1855—1860) անցած եւ հոն Պ. Պապօ վաճառատունը բացած է. ասոր հետեւած են Յովհաննէս Էֆ. Սպարթալեան եւ հետզհետէ ուրիշներ ալ։ Եւրոպայէ դուրս՝ Հայերն ունին Հնդկաստանի, Եգիպտոսի, Դամասկոսի, Հալէպի եւ Ամերիկայի հետ վաճառականական յարաբերութիւններ։

Արուեստներն այնչափ ընդհանուր չեն տարածուած Հայոց մէջ. կը գտնուին աննշան թուով ժամագործ, ոսկերիչ, դարբին, վերմակագործ, դերձակ, կօշկակար, ատաղձագործ եւ այլն, որոնցմէ ոմանք կարի նուազ են։

Վաճառականութեան սիրահար Զմիւռնացւոց մէջ կը գտնուին նաեւ բժիշկներ, դեղագործներ, փաստաբաններ, որոնք թէպէտ եւ չեն այնչափ բազմաթիւ, սակայն ասոնցմէ ոմանք՝ իրենց մաս-

նագիտութեամբ մեծ անուն եւ համբաւ ունին օտարաց առջեւ եւ պատիւ են ազգակցաց։

Կը դնենք հոս ցանկ մը անուանց, զոր Առաջնորդարանի դրագիրներէն Նշան Ս. Փանիկեան խնամով քաղած է, յորում նշանակուած են ներկայիս անուանի կալուածատէր անձանց, վաճառականնե̂րու, արուեստաւորներու անունները — այնպիսիներու միայն, որ բաւական դրամագլխոյ տէր են եւ կը գործեն իրենց հաշուին։ Իսկ օտար վաճառատանց եւ հաստատութեանց, ինչպէս նաեւ Տէրութեան պաշտօններու մէջ գործողներն դուրս թողուցած ենք։ Աւելցուցած ենք նաեւ բժիշկ, փաստաբան, հրապարակագիրներու եւ քահանայից անունները։

*Անուանի կալուածատէր անձինք.*

Եուսուֆեան Յովսէփ Չէլէպի, Գրիգոր Գույումճեան, Եղբարք Սպարթալեան, Եղբարք Աւետիքեան, Զարեհ Թագթագեան, Թովմաս Թովմասեան, Կարապետ Արապեան, Կարապետ Պալեօզեան, Կարապետ Սէրչէօեան, Ղուկաս Եսայեան, Մատթէոս Պալեօզեան, Մանուկ Չաքըճեան, Մովսէս Թեւեան, Յարութիւն Գույումճեան, Յակոբ Վէմեան, Յարութիւն Ոսկանեան, Յովհաննէս Բարսեղեան, Պետրոս Պագըրճեան, Պօղոս Կոստանդեան։

*Եւրոպական ձեռագործներու (մանիֆաթուրայի) առաջին կարգի վաճառականք.*

Բաբազեան-Անտոնեան ընկ., Եալօրըզճեան-Օտապաշեան (Պոլսեցի), Եղբարք Աւետիքեան, Եղբարք Գույումճեան, Եղբարք Թօփալեան, Եղբարք Սուքիասեան, Եղբարք Սպարթալեան, Եսայեան-Պերկամալեան, Թադէոս Սպարթալեան, Կարապետ Արապեան, Կարապետ Յակոբեան, Համբարձում Համբարձումեան, Յակոբ Տիլսիզեան

(կեսարացի), Նազարէթ Կիւրինեան (կեսարացի), Պետրոս Պագըրճեան, Սարգիս Սիվրիսարեան եւ ընկ., Ստեփան Իփլիքճեան, Տիգրան Իփլիքճեան։

*Նոյնպիսի նիւթեղինաց երկրորդ կարգի վաճառականք.*

Գառնիկ Արդարմօրուքեան, Եղբարք Տամատեան, Եղբարք Օտապաշեան (կեսարացի), Եդուարդ Գարագաշ (Պոլսեցի). Եղբարք Ալլահվէրտեան (կեսարացի), Հայկ Էլմասեան, Մաղաքեան-Իզմիրլեան, Մեսրոպ Փափազեան, Միսաք Փանոսեան եւ ընկ. (կեսարացի), Յակոբ Փափազեան, Յակոբ Կիւմիւշեան, Սարգիս Արդարմօրուքեան (կեսարացի), Տիգրան Արդարմօրուքեան, Տիգրան Գասպարեան (կեսարացի), Սարգիս Սուքիասեան եւ ընկ., Օննիկ Եղիազարեան (կեսարացի)։

*Նոյնպիսի ապրանքներու երրորդ կարգի վաճառականք.*

Արթին Երամեան, Արթին Թոքաթլեան, Աւետիս Գասպարեան, Աւետիս Խաչատուրեան, Եղբարք Չագըրճեան, Թէքէեան եւ Սաղըեան, Խաչատուր Աւագեան, Միհրան Պօղոսեան, Յովհաննէս Շահինեան, Յովհաննէս Պապաեան, Յակոբ Կարապետեան, Յարութիւն Նէվշէհիրլեան, Սարգիս Գույումճեան, Սիրաք Պօղոսեան։

*Բամպակի, ցորենի, թուզի, չամիչի եւ ափիոնի վաճառականք.*

Արամ Համբարձումեան, Արմենակ Աքչէլեան, Աւետիս Քէօլէեան, Գասպար Եղվարդեան, Գէորգ Ճէլէպեան, Եղբարք Ճ. Էլմասեան, Եղբարք Դաւիթեան, Եղբարք Ջաքեան, Եղբարք Եսայեան, Եղբարք Շիրինեան (Աֆիոն Գարահիսարցի), Եղբարք Արեւեան, Եղբարք Վարպետեան, Եղբարք

Սիմոնեան, Եղիազար Օհաննեան, Լեւոն Մկրտիչեան (Նախիջեւանցի), Լոդոֆէլթ Պալեօղեան, Խաչատուր Ջաքեան, Կարապետ Արապեան, Կիւլպէնկ Կիւրինեան, Կոստանդ Սուքիասեան, Մատթէոս Պալեօղեան (Կեսարացի), Միհրան Ջանպակճեան (Կեսարացի), Միհրան Փափազեան, Յակոբճեան Պալքճեան, Յակոբ Տիլսիզեան, Յարութիւն Բաթաքանեան (Կեսարացի), Յարութիւն Քէքլիկեան, Պաղտասար Ճերմակեան, Ռուբէն Աղաշարեան։

Մանրավաճառք.

Եղիազար Վարպետեան, Մկրտիչ Աղամճանեան, Յակոբ Աղամճանեան, Յովսէփ Մաղազաճեան, Սարգիս Աւագեան։

Ոսկեթել ձիւթեղինաց վաճառականք (սըրմաճը).

Առաքել Բաքազեան, Մովսէս Թիւեան, Սարգիս Համբարձումեան, Սարգիս Պորտիմեան, Ստեփան Ճէլէպեան։

Ծաղկեձկար վարշամակաց եւ շղաշատեռներու վաճառականք (եազմաճը, տիւլպէնտճի).

Արթին Մանուէլեան, Գէորգ Փանոսեան (Կեսարացի), Եղիազար Գասպարեան՝ գործարանատէր, Եղիազար Էլիկիւզէլեան, Թադէոս Ղազարոսեան, Կարապետ Յակոբեան, Հայրապետ Բաքազեան, Մկրտիչ Մաղաքեան, Միհրդատ Ղազարոսեան, Ներսէս Գասպարեան, Շիրինեան եւ ընկ. (Կեսարացի), Սարգիս Ղազարոսեան, Ս. Սիվրիսարեան եւ ընկ.՝ գործարանատէր, Օհան Բաքլավաճեան՝ գործարանատէր, Օհանճեան Գալստեան։

Դերձանավաճառք.

Աբրահամ Պերկամալեան, Գալուստ Բաբազեան, Գառնիկ Սարաֆեան, Մանուկ Չագըրճեան։

*Նպարավաճառք.*

Եղբարք Շէրիաճեան, Եղբարք Մաղաքեան, Մելքոն Գասպարեան, Յակոբ Ունճեան։

*Ոսկերիչք.*

Աղաթոն Կարիկեան, Արամ Թորգոմեան, Աւետիս Մելիքեան, Գրիգոր Լոգմանկէօզեան։ Թադւոր Մովսէսեան, Խաչատուր Կարիկեան, Կարապետ Ագտարեան, Կարապետ Հալաճեան, Կիւլպէսէր Գրիգորեան, Հայկ Արապօղլուեան, Մկրտիչ Խայեան, Մովսէս Ագտարեան, Յակոբ Մինասեան, Յովհաննէս Բարսեղեան, Յովհաննէս Ճէզայիրեան, Սարգիս Գազէզեան, Սարգիս Ունճեան, Վարդան Վարդանեան։

*Վերմակագործք.*

Գաբրիէլ Շահինեան, Եփրեմ Գասպարեան, Հայկ Ջանիկեան, Մկրտիչ Անանեան, Մկրտիչ Սանտալճեան, Մինաս Տայի, Մուրատ Սարգիսեան, Յակոբ Երամեան, Յովհաննէս Պէրիկեան, Պաղտասար Ճերմակեան։

*Ժամագործք.*

Արմենակ Գարագաշեան (վաճառական), Արտաշէս Փալանճեան, Գարագաշեան եւ Զմիւռնակէսեան (վաճառական), Գէորգ Հալէպլեան, Եսայի Դաւիթեան, Թադւոր Տէմիրպաշեան, Յովհաննէս Յակոբեան, Պօղոս Դաւիթեան, Սիմոն Սիմոնեան (վաճառական)։

*Դերձակք.*

Արտաշէս Թարչինեան, Աւետիս Տէր Գէորգեան, Գէորգ Քէշիշեան (եւ հանդերձավաճառ), Կարապետ Փալանճեան, Հէքնա Քիպրիթճեան, Յովհաննէս Անանեան, Պօղոս Աբրահամեան, Ստեփան Պարոնեան, Վարդան Միքայէլեան։

*Սափրիչք.*

**Արամայիս Մաթիկեան, Արտաշէս Անհոգեան, Գրիգոր Պետրոսեան, Մարտիրոս Եփրեմեան, Յովհաննէս Մարտիրոսեան, Պետրոս Նեֆլեան։**

*Երկաթագործք.*

**Արթին Մաճառեան, Խաչատուր Էօտէմիշլի, Մանուէլ Թագւորեան, Սարգիս Յովհաննէսեան, Ստեփան Աւետիսեան։**

*Կօշկակարք.*

**Ամճա Պօղոս Օհանեան, Գրիգոր Փալապըյըք, Գրիգոր Տէր Մկրտիչեան, Կարապետ Բարիզլիէն, Կարապետ Մովսէսեան, Միսաք Էսէրեան; Յարութիւն Կոչկոչեան, Նշան Քէշկէկեան (կաշեվաճառ)։**

*Ատաղձագործք.*

**Աղնիւ Անդրէասեան, Յարութիւն Հիւսինեան, Յարութիւն Մալեան, Յակոբ Վարթէմէզեան, Ռուբէն Գըլըճեան, Սեդրակ Երկանեան, Աբէլ Համբարձումեան (ատաղձավաճառ)։**

*Դեղագործք.*

**Զարեհ Շնորհաւոր, Պետրոս Խաղուպեան, Ճիվան Գալթաքճեան (Կեսարացի), Յակոբ Ճամճեան (Կեսարացի)։**

*Բժիշկք.*

**Առաքել Ճէլէպեան (վիրաբոյժ), Պօղոս Կոստանդեան, Ռուբէն Ունճեան (Պոլսեցի), Տիգրան Սպարթալեան, Տիգրան Փիլիպպոսեան (Կեսարացի), օրիորդ Աննա Տէփանեան (մանկաբարձբժիշկ)։**

*Փաստաբանք,*

Գէորգ Պուպլի, Գրիգոր Չիլինկիրեան, Գասպար Թոքաթլեան, Մարտիրոս Եազըճեան (Արաբկիրցի), Յարութիւն Ահարոնեան, Մարկոս Մամուրեան, Մագսուտ Պօղոսեան, Յարութիւն Պահարեան, Նազարէթ Հիլմի, Պետրոս Թէքաթլեան (Կեսարացի), Պօղոս Վարդեան (Ակնցի), Ստեփան Աքճալեան, Վահան Պարտիզպանեան, Տիգրան Գազտաղլեան, Թագւոր Փիլիպպոսեան, Ռուբէն Պարտիզպանեան, Սարգիս Ճահինեան։

*Հրապարակագիրք, Թղթակիցք լրագրաց,*

Աւետիս Տիվրիկեան, Գրիգոր Չիլինկիրեան, Գրիգոր Յակոբեան, Գէորգ Խորասանճեան, Հրանդ Մամուրեան, Մատթէոս Մամուրեան, Միհրան Վարպետեան, Մեսրոպ Նուպարեան, Նշան Միրզա, Ռուբէն Որբերեան, Սարգիս Պալապանեան, Ստեփան Ոսկանեան, Տիրան Գասպարեան, օրիորդ Թագուհի Խանճեան։

*Ս. Ստեփաննոս Եկեղեցւոյ մնայուն քահանայք.*

Աւագերէց՝ Տ. Յովհ. քհ. Մինասեան (Գըրդաղաճցի), Տ. Դաւիթ քհ. Օհանեան, Տ. Յարութիւն քհ. Եղվարդեան, Տ. Խաչատուր քհ. Տ. Վարդանեան (Ախալքալակցի), Տ. Գառնիկ քհ. Գէորգ, Տ. Մկրտիչ քհ. Գրիգորեան, Տ. Մկրտիչ Ասլանեան, Տ. Գաբրիէլ Խաչատուրեան (Պրուսացի), Տ. Յակոբ քհ. Տ. Յակոբեան (Կեսարացի)։

*Գարաթաշի Ս. Կարապետ եկեղեցւոյ մնայուն քահանան.*

Տ. Աբր. քհ. Մանիկեան (Պանտըրմացի)։

*Գորտեղեոյի Ս. Աստուածածին Եկեղեցւոյ մնայուն քահանան.*

Տէր Յուսիկ քհ. Մանիկեան (Պանտըրմացի)։

*Պունարպաշի Ս. Խաչ Եկեղեցւոյ այցելու քահանան.*

**Տէր Ղեւոնդ քհ. Ծաղիկեան (Եգիպտացի)։**

---

# ԳԼՈՒԽ ՎԵՇՏԱՍԱՆԵՐՈՐԴ

*Ազգ. Գերեզմանատուն (1882)։*

Ս. Ստեփանոս եկեղեցին շրջապատող պարտէզին մէջ գտնուած գերեզմանատան վրայ խօսած ատեն՝ յիշած էինք՝ ազգ. նորագոյն գերեզմանատան տեղը։ Սոյն տեղը կ'անուանուի Գան-Չէշմէ, Զմիւռնիոյ հարաւ-արեւելեան կողմը, Այտընի երկաթուղւոյ գծին առջեւ։ Գերեզմանատունս հաստատուած է 1882ին եւ բացման հանդէսը կատարուած՝ նոյն տարւոյ Մարտ 29ին։ Տեղն է ընդարձակ, շրջապատեալ քարաշէն որմով, մէկ կողմը կը գտնուի Լատինաց գերեզմանատունը, կռնակը բաւական ընդարձակ գետին մը իբր ազգ. կալուածք, որ կրնայ ժամանակին եւ ի հարկաւորութեան գերեզմանատանս մէջ առնուիլ եւ գործածուիլ։

Գերեզմանատանս մէջ կը գտնուի փոքրիկ մատուռ մը Ս. Յարութիւն անուամբ, որ կառուցուած է Գէորգ Մ. Սուլդանեանի ծախիւք։ Մատրանս հիւսիսային որմին վրայ հաստատուած է մարմարիոն քար մը՝ հետեւեալ քանդակագրութեամբ.

Ողորմութեամբ Աստու
ծոյ կառուցեալ զայս մա
տուռն օծեալն յանուն սուրբ
Յարութեան Քրիստոսի նուի
րեցի ի վայելումն սիրելի ազ
գիս Հայոց, Յառաջնորդութեան
Տեառն Մելքիսեդեկի Ս. Արք
եպիսկոպոսի Մուրատեանց
ի Զմիւռնիայ 13 Մայիսի, 1884
Գէորգ Մ. Սուլդանեան.

Ցիշատակարանիս առջեւ շինուած է այն բարեբարին շիրիմը, ուր ամփոփուած են իրեն եւ իւր ընտանեաց մնացորդները․

Դամբարան
Սուլդանեան
ընտանեաց

---

Աստ հանգչի
Գէորգ Սուլդանեան
ծնեալ 1826 Հոկտեմբեր 26
վախճանեալ
1886 Ապրիլ 27 ի հասակի
60 ամաց:

Գերեզմանատունս գեղեցկօրէն բաժնուած է հինգ կարգի․ Ա․ կարգի մէջ կը գտնուի 142 գերեզմանատեղի․ ամէն մէկուն գինն է տասն օսմ․ ոսկի՝ 4 կանգուն երկայնութեամբ եւ 4 կանգուն լայնութեամբ։

Բ․ կարգի մէջ կը գտնուի 113 գերեզմանատեղի, իւրաքանչիւրին գինն վեց օսմ․ ոսկի՝ 3×4 կանգ․ տարածութեամբ։

Գ․ կարգի մէջ կան 289 գերեզմանատեղի, իւրաքանչիւրին գինն է երեք օսմ․ ոսկի, տարածութիւնը նոյնպէս 3×4 կանգուն։

Դ․ կարգի կան 56 գերեզմանատեղի, իւրաքանչիւրին գինն երկու օսմ․ ոսկի, 3×3 կանգուն ընդարձակութեամբ։

Ե․ կարգն է ձրիներու կարգն՝ աղքատ ննջեցեալներու վերապահուած։ Չրի թաղուած ննջեցեալներն մէկ մէկու վրայ կարելի է թաղել, եթէ առաջինն՝ երկու երեք տարի յառաջ թաղուած է։

Աղքատ ննջեցելոց տէարք եթէ ուզեն իրենց ննջեցեալներուն վրայ միայն տապանաքար մը դնել, կը պարտաւորուին հատուցանել մէկ գաղղ. կամ մէկ օսմ. ոսկի. այս պարագային մէջ՝ թաղուած ննջեցելոյն վրայ ուրիշ մը չի թաղուիր, բայց շրջապատը վանդակով պատել չեն կարող տէարք։

Իսկ յիշեալ Ա—Դ կարգի գերեզմանատէարք կարող են իրենց գերեզմանատեղին երկաթեայ վանդակով գոցել կամ շրջապատ մը կանգնել, եւ իրաւունք ունին իրենց ամէն ննջեցեալները, նոյն իսկ ազգականները թաղել տալ։

Սոյն չորս կարգի գերեզմանատէարք պարտին ունենալ իրենց ձեռքը Ազգ. Տնօրէն Խորհրդէ վաւերացեալ պաշտօնական արտօնագիրն, որուն մէջ արձանագրուած է կարգը, թիւը, տարածութիւնն, արժէքը, տիրոջ անունն եւ ամէն պարագաները։

Գերեզմանատանս մէջ կան բաւական շքեղ շիրիմներ, դամբարաններ եւ մահարձաններ՝ մարմարիոն քարէ։ Ծառերն, որոնք այսպիսի տեղւոյ մ՚աւելի շքեղութիւն կու տան, այնչափ բազմաթիւ չեն եւ ոչ հինաւուրց, այլ մատաղատունկ եւ փոքր. սակայն եթէ խնամք տարուի, ժամանակը կը լեցընէ այս պակասն ալ եւ ապագային աւելի վայելուչ, թեպէտ եւ միշտ տխուր, բայց զարդարուն տեղ մը կը դառնայ։

Գերեզմանատանս մէջ գտնուած դամբարաններէն ամենաշքեղն է Յակոբ Թագւոր Չելիկի շիրիմն, որուն նմանը չկայ եւ ոչ Լատինաց գերեզմանատան մէջ. կ՚ըսուի թէ հազար ոսկւոյ գումար մը ծախսուած է սոյն շիրմին համար։ Ամբողջ դամբարանը կափուած է սպիտակ մարմարիոն քարերով. միջավայրին կոթող մը՝ վրան հանգուցելոյն կիսարձանն, կոթողին երկու կողմն մարդաչափ հրեշտակներ, որոնցմէ մին ձեռքը բռնած է քանդակեալ գալարաձեւ թուղթ մը, որուն վրայ փորագրուած են հետեւեալ տողերը.

Սէր եղբայրական
Կանգնէ զայս դամբան
Անշքայ վէմ է
Բայց սոր կ'ամփոփէ
Զգայուն սիրտ
Օրհնած ոսկրոտ։

---

## ՎԵՐՋԻՆ ԱԿՆԱՐԿ ԶՄԻՒՌՆԻԱՅ ՀԱՅՈՑ ՎՐԱՅ

*Մինչեւ ցայս վայր պատմուածները Զմիւռնիոյ Հայոց՝ անհատականներու կամ մասնական խումբերու յառաջադիմութեան ունեցած մէջ մէկ կոթողները կրնանք համարիլ։ Սակայն այս ցոյցերու համեմատ, այնչափ ճգանց փոխարէն, արդեօք ընդհանուր ժողովուրդը պատուաբեր կերպով արդիւնք մը տուա՞ծ է. Ներկայիս ժողովրդեան բարոյական վիճակը գովելի՞ է. արդեօք անցեալը փնտռողներ չկա՞ն։ Հարցում մը, որուն պատասխանը այնչափ գոհացուցիչ եւ ուրախական չէ։*

*Վերադոյն տեսանք Հայոց այլ եւ այլ ժամանակներու մէջ ունեցած թիւը. մինչ Զմիւռնիոյ մէջ գտնուած ազգերն օրէ օր բազմանալու վրայ են, Հայն կը միայ միշտ որոշ թուով մը. եւ եթէ ուրիշ քաղաքներէ նորանոր ընտանիքներ չգան չմիանան, Զմիւռնիոյ Հայերն նուազման ընթացքին մէջ կը գտնուին։ Թուաբանական խորին եւ բարձր գիտութեան պէտք չկայ՝ համոզուելու այս ցաւալի՝ իրողութեան. բաւական է ակնարկ մը նետել տեղի ունեցած ամուսնութեանց վրայ. այժմ տարին 30—35 հարսանիք կ'ըլլայ (զարտուղութիւններ՝ կ'ենթադրենք), մինչդեռ ասկէ երեսուն քառասուն տարի յառաջ՝ եռապատիկն ու քառապատիկը կ'ըլլար։ Եւ ինչո՞ւ այս տարբերու-*

թիւնը, "վասն զի այն ատեն պարզութիւն, սակաւապետութիւն, չափաւորութիւն բարուց եւ վարուց մէջ կային, իսկ այժմ աւելորդն, անօգուտն, զարդարունն անհրաժեշտ պիտոյք դարձած են եւ շռայլութիւնն օրէնք մը" կ'ըսէ տեղացի հրապարակագիր մը։

Երկրորդ. Ազգն ունի այժմ աւելի շքեղակառոյց վարժարաններ եւ կրթական հաստատութիւններ քան յանցելում. սակայն քանինե՛ր անցեալը կը յիշեն, քանինե՛ր երեսուն քառասուն տարի յառաջ տիրող դպրոցական կրթութիւնը կը փնտռեն։ Եւ արդարեւ յանցելում դպրոցական սենեկաց վրայէն աւելի գիտնական, հմտաւոր եւ կրթեալ անձինքներ ելած կը գտնենք, քան վերջին տարիներս։ Գլխաւորաբար երկու պատճառ վարժարանաց յառաջադիմութեան արգելք եղած են, նախ հոգաբարձուաց կամ Ուսումնական խորհրդոյ քաջ հսկողութեան պակասութիւնն, կողմնակցութիւնները, Տեսուչներու ստէպ փոփոխութիւնն, որոշ ուսմանց ծրագրի մը գոյութիւն չունենալը եւ այլն վարժարանին վարկը կորսնցընել տուած են։ Երկրորդ եւ ցաւալին այն է որ տեղական ազգայիններէն շատերը չունին նոյն վարժարանաց վրայ այն ճշմարիտ սէրն ու համակրութիւնն, որոնք իւրաքանչիւր վարժարանի յառաջադիմութեան գրաւականներն են։ Շատերն իրենց աղջիկ կամ մանչ զաւակները կը ղրկեն օտարաց դպրոցներն, որով մանկտին օտար կրթութեան ներքեւ կը մնայ տգէտ իւր ազգային սովորութեանց, եւ դպրոցէն ելլելէն ետքը կ'ըլլայ անտարբեր մէկն իւր ազգին նկատմամբ։

Երրորդ. ընտանեկան սովորութիւնները բոլորովին խառնուած են օտարամոյծ սովորութեանց հետ. քի՜չ շատ բարեկեցիկ ընտանիքներ իրենց մանչերուն ու աղջիկներուն եւրոպական անուններ կը դնեն։ Հարուստ թէ աղքատ շատ մը տներու

մէջ յունարէնն հայերէնէ աւելի գործածական եղած է այսօր։ Յոյն ազգէ ծառայ կամ աղախին կ'առնուի եւ փոխանակ անոնց քիչ շատ քանի մը բառ հայերէն սորվեցընելու, իրենք կը սորվին ծառային լեզուն եւ կ'ըլլան ծառայ օտարի լեզուին։ Տեղացւոց հայերէն լեզուն՝ կրթեալ դասակարգը դուրս հանելով՝ ընդ-հանրապէս թաճկերէն բառերով խառն է. կը դնենք ստորեւ ասանց խօսակցութեան համառօտ օրինակ մը[1]։

Այս վերջին ակնարկն ակնարկած ժամանակ՝ կը ստիպուինք ցաւօք սրտի ըսել, թէ Զմիւռնիոյ Հայոց մէջ մէկ կողմանէ ամուսնութեանց պակասին, միւս կողմանէ խառն ամուսնութեանց սակաւ տեղի ունենալն . . . եւ ի վեր քան զամենայն օտարամոլութիւնն Զմիւռնիոյ հայ տարրը քանի մը տասնեակ տարիներ ետքը բոլորովին պիտի փճացընեն։ Քաջայոյս ենք սակայն որ հեռատես եւ ծանրագլուխ անձինքներ, խօսքով եւ գրով, ապա-

---

1 Համաս. Քա եավրում Կիւլլիցա ինտոր ես։

Կիւլլիցա. Աիրէդ բարի Համաս ղաալըն, հայես նէ հաղկէկ կը խօսամ. մէկալ օրւան անձրեւը չէրչիֆէներուն արալըխըն ներս վազէր օտին քանափէն պիւս պիւթիւն թըրջեր էր. չարշըն ելած էի մախսուս զատկին հէմար ալաճա դնելու, տուն դառնալքէն խապէրսիզ քանափէին վըրէն են եկայ քիչ մը հանգչելու. ինչ հայիս նէմլախը զէհիրի պէս թախ ոսկրներս անցեր է, երկու օրէ վեր հալ չունիմ, երէկ երկու հեղ պայլմիշ եղայ. եավրում այս ինչ ծանր բան է չօճօղները օրթան մնացեր, հայող չունին։

Համաս. Քա սա ինչ լախըրտը, վայ գլխուս աղջիկդ Հռիփսիմէն ո՞ւր է. անոր խելքը հիմա պիւթիւն է, թող չօճօղները ան հայի. դուն հիչ տիւշիւնմիշ մ'ըլլար, քեզի պաշխայ իլաճ չկայ, բահալթ տեղդ նստէ, զէնճէֆիլի քէօքը ղայնաթմըշ ընել տուր աղկէկ մը խմէ. տոոր դուվէթը պինդ պաշխայ բան է. տիւշիւնմիշ մ'ըլլար քէֆօրղլըղդ կ'անցնի. հիմա Իզմիր աղկէկ է, կ'ըսեն, կ'ելլենք տէ մենք ալ մէկ աղկէկ փարլաղ զատիկ մը կ'ընենք։

դայ սերունդին սրտին մէջ կը ցանեն բարի սերմեր, ուղիղ սկզբունքներ, որոնք են մի միայն դեղ եւ դարման ազգին բարոյական եւ նիւթական յառաջադիմութեան։

---

## ԳԼՈՒԽ ԵՕԹՆԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ

### Կաթողիկեայ Հայք:

---

### 1.

*Առաջին գաղթական Կաթողիկեայ Հայք: Իրենց բնիկ երկիրը, Միաբանող Եղբարք. Զմիւռնիա գաղթելնին, մատուռն եւ Ս. Կուսին արձանը, ունեցած վիճակնին. անհովիւ մնալը, տոհմային սովորութեանց ղաղարումը, մատրան նորոգուիլը, տապանաքարեր, Հ. Ալիշանի՝ Ծխականի մէջ Պարսկահայոց վրայ գրած տողերը:*

Ա. Զմիւռնիոյ՝ Յոնիական Ծովուն անուանեալ աստեղ՝ բնակչաց մէկ մասն են Կաթողիկեայ Հայերը։ Ասոնցմէ ոմանք թէպէտ եւ հոգեւորական իրաւասութեան տեսակէտով՝ այս օրուան օրս չեն պատկանիր Հայ-Կաթողիկէ հասարակութեան, որովհետեւ ժամանակին բերման համաձայն՝ քաղաքական զանազան պարագաներու ներքեւ՝ մոռցած են բոլորովին իրենց մայրենի ծէսն ու լեզուն եւ անցած են Լատին Եկեղեցւոյ իրաւասութեան, բայց քանի որ ասոնց ծագումն եւ սկզբնաւորութիւնն հայութիւնն է, թէպէտ եւ անցնին տարիներ, միշտ արեամբ ու ազգակցութեամբ կը վերաբերին Հայ-կաթող. հասարակութեան, ուստի եւ մեր հետազօտութեանց մէկ մասը կը կացուցանեն եւ պատմական մեծ նշանակութիւն ունին մեզի համար։ Զմիւռնիոյ Կաթողիկեայ Հայոց վրայ գոհացուցիչ գաղափար մ'ունենալու համար, երեք

ժամանակի միջոց կամ երեք այլ եւ այլ գաղթականութեան ճիւղեր պէտք ենք զանազանել: Առաջին գաղթականներն եղած են Պարսկահայք. երկրորդը՝ Անկիւրացիք, եւ երրորդը՝ զանազան կողմերէ եկածները, ինչպէս՝ Կարնոյ, Սեբաստիոյ, Եւդոկիոյ, Տիգրանակերտի եւ այլն:

Առաջին գաղթականութեան ժամանակը կ'անցնի գրեթէ մէկ ու կէս դարն. երկրորդը դար մը բոլորելու շրջանին մէջ է. իսկ երրորդը՝ գլխաւորաբար դարուս կէսէն սկսեալ, մանաւանդ վերջին տարիներուս մէջ տեղի ունեցած դիպուածոց հետեւութիւնն եղած է:

Առաջին գաղթական կաթողիկեայ Հայք՝ Այրարատայ գաւառէն, այս հեռաւոր երկիրը, Փոքր Ասիոյ վերջին ծայրն, եկած հաստատուած են: Այս գաղթականութիւնը տեղի ունեցած է Պարսից Նատիր Շահ թագաւորին օրովը (1687—1747): Ասոնց վրայ գոհացուցիչ գաղափար մը ստանալու համար, պէտք ենք դիտել նախ զիրենք իրենց բնիկ երկրին վրայ, թերթելով համառօտիւ պատմութեան էջերը:

Բ. Պատմութիւնը կը դնէ առջեւնիս՝ թէ ԺԴ. դարուն սկիզբները, Յովհաննէս ԻԲ. Քահանայապետը Դոմինիկեան կրօնաւորաց կարգէն՝ զԲարթողիմէոս Պոլոնիացին իբրեւ Մարաղա քաղաքին եպիսկոպոս առաքելութեամբ Ատրպատական խաւրած էր (1318): Այս անձը քիչ ժամանակուան մէջ մեծ անուն հանեց Հայաստանի մէջ, եւ գլխաւորաբար իւր քարոզութեամբը բազմաթիւ աշակերտներ ունեցաւ: Իրեն հետեւողներուն մէջ նշանաւոր եղաւ Յովհաննէս Քռնեցին, որ կաթողիկէ վարդապետութիւնն ընդունելով՝ ուզեց նոյնն իր ազգին մէջ ալ տարածել[1]: Ուստի այս վախճանին համար քանի մը ընկերներով, Դոմինիկեանց կա-

1 Ըստկարեան, եկեղ. Պատմ. Վիեննա 1872, էջ 244:

ռամկարութեան տակ Միաբանող (Unitores) Եղբարք բռնած ընկերութիւնը հաստատեց։

Միաբանող Եղբարց նպատակն էր զանազան գրքեր հայերէնի թարգմանելով կամ հայերէն գրելով՝ հայ ազգը լուսաւորել եւ քարոզութեամբ հաւատոյ ընդհանուր միութիւնը յառաջացընել։ Եւ ստուգիւ քիչ ժամանակուան մէջ այս ընկերութիւնն այնչափ աճեցաւ որ Հայաստանէն ու Վրաստանէն զատ՝ Թաթարստան եւ Խրիմ եկեղեցիներ ու վանքեր շինեց եւ բազմաթիւ հետեւողներ ունեցաւ։ Միաբանող Եղբարց հետեւողներէն մասնաւորապէս նշանաւոր էին Պարսկաստանի Հայոց մէջ՝ Նախիջեւան եւ Ջահուկ գաւառին եւ Նոր Ջուղայի միացեալ Հայերը[1]։

Շահ-Աբբաս Մեծին իշխանութեան տարիները (1577—1628) պատահած քաղաքական պատերազմներուն առթիւ, Այրարատայ գաւառին վրայ հասած վնասներէն եւ կորուստներէն զերծ չմնացին միացեալ Հայերը. եւ մանաւանդ Թահմազղուլի Խանին[2] (1604) ձեռօք կատարուած ապականութեանց եւ աւերմանց ժամանակ շատ տառապանք կրեցին։ Ցակաւին ցայսօր Ջմիւռնիա գաղթող Պարսկահայոց մէջ՝ աւանդութեամբ անցած՝ սարսափմամբ կը յիշուի Թահմազղուլի անունը։

Այրարատայ գաւառին, Պարսկաստանի միացեալ Հայոց ամենապայծառ ժամանակն եղած է եօթնեւտասներորդ դարուն կէսերը։ Գրեթէ մինչեւ 1700ի սկիզբները՝ քիչ շատ խաղաղութիւն եւ հանգստութիւն վայելելէ ետեւ, Աղուաններուն Պարսկաստան ըրած արշաւանքը (1722), Պարսից

---

1 Յետ կիսոյ ԺԴ դարուն՝ Վարդապետութիւն Միաբանող կոչեցելոցն ընկալեալ եղեւ եւ սատ "ի Կարբի (Արարատ գաւառ) եւ յամենայն սահմանս նորա" ըստ Մխիթարայ Ապարանեցւոյ . . . ։

2 Պատմ. Հայոց, Հ. Եփր. Չագըճեան, Վիեննա 1851, էջ 425—428։

Նատիր Շահ Թագաւորին Հայոց հասուցած վնասները եւ չմիացեալ Հայոց՝ միացեալ Հայոց դէմ յարուցած հալածանքները՝ ստիպեցին զիրենք թողուլ իրենց բնիկ երկիրն եւ այլեւայլ օտար տեղեր ցրուիլ։ Ահա այս գաղթականութեան մէկ ճիւղն է նաեւ Զմիւռնիոյ Պարսկահայ անուանեալ կաթոլիկեայ հասարակութեան մէկ մասը։

Գ. Կաթոլիկեայ Հայոց այս կերպով առաջին անգամ Զմիւռնիա անցնիլն ամենայն հաւանականութեամբ կրնանք ըսել՝ թէ 1730—1740ի միջոցները տեղի ունեցած է։ Այս մեր ըսածին դրական ցոյց եւ վկայ կը հանդիսանան քանի մը տապանաքարերու յիշատակարաններն, որոնցմէ ամենահինը կը հասնի մինչեւ 1734, եւ զորս խնամով ընդօրինակած ենք (տես էջ 311)։ Գերեզմանաքարերու արձանագրութեանց կ՚ընկերանայ նաեւ աւանդութիւնը. Պարսկահայոց ծերագոյններուն եթէ իրենց սկզբնաւորութեան եւ գաղթականութեան վրայ հարց ու փորձ ընենք, իսկոյն միաբերան կը պատասխանեն՝ թէ իրենց նախնիքը 1740էն յառաջ Զմիւռնիա եկած հաստատուած են։

Թէ գաղթականութեան առաջին տարիներն օտար երկրի մը վրայ ինչ ընթացք բռնեցին Պարսկահայք, եւ թէ ինչպէս տակաւ առ տակաւ մաշեցաւ իրենց մէջ նախնեաց ոգին եւ սովորութիւնները, հետեւեալ տողերէն յայտնի պիտի տեսնենք, զորս ալեւորներու տուած տեղեկութիւններէն ամփոփած ենք։

Դ. Պարսկահայոց՝ իրենց հոգեւոր հովիւներուն Միաբանող Եղբարց՝ առաջնորդութեան ներքեւ, սար ու ձոր, դաշտ ու գետ կտրելէ անցնելէ եւ Զմիւռնիա հաստատուելէ ետեւ, առաջին եւ գլխաւոր գործերնին եղած է՝ տեղ մը հոգալ՝ կրօնական պարտաւորութիւններն անխափան կատարելու համար. ուստի առանձնականի մը տան՝ մէկ սրահը իբր տեղի եւ տաճար Աստուծոյ որոշե-

լով, հեռաւոր վայրերէ, Հայրենի երկրէն իրենց հետը բերած համակ արծաթեայ՝ Ս. Կուսին արձանը կը կանգնեն սեղանի վրայ, եւ ամէն օր շուրջը ժողվուած՝ կը կատարեն իրենց հոգեւոր պարտաւորութիւնները. կրօնական արարողութիւնները հայերէն լեզուաւ, պատարագ, ժամերգութիւն, աղօթք, ամէնն ալ հայերէն։



Բաւական ատեն այսպէս առանձնական տան մէջ՝ այս գովելի ընթացքը շարունակելէ ետքը՝ կը յաջողին առանձին հրամանագրով մը Գաբուչիններու Ս. Պօղիկարպոս եկեղեցւոյն կից՝ փոքրիկ մատուռ մը կառուցանել։ Պաշտօնական կերպով՝ առաջին անգամ զիրենք կը գտնենք 1748 թուականին՝ մատուռ մը շինելու խնդրագրին առթիւ։ Քանի մը տարի ետքը կը կառուցանեն մատուռը, որուն կամարակապ ճակտին վրայ կը գրեն լատիներէն մէկ տող յիշատակարան մը՝

Muneribus Persarum erecta.

Այս փոքր մատրան մէջ կը փոխադրեն իրենց ամենայարգի եւ պատուական, Հայրենի երկրին յիշատակը՝ Ս. Կուսին արձանը, եւ այնուհետեւ հոն կ'ըլլայ իրենց կրօնական արարողութեանց տեղը։ Ընթացս ժամանակաց, եւ մասնաւորապէս 1775ին

կատարուած նորոգութեանց առթիւ՝ մատուռս ալ կ'առնուի ամբողջովին Ս. Պոլիկարպոս Եկեղեցւոյն մէջ եւ իբրեւ թեւ. մը դուրս ելած՝ կը ձեւանայ սուրբ տեղւոյն. բայց միշտ իւր կամարակապ ճակատին վրայ գրուած կը մնայ Muneribus Persarum erecta յիշատակարանը։ Եւ որովհետեւ տեղւոյն գլխաւոր զարդը կ'ըլլայ Ս. Կուսին արձանն, ուստի եւ Մատուռն ալ կը նուիրուի Աստուածածնի, եւ առանձինն անուամբ կ'անուանուի Մատուռն սուրբ Վարդարանին (La Chapelle du Saint Rosaire)։

Այսպէս կաթողիկեայ Պարսկահայք՝ Միաբանող Եղբարց հոգեւոր առաջնորդութեան ներքեւ, գրեթէ 40—50 տարի անվրդով կեանք կ'անցընեն ի Զմիւռնիա, պահելով միշտ իրենց նախկին կրօնական սովորութիւններն եւ արարողութիւնները։ Իրենց ննջեցեալներն ըստ սովորութեան ժամանակին՝ նախ այժմեան Ս. Անտոնի հիւանդանոցին[1] գտնուած տեղն, որ նոյն ժամանակ գերեզմանատուն էր՝ կը թաղէին, եւ ապա Ս. Պոլիկարպոսի եկեղեցւոյն մէջ կամ գաւիթը, որոնց շիրիմներուն վրայ կը քանդակեն հայերէն գրերով արձանագրութիւններ, թողլով միանգա-

---

[1] Այժմեան Ս. Անտոնի հիւանդանոցին պարտէզին մէջ մնացած է հայերէն քանդակով մի միայն գերեզմանաքար մը, որուն արձանագրութիւնն ալ բոլորովին անընթեռնլի եղած է. Մնացածները գործածուած են հիւանդանոցին շինութեան։ Գաղղիախօս Պարսկահայու մը գերեզմանոցիս նկատմամբ ըսածը կը կարդանք այսպէս. „Toutes les personnes d'un certain âge se souviendront, sans peine, de ce petit champ du repos englobé, depuis une trentaine d'années, dans l'emplacement occupé aujourd'hui par l'hôpital de St. Antoine. Que de fois, dans ma jeunesse, ne suis-je pas allé en famille et comme en dévotion, prier et déposer des fleurs sur les tombeaux de nos parents décédés ...!“ (l'Impartial 1897, 17 Avril.)

մայն անմոռաց յիշատակ ապագայ տարիներու եւ սերնդոց։

Ե. Քաղաքական տեսակէտով այս փոքրիկ հասարակութեան վրայ ակնարկ մը նետած ժամանակ՝ կը տեսնենք որ Պարսկահայք ի սկզբան անդ իրենց գաղթականութեան, Դոմինիկեան կրօնաւորաց միջոցաւ, Գաղղիոյ պաշտպանութեան ներքեւն ըլլալով, ամենայն փութով եւ դիւրութեամբ կը յաջողէին կարգադրել խնդիրներն եւ բնաւ դժուարութեանց չէն բախիր, որով՝ օտար երկրի վրայ թեւ թիկունք գտնելով, քիչ ժամանակուան մէջ կ՚ըլլան գործի տէր մարդիկ եւ մասնաւորապէս՝ նշանաւոր վաճառականներ կը հանդիսանան օտար հողի վրայ։

Մինչ այսպէս Պարսկահայք նահապետական սովորութեամբ, հոգեւորապէս եւ քաղաքականապէս նախանձելի օրեր կ՚անցընեն եւ տարիներ կը բոլորեն, ահա նոյն երջանիկ տարիներուն կը յաջորդէ դժբախտաբար այնպիսի ժամանակ մը, յորում վերյիշեալ գովելի եւ տոհմային ընթացքը դադարման կը դատապարտուի։ Ցակամայս կը հանդիպին այնպիսի պարագաներ եւ դիպուածներ, որոնց հետեւութեամբ Պարսկահայք սկսած են տակաւ մոռնալ իրենց վաղեմի սովորութիւնները եւ օտարաց ձեռքն ինկած են։ Այս պատճառներուն առաջինն եւ գլխաւորն եղած է Միաբանող Եղբարց կարգին վերջանալը. ասոնց յաջորդ հայերէն գիտցող հովիւներ այլ եւս չմնալով, երիտասարդ ոյժերու պակասութեամբ, ծերերու առ Աստուած փոխուելով՝ Կաթողիկեայ Հայք կը մնան առանց առաջնորդի եւ հովուի, եւ կ՚իյնան օտար խնամոց ներքեւ։ Այս ցաւալի դէպքը տեղի ունեցած է 1700ին վերջերը։

Պարսկահայք այսպէս իրենց սիրելի հոգեւոր հայրերէն զրկուած՝ ժամանակ մը իրենց մէջէն ծերագոյններն աշխատած են վառ պահել տոհմային

*վաղեմի սովորութիւնները. ուստի նորագոյն սերունդին գլուխն անցած՝ ամէն կիրակի առաւօտ իրենց սեպհական մատրան մէջ հաւաքուելով, ըստ նախկին սովորութեան՝ հայերէն լեզուաւ Ս. Կուսին ժամերգութիւնը կատարել եւ աղօթել ջանացած են. սակայն առանց հովուի հօտ մը վաղ կամ անագան կը ցրուի. Թէպէտ եւ բաւական ժամանակ ծերերը յաջողած են այս ընթացքը յառաջ տանիլ, բայց հուսկ ուրեմն իրենց մէջէն ալ հայերէն գիտցողներ պակսելով, նոր սերունդը բոլորովին օտար լեզուաց մէջ կրթուած՝ անտեղեակ հայերէնի, բարձի թողի կ'ընէ ամէն տոհմային սովորութիւն, եւ այնուհետեւ Ս. Կուսին մատրան մէջ կը դադրին հայերէն լեզուաւ կատարուած օրհներգութիւններն եւ ալ չեն լսուիր*[1]։

---

1 *Ահաւասիկ Պարսկահայու մը այս նկատմամբ բրած խոստովանութիւնը։* . . . Car beaucoup en adoptant des nationalités étrangères, ont transformé ou dénaturé leur nom et oublié celui de leur patrie d'origine.

— D'où vient tout cela?

— Cela vient, sans doute, de la grande facilité ou disposition des nôtres à s'assimiler au lieu dans lequel ils se trouvent. D'abord, nous avons commencé par négliger l'étude de notre langue et oublier nos usages, que nous avons échangés contre les langues et les habitudes de la localité. Ne comprenant plus l'arménien, ne sachant même plus le lire, nous avons déserté peu à peu l'office qui nous réunissait, chaque dimanche, à 9 h, autour de N. D. du St. Rosaire . . .; et notre Congrégation, notre société s'est dissoute d'elle-même. En réalité, de toutes ces choses, de toutes nos traditions, il ne nous reste plus qu'un point de ralliement commun: les deux statues et la chapelle . . . sur le fronton de laquelle on ne lit plus, comme autrefois: Muneribus Persarum erecta; car ce n'est qu'à une seule de nos bonnes et généreuses familles que nous devons sa magnifique reconstruction. Il y a 50 ans, nous y aurions tous contribué . . .

Զ. Միաբանող Եղբարց պակսելովը՝ Թէպէտ եւ ժամանակ մը ալեւորներու առաջնորդութեան տակ Պարսկահայք կը կատարէին իրենց կրօնական պարտաւորութիւնն, բայց հոգեւորական՝ խորհրդական պաշտամունք կը մատակարարուէին Լատին Գաբուչին կրօնաւորաց ձեռօք։ Իսկ երբ ա՛լ հայերէն աղօթելն դադրեցաւ, այնուհետեւ Մատրան հայութեան յիշատակ մ'ըլլալն անգամ սկսաւ մոռացութեան մէջ իյնալ։ Հայերէն տապանագրերու տեղ յաջորդեցին լատիներէն կամ իտալերէն արձանագրութիւններ։ Մատրան ճակատը գրուած պատմական յիշատակարանը փնտռող չմնաց, որ ժամանակ ժամանակ եղած նորոգութեանց պատճառաւ բոլորովին եղծած ջնջուած էր։ Վերջապէս 1896ին Ս. Պօղիկարպոս եկեղեցւոյ՝ փոքր ինչ ընդարձակուած եւ նորոգուած ժամանակ, Մատուռս ալ նորոգուելով կամարակապ ճակտին վրայ գրուեցաւ Auxilium Christianorum (օգնական քրիստոնէից) բառերը։ Ահա այս բառերը կը կարդացուին այս օրս՝ այն պատմական արձանագրութեան տեղ, զոր Պարսկահայք անցեալ դարու մէջ գրած էին Մատրանս ճակատը՝ ըսելով "Ծախիւք Պարսկահայոց կանգնեալ„։

Կան տակաւին ծերեր, կ'ապրին ալեւորներ, որոնք կարդացած են տարիներու յիշատակը մատնանիշ ընող, սակայն այս օրս ջնջեալ սոյն գրութիւնը. կ'ապրին Պարսկահայոց ցեղէն սպիտակահեր անձինք որոնք Թէպէտ եւ այս օրս չեն գիտեր հայերէն բառ մը, բայց քաջ կը յիշեն եւ հաւատարմութեամբ կը պատմեն՝[1] Թէ տարիներ յառաջ

---

[1] Ajoutons encore à ces faits d'une rigoureuse exactitude: que de vieillards, nos contemporains, se souvenant parfaitement d'avoir entendu réciter, devant la même chapelle, l'office de N.-D. de Rosaire en langue arménienne.

սոյն Մատրան մէջ զրուցած են հայերէն լեզուաւ աղօթքներ եւ օրհնութիւններ, եւ կը խոստովանին թէ են Պարսկահայոց սերունդ։ Բայց դժբախտաբար քանի մը տարիէն եւ ոչ իսկ տեսնող եւ յիշող մը պիտի մնայ վերոյիշեալ պատմական արձանագրութեան, եւ ոչ պատմող մը պիտի ըլլայ հայերէն լեզուաւ կատարուած օրհներգութեանց։ Ժամանակն ալ պիտի մաշէ եւ ջնջէ եկեղեցւոյն յատակը՝ հոս հոն գտնուած հայերէն գրերով տապանաքարերու յիշատակարանները, եւ մի միայն պատմութեան էջերը պիտի ըլլան վկայ այս ամէն փոփոխութեանց։ Ահա այսպէս կը կորսուի ազգի մը յիշատակը։

Գաղթական Պարսկահայոց գլխաւոր պակասութիւնն եղած է իրենց զաւակաց եւ ապագայ սերնդին մայրենի լեզուն չաւանդելն. օտար դպրոցներու եւ կրթութեան յանձնելով իրենց մանկունքը եւ անհոգ գտնուելով տոհմային սովորութիւնները յաջորդէ յաջորդ աւանդելու, տակաւ այս ցաւալի հետեւութեանց մէջ ինկած են։ Ասոնք իբր 150—200 ընտանիքի մօտ կը համարուին, որոնք այժմ հայ տարրին համար բոլորովին կորսուած են եւ իրենց սերունդը Լատին հասարակութեան մէջ առաջնակարգ դիրք մը բռնած է։ Այս օրուան օրս միայն իրենց եւրոպականացեալ մականուան ներքեւ կամ նրբացեալ հնչման մը տակ կրնանք գտնել զիրենք եւ ճանաչնալ ընել իրենց հայ ծագումը։

Է. Ինչպէս վերագոյն յիշեցինք, Պարսկահայք իրենց ննջեցեալները կը թաղէին Ս. Պօղիկարպոս եկեղեցւոյ մէջ կամ պարտէզը, որոնց շիրիմներուն վրայ կը քանդակէին հայերէն գրերով յիշատակարաններ։ Այս տապանաքարերն այս օրս կը գտնենք եկեղեցւոյն յատակը հոս հոն դրուած կամ գաւիթը, ուրիշ գերեզմանաքարերու հետ, որոնցմէ ոմանք անցուդարձէն բոլորովին մաշած

անընթեռնլի եղած են, շատերն ալ շինութեանց գործածուած. Մնացածներն են հետեւեալները.

Ա Մ Ե

(Ա)յս է տապան Խօշկաշի
(Ն)եցի Գալուստի որդի
(Դ)աւիթին որ փոխեցաւ
թվին ՌՃՃԼԴ. Դեկտեմբերի
ԻԱ.

Ա Մ Ե

Այս է տապան համզստեան
Խօշկաշնեցի Նա (համե)
տի որդի Անաստուրին որ
փոխեցաւ առ Ած թվ(ին)
փրկչին ՌՉԽԱ Ցուլիս
D. O. M.

Ա Մ Ե

Այս է տապանս
հանգիստեան
Խօշկաշինեցի
Ումիտի որդի
Ակոբ որ փոխեցաւ
ի Տէր թվին 1757
Նովեմբերի 17ին

Ա Մ Ե

Այս է տապան հանգը
ստեան Խօշկաշինե
ցի Ազարի որդի Մանու
կի կողակից Անկուր
ցի Սարգիսի դուստր
ողորմած հոգի Կատ
արինային որ փոխեց
առ ի մահվանէ ի կեանս
թվին ՌՉԾԸ Ցունրի ԺԵ

Ա Մ Ե

Այս է տապան հան
զիստեան Ապարնեցի
Մուրադի որդի Օվանէ
սի կողակից Խօշկա
շինեցի Մինասի դս
ւստրն Անաստասի
Ն որ փոխեցաւ ի մահվա
նէ ի կեանս 1761
Հոգտեմբերի 2

Ա Մ Ե

Այս է տապանս հանգստե(ա)ն
Աբարնեցի Եօհաննէսի
որդի մհի. Մաթոսին որ հանգեաւ
թվին 1760 Օգոստոսի 15ին
Վերոյ գրեալ Մաթոսի որդի
Անդրեասին. հանգեաւ թվին
1763 Մարտի 15ին:
Նաեւ որդին Պօղոսն հան
գեաւ թվին 1770 Մարտի 23ին.
Այլեւ հանգեաւ Եօհաննէսի
դուստր Աննայ թվին 1772
Մայիսի 28ին:
Նայեւ հանգեաւ Եօհաննէսի
որդի Պօլիկարբոն թվին
1782 Մայիսի 20ին:

Ա Մ Ե

Այս է տապան հանկի
ստիան Խօշխաշինե
ցի Մուրատի որդի մահ
տեսի Սեփէստիանին
որ փոխեցավ մահվանէ
ի կ(ե)անս 1771 Ապրիլի 10

CI † GIT
THOMAS MURAT
NÉ LE 15 NOVEMBRE 1790
DÉCÉDÉ LE 26 AOUT 1862.

P S
D O M
Petro f. . . Stephani Tocatensi
mercatori integerrimo
ac christianis uirtutibus claro
die XX decembris, MDCCXCV
aetatis annorum LII
morte justorum, e vivis erepto
Elisabeth, uxor
dilecto coniugi
hoc amoris et mortis monumentum
posuit.

*Ա. Մ. Ց.*
*Այս է տապան հանգստեան*
*Թօխաթցի Ըստեփանի որդի*
*բարեպաշտ ողորմած խոնարհ եւ*
*հեզահոգի Պետրոսին որ էր ամաց*
*յիսուն եւ երկրորդի որ փոխեցաւ ի մահվանէ կեանս*
*զայս գերեզման է յիշատակ իւր կենակից*
*Եղիսաբեթին ի յիշատակ վասն սիրոյ եւ*
*մահուան առն իւրոյ Դեկտեմբերի 20 1795.*

Ci Gît
Marie Pirgouly
décédée le 8 Mars 1866
à l'âge de 63 ans;
Dieu fasse paix à son ame.

Sur les filles o tendre mère
Daigne encore fixer les yeux;
Tu fus leur soutien sur la terre,
Protêge les du haut des cieux.

Ci Gît
Paul Pirgouly
décédé le 7 Février 1863
à l'âge de cinquante six ans.
Priez pour lui.

Ը. Պարսկահայոց վրայ պատմածներս չգոցած՝ յառաջ կը բերենք հոս Մեծահամբաւ Հ. Ալիշանի Սիսականէն այն տողերն, որ մինչեւ ցայս վայր ըսուածներուն ինչ ինչ մասանց հետ միանալով աւելի պայծառ գաղափար մը կու տան՝ առաջին գաղթական Կաթողիկեայ Հայոց վրայ։

"Եւ ինքնագլուխ տիրապետութիւնք ի կողմանս կողմանս ի կէս ԺԸ դարու, չար քան զառաջին ժամանակս ապականեցին եւ զգաւառն Նախճաւանի, եւ զգիւղորայս եւ զվանորայս Միաբանողացն. եւ ոչ միայն ընչից եւ շինից վնաս եւ աւեր հասուցին, այլ եւ կենաց եւ կրօնից. եւ զի ոչ ի մերձաւորաց ազգայնոց եւ ոչ յօտարաց գոյր յոյս օգնութեան, ի վերահաս տագնապ ժամանակին, խորհեցան գլխաւորքն ապրեցուցանել նախ զոգիս, ապա եւ զկեանս եւ զինչս՝ որչափ ինչ մարթ էր, եւ բարեաւ-մնա ասել հայրենեաց իւրեանց, ուր զամս 420 գրեաթէ անդուլ հալածանօք եւ հարստահարութեամբք՝ պահպանէին զաւանդ դաւանութեանն՝ զոր ընկալան յերանելւոյն Բարդուղիմեայ եւ ի Յովհաննէ Քռնեցւոյ, եւ զանքակ միաբանութիւն ընդ Հռովմէական եկեղեցւոյ։ Արիասիրտ եւ

զգօն գաւառահայր ժամանակիս՝ Հ. Թովմաս Խավերանց որ բազում վաստակօքն սիրելի իւրայոցն եւ պատկառելի էր օտարաց, եւ նոցին իսկ այլադենից, (յորոց եւ զոմանս մկրտեալ, եւ ի նահատակութիւն իսկ ընծայեալ էր զոմն ի գլխաւորացն, բազում հնարագիտութեամբ եւ հաւատով), նախ զմեծատունսն՝ ընչիւք նոցին հեռացոյց ի բաժին Օսմանեանց, եւ ապա զեպիսկոպոսն Սալվինի, յետոյ զամենայն կարող եւ առողջ անձինս: Իրազեկ այսոցիկ եղեալ տիրողաց տեղւոյն՝ կալան եւ ի բանտ արկին զնա եւ դատապարտեցին ի մահ. այլ յաջողեաց նմա ոչ միայն զերծանել, այլ եւ զերծուցանել՝ բաց ի սակաւուց ոմանց՝ զամենայն մնացեալսն տկարս, զծերս եւ զմանկունս եւ զկանայս, եւ եռամսեայ դժուարակիր եւ տառապանագին ուղեւորութեամբ հատանել անցանել ընդ բովանդակ Մեծ եւ Փոքր Հայս, եւ հասուցանել ի ծագ Փոքուն Ասիոյ, ի Զմիւռնիա քաղաք, ոգիս աւելի քան զհազար. ընդ որս եկին եւ սակաւք ոմանք ի Հարց մնացեալ վանորէիցն. այլք ոմանք ցրուեցան յարեւմուտս, եւ ոմանք մնացին ի Հայս: Ի Զմիւռնիա եկաց եւ յաջորդն Թովմայ գաւառահայր, Իտալացին Եւսեբիոս Ֆրանցոզինի, որում յաջորդեցին եւ երկուք ոմանք նշանակեալք ի ցուցակին. իսկ հուսկ յետին Բենետիկտոս Ումեա կամ Ումուտեան հայազգի ոչ գաւառահայր կոչմամբ յիշի, այլ Սնդիկոս (Sindacus) գաւառին:

"Այլ յորում ամի եղեւ գաղթ սոցա, կամ զիա՞րդ եւ որո՞վ կարգաւ տեւեաց տակաւին ցամս 30 կամ աւելի եւ պակաս կրօն Միաբանողացն ի Զմիւռնիա, եւ ե՞րբ եւ ո՞րպէս ի սպառ դադարեաց վանական միաբանութիւնն, զայսոսիկ ոչ կարացի ստուգել: Ի դիւանս Վենետկոյ մինչեւ ցամն 1782 գտանին մուրհակք պահանջից եւ տրից առ այլեւայլ Հարս կարգին, որք երբեմն զտոկոսիս եւ երբեմն զդրամագլուխս իսկ խնդրեն եւ անցուցանեն

ի Զմիւռնիա. ակն իսկ ունելով վերադառնալ եւ վերականգնել զլքեալ դաստակերտսն ի հայրենիս իւրեանց։

«Զառաջինն ի սկիզբն 1756 ամի (27 յանուա.) ժողովեալք ի միասին ի Զմիւռնիա ընդ Ֆրանցըզինի գաւառահօր՝ Հարքն Յակինթ Աղազար աթոռակալ, Ազարիա Ակռան ի Քռնոյ վանից, Հ. Թովմաս Խսավերոսեանց ի Խօշկաշինէ, հաւանութեամբ բացակայիցն Հ. Աղեքսի Կուլինար եւ Հ. Օգոստինոսի Բանի, ընտրեցին վերստին իւրեանց գործակալ զվանահայր Ս. Յովհան-Պօղոս Վանաց Դոմինիկեանց Վենետկոյ։ Յետ երկուց ամաց 1758 Հ. Պետրոս-Յովհան Ղօրան զ3000 դուկատսն յանուն իւր եդեալս ի շահ՝ փոխադրելով յայլ շահաստեղան՝ սահմանէր յետ մահուան իւրոյ անցուցանել ի պէտս Զահկոյ վանաց. նոյնպէս փոխադրէին եւ զ3000 դուկատս Շահապօնից վանաց, եւ յետ ամաց (1769) զ'1500 դուկատ դրամագլուխ Ապրակունեաց վանաց զեղեալն ի Հ. Դոմինիկոսէ։ Վերջին գրուած զիրացս է թուղթ Հարցն յ18 յունիսի 1782 ամին, յորում չիք անուն գաւառահօր, այլ Հ. Բենետիկտոս Ումետ կոչի սնդիկոս, Հ. Պետրոս Մարտիրէ՝ աթոռակալ, եւ Հ. Դոմինիկոս d'Artiren ոչ վանս այլ վանատուն կոչեն զբնակարան իւրեանց (Ospizio), եւ խնդրեն զի փոխանակ այլազգ դրամոց՝ Վենետկեան ծեզին ոսկիս առաքեսցէ գործակալն։

«Յառաջին ամս պանդխտութեան իւրեանց յափունս Յոնիականին՝ մինչ չեւ եւս էր հաւաքեալ անդր Հարցն ցրուելոց այսր անդր, այլ միայն ծերոց ոմանց տկարաց մնացեալ առ ժողովրդեանն, գրեցին առ Ս. Ժողովն (15 ապր. 1764), խնդրելով դարձուցանել առ նոսա զքաջ առաջնորդն իւրեանց Հ. Թովմաս Խսավերոսեանց, որ գնացեալ էր յԱնկոնա (1762), պատմելով սրտառուչ բանիւք եւ կարեւոր գիտե-

լեզք զաղէտս իւրեանց եւ զողորմ վիճակ... «Ի ժամանակէն յերանելի Բարթողոմէոսի մինչեւ ցայժմ շնորհօքն Քրիստոսի պահեցաք զուրբ հաւատն ուղղափառ ի յերկրին Պարսից ի մէջ անհաւատից. բայց վասն մեղաց մերոց բազմացան նեղիչք մեր, որ ոչ կարացաք տանել. վասն այսորիկ թողաք զհայրենի յերկիրն մեր եւ բնակութիւնն մեր, եկաք աստ ի քաղաքն Իզմիռ, եւ մասն մի ի քաղաքն Թիրադիր (Թիւատիր), որ եմք թւով 700 անձինք...: Այժմ որք մնացաք մեք եւ առանց հոգեւոր մխիթարութեան, որպէս որդիքն Իսրայէլի ասէին... Առ գետս Բաբելացւոց սովեալ նստէաք. նոյնպէս մեք եղկելիքս հոգեւոր բանիւ սովեալ կամք... մեք ոչ լամք վասն պայծառութեան աշխարհին մերում, եւ ոչ վասն յայգեստանաց եւ բուրաստանաց, ընչից եւ ապրանաց մերոց, զորս անդ թողաք. ոչ լամք վասն խանգարեալ եկեղեցեաց մերոց, նա եւ վասն պակասելոյն հօվուաց մերոց: Զի արդ ոչ է ամենեցուն յայտնի, որ ի ժամանակի յերանելի Բարթողոմէոսի որքան յերանելի պտղապայծառութեամբ առատանային ի յերկրի մերում, բազմացան սեղանք Աստուծոյ ըստ տեսլեան Սրբոյն Գրիգորի, հօտքն լուսակիզն, արօտին դալարի, հովիւքն արթունք, լօղք քաղցրալուրք... (Ապա վասն մեղաց իւրեանց ասեն) յաղթեցաւ ողորմութիւնն յարդարութենէն, եւ եբարց ի մեղուցելոցս հոգւով իրաւունքն եւ մարմնոյ խաղաղութիւնն... Թէպէտ մեղաք, այլ ոչ եմք յուսահատեալք յողորմութենէն Աստուծոյ... Աղաչեմք զի առաքիցէք մեզ խոստովանահայրս կամ քարոզիչս եւ ուսուցիչս օրինին Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, զի աստ ի մեր յազգէս գոյ երեք կարգաւորք, երկուսն ծեր եւ տկար, որ ոչ ունին կարողութիւն հովուելոյ զմեզ. միւսն էլ հրամանաւ Պատրի Պրովէնցիալին մէկ Իտալիան կարգաւորի հետ գնալոց են ի դաւառն

Նախիջեւանոյ, առ ի այց առնել եւ հովուել անդ մնացեալ ժողովուրդս, որք են թուով 60 կամ 70 անձինք. բայց մեք մնամք աստ որբ եւ անմխիթար. Թէպէտ գոյ աստ երկու փառօք (Paroco, Թաղերէց), բայց սոցա մէջ ոչ գոյ մեր հայ լեզուս գիտցող, զի ընտանիքն մեր կէսն այլ ուրիշ լեզու ոչ գիտեն, բայց միայն լեզուս Հայոց. Ով պիտի սոքա խոստովանիլ: Վասն որոյ աղաչեմք... պարգեւեք մեզ մեր գաւառի նորընծայքն որ յաժմուս կան Իտալիայ, մանաւանդ մեր բազմայաշխատ եւ քարոզիչ Պատրի Թօմաս Իսավերտենց, որ այժմուս կայ ի քաղաքն Անքօնայ, որ երկու տարի եղեւ հրամանով Հայր Ջէնէռալին գնաց, զոր ոչ գիտեմք զպատճառն. միայն զայս գիտեմք որ մեր ուղղափառ ժողովրդեանն մխիթարիչն եւ քարոզիչն նայ էր... Կարգաւորն մեր մեք անպիծ եւ անարատ գետեմք, եւ կու վկայեմք որ այսքան ամ Հայաստան կամ տեղս մեզ հովիվեաց, ամենայն կողմանէ ոչ տեսաք արատ ինչ ի դմայ... Կրկին անգամ խնդրեմք որ մեզ անմխիթար չի թողնէք... մնամք մեք հօտ առանց հովիվի, որպէս երկիր անջրդի, որպէս կերակուր անաղի... մնամք միշտ ի վերայ այսր վիմի հաստատ եւ անյաղթ մինչեւ ի կատարած աշխարհի. ամէն. — Գրեցավ քաղաքին Իզմիռ, 15 յավուրն ապրիլի 1764.

Օվանէս դի Դոմինիկոս
Օվանէս դի Մուրատ
Թովմաս դի Մանուկբեկէնց
(Ալ)Բերթոս դի Մինաս
Յօվանէս դի մահտեսի Պետրոս
Սիմոն դի Գալուստ
Մկրտիչ դի Զաքարիայ
Ստեփան դի Մաթի
Բէնէթ դի Սավրիար

Ես Հանէս դի Միրզայ
Եղիա դի Հայրապետ
Դօմինիկոս դի Մաթոս
Պօղոս դի Դոմինիկոս
Անանիա դի Ազարիա
Օվանէս դի Ցաղմուր
Փիոս դի Հեաղուպ
Կառլոյ դի Հերեջան
Պօմինիկոս դի Պետրոս
Մանուկ դի Ազարիա:»

“Յետ հնգից ամսոց (17 սեպտ.) յաւելուն, զի զաղերսագիրս այս տարան առ վիզարն (այսինքն առ փոխանորդ գաւառահօր իւրեանց) իւրեանց եւ ոչ կամեցաւ ստորագրել, ասելով. “Այս ձեր խնդիրքն ես կու հոգամ· այս եղեւ պատճառն որ թուղթս մնաց տեղս մինչեւ ցայժմ։ Վերոյիշեալ երկու տկար կարգավորքն վախճանեցան, եւ միւս յիշեալն գնաց ի յերկիրն Պարսից· մեք մնացինք լալով աչօք եւ անմխիթար· մեզ այլ ուրիշ հոգացող ոչ գոյ· միայն դիմեմք առ հայրութիւն ձեր, որ մեզ անմխիթար չի թողնէք, մեր հոգսն քաշէք։ Վերջ բանիս։„

“Հաւանօրէն մի յերկուց ծերոց Հարցն վախճանելոց՝ է Հ. Ազարիա Ակուան, որոյ ձեռնարկ գոյ ի մուրհակի խնդրոյ տոկոսեաց իւրեանց՝ յամի 1763, այլ յերկրորդումն (1764) ոչ եւս գտանի ընդ այլոցն· միւս թերեւս իցէ Հ. Պետրոս Ցովհան Ղօրան։ Իսկ բազմաշխատն այն եւ արդիւնաւոր Հ. Թովմաս Խավէրտենց, առաջնորդ գաղթականին եւ վերջապահ համօրէն Միաբանողաց կարգի, եթէ դարձա՞ւ միւսանգամ յայցելութիւն հօտին հանելոյ յանդորր, ըստ խնդրոյ նոցա, ոչ գիտեմ· այլ այս յայտ է ինձ, զի էր նա յԱնկոնա եւ ի սկիզբն 1767 ամի (25) յունու. ուստի գրէր առ յաջորդն Մխիթարայ Աբբահօր (Ստեփանոս Մելքոնեան) տալ կրկին տպագրել 500 օրինակ Ժամագրոց Ս. Աստուածածնի “վասն մերոյ Նախիջեւանու եւ Ճահուկոյ գաւառի ուղղափառ Ֆրանկ ասացեալ ժողովրդոց„· զոր եւ ի յետագայ ամի տպագրեալ, գրէր ի յիշատակարանին. “Ես անպիտան եւ անարժան քահանայ եւ յետնեալ ծառայ փառաւորեալ Կուսին, Պատրէ Թովմաս Խավէրտենց Խոշկաշինեցի, ի կարգէ Քարոզողաց Սրբոյ Հօրն Տօմինիկոսի եւ յազգէ Հայոց ի յերկրէն Հայաստանու, ի գաւառէն Նախիջեւանու եւ Ճահուկու, նա եւ թոռն նոյն վերոյիշեցեալ խօջայ

Ագարիայի, որդի Բունիաթին, գոլով ի քաղաքն յԱնքօնա, մինչ էր հասակաւ 64 ամաց լսէր եւ տեսանէր գշերմեռանդն իղձս բազմաց, նաեւ անպիտանս տենչայի եւ բաղձայի մեծաւ փափաքանօք վերստին լուսածումն սուրբ մատենիս։ Արդ յաջողութեամբ Տեառն... ի յամի կենարարին 1768... ի Վենետիկ նորատպեցաւ սուրբ մատեանս, նոյն գաղափարաւ յորմէ տպեցաւ ի յամի "Տեառն 1706", ծախիւք հօր իւր Բունիաթի[1]։"

## Չ.

*Երկրորդ գաղթական Կաթողիկեայ Հայք: Նախընթաց տարիներու մէջ ունեցած կրօնական վիճակնին, ժամանակ ժամանակ ունեցած հոգեւոր հովիւները, առ Յովհաննէս վրդ. Յարութիւնեան ուղղեալ նամակի մը պատճէնը, Լիքանանու վանականները, Ստեփան վրդ. Վեցմատեան, 1828—30 ունեցած դիրքերնին, առաջին հոգաբարձութիւն, դպրոց եւ եկեղեցի շինենալնուն հետեւանքները:*

Ա. Պարսկահայոց դէպ ի Զմիւռնիա գաղթելէն քանի մը տասնեակ տարիներ յետոյ, երկրորդ գաղութ մ'եւս եղած կը գտնենք։ Այս երկրորդ գաղթը տեղի ունեցած է 1790ի վերջերը, Գաղատիայի կողմերէն։ Բաւական թուով Կաթողիկեայ Հայ Գաղատացի վաճառականներ, իրենց բախտն այլուր փորձելու համար՝ թողած են իրենց ծննդեան վայրը եւ տնով տեղով դիմած են Զմիւռնիա։ Հոս՝ հայուն ընդհանուր նկարագրին համաձայն՝ յաջողած են. գործերնին կարգի դնել եւ բնակութիւննին հաստատել, այլ եւս բնիկ երկիրնին չդառնալու համար։

Ընթացս ժամանակաց նոյն կողմերէն՝ ուրիշ նորանոր ընտանիքներ՝ իրենց հայրենակիցնե-

---

[1] Հ. Ղեւոնդ Վ. Ալիշան, Սիսական, ժԲ. Երնջակ. Ցետին յիշատակք Միաբանողաց, երես 406—408։

րէն օրինակ առնելով եւ քաջալերուելով՝ կը թողուն իրենց սեպհական տունն ու տեղն եւ կու գան կը միանան իրենց հայրենակցաց հետ, որոնցմով այս երկրորդ գաղթական Կթղ. Հայք կը բազմանան եւ պատկառելի թիւ մը կը կազմեն։ Այսպէս ժամանակ ժամանակ Զմիւռնիա եկող եւ հաստատուող Գաղատացիներուն թիւը կ'անցնի հարիւր ընտանիքը, որոնցմէ ոմանք ալ Այտըն քաղաքն անցած եւ հոն իրենց բախտը յաջողցուցած են։

Այս երկրորդ գաղթական Կթղ. Հայք՝ ի սկզբան անդ գրեթէ Պարսկահայոց հետ չունէին այնչափ սերտ յարաբերութիւն։ Քաղաքական տեսակէտով անոնց եւ ասոնց մէջ մեծ խտրութիւն կար, առաջինները կը վայելէին գաղղիական պաշտպանութիւն, որմէ զուրկ էին վերջինները։ Ի պաշտօնէ կարգեալ մասնաւոր առաջնորդ կամ հովիւ չունէին, այլ ժամանակին սովորութեան համեմատ իրենց կրօնի խորհրդական պարտքերը կը կատարէին չմիացեալ Հայոց քով. մկրտութիւն, պսակ, թաղում կը կատարէին հայ քահանայք՝ տէրտէրները։ Տակաւին կ'ապրին այս օրս Գաղատացիներ, որոնք կը վկայեն եւ կ'ըսեն թէ զիրենք չմիացեալ հայ քահանայք մկրտած են եւ կը ցուցընեն Ս. Ստեփաննոսի պարտէզին մէջ իրենց նախնեաց շիրիմները։ Իսկ կրօնական ուրիշ որ եւ իցէ ջերմեռանդական գործ կը կատարէին Լատինաց այս կամ այն եկեղեցւոյն մէջ, որով առ տակաւ տակաւ Պարսկահայոց հետ շփուելով՝ անոնց հետ ամուսնութեամբ խնամութիւն հաստատած են, եւ այսպէս յաջորդ տարիներուն մէջ իրարու հետ աւելի միացած կը գտնենք։

Բ. Թէպէտ Գաղատացի Կթղ. Հայք չունէին մասնաւոր առաջնորդ կամ հովիւ, բայց միշտ անպակաս գտնուած են իրենց մէջ վարդապետներ, կրօնաւորներ, որոնք մխիթարած եւ խրախուսած են զիրենք։ Ասոնց մէջ նախ կը յիշուի Յովհաննէս.

վրդ. Յարութիւնեան, որուն ուղղուած մէկ նամակը պահուած է Զմիւռնիոյ Վիեննական Մխիթարեանց վանատան դիւանատան մէջ, կը դնենք հոս նամակին ամբողջ բովանդակութիւնը ․բանասիրաց ոմանց թերեւս հետաքրքրական ըլլայ։

“Գեր Հարգելի եւ Երջանիկ Սրբազան Հոգեւոր Հայր

Յովհաննէս վարդապետ յրթենեն

Ներկայ Թարեղումս եւ տեղէս վերի կալման առ ստմպօլ վասն հարկայորութեանս որպէս ունիս տեղեկութիւն այս գիրս հրամանոց վասն Լիբանանու հինկերրդ սրբազան գրիգոր կաթողիկոսին եւ կրօնայորաց գործին տվի այսինքն թիւն փրկչին 1802 սեպտեմբեր 2։ին ի լիառնէ անտի վերոյ յիշեալ սրբազանն ուր եւ կրօնայորաց առնելեաց կողմանէ որ ունէին ի հանգուցեալ ստեփանոս տէր ռափայէլ բաբիկէն հրամնոց եւ նվաստիս վերոյ թիւ եւ թարեղ մին փարտ վէքըլայ գրօվ վէքիլէին առրէլ որ տեղս վերոյ հանգուցելի դփտարներն վարիանոցէն պահանջեմք եւ քննեմք զի զոր ինչ ուրեանց առնելիքն ելանի տիրեմք ոպ ուրէնց կամքնայ կատարեմք մենք եւս ընդունեցաք եւ պահանջեցինք վարիաներէն որք են եղբայրն հանգուցեալին օհաննէս աղայ բաբիկեն եւ կինն նորայ շմոնի խաթուն նոքա եւս տվին քննեցաք (ըստ համեմատութեանն մեր երկուքին նոցա տված ղապզէն որ է թիվ ղապզէն 1805 Մայիս 23ին) եւ հաստատեցաք ի վերայ հանգուցեալին (բացի հալէպ հէվալէ եղած տասն հազար ղրուշին որ վճարուն մեզանէ անքիդելէ) տեղս միան եղավ հիսուն հազար ինն հարուր երեսուն երեք ղշ. հինկ փարայ սրբզան հինկերրդ գրիգոր կաթուղիկոսինն եւս հայոց կրօնայորացն եղեւ մին հազար ինսուն վեց ղշ. տասն երկու փարայ եւս հանգուցեալ յայր յօվսէփինն եղեւ մին հարուր քսան հինկ ղշ. տասն

եւ մէկ փարայ բօվանդակի գումարն եղեւ հիսուն երկու հազար մին հարուր հիսուն չորս ղշ. քսան եւ ութն փարայ այս 52154 28/40 ղշն ինձ Ոհաննէս ածտուրիս հասավ վերոյ վարմնոցէն օրդնիայօվա էսպէս երեսուն երկու հազար մին հարուր հիսուն չորս ղշ քսան եւ ութն փրայ տեղս դդայ միացեալ քսան հազար ղշ.ին մին ֆարդ փօլիցայ առայ որ ըստամպօլ ուրէնց օրդնի պըն անդրեաս մինասան վճարի իմ օրդնի պըն գասպար անդոնէ որ դեռ եւս վճարման լուրն չունեմք ուստի ավ եւ որ աղօթիւն ձեր ողամբ ես ստամպօլ գնալէս նոյն քսան հազար ղշն ձեռ կբերեմ եւ տեղն կվաճարեմ սրբոյ ժօղօվուն փոխանորթ յարգելի գերայ պայծառ Լատին եպիս-կոպոսին որ կոչի ոհաննէս մկրտիճ ֆօնդօնեան որպէս սրբազան գրիգոր կաթուղիկսի օրդնինէ որ գրածէր 'ի թվին 1804 նոյեմբեր 2ին գրօմն առ եր-կուքիս եւ կառնեմ ի նմանէ ղապզ. միացեալ ընդ-իս 32154 28/40 ղշ.ին որպէս խօսեցայ ընթ հետ սրբազանիս որ գրես վերոյ յիշեալ սրբազան կա-թուղիկոսին որ եթէ ուրն հաջոյ իցէ նոյն դրամն միայ ընդիս ֆի տարէն հարուրին տաս եկայմոօվ այսինքն շահօք ապայ եթէ չնդունի ուր ուրեք որ կամի այսինքն ի հալէպ շամ կամ ըստամպօլ եւս կամ բաղդատ միջնորդութեամբն եւ գրօվ սրբազ-նիս չուն շախկապեալ ես ընդիս պարտիմ վճարել առանց պատճառի այս գիրս վասն վերոյ յիշեալ դրամն ընդիս լինելուն տվի սրբազան Ոհաննէս վարդապետիտ վասն միայմտութեան եւս սրբազա-նէն ինչ լուր գոյ ստմպօլ ինձ ծանուցնես

եղեւ բաղդատ թիվն 1805 յուլիս մէկին

վկմ դվութ ծառեն

խ. ծ յոհաննէս ածտուրվ"

Տ. Կ.

Գ. Դարուս առաջին քառորդէն սկսեալ, երկայն ժամանակ Լիբանանու (Զմմառի) վանականներէն կը գտնենք Զմիւռնիա։ Այս քաղաքն ի սկզբան անդ իբր Լիբանանու մէկ Թեմն համարուած էր եւ նոյն տեղերու կաթուղիկոսին իրաւասութեան ներքեւն ըլլալով, Կթղ. Հայոց հօտը կը հոգային վերոյիշեալ վանականները։ Այսպէս Ստեփան Վ. Վեցմատեան՝ միաբան Լիբանանու վանաց՝ 1821—54 կ'անցընէ իւր կեանքը Զմիւռնիա։ Իրմէ յառաջ կը յիշուին Հ. Յովսէփ Վարդ. (Թրիեստի Մխիթարեան վանքէն) որ քարոզութեամբ Զմիւռնիա խրկուած էր եւ երկրորդ Սերգիս Վարդ. (ժողովուրդը զինքը կը յիշէ Տօն Սէրչիօ անուամբ), որոնց անուններէն զատ նշանաւոր գործ մը չի յիշուիր։

Զմիւռնիոյ վանատանս դիւանատան մէջ կը գտնուին քանի մը նամակներ՝ ուղղեալ առ Ստեփան Վրդ. Վեցմատեան, որոնք կը հաստատեն վերոգրեալ տողերը։ Այս նամակաց առաջինն է հետեւեալը.

"Յարգելի Տէր.

"Յետ սիրոյ ողջունիս եւ երկնածիր Առաքելական օրհնութեանս գիտութիւն լիցի Հարազատութեան ձերում. թէ ցայս օր դեռ ոչ ընկալաք զլուր անդորրութեամբ հասանելոյ առ ձեզ քահանայից մերոց, եւ ակն ունիմք ի տէր, թէ անդանդաղ գրեալ էք եւ ծանուցեալ մեզ զամենայն կարեւոր գիտելիս, եւ ի մօտոյ ընկալցուք յանդորրութիւն մտաց մերոց։ Եւ արդ՝ յայտ առնեմք՝ թէ Սուրբ Ժողովն առ փութոյ խնամոց իւրոց ի վերայ աթոռոյս եւ դպրատան մերոյ շնորհ արարեալ պարգեւեաց դպրատան մերում զամենայն զգիրս Հանգուցեալ Յովհաննու Վ.ի Յարութիւնեան, եւ վասն այսր գրեալ է նաեւ Գեր. Լատին եպիսկոպոսի տեղւոյդ այդորիկ. ահաւադիկ զօրի-

նակ Սրբոյ ժողովոյն՝ որ առ մեզ եղաք ի մէջ գրոյս, եւ գրեցաք գիր մի եւս նմին Լատին եպիսկոպոսի՝ որոյ զօրութեամբ ընկալջիք ի նմանէ զամենայն զվերոյգրեալ լատիններէն եւ դալիաններէն եւ զայլ գիրս՝ որք պատկանին նմին հանգուցեալ վարդապետի եւ ի յաջողակ առթի առաքեսջիք առ մեզ ընդ ճանապարհ դամասկոսի։

Յամի Տեառն 1823 ի Սեպտեմբեր 28

Ի Լիբանան, ի վանս Փոխման Սրբոյ Կուսի

Գ. Վ. Պ. Կ.

Տ. Կ.

Սոյն նամակին թուականէն երկու տարի յետոյ գրուած ուրիշ նամակ մ'ալ կը գտնենք, յորում վերոյիշեալ գրքերուն հասած ըլլալը կը ծանուցանէ, "... բեռն գրոց հանգուցեալ վարդապետին եհաս ի վանս եւ ... 1825 Յուլիս 15. ի Լիբանան ի վանս Փոխման Սրբոյ Կուսին. Գ. Վ. Պ. Կ.„։

Կայ թուղթ մ'ալ անթուական, որուն տակ կը գտնուին հետեւեալ անունները. Ն. Ծ. Տէր Ստեփան Վեցմատնեան Լիբանանցի, Ֆրան վրդպ. Ն. Ծ. Տէր Մեսրովպ, Ն. Ծ. Ստեփան վրդպ. Համուրճեան։

Դ. Այսպէս թէպէտ եւ Գաղատացի Կթղ. Հայերն ունեցած են միշտ քահանաներ, բայց իրենց սեպհական եկեղեցի մը չունենալով, ինչպէս վերագոյն յիշեցինք, կրօնի խորհրդական պարտքերը կը կատարէին չմիացեալ հայոց քով. այս յարաբերութիւնն եւ ընթացքը տեւած է մինչեւ 1828 թուականը։ Ընդհանուր կաթողիկէ հասարակութեան դէմ՝ իրենց ազգակիցներէն յարուցուած հալածանաց վշտերէն զերծ չմնացնա- եւ Զմիւռնիոյ Հայ-կաթողիկեայ նորակազմ փոքրիկ հասարակութիւնն, որուն հետեւութեամբ

վերջիններս սկսան խրտչիլ եւ հեռանալ առաջիններէն եւ ձեռնտուութիւն գտնելով օտարներէն եւ արդէն շփոտած եւ խառնուած ըլլալով Պարսկահայոց հետ, մերձեցան եւ յարեցան Լատինաց։ Խեղճ Գաղատացիներն երկու սրոյ մէջ ինկան այնուհետեւ. հայ քահանաները մէկ կողմանէ, Լատին կղերը միւս կողմանէ կ'ուզէին կատարել անոնց կրօնի եւ հոգեւորական պարտքերը։ Կան անձինքներ որոնք կը յիշեն այս տխուր դէպքերը. իբրեւ միջանկեալ տողեր յառաջ կը բերենք անոնց պատմածներէն դէպք մը։ Նայիպ Գէորգ Գաղատացի կը պատմէ, թէ երբ իւր հայրը կը հասնի կենաց վերջի օրերուն եւ հիւանդագին կ'իյնայ անկողին, Կապուչին կրօնաւորք կը փութան եւ հիւանդին վերջին հոգեւորական մխիթարութիւնները կը մատակարարեն։ Հիւանդին վերջին ժամը կը զարնէ եւ կը վախճանի. սոյն կրօնաւորք կու գան յուղարկաւորութիւնը կատարելու. կը լսեն հայ քահանաներն եւ իսկոյն իրենց ժամկոչով կը փութան հանգուցելոյն տունը։ Երկու կղեր իրարու հետ վէճի կը սկսին, հուսկ ուրեմն Լատին կղերը տեղի կու տայ եւ կը մեկնի. յուղարկաւորութիւնը կը կատարեն հայ քահանաները։

Ե. Այսպիսի անորոշ եւ դժուարին տարիներ սահելէն ետքը, երբ 1830ին ընդհանուր Կթղ. Հայոց առանձին նուիրապետութիւն տրուեցաւ, Զմիւռնիոյ Կթղ. Հայոց վիճակն եւս տակաւ տակաւ կերպարանաւորուելու շրջանին մէջ մտաւ[1]։

[1] ...Les arméniens catholiques, très nombreux dans notre ville (Smyrne), se trouvaient dans toute l'étendue de l'empire ottoman, sous la Juridiction des arméniens-grégoriens, tant spirituellement que civilement. Ceux-ci seuls avaient le droit de bâptiser leurs eufants, de bénir leurs mariages et d'enterrer leurs morts. Le patriarche Grégorien les représentait aussi devant la Sublime Porte, jusqu'en 1830, époque à laquelle ils furent

Այս ժամանակէն սկսեալ կը գտնենք զիրենք ուրոյն Կթղ. հայ Հոգաբարձուի մը խնամոց ներքեւ յանձնուած պաշտօնապէս եւ այս առաջին Հոգաբարձուն (Vice-Paroco) եղած է վերոյիշեալ Ստեփան Վ. Վեցմատեան, որ բաւական երկայն տարիներ հոգւոց հոգը վրան առած՝ մկրտած, պսակած, թաղած եւ քարոզութեամբ գործունեայ կեանք մ'անցուցած է։ Բայց Կթղ. Հայք առանձին եկեղեցի մը չունենալով՝ Վեցմատեան վարդապետն այս կրօնական արարողութիւնները կը կատարէր Լատինաց եկեղեցիներուն մէջ, եւ վերին իրաւասութիւնը կախեալ էր քաղքին Լատին Արքեպիսկոպոսէն. անկէ կ'ընդունէր պսակի ազատութեան թղթերն եւ ուրիշ տրամադրութիւնները։ Լատին Արքեպիսկոպոսէն իրեն տրուած հրամանագիրներէն կը դնենք հոս օրինակ մը.

A Lei Reverendo Vice-Paroco degli Armeni Cattolici diamo la facoltà di assistere al matrimonio che hanno da contrarre il Sig. Artin Magharoglu figlio dei Signori Carabet e Veronica di Ancira colla donzella Surpui Cumugian da Costantinopoli. Dispensiamo di più dalle denunzie, e che Sia fatto la Sera, nella Cappella del Collegio di Smirne.

Smirne 25 Gennajo 1839

+ A Mussabin Archiep. di Smirne

Josephus Alberti Lac.

Cancellarius.

Այսպիսի թղթեր՝ 1838 – 43 կը գտնուին Զմիւռնիոյ Մխիթարեան Հարց վանատան դիւա-

---

émancipés par un firman impérial qui les constituait en une communauté à part . . .

(Journal de Smyrne 1894 Octobre 12.)

նստան մէջ պահուած, որոնք ժամանակին կատարուած գործողութեանց մէյ մէկ վկաներն են։

Զ. Ըսուածներէն ինչպէս յայտնի կը տեսնուի Գաղատացի Կթղ. Հայերը Հոգաբարձուէ մը զատ, որուն պաշտօնն ալ շատ սահմանաւորեալ էր, դեռ չունէին ուրիշ որեւիցէ հիմնարկութիւն մը, ոչ եկեղեցի եւ ոչ դպրոց։ Ասոնք ալ Պարսկահայոց նման իրենց զաւակաց կրթութեան հոգը յանձնած էին օտարներու. գաղղիական կամ ուրիշ դպրոցներ կը յաճախէին դեռահաս մանուկներն, որով արդէն իրենց ծնողքը տաճկախօս, հայերէն լեզուն լսելու կամ սորվելու եւ ոչ առիթ մը կ'ունենային։ Այս ընթացքով ապագայ սերունդը գաղղիերէն կամ յունարէն լեզուն իրեն սեպհականելով, տակաւ ընտանեկան լեզուն ալ փոխուած է յունարէնի եւ գաղղիերէնի. այս օրս Գաղատացի գաղթական ալեւորները միայն քիչ շատ կը խօսին տաճկերէն։ Չունենալ ազգային եկեղեցի եւ դպրոց՝ ազգը ջնջման մատնել ըսել է։ Յառաջ կը բերենք հոս Ստեփան Վ. Վեցմատեանի ուղղուած ուրիշ մէկ նամակը, յորում կը տեսնենք թէ որչափ անհրաժեշտ համարուած էր նոյն ժամանակն իսկ ազգային եկեղեցւոյ մը կառուցումը։

“Առ Յարգոյամեծար Տէր Ստեփան Վ. Վեցմատեան ամենայն բարութեամբ ի Զմիւռնիա։

“Յարգոյամեծար Տէր

“Յետ սիրոյ ողջունիս գիտութիւն լիցի հարազատութեան սիրոյդ՝ զի յետ մեկնելոյ մեր ի յիզմիւռնոյ յաջողութեամբ հասաք ի բիւրիտոն, եւ անտի ի վանս։ Եւ որովհետեւ Արքեպիսկոպոսն բերիոյ դեռ չէ հասեալ այսր, մնամք գալստեան, կամ պատասխանւոյ նորա, ի հասանել միոյ յերկուցն՝ լիցի սկիզբն ժողովոյն։ — Եթէ զկողմանցս կամիք գիտել, փառք Խնամոց տեառն՝ առ հասարակ ի

խաղաղութեան վայելեն, եւ ամենայն ինչ լերինս ի նոյն կարգի. եթէ այդպէս կեցցեն, չիք ինչ նորագոյն, այլ ամենայն ինչ սոյն յառաջն. զայս այսպէս կնքեալ՝ Շնորհ ունիմ սիրոյդ որով անհանգիստ եղէք աւուրս ինչ ի պատճառ մեր, եւ ես միշտ պատրաստ եմ, հոգ տանիլ ամենայնի, ուր ի դիւրութիւն ձեր, եւ յուսամ ի տէր՝ թէ դուք եւս ոչ երբէք անփոյթ լինիք ծառայութեան պաշտամանց, եւ որդիական սիրոյդ առ մեզ: — Հայցեմ ամենայն արթնութեամբ միտ դնել ազգիս, որ անդ, եւ որչափ ինչ հնար իցէ յօժարեցուցանել զմիտս դոցա առ ի կանգնել ի քաղաքիդ զեկեղեցի մի, քանզի դովին հնարիւք եւեթ կարծի՝ պահել անդ զազգ մեր յիւրում ծիսի: Ի լինել եւ ի յաջողել այսմ այսպէս՝ փոյթ կալջիր գրել ի վանս, զի թէ Պօլսեցիք չառնուն յանձն զկառավարութիւն ժողովրդեանդ, հաւանութեամբ սրբոյ ժողովոյն Պատրիարգական Աթոռս կարող է հոգ տանիլ, եւ այդ ի պարծանս մեր եւ ձեր, եւ այսչափ ինչ շատ առ այժմ. դարձեալ ծանիք՝ խընդրեցի ի Վ. Տէր Գրիգորէ զպատմութիւն Ջուղայեցւոց զորմէ խօսեցեալ էք ինձ, մինչ առ ձեզ էի, բայց նա ասէ թէ չիք իմ տեսեալ զայդպիսի գրոց ած. ուստի խնդրեմ որոնել զայդ առ ձեզ, եւ կամ զայս ամենայն պարագայիցն գրել զայնմանէ, զի մարթացայց ի ձեռս բերել զսոյն, ողջ լերուք ի տէր:

"Ողջոյն օրհնութեամբ ամենայն աստուածասէր ժողովրդեանդ:

"Ի լեռ. ի վանս փոխման, 1843 յուլ 3:

Ն. Տ.

Միքայէլ Արքեպիսկոպոս կեսարիոյ:"

Ազգային եկեղեցւոյ եւ դպրոցի պակասութեամբ, բնականաբար չէին կրնար Գաղատացիք

յառաջադիմական քայլեր առնել, որով ժամանակ ժամանակ իրենց մէջ երեւցած քահանայից գործունէութիւնը ապարդիւն կը մնար: Արդէն օտարամոյծ սովորութիւններ սկսած էին շատերուն սրտին մէջ տեղի գտնել. այսպիսի սովորութեանց մին եղած է, գերեզմանաքարերու վրայ հայերէն արձանագրութեանց տեղ՝ իտալերէն կամ լատիներէն յիշատակարաններ քանդակել տալ: Ս. Պօղիկարպոս Եկեղեցւոյ յատակը ծածկող Պարսկահայոց հայերէն գրով գերեզմանաքարերուն քով կը գտնուին՝ առաւելագոյն թուով՝ Գաղատացի Հայոց գերեզմանաքարերն, որոնց վրայ եւ ոչ հայերէն գիր մը կայ: Ասոնցմէ մին բաւական կը համարինք հոս յառաջ բերել:

D O M
QUI GIARE
PIETRO APAK
NATO IN ANCIRA LI 2 SETEMBRE 1749
EGLI NELLA SUA FRESCA ETA
STABILITOSI IN SMIRNE
VI ESERCITÒ LA MERCATURA ONORA-
TAMENTE
PIO, CRISTIANO, PADRE AMOROSO
IN SENO DELLA SUA FAMIGLIA
RIPOSO GLI ULTIMI ANNI DI SUA VITA
MORTE LO TOLSE AI MESTISSIMI FIGLI
LI 14 DECEMBRE 1835
CHE PIETOSI, E DOLENTI
QUESTA LAPIDE POSERO

## 3.

*Վիեննայի Մխիթարեան Հարց գալուստը, դպրոց եւ մատուռ մը բանալնին, Հ. Քէրովբէ Վ. Իսպէնեանի գրութիւնը, նոր ժողովրդապետութիւն, ժողովրդեան օտարասիրութեան պատճառները, ժողովրդապետութեան Լատին իրաւասութենէ բոլորովին ազատ ըլլալն, ժողովրդեան թիւը, քաղաքական վիճակ 1830—1898.*

*Մխիթարեանց Վարժարանի վարիչները:*

Ա. Գաղատացի Կթղ. Հայոց գաղթականութենէն քանի մը տասնեակ տարիներ ետքը՝ Վիեննայի Մխիթարեան Միաբաններէն Հ. Ստեփան Վ. Շիւքիւրեան եւ Հ. Անդրէաս վարդապետ քարոզութեամբ Տիգրանակերտ երթալու նպատակաւ երբ Զմիւռնիայէն կ'անցնէին, տեղւոյն Կթղ. Հայերը զանոնք տեսնելով եւ սիրելով, քաղքին Լատին եպիսկոպոսին՝ Գեր. Անտոն Մուսապինիի՝ դիմեցին եւ խնդրեցին որ նոյն վանքէն իրենց համար քահանայ բերել տայ։ Գեր. Մուսապինի ժողովրդեան խնդիրքը իմացուց ժամանակին Աբբահօր՝ Գեր. Արիստակէսի Ազարեան, որ ժողովրդեան բանաւոր աղաչանաց հաւանելով՝ առաջին անգամ զՀ. Մատթէոս Վ. Սաղաթիէլեան ղրկեց Զմիւռնիա (1840), քիչ մը յետոյ իբրեւ ընկերակից զՀ. Տիմոթէոս Վ. Լիմոնճեան եւ ապա զՀ. Միքայէլ Վ. Վեցմատեան։

Մխիթարեան Հարք երբ եկան Զմիւռնիա, ի սկզբան անդ Լազարիստ կրօնաւորներէն ընդունելութիւն եւ ասպնջականութիւն գտնելով՝ անոնց վանքը բնակեցան։ Իսկ կրօնական պաշտամունքը կը կատարէին Գաբուչիններու կամ Փրանկիսկեանց եկեղեցին։ Այսպէս քանի մը տարի անցնելէն ետքը՝ Մայր վանաց ձեռնտուութեամբ՝ տուն մը գնեցին Նոր Փողոց անուանեալ վայրը (իրենց այժմեան տեղը) 1845ին։ Ընթացս ժամանակաց այս տունը մեծցուցին, յարակից տեղերէն մաս առ

մաս գնելով եւ աւելցնելով, որով այս օրս բաւական ընդարձակ գետնի տէր եղած են։

Այսոնց Զմիւռնիա գալէն եւ հաստատուելէն ետքը՝ Ստեփան վարդապետ դեռ կը շարունակէր իւր պաշտօնը, բայց քանի մը տարիէն՝ ծերութեան եւ տկարութեան պատճառաւ սկսաւ կամաց կամաց թողուլ ամէն բան, որով ժողովրդեան հոգւոց հացը միայն առ ժամանակ մը Լատին կղերին ձեռքը, անոնք կը կատարէին թաղում, մկրտութիւն, պսակ։ Ստեփան վարդապետի մահուանէն վերջը (1855)՝ նոյն տարւոյ Մխիթարեանց մեծաւորը Հ. Միքայէլ Վ. Վեցմատեան, զանազան պատճառներու համար չուզեց յանձն առնուլ Հոգաբարձութեան պաշտօնը. այս պատճառներուն գլխաւորն էր հետեւեալը. ինք կը պահանջէր որ ժողովրդեան դիւանը, կնունքի, պսակի եւն արձանագրութեանց ցանկը ըլլայ եւ գտնուի Մխիթարեանց վանատունը. իւր այս բանաւոր խնդրոյն անլսելի մնալուն համար՝ ինքն ալ հրաժարած էր Հոգաբարձութեան պաշտօնէն։

Թէպէտ եւ այնուհետեւ Մխիթարեան Հարք երբեմն երբեմն ժողովրդեան պսակը կը կատարէին եւ մկրտութեան խորհուրդը կը մատակարարէին, բայց գրեթէ չափով եւ կշռով սահմանաւորեալ էին իրենց այսպիսի գործերը։ Երբ ժողովրդեան մէջէն ոմանք կ'ուզէին պսակուիլ կամ մկրտել տալ իրենց զաւակունքը ազգային ծիսով եւ արարողութեամբ, Մխիթարեանք նախ Լատին եպիսկոպոսէն առանձին հրաման կ'առնուին եւ ապա կը կատարէին ժողովրդեան բաղձանքը, Գաբուչինաց կամ Փրանկիսկեանց եկեղեցւոյն մէջ, իսկ թաղումը կը կատարէր Լատին կղերը։ Այս խառնաշփոթ ընթացքը տեւած է մինչեւ 1883։

Բ. Գլխաւորաբար Մխիթարեանց գործն էր ի սկզբան անդ՝ ժողովրդեան խոստովանութիւնը լսել եւ զանոնք մխիթարել ու քաջալերել. բաց

աստի իրենց Զմիւռնիա հաստատուելէն քանի մը տարի ետքը՝ վանատան մէջ դպրոց մը բանալով՝ սկսած են տղոց կրթութեան ալ պարապիլ։ Սակայն մինչեւ ցայն վայր չունէին իրենց սեպհական մատուռը, ուր ժողովուրդը յաճախելով՝ կարենար ազգային ծիսի ներքեւ մեծնալ եւ յառաջ երթալ։ Հ. Արսէն Վ. Այտընեան եւ Հ. Քերովբէ Վ. Իսպէնեան (1854 Օգոստոս 29) Փափազեան Անտոնի ձեռնտուութեամբ՝ վանատան գետնայարկին մէկ սրահը մատրան կը փոխեն, ուր ի սկզբան անդ սոյն բարերարը կու գար իւր հոգեւորական պարտքերը կատարելու, քիչ մը յետոյ վարժարանին աշակերտներն ալ սկսան յաճախել եւ ապա դրացի տիկիններն ու մերձաւորները. հուսկ ուրեմն նոյն տարւոյ վերջերը վերոյիշեալ Հարց խնդրանօք, Գերապայծառ Մուսապէնի հրաման կու տայ որ մատուռը հրապարակական ըլլայ եւ ամէնուն՝ բաց։ Ահա այսպէս Կթղ. Հայք կ'ունենան մատուռ մը, որ կ'ըլլայ սկզբնաւորութիւն ուրիշ այլեւայլ կարեւոր խնդիրները լուծելու եւ ցրուած հասարակութիւնը ժողվելու։

Գ. Թէ ինչ վիճակի մէջ կը գտնուէին այս տարիները թէ Պարսկահայք եւ թէ Գաղատացիք, լաւ կը տեսնուի Հ. Քերովբէ Վ. Իսպէնեանի մէկ գրութենէն, որ պահուած է Զմիւռնիոյ Կթղ. Հայոց առաջնորդարանի դիւանատան մէջ։ Յառաջ բերենք հանդուցեալ Հօր բառերը։

“Կաթուղիկէ Հայք Զմիւռնիա. 28 Սեպտեմբեր 1848.

“Գլխաւոր երկու ազգք են կաթուղիկէ Հայոց քաղաքիս։ Կէսքն Գաղատացիք եւ կէսք Պարսկահայք։ ԶՊարսկահայոց պատմեն եթէ հարքն նոցա՝ խօսէին հայերէն եւ ընթեռնուին, յառաջ քան զամս իբրեւ 10. բայց այժմիկ՝ յետ բաժանելոյ կաթուղիկէ Հայոց՝ ի Հայոց միւսոյ կողմանն՝ զամենայն ինչ զՀայոց ուրանան եւ առաւել քան

զԳաղատացիսն՝ յօտարազգիս անդր մանաւանդ ի գաղղիացիս յարեալ են ամենայն հանգամանօք։ Սակայն գտանին՝ թէպէտ եւ կարի անօսր, որ ոչ ուրանան եթէ Հայք իցեն։ Ի սոցանէ բազումք այն են՝ որ ամուսնացեալ ընդ օտարազգիս՝ բնաւ իսկ օտարացեալ են ի հայութենէ։ Իսկ Գաղատացիքն՝ թէպէտ եւ չխօսէին եւ չխօսին իսկ՝ հայերէն, սակայն ստէպ զհայերէն ընթեռնուլ եւ գրել առնուն ի կիր, եւ եթէ մեծ կէս այսր ազգի Հայոց՝ ուրանան զանձանց եթէ Հայք իցեն, սակայն գտանին եւ ոչ սակաւք՝ որ չուրանան զհայութիւն իւրեանց։ Սոքա այնու առաւել ի Պարսկահայոց անտի զատեալ որոշին զի տաճկերէն խօսին համարձակ, իսկ յունարէն կամ սակաւ եւ կամ անհեթեթս, եւ դարձեալ բազումք ի հայ ժողովրդապետութիւն անդր՝ որ կայ տակաւին, յարեալ են՝ մկրտութեամբ, թաղմամբ, խոստովանութեամբ եւ ամուսնութիւնք սոցա առաւել ընդ միմեանս են կամ ընդ Պարսկահայս քան ընդ օտարս։ Բայց ամուսնութիւն յորժամ ասեմ՝ զառն կողմանէ միայն իմանամ. զի զկնոջ կողմանէ ամուսնացեալսն ընդ օտարս՝ չէ մարթ այնուհետեւ հայս անուանել, այնու զի որ ի նոցանէն որդիք զհօր ազգութիւն ձգեն յանձինս։ Զայս ամենայն յառաջադոյն եդեալ, եւթն ազգս կաթուղիկէ հայոց մարթ է զատանել ի քաղաքիս Զմիւռնիոյ.

Ա. Գաղատացիք չուրացեալք ի հայութենէն.

Բ. 〃 ուրացեալք 〃

Գ. Պարսկահայք չուրացեալք 〃

Դ. 〃 ուրացեալք 〃

Ե. Գաղատացիք եւ Պարսկահայք յիւրեանց միջի կամ ընդ միմեանս անխառն ամուսնութեամբ յառն կողմանէ։

Ե. Գաղատացիք եւ Պարսկահայք ընդ այլ ազգս օտարոտիս խառն ամուսնութեամբ յառն կողմանէ։

Է. Գաղատացիք եւ Պարսկահայք կանայք՝ ամուսնացեալք ընդ օտարս։»

Գ. Ահա այսպիսի ժողովրդեան յառաջադիմութեան պիտի աշխատէր Մխիթարեան Միաբանութիւնը։ Մատուռ մը բանալ բաւական չէր, արարողութեանց կատարումն իւր մէջն ըլլալ կը պահանջէր մատուռն իսկ։ Տարիներու հետ աւելցած էր Գաղատացւոց թիւը, մանաւանդ ուրիշ այլ եւ այլ քաղաքներէ՝ նորանոր ընտանիքներու Զմիւռնիա գաղթելովը պատկառելի թիւ մը կազմուած էր։ Ասոնք՝ ի մասնաւորի վերջին գաղթականները տեսնելով որ ազգային մատուռ մ՚ունենալէն ետքը, դեռ հոգեւորապէս Լատին կղերին ձեռքն են, զանազան ձեռնարկութիւններէ վերջը, Հռոմ Հաւատոյ Տարածման դիմեցին աղերսագրով մը եւ խնդրեցին իրենց համար յատուկ հայ ժողովրդապետութիւն մը։ Լսելի եղաւ իրենց խնդիրը. Գերերջանիկ Ազարեան Պատրիարքի եւ Պոլսոյ Քահանայապետական Նուիրակին՝ Վանութելլիի միջամտութեամբ՝ Զմիւռնիոյ Լատին արքեպիսկոպոսն Գերապ. Անդրէաս Թիմոնի զիջաւ ժողովրդեան սոյն իրաւացի խնդրանաց, եւ հուսկ ուրեմն 1883 Սեպտ. 11ին տրուեցաւ Կթղ. Հայոց առանձին ժողովրդապետութիւն մը։ Նոյն տարին Հ. Սահակ Վ. Թոռնեան Պոլիս երթալու համար՝ Թրիեստէն Զմիւռնիա եկած ըլլալով՝ ոմանց միջամտութեամբ մնաց Զմիւռնիա եւ անուանուեցաւ առաջին ժողովրդապետ Կթղ. Հայոց։ Ինչպէս վերագոյն ըսուածներէն յայտնի կը տեսնուի՝ մինչեւ այս թուական Կթղ. Հայոց վիճակն անորոշ ընթացք մ՚ունէր. անկատար խնամոց եւ օտար ձեռաց ներքեւ մոռցած էր գրեթէ նախնեաց կրօնական արարողութիւնները. շատերը մկրտուած, պսակուած էին Լատինաց քով, մասամբ իւիք անոնց յարած։ Ուստի ժողովրդեան այս ընթացքին ալ վերջ մը տալ եւ զիրենք նոր ժողովրդապետու-

թեանս մէջ հրաւիրել անհրաժեշտ էր։ Ամենադժուարին, սակայն ամենակարեւոր խնդիր մ'էր այս, ասոր համար Կ. Պոլսէն Գերեր. Ազարեան կաթողիկոսի կողմանէ՝ Հօլաս Յովհաննէս եւ Աշճեան վարդապետները Զմիւռնիա գալով՝ տեղւոյն Լատին եպիսկոպոսարանին Դիւանադպրին՝ Տօն Մարքոյ Վարթալիթի եւ Ս. Պողիկարպոս (Գաբուչին) եւ Ս. Մարիամ (Փրանկիսկեան) եկեղեցեաց ժողովրդապետներուն առջեւ Հայ ծագումն ունեցող բովանդակ ժողովուրդը մի առ մի կանչելով, որ ժողովրդապետութեան անդամ ըլլալնին իւրաքանչիւրին հարցընելով, անուններն արձանագրեցին եւ այսպէս որոշեցին նոր ժողովրդապետութեանս ծուխը։ Այս որոշման ժամանակ՝ այնչափ Հայ ծագումն ունեցող բազմաթիւ ընտանիքներէն՝ հազիւ 30 ընտանիք գրուեցաւ Կթղ. Հայ ժողովրդապետութեան մէջ. մնացածները Լատին ժողովրդապետութեանց ցանկին մէջ անցան։

Ե. Ահա այսպէս Զմիւռնիոյ Կթղ. Հայերը պատմութեան մէջ տխուր էջեր թողլու առիթներու մէջ կ'իյնան. կրկին պատճառներ քաջալերած են զիրենք այս ընթացքը բռնելու. Նախ ատեն մը վայելելով Լատինաց հոգն ու խնամքը, մանաւանդ այլ եւ այլ ծանր ժամանակներու եւ պարագաներու մէջ, անոնցմէ պաշտպանութիւն գտնելով, այլեւս անոնցմէ բաժնուիլ չեն ուզած։ Լատին կղերին յորդորներն ալ քաջալերած են զիրենք անոնց հետ անքակ մնալու։ Երկրորդ, ոչ նուազ նպաստած են նաեւ Թագթագեան Պօղոս Առաջնորդի խորհուրդներն՝ ազգայնութեան ոգին կորսնցընելու. ալեւորք կը պատմեն, թէ Թագթագեան 1872է յառաջ շատերու խորհուրդ տուած ըլլայ Լատինաց հետ միանալու. անտարակոյս այն դիտմամբ որ Զմիւռնիոյ մէջ չմնան ու չգտնուին Կթղ. Հայեր. թէ ունէր ուրիշ վախճան մը, այն մեզի անծանօթ է։ Երրորդ պատճառ մը թերեւս

համարուին Լիբանանու կրօնաւորներն. քանի որ ի սկզբան անդ իրենց ձեռքն էր ժողովուրդն, ինչո՞ւ փոյթ չեն տարած զանոնք կորստեան վտանգէն ազատ պահելու։ Անտարակոյս այս հարցման իբր պատասխան յառաջ պիտի բերեն նոյն կրօնի անդամները վերագոյն յիշած Կեսարիոյ Միքայէլ արքեպիսկոպոսին նամակին տողերն եւ ուրիշ թղթեր, զորս պիտի ունենան իրենց վանատան դիւանատան մէջ պահուած, Ստեփան Վարդ. Վեցմատեանէ գրուած, եւ արդարացընել՝ ժամանակին իրենց ցուցուցած ջանքը՝ ազգին յառաջադիմութեան համար, եւ իրենց ունեցած արգելքն, որով ապարդիւն եղած է իրենց ցուցուցած գործունէութիւնը։ Զորրորդ պատճառ մ՛ալ թերեւս ծանրանայ Մխիթարեան Հարց վրայ, իբր այն թէ անհոգ գտնուած են՝ տոհմային ոգին վառ պահելու ժողովրդեան սրտին մէջ։ Այս ենթադրութեան իբր պատասխան կրնանք ըսել թէ երբ Մխիթարեանք Զմիւռնիա հաստատուեցան, նախ ժամանակը շատ ուշ էր, եւ երկրորդ ի սկզբան անդ չէին կրնար ազատօրէն գործել, որովհետեւ իրենց գոյութիւնն անգամ՝ կախում ունէր Լատին իշխանութենէն, եւ իրենց գործունէութեան ասպարէզը կարի սահմանաւորեալ էր։ Այս քառապատիկ պատճառները թէպէտ եւ ունենան իրենց կողմը ջատագովական պատասխաններ, եւ մին արդարանայ եւ միւսը դատապարտուի, բայց ամէնն ալ պիտի յիշուին պատմութեան մէջ. միոյն արդարացուցածն ուրիշ մը պիտի դատապարտէ, մէկին դատապարտածն՝ երկրորդ մը պիտի ջատագովէ եւ արդարացընէ։ Թողլով այս կէտը, դառնանք մեր պատմութեան ընթացքին։

Զ. Երբ Կթղ. Հայք ունեցան իրենց առանձին ժողովրդապետութիւնն եւ որոշուեցան այս Նոր Ժողովրդապետութեան ծուխերն, այնուհետեւ Մխիթարեանց Մատուռն ալ եղաւ ժողովրդապե-

տական Մատուռ Կթղ. Հայոց. հոս սկսաւ ըլլալ պաշտօնապէս մկրտութիւն, պսակ, թաղում, քարոզութիւն եւն. 30 ընտանիքն՝ ուրիշ նորերու գալովն բազմացաւ, այնպէս որ 1890ին՝ 70 ընտանիքը կ'անցնէր։ Սակայն տակաւին այս Նոր Ժողովրդապետութիւնն անկատար էր. վերին իրաւասութիւնը Լատին եպիսկոպոսին ձեռքն էր. ժողովրդապետական խնդիրներու մէջ հոն պէտք էր դիմել, ամուսնական ազատութեան հրամանագիրներն անկէ պիտի խնդրուէին, որ մասնաւոր թղթով ժողովրդապետին հրաման կու տար՝ այս կամ այն անձը պսակելու։

Ժողովուրդը գոհ չէր այս ընթացքէն. երկրորդ բաղձանք մ'ունէր. բոլորովին օտարէն ազատիլ, Պոլսոյ Պատրիարքութեան իրաւասութեան ներքեւ անցնիլ կ'ուզէր. այս վախճանիս հասնելու նպատակաւ 1883էն սկսեալ մինչեւ 1894 շատ անգամ խնդրագրով իւր բաղձանքը յայտնեց՝ որում անկ էր։ Վերջապէս՝ յարատեւութիւնը պսակեց ժողովրդեան սոյն բաղձանքն ալ, 1894ին լիովին կատարուեցաւ իրենց ուզածը։ Սոյն թուականին Զմիւռնիոյ Կթղ. Հայոց Ժողովրդապետութիւնն եւ ժողովուրդը Լատին իրաւասութենէն բոլորովին անկախ եւ ազատ հրատարակուելով՝ միացաւ Պոլսոյ Կթղ. Հայոց վերին հոգեւոր իշխանութեան հետ։

Է. Արեւելասէր Լեւոն ԺԳ. Քահանայապետին՝ 1894 Դեկտեմբեր 30ին հրատարակած "Յաղագս Պահպանութեան եւ Պաշտպանութեան Եկեղեցական Կարգաւորութեան Արեւելեաց" Առաքելական Թուղթն եւ ի մասնաւորի այս Թղթին եօթներորդ յօդուածը զգալի յառաջադիմութեան պատճառ եւ մեծ քաջալերութիւն տուաւ Կթղ. Հայոց[1]։ Անցեալ տարիներու մէջ՝ Լատին ծիսին յարող ընտանիքներէն ոմանք՝ վերադար-

1 Տես նաեւ Journal de Smyrne 1894, Octobre 12.

ձան իրենց նախկին ծիսին եւ գրուեցան Հայ Կաթողիկեայ ժողովրդապետութեան ցանկին մէջ։ Սոյն թղթին հրատարակման թուականէն սկսեալ մինչեւ ցայսօրս գրեթէ 25—30 ընտանիք բռնեցին այս ընթացքը, ջնջուելով լատին ժողովրդապետութեանց ցանկերէն՝ միացան իրենց ազգակցաց հետ։

Այս օրս՝ ի բաց թողլով Հայ տարրին համար կորսուած Պարսկահայերն եւ Գաղատացի ընտանիքները՝ վերջին տարիներուս մէջ բնակութիւննին տեղս փոխադրող ընտանիքներն ալ ի միասին առեալ՝ Զմիւռնիոյ Կթղ. Հայոց թիւը կ՚անցնի 150 ընտանիքը. մեծամասնութիւնը կը կազմեն Գաղատացիներն եւ ապա Կարնեցի, Եւդոկիացի, Սեբաստացի, Կեսարացի, Տիգրանակերտցի եւ Կ. Պոլսեցի ընտանիքները։

Ասոնց մէջ կը գտնուին ամէն կարգի եւ աստիճանի անձինքներ. կան բժիշկ, դեղագործներ, փաստաբաններ, վաճառական եւ արուեստաւորներ, ոմանք ալ ուրիշ վաճառատանց եւ հաստատութեանց մէջ իբր առաջին կամ երկրորդ կարգի պաշտօնեայ կը գործեն հաւատարմութեամբ։

Կը դնենք հոս 1883էն սկսեալ՝ Մխիթարեան Հարց ժողովրդապետութեան օրէն, մինչեւ ներկայ տարւոյս (1898) վերջերը տեղի ունեցած մկրտութեանց, պսակի եւ թաղման թուերն, զորս արձանագրութեանց մատեաններէն քաղած ենք։ Ննջեցեալները կէս առ կէս պանդուխտ գործաւորներ են, Մշեցի, Սեբաստացի եւ այլն, որոնք երկաթուղւոյ գծին վրայ հիւանդացած, քաղաքս եկած եւ կնքած են իրենց կեանքը։

| | Մկրտութիւնք | Պսակք | Թաղում |
|---|---|---|---|
| 1883 . . . . . | 2 | 1 | 1 |
| 1884 . . . . . | 4 | 1 | 7 |
| 1885 . . . . . | 4 | 5 | 10 |
| 1886 . . . . . | 4 | 5 | 1 |

| | Մկրտու-թիւնք | Պսակք | Թաղում |
|---|---|---|---|
| 1887 . . . . | 9 | 3 | 7 |
| 1888 . . . . | 7 | 2 | 10 |
| 1889 . . . . | 9 | 7 | 10 |
| 1890 . . . . | 1 | 1 | 6 |
| 1891 . . . . | 6 | 1 | 5 |
| 1892 . . . . | 9 | 6 | 5 |
| 1893 . . . . | 9 | 4 | 14 |
| 1894 . . . | 5 | 3 | 7 |
| 1895 . . . . | 14 | 4 | 13 |
| 1896 . . . . | 7 | 5 | 9 |
| 1897 . . . . | 13 | 5 | 15 |
| 1898 . . . . | 14 | 6 | 8 |

*Ը. Զմիւռնիոյ երկրորդ եւ ասոնց հետ միացած երրորդ գաղթական Կթղ. Հայոց հոգեւորական ընթացքը նկատելէ վերջն՝ ակնարկ մ'ալ պէտք ենք նետել իւր վրայ քաղաքական տեսակէտով։ Հալածանաց տարիները* (1828—30) *սահելէն եւ մոռացութեան կարգը անցնելէն ետքը՝ Զմիւռնիոյ Կթղ. Հայոց քաղաքական իրաւունքները պաշտպանելու համար՝ Կ. Պոլսէն Մելքիան Յովհաննէս (Եպիսկոպոս Կարնոյ) տեղս ղրկուեցաւ իբր Առաջնորդ.*[1] *Սա ի սկզբան անդ մեծ ընդունելութիւն գտաւ ժողովուրդէն, շքեղութեամբ կ'երթար Տէրութեան պալատն եւ կը կատարէր իւր պաշտօնն ամենայն գործունէութեամբ. սակայն դժբախտաբար չկրցաւ երկայն յարատեւել իւր պաշտօնին մէջ։ Ըստ նախկին սովորութեանց՝ խիստ վարմունքովը, հպատակաց սիրտը պաղեցուց իրմէ, որոնք սկսան հեռու կենալ իրմէ եւ չհնազանդիլ իրեն։ Մելքիան ժողովրդեան այս ընթացքը նշմարելով՝ հրաժարեցաւ պաշտօնէն եւ դարձաւ Կ. Պոլիս* (1833)։ *Այնուհետեւ Կթղ. հայոց քաղաքական իրաւունքները կը պաշտպանէին ժողովրդեան մէջէն երեւելի անձինքներ։ Այսպէս յաջորդաբար վարե-*

[1] Journal de Smyrne 1894, Octobre 12.

ցին սոյն պաշտօնը Յովհաննէս Աղա Փափազեան, Գրիգոր Աղա Պալեան, Հօճա Գասպար, Գրիգոր Աղա Պիւլպիւլճեան եւ Ռափայէլ Աղա Պալեան։ Վերջնոյս ժամանակները Գասպար Գուրպան, որուն պաշտօնն էր զինուորական տուրքը հաւաքել, անհոգութիւն ընելով եւ չկարենալով ժողվել պահանջեալ գումարը, իրերը կարի դժուարցան, այնպէս որ Պալեանէ ետքն ազգին նշանաւորներէն ոչ ոք ուզեց յանձն առնուլ այս պաշտօնը, ուստի ազգին կնիքները բերելով յանձնեցին Մխիթարեանց (1862)։ Այս թուականէն սկսեալ կը գտնենք զՄխիթարեանս իբր պաշտպան քաղաքական իրաւանց ժողովրդեան, բայց ոչ պաշտօնապէս։[1]

Մխիթարեան հարք ազգին կնիքները ձեռք ձգելէ վերջը փոխանակ այս կնիքները գործածելու, վանականութեան աւելի ազդեցութիւն մը տալու նպատակաւ, սկսան վանքին կնիքները գործածել։ Քանի մը տարի այսպէս անցնելէն ետքն երբ 1876ին զինուորական տրոց ճիացորդները (պօքըյէէ) շնորհուեցան, Հ. Նիկողայոս Վ. Աւգերեան տեսնելով որ այս ընթացքով ազգը չի յառաջանար, ուրիշ միջոցներու ձեռք զարկաւ. ազգին երեւելիները ի մի գումարելով առանձին անդամներու ընտրութեամբ ժողովք մը կազմեց եւ վերստին ազգային կնիքները սկսան գործածել քաղաքական գործառնութեանց մէջ։ Սակայն Աւգերեանի այս ձեռնարկութիւնը՝ հակառակորդաց կողմէ յարուցուած արգելքներու եւ դժուարութեանց բախելով՝ ստիպուեցաւ ինքն ալ հրապարակաւ գործելէ ետ կենալ. բայց ազգին համար ծածկաբար աշխատելէ չդադրեցաւ։ Քիչ մը վերջը Աւգերեան՝ Հ. Արթանէս Վ. Եազուճեանի եւ Հ. Եւգինէոս Վ. Համբարեանի հետ խորհուրդ ընելով, ժողովրդեան վրայ իբր գլուխ եւ առաջնորդ ընտրեցին զՀ. Ղու-

---

[1] "Ճէրիտէի Շարգիյէ„, 1897 Դեկտ. 10. Թիւ 3778։

կաս Վ. Տէրտէրեան եւ իրենց այս ընտրութիւնը բովանդակ Հասարակութեան կողմանէ գրուած աղերսագրով մը ծանուցին Կ. Պոլիս, Գերեր. Ազարեան Կաթուղիկոսի: Ազարեան դիմելով Բարձ-



ԳԵՐՑ. Հ. ՂՈՒԿԱՍ Ծ. Վ. ՏԷՐՏԷՐԵԱՆ:

րագոյն Դուռը՝ Զմիւռնիոյ Կթղ. Հայոց վիճակը ներկայացուց ուր որ անկն էր եւ հուսկ ուրեմն յաջողեցաւ ընդունիլ՝ բովանդակ Այտընի Կուսակալութեան մէջցրուած Կթղ. Հայոց վրայ ազգապետ մը կարգելու կայսերական հրամանն: Այսպէս առաջին

անգամ (1882) արքունի հրովարտակով (Ֆէրմանով) պաշտօնապէս ազգապետ եւ իբր Փոխ-Մուրախխաս անուանուեցաւ Հ. Ղուկաս Ծ. Վ. Տէրտէրեան։

Տէրտէրեանի այս պաշտօնը կարի ծանր էր. նոր գործունէութեամբ նոր զարկ մը պիտի տար հասարակութեան. իբրեւ ճանչցուած մարմին մը պիտի կազմէր ժողովուրդն եւ անոր քաղաքական իրաւանց պաշտպան պիտի հանդիսանար։ Թէպէտ եւ զանազան ընդդիմութիւններ եւ հակառակութիւններ ելան իւր առջեւը, մանաւանդ լատին հասարակութեան կողմանէ, բայց ինքն ամէն նիւթական եւ բարոյական դժուարութեանց դէմ՝ գրեթէ մաքառելով, անխոնջ աշխատութեամբ հասարակութեան իրաւունքները պաշտպանելու ետեւէ եղաւ։ Տէրտէրեան տասնուերկու տարի անընդհատ կատարեց փոխ-մուրախխասի պաշտօնը, մինչեւ այնպիսի ժամանակ մը՝ յորում կրկին զարկ եւ մղում պէտք էր տալ հասարակութեան յառաջադիմութեան։ Յոգնած էր ինքն ալ գործելէ, ուստի հրաժարեցաւ իւր այս պաշտօնէն եւ 1894ին[1], յանձնեց ազգային կնիքները, Մուրախխասութեան պաշտօնով յաջորդող Գերյ. Հ. Նիկողայոս Ծ. Վ. Աւգերեանի։ Մինչեւ այս թուական Կթղ. Հայոց քաղաքական վարչութիւնն ալ անկատար էր. հասարակութիւնը ներկայացընողն էր փոխ-մուրախխաս մը եւ այս անուամբ կրնար միջամտել միայն քաղաքական կամ աշխարհական գործոց մէջ, իսկ հոգեւորական գործերը լատին եպիսկոպոսութեան՝ իշխանութեան եւ իրաւասութեան տակն եղող ժողովրդապետին յանձնուած էր, ինչպէս տեսանք վերագոյն։ Բայց երբ 1894

---

1 "Ճէրիտէի Շարգիյէ" 1894. Հոկտ. 2, Գ. Մեծաձորեցւոյ գրութիւնն։ Նոյնպէս անդ՝ 1895, Սեպտ. 22. Թիւ 3106։

Սեպտ. 11ին կայսերական Բարձր Պէրաթով, Զմիւռնիա Կ. Պոլսոյ Պատրիարքութեան իշխանութեան հետ միացաւ, Հռոմայ Լեւոն ԺԳ. Քահանայապետին յայտնի եւ բացորոշ կամաց համաձայն,



ԳԵՐՑ. Հ. ՆԻԿՈՂԱՅՈՍ Ծ. Վ. ԱՒԳԵՐԵԱՆ
Ա. Առաջնորդ Կթղ. Հայոց Վիճակին Զմիւռնիոյ:

հոգեւոր կամ եկեղեցական գործերն լատին եպիսկոպոսութեան իրաւասութենէն առնուելով, միացուեցան նոյնպէս Կ. Պոլսոյ հոգեւոր իշխանութեան հետ: Այնուհետեւ աշխարհական եւ միանգամայն

եկեղեցական գործոց ներկայացուցիչ մը պէտք էր Զմիւռնիոյ Կթղ. Հայոց վրայ։ Ուստի փոխ-Մուրախասութիւնն՝ Մուրախասութեան փոխուելով, կատարեալ Առաջնորդի պաշտօնին կայսերական հրամանագիրը յանձնուեցաւ Գերյ. Հ. Նիկողայոս Ծ. Վ. Աւգերեանի։

Աւգերեան արդէն տեղական գործոց լաւ տեղեակ էր, եւ 1859ին սկսեալ ատէպ առիթ ունեցած էր գործելու ազգին համար։ Իսկ երբ պաշտօնապէս Ազգապետ կարգուեցաւ, նոր զօրութեամբ եւ եռանդեամբ սկսաւ գործել՝ յօգուտ հասարակութեան։ Իւր գործունէութեամբ, յանցելումն՝ լատին ծիսին անցած Գաղատացի ընտանիքներ յիշեցին իրենց նախնեաց եկեղեցին եւ վերադարձան հայ ծիսին, ինչպէս վերագոյն յիշեցինք։

Զմիւռնիոյ Կթղ. Հայոց թէ հոգեւորական եւ թէ քաղաքական յառաջադիմութեան համար, անմոռանալի ջանքեր թափած է Գեր. Ստեփաննոս Պետրոս Ժ. Ազարեան Պատրիարքը։ Իւր աշխատութեանց շնորհիւ՝ հասարակութեանս բաղձանքներն իրագործուած են. քաջայոյս ենք որ նոյն գործունէութեան պտուղներն դեռ պիտի վայելէ Զմիւռնիոյ Կթղ. հայ հասարակութիւնը։

Թ. Ինչպէս վերագոյն յիշեցինք (էջ 331) Մխիթարեան Հարք Զմիւռնիոյ մէջ 1845ին սեպհական բնակութեան վայր մը գնելէն եւ իբր վանատուն՝ տեղւոյն ներածին չափ՝ ամէն բան կարգի դնելէ ետքը, վանատան մէկ սենեակը վարժարանի կը վերածեն, եւ յաջորդ տարին՝ 1846ին սկիզբը կ'ընեն տղոց կրթութեան հոգ տանիլ։ Ընթացս ժամանակաց վանատունն ընդարձակուելով, վարժարանն ալ կ'ընդարձակուի եւ կարգաւորեալ դիրք ու կանոնաւոր ընթացք մը կ'առնու։ Ի սկզբան անդ վարժարանը կ'ընդունէր միայն Արտաքին աշակերտներ· քանի մը տարի յետոյ՝ տեղ-

ւոյն ընդարձակուելովը՝ Գիշերօթիկի կը վերածուի, եւ այսպէս յառաջ կ'երթայ մինչեւ 1863։ Սոյն թուականին Միաբանութեան անձանց սակաւութեան պատճառաւ վարժարանն իւր ընթացքը շարունակելէ առ ժամս կը դադրի։ Երկու տարիէն՝ 1865ին վերստին կը բացուի եւ իբր Գիշերօթիկ եւ Արտաքին վարժարան իւր նախկին դրութեամբ կը սկսի իւր ընթացքն, եւ մեծ անուն կը հանէ։ Այսպէս քսանուերկու տարի անընդհատ յառաջ երթալէ ետքը՝ 1887ին նիւթական նեղութեանց պատճառաւ կը ստիպուի գոցել իւր դռները։ Երկու տարի գոց մնալէ վերջը՝ 1890ին դարձեալ կը բացուի. բայց այս անգամ միայն Արտաքին եւ Կիսաթոշակ աշակերտներ ընդունելով կը սկսի իւր ընթացքը, եւ կը շարունակէ մինչեւ ցայսօր։ Այսպէս վարժարանս իւր բացման օրէն սկսեալ մինչեւ ցայսօր չորս տարի միայն գոց մնացած, եւ քառասունութը ամբողջ տարիներ իւր ծառայութիւնը մատուցած է։

Ժ. Վարժարանիս վարչութիւնը Վիեննայի Մխիթարեան Հարց ձեռքն է, որոնք արտաքին մասնագէտ եւ վկայեալ ուսուցչաց առընթերակցութեամբ աշխատած են եւ կ'աշխատին յօգուտ Ազգին։ Իբր վարիչ վարժարանիս՝ իւր հիմնարկութեան օրէն սկսեալ մինչեւ ներկայ տարւոյս մէջ, կը յիշուին Վ. Հ. Քերովբէ Վ. Իսպէնեան, որ սկիզբ ընելով՝ 1854ին կը յանձնէ Վ. Հ. Արսէն Վ. Այտնեանի։ Այտնեան կը վարէ սոյն պաշտօնը մինչեւ 1860, որմէ ետքն իբր վարիչ կը գտնենք զՀ. Մեսրոպ Վ. Ծաղիկեան։ Ծաղիկեանի պաշտօնավարութիւնը կը տեւէ մինչեւ 1863, եւ յետոյ երկու տարի վարժարանը գոց կը մնայ։ Հ. Նիկողայոս Վ. Աւգերեան նոր դարագլուխ մը կը բանայ վարժարանին, 1865 մինչեւ 1883՝ աննշան ժամանակամիջոցներ դուրս հանելով՝ տասնութը տարի սոյն պաշտօնը կատարելէ վերջը՝ կը մեկնի



Վ. Հ. ԱՐՍԷՆ Վ. ԱՅՏՆԵԱՆ:

Այժմեան Գեըապ. Աբբահայր Միաբանութեանս:

Պոլիս՝ նոյն պաշտօնով։ Աւգերեանի կը յաջորդէ Վ. Հ. Աստուածատուր Վ. Աւագեան որ մինչեւ 1887 իբր վարիչ գործելէ ետքը կը մեկնի Վիեննա։ Աւագեանի մեկնելէն ետքն երկու տարի վարժա-



Վ. Հ. ԱԹԱՆԱՍ Վ. ՍԻՓԻՐՇԵԱՆ։

րանս փակ կը մնայ, եւ 1890 վերստին բացուելով՝ վարիչ կը կարգուի Հ. Ամբրոսիոս Վ. Քիւփէ-լեան։ Քիւփէլեանի կը յաջորդէ՝ 1892ին Հ. Անտոն Վ. Թիրոյեան, որ երեք տարի՝ իւր շրջանը ամբողջացընելով՝ կը յանձնէ Հ. Աթանաս Վ.

Սէֆէրշեանի։ Սէֆէրշեան 1895էն սկսեալ մինչեւ ցայսօրս կը կրէ վարչի անունն, եւ իւր կրօնակից եղբարց հետ կ'աշխատի վարժարանի յառաջադիմութեան։

Վարժարանս ի սկզբանէ հետէ կը վայելէ Աւստրիոյ կայսրութեան բարձր հովանաւորութիւնն, որմէ կ'ընդունի նաեւ մասնաւոր նպաստ մ'իւր բարգաւաճման համար։

Անցեալ տարիներու մէջ երբ գաղղիական կամ օտար դպրոցներն այնչափ բազմաթիւ եւ կատարեալ չէին, վարժարանս բաւական նշանաւոր դիրք մ'ունէր թէ օտարաց եւ թէ ազգայնոց առջեւ, թոշակաւոր աշակերտաց թիւն 80—100ի կը հասնէր։ Վերջին տարիներս քաղաքիս մէջ դպրոցներու բազմանալովն՝ աշակերտաց թիւն նուազած է, ըստ այսմ 1890էն ի վեր՝ վարժարանիս աշակերտաց թիւն 60—70էն անդին չէ անցած։ Վարժարանս յաճախող աշակերտներն են՝ հայ, յոյն եւ լատին, որոնցմէ կազմուած թուոյն մեծագոյն մասը կը բռնեն հայերը։

Վարժարանիս ուսման կանոնաւոր եւ կատարեալ ընթացքն է վեց տարի, մասնական երկրորդական դպրոցներու՝ այժմու դաստիարակութեան ամենանոր յառաջագրոյն (programme) համեմատ։ Կայ երկամեայ պատրաստողական ընթացք մը տակաւին փոքրահասակ մանկանց համար, որոնք անկարող են ամբողջական ընթացքն օգտակարապէս կատարել։

Վարժարանի ուսման լեզուն բարձրագոյն դասարաններու մէջ գաղղիերէն է։ Գերմաներէն լեզուն ալ պարտաւորիչ է ամէն աշակերտաց համար։

Վարժարանին ամբողջական յառաջագիրն է հետեւեալն.

Կրօնական եւ բարոյական ուսումն.

Պատմութիւն եւ Աշխարհագրութիւն.

Ուսողական, բնագիտական, բնական եւ առեւտրական գիտութիւններ.

Հայերէն, Գաղղիերէն լեզու եւ մատենագրութիւն, Գերմաներէն, Անգղիերէն, Տաճկերէն, Յունարէն, Գեղագրութիւն, Գծագրութիւն, Երաժշտութիւն եւ Մարմնամարզութիւն։

---

## ԳԼՈՒԽ ՈՒԹԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ

### Զմիւռնիոյ շրջակայ գիւղօրէից Հայերն:

---

### 1.

Պուռնապատ:

Զմիւռնիոյ արեւելեան կողմը բարձրացած եւ դէպ ի հիւսիս տարածուող լերանց շղթային ստորոտը՝ դաշտագետնի մը վրայ շինուած է Պուռնապատ գիւղը։ Պասմախանէի կայարանէն դէպ ի Մանիսա մեկնող երկաթուղին մասնաւոր գիծ մ՚ունի որ մինչեւ գիւղիս առջեւն երկնցած է. կառախումբը կտրելով խաչաձեւ Այտընի երկաթուղւոյ գիծը եւ Հալքա պունարի կամուրջներուն վրայ, ինչպէս նաեւ Մէրսինլիի (Mersinli) գիւղին կայարանը՝ մէկ երկու վայրկեան դադար առնելէ ետքը կը հասնի Պուռնապատի կայարանը, գրեթէ 20 վայրկենի մէջ եւ ունի 7½ հազարամետր հեռաւորութիւն։ Լայն եւ ուղիղ խճուղի մ՚եւս շինուած է քաղաքէն դէպ ի գիւղս ձիաքարշ կառքերու երթեւեկութեան համար։

Զմիւռնիոյ գիւղերուն մէջ առաջին տեղին կը բռնէ Պուռնապատ։ Եւրոպական պարտէզներու ձեւովն ու ճաշակովը զարդարուած գեղեցիկ պարտէզներն են իւր սիրուն զարդերն, որոնք անուշահոտ ծաղկէփունջեր առատօրէն կը մատակարարեն

Զմիւռնացւոյն։ Անգղիական գաղթականութեան Հարուստ դաստակերտին սիրելի վայրը կը նկատուի Հոս։ Պարտէզներու կամարակապ լայն եւ բարձր դռները՝ գիւղին մասնաւոր տեսք մը կու տան։ Լայն եւ ընդարձակ ծառուղիներն եւ ջրոյ յատուկ ճամբաները կը ցուցունեն որ ժամանակին մեծ յարգ ունէր տեղս եւ բաւական ճիգ թափուած է զայն գեղեցկացընելու համար։

Գիւղիս մէջ Յոյնք ունին մեծ ու փոքր երկու եկեղեցի, Լատինք նոյնպէս երկու եկեղեցի եւ մատուռ մը, Հայք եկեղեցի մը, կան նաեւ երկու մզկիթ։

Ա. Պունարպաշի Հայոց թիւը շատ նուազ է համեմատութեամբ ուրիշ ազգերու. Հազիւ 15 տուն կը ցուցուի, որոնց վրայ երբեմն ամառը մէկ քանի ընտանիք եւս կ'աւելնան։ Դպրոց չունին. ունեւորներու զաւակունքը առաւօտները կ'իջնան քաղքին վարժարաններն եւ երեկոյին կը դառնան, իսկ աղքատին տղաքը կը յաճախեն Յունաց դպրոցը։ Հայոց եկեղեցին կը գտնուի գիւղին հիւսիսային կողմը, գրեթէ անջատեալ գիւղէն, վտակ մը՝ որ ձմեռն գետակի մը հոսանքը կ'ունենայ եւ ամառը կը ցամքի, կ'անցնի ճիշդ եկեղեցւոյ կռնակէն, երկու կամուրջ՝ մին կամարաւոր քարաշէն՝ միւսը փայտաձիգ կը տեսնուին եկեղեցւոյ պարտէզին կից, որոնցմէ մին՝ փայտաշէնը՝ պարտէզին հետ կապուած է, վրայէն անցնողն ուղիղ պարտէզը կը մտնէ։ Դիրքն եւ տեղը ամրոցի մը կերպարանք կու տայ, զանգակատան աշտարակը միայն մատնանիշ կ'ընէ տեղւոյն եկեղեցի ըլլալն։ Եկեղեցիս եթէ գիւղին անցուդարձի ենթակայ եղող տեղւոյ մը վրայ շինուած ըլլար, շատ աւելի յարգ եւ պատիւ պիտի ունենար. գոնէ օտարական այցելուները տեսնելով եկեղեցիս, զայն ստացողներու անունը յիշելու առիթ կ'ունենային։ Եկեղեցւոյս շինութեան ժամանակ ոմանք, որոնց մէջ

կը յիշուի Եուսուֆեան ընտանիքը, նախադաս համարած են գիւղին բանուկ մէկ տեղւոյն վրայ կառուցանել զայն. Եուսուֆեանք նուիրել ուզած





ՍՈՒՐԲ ԽԱՉ։

են նաեւ իրենց սեփհական մէկ երկիրն առ այս վախճան, սակայն ոմանք՝ Եսայեան, Ղօնճաեան եւն ընտանիքներն այժմեան վայրն ընտրած եւ ի կատար հանած են իրենց բաղձանքը։

Բ. Եկեղեցիս՝ Նուիրեալ Երեւման Խաչի՝ շինուած է 1863ին քարաշէն 70 հարիւրամետր հաստ պատերով, առաջակողմը չորեքանկիւն չորս սիւն կը տեսնուի, որոնք ժամանակ մը դէպ ի վեր կը բռնէին դուրս ցցուած կանանց վերնատունը, բայց 1880ին տեղի ունեցած երկրաշարժէն ետքը վերնատան այս մասը վար առնուած է եւ այժմ սոյն չորս սիւները գաւթին հովանաւոր ծածկը կանգուն բռնելու պաշտօնը կը կատարեն։ Եկեղեցւոյ աւագ դրան ճակատը մարմարեայ քարի վրայ կը կարդանք հետեւեալը։

“Սուրբ Խաչ Եկեղեցիս շինեցաւ արդեամբ ժողովրդեան Զմիւռնոյ եւ Պռնովայու ի վերայ տեղւոյն մահտեսի Սարգիս աղայի Խոնճայեանց եւ օծաւ ձեռամբ Պօղոսի սրբազան արքեպիսկոպոսի առաջնորդին Զմիւռնոյ ի 1863 Սեպտեմբեր 14։„

Աւագ դրանս դիմացը, չորս սիւներու միջավայրը հաստատուած է ուրիշ մարմարիոն քար մը հետեւեալ յիշատակարանով։

“Եկեղեցիս սուրբ Խաչի վնասեալ մեծապէս յերկրաշարժէն որ ի 17 Յուլիսի 1880 նորոգեցաւ հաստատապէս եւ դրուագեցաւ ոսկով արդեամբք եւ ծախիւք երկուց հարազատաց մահտեսի Յակոբ աղայի եւ մահտեսի Ստեփան աղայի Եսայեան, ի յիշատակ հոգւոյ եղբօր իւրեանց Գէորգայ ի Տէր հանգուցելոյ։ Պուրնապատ 27 Սեպտեմբեր 1880։ Վիրապեան Պօղոս Էֆէնտի աշխատութեամբ։„

Գ. Եկեղեցւոյ ներքինը թէպէտ պարզ, բայց շատ սիրուն է, կամարակապ ձեղունը հաստատուած միայն որմերուն վրայ եւ բոլորակաձեւ՝ ութանկիւն զարդերով ամբողջ զարդարուած. իսկ աւագ խորանին կամարն ոսկեզօծ աստղաձեւ զարդերով գեղեցկացուած։ Եկեղեցւոյ յատակը քառանկիւն մեծկակ մարմարիոն քարերով ծածկուած է։ Աւագ խորանի պատկերը կը ներկայացընէ զՍուրբ Աստուածածին, ասոր աջ ու ձախ կողմերը

գտնուած փոքրիկ խորաններն ունին՝ մին (ձախ) Սիրտ Յիսուսի եւ միւսն (Գլխադիր) Ս. Յովհաննու պատկերները։ Խորաններուս կռնակը կը գտնուին երկու փոքրիկ աւանդատուն, ինչպէս նաեւ դասին աջ կողմը կը տեսնուի աւանդատուն մը. այս աւանդատան դիմացն, որ է ըսել դասին ձախ կողմը՝ դէպ ի պարտէզ դուրս շինուած է կամարաւոր մկրտարանը։ Մկրտարանս իւր մարմարակուռ աւազանովն եւ մարմարաշէն սպիտակ ճակատով եւ սիւակներով տաճարին շքեղութիւն կու տայ։ Մկրտարանիս ճակատը քանդակուած է։

"Ի յիշատակ Եղբայրք Եսայեանց 1863 Սեպտեմբեր 14։"

Դ. Եկեղեցւոյ կողմնակի պատերուն վրայ կախուած կը տեսնուին ուրիշ պատկերներ ալ, որոնցմէ երկուքին եզերաց վրայ գրուած յիշատակարաններն՝ եկեղեցւոյս շինութեան թուականէն շատ յառաջ են. կ'երեւայ թէ ուրիշ եկեղեցիներու նուիրուած եւ ապա յընթացս ժամանակաց հոս փոխադրուած են։ Այս պատկերաց յիշատակարաններն են հետեւեալները.

"Յիշատակ ընծայեցաւ Էքիզեան ի մահտեսի Յօհաննիսէ վասն իւր եւ վասն ննջեցելոցն։ 1819։"
[Քրիստոսի ի Յովհաննէ մկրտուելուն պատկերն։]

"Ոմն քրիստոսասէր ի տանիս աշխատաւորէ ընծայեցաւ պատկերս զայս ի սուրբ Լուսաւորչին եկեղեցւոյ զմիւռնոյ յամի տեառն 1847 վ. 4։"
[Քրիստոսի խաչելութեան պատկեր մը։]

Ասոնցմէ զատ չունի եկեղեցիս ուրիշ յիշատակելի արձանագրութիւն. միայն զանգակատան վարի կողմը հաստատուած է սպիտակ մարմարիոն քար մը հետեւեալ քանդակագրութեամբ։

"Կանգնեցաւ զանգակատունս ծախիւք երկուց բարեպաշտ եղբարց մահտեսի Յակոբ աղայի եւ մահտեսի Ստեփան աղայի Եսայեան Պուրնապատ 27 Սեպտեմբեր 1880։"

Եկեղեցւոյ պարտէզին մէջ՝ առաջակողմը կը գտնուին երկու իրարմէ բաժնուած միայարկ շէնքեր եւս, որոնցմէ մին յատկացուած է քահանային, միւսն ժամկոչի կամ պահապանի։ Սակայն մնայուն քահանայ չունի գիւղս, կիրակի օրերն եւ ի հարկին Զմիւռնիայէն կու գայ քահանայ մը եւ եկեղեցական պաշտամունքը կատարելէ ետքը կը դառնայ Զմիւռնիա. իսկ պահապանը կը մնայ միշտ, որուն յանձնուած է եկեղեցւոյ պահպանութիւնն եւ ամենայն ինչ։

Գիւղիս մէջ հաստատուած են նաեւ երկու երեք տուն Կաթողիկեայ Հայք, որոնց հոգեւոր հոգը Մխիթարեան Հարց վրայ է։

## 2.

### Գորտէլիօ:

Գորտէլիօ[1] գիւղն՝ Զմիւռնիոյ հիւսիսային կողմը եւ քաղաքին ճիշդ դիմացը կ'իյնայ։ Առաջակողմը կը տարածուի ծովախորշը, կռնակը մերկ ու չոր ապառաժուտ լեռներ, որոնց ստորոտը բաւական ընդարձակութեան մէջ՝ կը տեսնուին միայն այգիներու եւ պտղատու ծառերու կանանչութիւնը. գիւղիս կռնակէն կ'անցնի նաեւ Մանիսա գացող երկաթուղւոյ գիծը։ Կէս բոլորակաձեւ ծովախորշին վրայ շարուած գիւղերուն մէջ առաջինը կը համարուի Գորտէլիօ՝ իւր ընդարձակութեամբը, մանաւանդ վերջին երկու երեք տարուան միջոցին մէջ կառուցուած բազմաթիւ տներն ու կրպակները՝ կատարեալ գիւղաքաղաքի մը կերպարանք տուին տեղւոյն։ Երեք չորս տարի յառաջ որթալուծի պատճառաւ անտես եւ անհոգ թողուած այգիներու տեղերն՝ այսօր փառաւոր շէնքեր բարձրացած են։

---

1 Գորտէլիօ (Cordélio) տեղացիք կ'ըսեն նաեւ Գարշիյակա։

Գիւղին առաջակողմը՝ ծանծաղ խորտուբորտ ծովեզերքը 1895ին լեցուելով՝ բաւական երկայն եւ ընդարձակ ծովեզերեայ հրապարակ մը ձեւացած է, որ բոլորովին կենդանութեան նոր տեսք մը տուած է տեղւոյն։ Հոս է ժողովրդեան շունչ առնելու վայրը, հոս կը ժողովի խառնիճաղանճը՝ երեկոյեան ծովային սիւքը ծծելու. եւ ուր ծովուն ալեաց խոխոջանքը՝ հոս հոն լսուած երաժշտական գործիներու ձայնին հետ միացած՝ ամբոխին օրուան կիզիչ արեգական տակ թափած քրտինքները մոռցընել կու տայ։

Երթեւեկութեան դիւրութիւնները մեծապէս նպաստած են գիւղիս յառաջադիմութեան. ծովէն եւ ցամաքէն հաղորդակցութեան մէջ է քաղքին հետ. փոքրիկ շոգենաւերը քաղքին նաւահանգստէն գիւղիս նաւամատոյցը կը հանին՝ գրեթէ քառորդ ժամու մէջ. իսկ ցամաքէն Մանիսա գացող գծին վրայէն՝ շոգեշարժ կառախումբը Պասմախանէի կայարանէն մեկնելով եւ խորշին վրայ կէս բոլորակ շրջան մ'ընելով, կը կտրէ խաչաձեւ Այտընի գիծը եւ Հալքա պունարի (H. Bounar), Սալահանէի (Abattoir), Պայրագլըի, (Baïrakli), Այիա-Թրիատա (Triadha), Փէթրոթա (Petrota) եւ Ալայ-Պէյ գիւղակներուն առջեւ կենալէ ետքը՝ կու գայ կը հասնի գիւղիս կայարանը՝ երեք քառորդ ժամու մէջ։ Գիւղս 11 հազարամետր հեռաւորութիւն ունի Զմիւռնիոյ կայարանէն։

Ա. Գորտէլիոյ Հայք բաւական բազմաթիւ են եւ յառաջադէմ դիրք մ'ունին. մանաւանդ վերջին տարիներուս մէջ՝ կրթութեան բաղձանքը, մարդասիրական ընկերութիւններ կազմելու եռանդը մեծ զարկ տուած են՝ գոնէ բարոյապէս յառաջադէմ նկրտելու։ Ունին եկեղեցի մը, երկսեռ վարժարան մը, զատ թաղական խորհուրդ, մնայուն քահանայ, սեպհական գերեզմանոց եւ այլն։

*Նաւամատոյցն ելլելով եւ ծովեզերքին վրայ դէպ ի աջ շեղելով՝ քանի մը քայլ առնելէ ետքն՝ առաջին կողմնակի փողոցին մէջ, երկու երեք դուռ վարն, պարտէզի մը դրան վրայ բարձրացած*






Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ։

*կը տեսնուի խաչ մը, որ տեղւոյն ինչպիսի վայր ըլլալն ինքնին կը պատմէ։ Հոս է Հայոց եկեղեցին եւ սորա շուրջը կը գտնուի ընդհանրապէս գիւղին Հայոց տներուն մեծագոյն մասը։ Գիւղիս Հայոց*

թիւը գրեթէ 140—150 տուն կը համարուի. էրիկ մարդկանց շատերուն գործը քաղաքն է, որոնք առաւօտեան կ'իջնան Զմիւռնիա եւ երեկոյին կը դառնան իրենց տները. կան նաեւ աննշան թուով անձինքներ ալ, որոնց զբաղումը գիւղին մէջն է։

Բ. Եկեղեցին երկու կողմն ունի փոքրիկ պարտէզ մը, հիւսիսային կողմը նորակառոյց երկսեռ վարժարանը, մանկտւոյն համար զբօսանաց վայրով մը՝ անջատուած եկեղեցւոյ շէնքէն։ Եկեղեցիս Նուիրեալ Աստուածամօր՝ չունի հարուստ զարդարանքներ. գիւղական պարզութիւնն է իւր միակ զարդը։ Առաջակողմը՝ գաւթին վրայ՝ չորս ձուլածոյ երկաթեայ կաղիխողովակներ կանգնուած են իբր սիւն, որոնց վրայ հաստատուած է կանանց վերնատան՝ պարտէզ ցցուած մասը։ Վերնատունս վերջին տարիներս շինուած է, որով եկեղեցին բաւական մեծցած եւ լուսաւորուած է։ Ունի կրկին յիշատակարան, երկու մարմարիոն քար, մին (Ա) աւագ դրան ճակատը զետեղուած, միւսը (Բ) վերնատան պատին վրայ հաստատուած, որոնց վրայ քանդակուած են հետեւեալները։

(Ա). "Եկեղեցիս յանուն սրբոյ Աստուածամօր կառուցաւ արդեամբք բարեսէր ազգայնոց Զմիւռնիոյ եւ Քորտելիոյի յառաջնորդութեան Ս. Պօղոս արքեպիսկոպոսի Զմիւռնիոյ, Քորտելիօ 1 Օգոստոս 1871։"

(Բ). "Սուրբ տաճարիս արեւմտեան մասն հանդերձ վերնատամբ յօրինեցաւ արդեամբ եկեղեցւոյս ի Հայրապետութեան Տ. Տ. Մկրտչի Խրիմեան ՎեՀ. Կաթուղիկոսի ամենայն Հայոց։ Ի Պատրիարգութեան Կ. Պոլսոյ Մ. Մատթէոս Սրբազան արքեպիսկոպոս Իզմիրլեանի, յառաջնորդութեան Գեր. Ներսէս Ծ. Վ. Աօլանեանի 1 Մայիս 1895, Գորտէլիօ։"

Գ. Եկեղեցւոյ ներքինը շատ պարզ է. որմերուն վրայ նոտած կամարակապ ձեղունք զարդ չունի. միջավայրը կը տեսնուի միայն մատենաձեւ զարդ մը, վրան Քրիստոսի Տեառն մերոյ ատ խօսքը գրուած, "Այս է պատուէր իմ, զի սիրեսջիք զմիմեանս, որպէս եւ ես զձեզ սիրեցի„: Մէկ կարգի վրայ ունի երեք խորան, երեքին պատկերներն ալ Աստուածածին՝ Յիսուս մանուկը գիրկը: Դասին աջ կողմը կը տեսնուի աւանդատան դուռն. եկեղեցւոյ յատակն ամբողջ փայտով ծածկուած է: Պատկերաց վրայ կամ այլուր չկայ յիշատակելի արձանագրութիւն մը: Եկեղեցիս Աստուածածնայ տօնին կ'ըլլայ կատարեալ ուխտատեղի մը, Զմիւռնիայէն եւ մերձակայ գիւղերէն՝ ժողովուրդը բազմութեամբ կը դիմէ հոս, եկեղեցւոյ տօնը շքեղութեամբ կատարելու համար:

Դ. Ինչպէս յիշեցինք, եկեղեցւոյս քով կը գտնուի Հայոց երկսեռ վարժարանը. տարի մը յառաջ նոյն տեղը կը տեսնուէին միայն շէնքի մը հիմունքն եւ ոչ այլ ինչ: Գորտէլիոյ Հայերը կանոնաւոր դպրոց չունէին. անցեալ տարւոյ սկիզբներն այցելութեան մ'առթիւ՝ տեսայ որ մանուկներն եկեղեցւոյ վերնատունը ժողոված կը սորվէին իրենց դասերը. իսկ այսօր ուրոյն շէնքի մը, կանոնաւոր վարժարանի մը մէջ հաւաքուած կը պարապին ուսմանց: Վարժարանիս ճակատը հաստատուած մարմարիոն քարը կը ցուցընէ մեզի այն կրթասէր անձանց անունններն, որոնք դպրոցիս կառուցման նպաստելով, բարեգործութեան գեղեցիկ օրինակ մը թողուցած են յաջորդաց: Շէնքին վայրը նուիրած է Իփլիքճեան ընտանիքը (Միհրան էֆ. Իփլիքճեան), իսկ շէնքը կառուցանել տուած է Աւետիքեան ընտանիքը (500 օսմ. ոսկի նուիրելով): Ահա վարժարանին ճակատը դրուած յիշատակարանին պատճէնը.

## ՍԱՀԱԿԵԱՆ — ՎԱՐԴՈՒՀԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ԵՐԿՍԵՌ ՎԱՐԺԱՐԱՆՍ ԿԱՌՈՅՑ ԱՒԵՏԻՍ Ս. ԱՒԵՏԻՔԵԱՆ Ի ՅԻՇԱՏԱԿ ԻՒՐ ՀԱՆԳՈՒՑԵԱԼ ԾՆՈՂԱՑ ԲԱՐԵՀԱՄԲԱՒ ՍԱՀԱԿ ԱՒԵՏԻՔԵԱՆԻ ԵՒ ՎԱՐԴՈՒՀԻ ՍՈՒԼԹԱՆ Ս. ԱՒԵՏԻՔԵԱՆԻ ԾՆԵԱԼ ՅԱԿՈԲԵԱՆ 1897 ՕԳՈՍՏՈՍ 1.

*Վարժարանիս շէնքն է քարաշէն, երկու յարկով խուրաքանչիւր յարկ ունի սրահ մը եւ երկու դասարան։ Վարի յարկը մանչերու, իսկ վերինն աղջկանց յատկացուած է։ Աշակերտաց ընդհանուրին թիւը 80ը կ'անցնի. Մեծ յոյս կայ որ այս թիւն երթալով պիտի աւելնայ, որովհետեւ այն ընտանիքներն, որոնք դպրոցի պակասութեան համար ստիպուած էին իրենց զաւակունքը Զմիւռնիա ղրկել, այսուհետեւ պէտք պիտի չունենան քաղքին դպրոցներուն, միայն թէ նորաշէն վարժարանս պահէ միշտ կանոնաւոր ընթացք մը, որոշ ծրագրի եւ աչալուրջ հսկողութեան ներքեւ շարունակէ իւր կեանքը։*

*Ե. Ասկէ քանի մը տարի յառաջ գիւղիս Հայերը ստիպուած էին իրենց ննջեցեալներուն մարմինը Զմիւռնիա իջեցընել եւ Մեծ գերեզմանոցը թաղել, սակայն այսօրս՝ շնորհիւ Պալեօզեան Կարապետ էֆ.ի ունին իրենց սեպհական գերեզմանոցը։ Գերեզմանոցս կը գտնուի Ալայ-Պէյ անուանեալ գիւղակին կռնակը, ապառաժուտ լերանց առջեւ եւ եկեղեցիէն հետիոտն կէս ժամ հեռաւորութեամբ։ Գերեզմանոցս շրջապատեալ է քարաշէն որմերով, առաջակողմն երկաթեայ վանդակաձեւ դուռ մը հաստատուած է, որ միշտ փակ կը մնայ եւ ի հարկին միայն կը բացուի։ Դրանս ճակատը հաստատուած է մարմարիոն քար մը հետեւեալ արձանագրութեամբ։*

"Գերեզմանատունս գնեալ եւ պարսպապատեալ ծախիւք Վսեմ. Կարապետ Էֆ. Պալեօզեանի ի յիշատակ սիրելի ծնողացն Մարտիրոսի եւ Եղիսաբեթի նուիրեցաւ յազգայնոց Գօրտէլիոյ յամի Տեառն 1891 Յունվար 1":

Գօրտէլիոյի մէջ բնակութիւն հաստատած են նաեւ 10 տուն կաթողիկեայ Հայք, որոնք կը պատկանին Մխիթարեան Հարց ժողովրդապետութեան։

## 3.

### Գարաթաշ.

Գարաթաշ անունն իսկ մատնանիշ կ'ընէ թէ ինչպիսի՛ վայր մը շինուած է գիւղս, ապառաժուտ տեղ մը։ Զմիւռնիոյ հարաւ-արեւմտեան կողմը տարածուած լեռնակներուն վրան եւ ստորոտը՝ ծովափին առջեւը կարգաւ շինուած են տներ ու տնակներ, որոնք տեղւոյն դրից համաձայն այլ եւ այլ անուններով զանազան գիւղերու բաժնուած են։ Այս գիւղերուն մէջ քաղքին ամենամերձաւորն է Գարաթաշը, գրեթէ քաղքէն հետիոտն քառորդ ժամու հեռաւորութիւն ունի. իսկ նաւահանգստէն փոքրիկ շոգենաւերն 10 վայրկենի մէջ կը հասնին գիւղիս նաւամատոյցը. ցամաքի վրայէն Կէօզ-Թէփէ գացող Թրամվէյն ալ կ'անցնի գիւղիս առջեւէն, որոնցմով երթեւեկութիւնը մեծապէս դիւրինցած է։ Զոր ու քարուտ լերանց հողին վրայ շինուած տները գեղեցիկ տեսք մը կ'ընծայեն, միայն անարուեստ խորտուբորտ աստիճաններէն վեր ելլելը, շէնքերու յարգը քիչ մը կը նուաղեցընէ։ Գիւղիս բնակչաց մեծագոյն մասը Հայ եւ Հրեայ են։

Ա. Գարաթաշի Հայք ունին իրենց սեպհական եկեղեցին, երկսեռ վարժարանն, ուրոյն մանկանց վարժոց մը, զատ թաղական խորհուրդ եւ

Միայուն քահանայ մը։ Նաւամատոյցէն ելլելով քանի մը քայլ դէպ ի արեւմուտք առնելէն ետքն՝ մեր առջեւը կ'ելլէ աստիճան մը, որուն վրայէն վեր ելած ժամանակ կէս ճամբուն վրայ կը տեսնենք




ԳԱՑԺԱՌԱԿԵՐԳՈՒԹԻՒՆ:

եկեղեցի մը, դիմացն ալ վարժարանի շէնքը։ Եկեղեցիս շինուած է ապառաժներու վրայ, տեղն ու դիրքը վեհութիւն կու տան տաճարիս. իսկ արտաքուստ պարզութիւն մը կը տիրէ ամբողջ շէնքին վրայ։ Առաջակողմը չորս փայտաշէն սիւներ (ծեփով

պատեալ) կանգնուած են, որոնք վերնատան դուրս ելած մասը վեր կը բռնեն: Ետեւն աջ ու ձախ՝ երկու թեւերու նման դուրս ելած կը տեսնուին աւանդատանց մասերն, որոնք խաչաձեւ կերպարանք կու տան եկեղեցւոյ շէնքին: Եկեղեցիս արտաքուստ չունի բնաւ արձանագրութիւն, միայն վերնատան ճակատը գրուած է 1863, որ իւր շինութեան թուականն է: Ի ներքուստ նմանապէս գիւղական եկեղեցեաց պարզութիւնն կը տեսնուի. ունի երեք խորան՝ մէկ կարգի վրայ, աւագ խորանը՝ դէպ ի պարտէզ դուրս ելած՝ կիսաբոլորակ վայրի մը մէջ շինուած է եւ նուիրեալ է Քրիստոսի Պայծառակերպութեան. աջ ու ձախ գտնուած խորաններուն մին նուիրուած է Ս. Պօղիկարպոսի եւ միւսն Ս. Նիկողայոսի. աւագ խորանի ճակատը գրուած կը կարդանք “Խնդրեցէք եւ տացի ձեզ„: Եկեղեցւոյ կամարաձեւ փայտաշէն ձեղունը ծեփով ծածկուած է եւ պարզ ներկով ներկուած, իսկ յատակը փայտով գոցուած: Դասին վրայ կը տեսնուին երկու դուռ, որոնք աւանդատունները կը հանեն: Ձախակողմեան աւանդատան մէջ զետեղուած է մկրտարանն, որուն մարմարակուռ աւազանին առջեւը քանդակուած է հետեւեալ արձանագրութիւնը.

“Պոլիս Բերա Տոլապտէրցի Հօճա օղլու Յարութիւն որդի սափրիչ Յակոբին յիշատակ է այս սբ. յաւազանս Իզմիրի գուղն Քարաթաշ ամենաբըրկիչ սուրբ եկեղեցւոյ յամի տեառն 1872 Յուլիս 10„:

Բ. Այս քանդակեալ գրութենէն զատ եկեղեցիս չունի ուրիշ կարեւոր արձանագրութիւն մը. եկեղեցւոյ որմերուն վրայ կախուած քանի մը պատկերներ ալ կան, որոնցմէ երկուքին յիշատակարանն միայն օրինակել բաւական կը համարինք:

“Ընծայ է պատկերս Կեսարիյա ի գեղջէն Յեվքարացի Գալուստեան Օհանի որդի Ներկագործ Դատուր իւր ձեռօք նըկարեաց զայս պատ-

կերս Խայատաշի սուրբ Կարապետ եկեղեցւոյն եւ իւր ծնողացն եւ համայն ննջեցելոցն հոգւոյն. 1868 Յունիսի 20„ (Պատկեր Խաչելութեան.)։

"Թոդաթցի դերձակ Կարապետի որդի Պօղոս 16 Յուլիս 1873„ (Պատկեր Մկրտութեան Քրիստոսի.)։

Եկեղեցիս նուիրեալ է Պայծառակերպութեան Քրիստոսի, եւ Վարդավառի օրն հոս դիմող բազմութեան առջեւ կը կատարուի իւր տարեկան տօնը։ Ունի երկրորդ անուն մ'ալ՝ Ս. Կարապետ (գլխադիր), որուն պատկերը դասին առջեւը կանգնուած, արծաթեայ զանազան նուէրներով զարդարուած, իբր ուխտատեղի Ս. Կարապետի մեծ յարգ ունի ժողովրդեան մէջ։

Եկեղեցւոյ շուրջը պատող պարտէզին մէկ մասը՝ յանցելումն իբր գերեզմանատուն կը գործածուէր. մինչեւ 1889 թուական գերեզմանաքար կը տեսնուի. իսկ այժմ քաղաքին մեծ գերեզմանոցը կը թաղուին Գարաթաշի Հայոց ննջեցեալները։ Պարտէզիս մէջ գտնուած գերեզմանաքարերն ո՛չ այնչափ հին թուական մը չունին, 1860էն ասդին են շիրիմներու թուականները։

Գ. Եկեղեցւոյ հիւսիսային կողմը շինուած է երկսեռ վարժարանը, հասարակաց փողոցով մը միայն բաժնուած եկեղեցւոյ պարտէզէն։ Վարժարանիս դիրքն ու տեսքը շատ գեղեցիկ է, արդէն նաւամատոյցէն՝ լերան վրայ շինուած տներուն ակնարկ մը նետած ատեն՝ վարժարանիս շէնքը նախ մեր մտադրութիւնը կը գրաւէ՝ իւր բարձրադիր տեսքովն։ Վարժարանիս դրան ճակատը հաստատուած է հետեւեալ յիշատակարանը.

"Վարժարանս այս Վարդանեան ի հիմանց կառուցաւ արդեամբք Զմիւռնիոյ եւ Գարաթաշի բարեսէր ազգայնոց եւ ի մասնաւորի ծախիւք հարազատացն Կարապետ էֆէնտի եւ Մատթէոս էֆէնտի Պալթօզեանց ի գահակալութեան օգոստա-

փառ. Սուլթան Համիտ Բ. կայսեր օսմանեան պետութեան. Ցամի Տեառն 1890 եւ ի թուին Հայոց 4382 Մայիս 1. Գարաթաշ:„

Վարժարանիս շէնքը գետնայարկէ եւ երկրորդ դստիկոնէ կը բաղկանայ. երկրորդ յարկը կը գործածուի իբր դպրոց. ունի դիմացէ դիմաց չորս խուց, միջավայրը սրահ մը: Խուցերու երկուքն յատկացուած են մանչերու, երկուքն աղջկանց: Աշակերտաց թիւն միշտ նոյն չէ, երբեմն աւելի՝ երբեմն պակաս, 100—110ի կը հասնի, անցեալ տարի մանչերու թիւն էր 64, իսկ աղջկանց 47. այս տարի առաջիններուն թիւն է 40, վերջիններունը 65: Ունին երկու ուսուցիչ եւ երկու վարժուհի, բայց ասոնց թիւն ալ երբեմն աւելի եւ երբեմն պակաս կ'ըլլայ:

Վարժարանէս զատ ունին Գարաթաշի Հայք առանձին Մանկապարտէզ մը երկսեռ տղայոց համար, որոնք զատ շէնքի մը մէջ նախնական կրթութիւն կ'ընդունին, ասոնց թիւն ալ կը հասնի 60—70:

Գարաթաշի գիւղին Հայոց թիւը 250 տնէն աւելի կը համարուի, մերձակայ գիւղերու Հայերն ալ առնելով, ինչպէս Սալահանէի, Քարանթինայի, ուր չկայ եկեղեցի եւ դպրոց, ամբողջին թիւը կը հասնի 320 տուն:

Գիւղիս էրիկ մարդոց մեծագոյն մասին գործը կը գտնուի քաղքին մէջ, որոնք երթեւեկութեան միջոցներու առատութեան համար բնաւ դժուարութիւն չեն քաշեր՝ ժամանակին իրենց գործին գլուխն անցնելու եւ նոյնպէս ժամանակին իրենց ընտանեաց քովը գտնուելու:

## 4.

### Կէօզ—Թէփէ.

Կէօզ-Թէփէ անուանեալ գիւղս Զմիւռնիոյ հարաւ-արեւմտեան կողմը տարածուող լեռնաբլու-

րակներուն վրայ եւ ստորոտը ծովուն առջեւը շինուած է։ Գիւղիս միջավայրը բարձրացող եւ միագագաթ լեռնակէն առեալ՝ տեղս անուանուած է Կէօզ-Թէփէ։ Առաջակողմը տարածուած է ծովախորշը, իսկ կռնակը բարձրացած են բլրակներ՝ բարձր ու ցած, որոնց վրայ աճող ձիթենւոյ անտառակներու եւ այգիներու կանանչութիւնը սիրուն տեսք մը կու տան տեղւոյն։ Հետիոտն մէկ ժամէն աւելի հեռաւորութիւն ունի քաղքէն. սակայն ցամաքի վրայէն երկձի կառքերն եւ թրամվէյներն, ինչպէս նաեւ ծովու վրայէն փոքրիկ շոգենաւերն՝ այս հեռաւորութիւնը կը կարճեն եւ երթեւեկութիւնը մեծապէս կը դիւրացընեն։ Գիւղիս բնակիչներուն մեծագոյն մասը Յոյն է, որոնց ունեցած բարձրադիր եկեղեցին, իւր կրկին աշտարակովն, գմբէթովն ու տեսքովը կը տիրէ շէնքերուն վրայ եւ ծովուն վրայ գտնուողին մտադրութիւնը կը ձգէ իրեն։

Հայք՝ ի մասնաւորի հարուստ դասակարգէն մաս մը, գիւղս ամառնային օդափոխութեան վայր ընտրած են եւ ունին իրենց սեպհական երկիրները, տներն ու պարտէզները։ Սակայն թուերնին շատ նուազ է, ամառ ժամանակ իբր 25—30 ընտանիք կը հաշուին, իսկ ձմեռն մէկ քանի ընտանիք միայն կը մնան։ Ունին փոքրիկ քարաշէն մատուռ մը, շրջապատեալ պարտէզով մը, կառուցուած 1870ին[1] եւ նուիրեալ Ս. Երրորդութեան։ Պարտէզին դրան վրայ, եկեղեցւոյ առաջակողմը, շինուած է զանգակատան ցած աշտարակն, որ իւր ձեւովն եւ զանգակովն՝ տեղւոյն սրբավայր ըլլալուն միակ նշանն է։

Պարտէզին դրան ճակատը, որ կը ձեւացընէ

---

[1] Եկեղեցւոյս շինութեան թուականն գտած ենք "Տեղեկագիր Ազգային վարչութեան Զմիւռնիոյ" անուն տետրին մէջ։ Տպ. Մամուրեան. 1887։

միանգամայն քառանկիւն ղանգակատան մէկ կամարն՝ գրուած է հետեւեալը.

“1886. Յիշատակ Կարապետ Մ. Թէքպըրըքեան Յունիս 1„:




Ս. ԵՐՐՈՐԴՈՒԹԻՒՆ:

Աշտարակիս շինութեան յիշատակարանն է այս. եկեղեցին չունի առանձին արձանագրութիւն մը, ոչ արտաքին երեսն եւ ոչ ներսը. միայն որմերէն կախուած իւղաներկ պատկերներու մէկ երկուքն ունին յիշատակարաններ, որոնցմէ միոյն թուականը կը ցուցընէ թէ ուրիշ տեղէ փոխադրուած է հոս:

«Բանին կենաց բարցօղ եղեր սուրբ Կոյս վասն մեր բարեխօս լեր. յիշատակ եմ Աֆիոն Ղարահիսարցի մահտեսի Յակոբեան հանգուցեալ Օհանի որդի չիլինկիր մահտեսի Յակոբն. վասն ամենայն հոգւոցն իւր ննջեցելոց: 1858 Մայիս 15»: (Աստուածածին՝ Յիսուս Մանուկը գիրկը):

«Յիշատակ է Կէօզ-Թէփէյու սրբոյ Երրորդութեան եկեղեցւոյ Յ. Ամիրաեան 1870»:

Ամառնային գիւղագնացութեան վայր մ'ըլլալով, տակաւին մնայուն հոգեւոր պաշտօնեայ մը չէ որոշուած տեղւոյն համար: Տէրունական օրերն եւ ի հարկին՝ Զմիւռնիայէն քահանայ մը կու գայ եւ եկեղեցական պաշտամունքը կատարելէ եւ ժողովրդեան հոգեւորական պիտոյքը հոգալէ ետքը կը դառնայ իւր տեղը: Իսկ մատուռը կը մնայ պահապանի մը հսկողութեան ներքեւ, որ կը բնակի պարտէզին մէկ անկիւնը շինուած տան մէջ: Մատուռէս զատ չկայ յիշատակելի բան մը, ոչ դպրոց, ոչ գերեզմանոց:



# ԱԶԳԱՑԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Ա. Գալէմքեարեան Հ. Գրիգորիս Վ., Ուսումնասիրութիւնք Լեհահայոց դատաստանագրոյն. 1. Փիշոֆ, Լեհահայոց հին իրաւունքը: 2. Գուլէր. Իրաւունք Հայոց: 1890: 8° Երես 85+59: Ֆր. 1.25

Բ. Մէնէվիշեան Հ. Գաբրիէլ, Ազգաբանութիւն ազնուական զարմին Տիւզեանց: 1890: 8° Երես 50 (պատկերազարդ:) Ֆր. 1.—

Գ. Տաշեան Հ. Յակովբոս, Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին եւ ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց: 1891: 8° Երես ԺԱ+159: Ֆր. 1.25

Դ. Դեմետրիոս Տանի Արեւելեան Հայք ի Պուքովինա: Թրգմ. Հ. Գ. Վ. Գալէմքեարեան: 1891: 8° Երես 79: Ֆր. —.85

Ե. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ վարուց Աղեքսանդրի: 1892: 8° Երես Դ+272: Ֆր. 3.—

Զ. Աւպէր Տըվլէ եւ Գ. Փիսոն, Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1892: 8° Երես 82: Ֆր. 1.—

Է. Մառ Նիկ., Ամառնային ուղեւորութենէ ընդ ի Հայս: Թրգմ. Ոսկիփոս Անոփեան: 1892: 8° Երես 89: Ֆր. 1.25

Ը. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ: Հտ. Ա.: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: 8° Երես Ժ+51: Ֆր. 1.—

Թ. Գալէմքեարեան Հ. Գրիգորիս Վ., Պատմութիւն հայ լրագրութեան: Հտ. Ա. 1794—1860: 1893: 8° Երես 232 (Լուսանկարով): Ֆր. 2.50

Ժ. Կոնիբիր Փր. Կ., Քննութիւնք գրոց Դաւթի Անյաղթի: Թրգմ. եւ յաւ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: 8° Երես Է+92: Ֆր. 1.25

ԺԱ. Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ 1680—1779: 1893: 8º Երես՝ Ժ+533 (1 զնկատիպ.): Փր. 4.50

ԺԲ. Խաչաթեան Գր., Զենոբ Գլակ, համեմատական ուսումնասիրութիւն: 1893: 8º Երես՝ 78: Փր. 1.—

ԺԳ. Տէր-Մովսիսեան Փարսադան, Հայ գիւղական տունը: Թրգմ. Հ. Բ. Վ. Պիլէզիկճեան: 1894: 8º Երես՝ 103 (6 տախտակ՝ 55 պատկ.): Փր. 2.—

ԺԴ. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ. Հտ. Բ. կամ Յաւելուած: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1894: 8º Երես՝ ԺԱ+43: Փր. 1.—

ԺԵ. Տաշեան Հ. Յ. Վ., Ուսումնասիրութիւնք հայերէն փոխառեալ բառից: Ա. Հ. Հիւպշման, Սեմական փոխառեալ բառեր հին հայերէնի մէջ: Բ. Փրօքէլման Կ., Յունական փոխառեալ բառեր հայերէնի մէջ: Գ. Հ. Հիւպշման, Հայկական Յատուկ անուանք: 1894: 8º Երես՝ 9+145: Փր. 2.—

ԺԶ. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Մատենագրական մանր ուսումնասիրութիւնք: Հտ. Ա. Ա—Զ: 1895: 3º Երես՝ ԺԲ+294: Փր. 3.60

ԺԷ. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Հայկական աշխատասիրութիւնք հայագէտ Պ. Փէթթէրի, ի մի ամփոփուած եւ թարգմանուած հանդերձ ծանօթութեամբք: 1895: 8º Երես՝ 202: Փր. 2.50

ԺԸ. Տիռրեան Կ., Սեւ ծովու ռուսական եզերքը: 1895: 8º Երես՝ 192: Փր. 2.—

ԺԹ. Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Դրանսիլուանիոյ Հայոց Մետրապոլիսը կամ Նկարագիր Կերլա Հայաքաղաքի ի գիր եւ ի պատկերս: 1896: 8º Երես՝ Թ+352: Փր. 3.60

Ի. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Վարդապետութիւն առաքելոց անվաւերական կանոնաց մատեանը, Թուղթ Յակոբայ առ Կոդրատոս եւ Կանոնք Թադէի: 1896: 8º Երես՝ Թ+442: Փր. 6.—

ԻԱ. Տոմաշէկ Վ., Սասուն եւ Տիգրիսի աղբերաց սահմանները: Պատմական եւ տեղագրական հետազօտութիւն: Մասն Առաջին՝ Պատմական տեղեկութիւնք Սասնոյ վրայ: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1896: 8º Երես՝ Է+62: Փր. 1.—

ԻԲ. Կարրիեր Ա., Աղբիւրք Մովսէս Խորենացւոյ Պատմութեան մէջ. Թրգմ. Հ. Գաբրիէլ Վ. Մէնէվիշեան: 1897. 8° էջ ԺԶ+107: Ֆր. 1.50

ԻԳ. Ցովհաննեան Հ. Ղ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի վրայ: Ուսումնասիրութիւնք եւ քաղուածներ, Մասն Ա. Ռամկօրէն մատենագրութիւնք: Տետր Ա: 1897, 8° էջ Ը+272: Ֆր. 4.—

ԻԴ. Ցովհաննեան Հ. Ղ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի եւն: Տետր Բ: 1897: 8° էջ Ա—Ը+273—522: Ֆր. 3.—

ԻԵ. Գելցեր Հ., Համառօտ պատմութիւն Հայոց: Թրգմ. Հ. Գր. Վ. Գալէմքեարեան: Յաւելուածք թարգմանչին՝ 1. Ցանկ 1895—1897 Հայոց կոտորածներու առթիւ լոյս տեսած գրքերու: 2. Գաւազանագիրք Կաթողիկոսաց եւ Պատրիարքաց Հայոց: 1897 8° էջ Ը+130: Ֆր. 1.50

ԻԶ. Մենեվիշեան Հ. Գաբրիէլ Վ., Գիրք (կամ յօդուած) գրելու արուեստը: Նորուս հեղինակներուն ուղղեալ քանի մը կարեւոր ակնարկութիւններ: Յաւելուած՝ Գիրք կարդալու արուեստը: 1898: 8° էջ Է+123: Ֆր. 1.25

ԻԷ. Խալաթեան Գր., Մ. Խորենացու նորագոյն աղբիւրների մասին քննադատական ուսումնասիրութիւնք: 1898: 8°, 56 էջ: Ֆր. 1.—

ԻԸ. Տաշեան Հ. Ց., Ակնարկ մը հայ հնագրութեան վրայ: Ուսումնասիրութիւն Հայոց գրչութեան արուեստին: (10 զնկատիպ պատկերով): 1898: 8° ԺԱ+202 էջ: Ֆր. 2.50

ԻԹ. Դաղբաշեան Յ., Փաւստոս Բիւզանդացի եւ իւր պատմութեան խարդախողը: Մ. Խորենացու աղբիւրների ուսումնասիրութիւն: 1898, 8' 175 էջ: Ֆր. 2.50

Լ. Մսերեանց Լ., Հայերէն բարբառախօսութիւն: Թրգմ. ի ռուսերէնէ Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1899, 8° Երես՝ Զ+26: Ֆր. —.50

ԼԱ. Քօսեան Հ. Ց., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Ա. Զմիւռնիա եւ Հայք: 1899: 8° Երես՝ ԺԲ+369: Ֆր. 5.—

---

ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ԼԲ.

# ՀԱՅՔ
# Ի ԶՄԻՒՌՆԻԱ ԵՒ Ի ՇՐՋԱԿԱՅՍ

ՀԱՏՈՐ Բ.

## ԶՄԻՒՌՆԻՈՅ
## ՎԻՃԱԿԻՆ ԳԼԽԱՒՈՐ ՔԱՂԱՔՆԵՐՆ ԵՒ ՀԱՅՔ

ՀԵՏԱԶՕՏՈՒԹԻՒՆ
ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԵԱՆՑ ԵՒ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆԱՑ

ԳՐԵՑ
Հ. ՅԱԿՈԲ Վ. ՔՕՍԵԱՆ
Ի ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ

*15 ՊԱՏԿԵՐՈՎ*



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1899.

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ԼԸ.

## ՀԱՅՔ Ի ԶՄԻՒՌՆԻԱ ԵՒ Ի ՇՐՋԱԿԱՅՍ

ՀԱՏՈՐ ԵՐԿՐՈՐԴ

## ԶՄԻՒՌՆԻՈՅ

## ՎԻՃԱԿԻՆ ԳԼԽԱՒՈՐ ՔԱՂԱՔՆԵՐՆ ԵՒ ՀԱՅՔ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1899.

# ՀԱՅՔ

# Ի ԶՄԻՒՌՆԻԱ ԵՒ Ի ՇՐՋԱԿԱՅՍ

ՀԱՏՈՐ Բ.

## ԶՄԻՒՌՆԻՈՅ

## ՎԻՃԱԿԻՆ ԳԼԽԱՒՈՐ ՔԱՂԱՔՆԵՐՆ ԵՒ ՀԱՅՔ

ՀԵՏԱԶՕՏՈՒԹԻՒՆ

ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԵԱՆՑ ԵՒ ՑԻՇԱՏԱԿԱՐԱՆԱՑ

ԳՐԵՑ

Հ. ՅԱԿՈԲ Վ. ՔՕՍԵԱՆ

Ի ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ

*16 ՊԱՏԿԵՐՈՎ*



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1899.

ՅԱՂՄԵՓԵՅ

ԱԶՆԻՒ ՊԱՅԱԶԱՏԻ

ՏՈՀՄԻՆ

ԵՈԽՍՈԽՓԵԱՆՑ

ԵՒ

ԱԶՆՈՒԱԶԱՐՄ ԿՈՂԱԿՑԻՆ

ՓՈԽԼԻԱՆԷ Յ. ԵՈԽՍՈԽՓԵԱՆՑ

ՋԵՐԿԱՍԻՐՈՒԹԻՒՆՍ ԶԱՅՍ

ՆՈՒԻՐԷ

ՀԵՂԻՆԱԿՆ

# Ա Յ Դ

*Մինչ Զմիւռնիոյ Ազգայնոց վրայ սկսած հետազօտութիւնս աւարտած էի, կրօնակից եղբայրներէս մէկէն քաջալերութիւն գտնելով՝ նոր գաղափար մ՚ալ ունեցայ, այսինքն՝ Զմիւռնիոյ վիճակին գլխաւոր քաղաքաց մէջ հաստատուած Հայոց վրայ ալ քանի մը տեղեկութիւն հաւաքել:*

*Սոյն գաղափարն իրագործելու նպատակաւ՝ դիմեցի նախ տեղւոյս Հայոց Առաջնորդարանն, որմէ հետեւեալ յանձնարարական թուղթն ընդունելով՝ մեկնեցայ Այտըն եւ ապա ուրիշ կողմեր:*

*“Զմիւռնիա 22 Յուլիս 1898: — Արժանապատիւ Ս. Եղբարք Քահանայք Ս. Եկեղեցեաց Հայոց Ըօտէմիշի, Սէօքէի եւ այլն: — Վիեննայի Մխիթարեան Միաբանութենէն Հայր Յակոբ Վ. Քօսեանց սոյն մեր գրով Ձեր կողմը կու գայ ազգային գիտական հետազօտութիւններն եթէ կան. ուսումնասիրելու:*

*Ուստի որոշմամբ Ազգ. Քաղաքական ժողովոյ կը յանձնարարեմ Ձեզ ամեն կերպով դիւրացընել առ Նորին Եղբայրութիւն ամեն միջոցներ երբ հարկ համարի դիմել Ձեզ. տարակոյս չունիմ թէ հիւրասիրութեան մէջ չպիտի թերանայք: — Մնամ աղօթարար Առաջնորդական Տեղապահ՝ Տէր Յովհ. Քահ. Մինասեան:„*

*Այսպէս Այտըն, Նազիլի, Տէնիզլի, Ըօտէմիշ, Պայընտըր, Սէօքէ, Գուշ-Ատա, Մանիսա. Գըրգաղաճ եւ Գասապա քաղաքները շրջելով որչափ որ ժամանակն եւ պարագաները թոյլ տուին, ջանացի համառօտ տեղեկութիւն մը քաղել սոյն քաղաքաց մէջ հաստատուած Ազգայնոց վրայ: Արդարեւ շատ բան մանրամասն քննութեան պէտք ունէր, զոր կատարել կարի դժուարին էր. այն կրնայ միայն մանրամասն հետազօտութեամբ զբաղիլ, որ տեղացի է. անցաւորի մ՚առջեւ այլ եւ այլ*

նկատումներ կ՚ելլեն կը կանգնուին, զորս միշտ ի նկատի առնելով պիտի փոխէ իւր քայլերն . . . :

Վերոյիշեալ քաղաքաց վրայ խօսած ժամանակ՝ նախ ընդհանուր տեսութիւն մ՚ըրած ենք իւրաքանչիւր քաղաքի վրայ եւ ապա յառաջ բերած ենք Հայերն, իրենց ունեցած եկեղեցին, դպրոցները, գերեզմանոցը, գտնուած արձանագրութիւնները, կարեւոր գերեզմանաքարերը եւ յիշատակութեան արժանի տեսնուած առարկաները։

Իւրաքանչիւր տեղւոյն վերջն՝ իբր Յաւելուած յառաջ բերած ենք Տ. Մակար Ծ. Վարդապետի այս կողմերը շրջած ժամանակ (1878) հաւաքած տեղեկութիւնները, որ հրատարակուած են Արեւելեան Մամլոյ 1879 տարւոյ թուերուն մէջ, որոնցմով բանասէրք կրնան համեմատել անցեալը ներկային հետ:

Զմիւռնիա, 10/22 Յունուար 1899:

ՀԵՂԻՆԱԿՆ



# ՑԱՆԿ

---

# ԶՄԻՒՌՆԻՈՅ ՎԻՃԱԿՆ ԵՒ ՀԱՅՔ

## ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

### *Այտըն:*

### 1.

*Ընդհանուր տեսութիւն:*

Այտըն կը գտնուի Զմիւռնիոյ հարաւ-արեւելեան կողմը. 60 հազարամետր հեռաւորութիւն ունի Զմիւռնիոյ երկաթուղւոյ կայարանէն. գրեթէ $3\frac{1}{2}$—4 ժամուան մէջ կը հասնի Զմիւռնիայէն մեկնող շոգեշարժ կառախումբը Այտընի առջեւը։ Քաղքիս հիւսիս-արեւելեան կողմը բռնած է լեռանց գօտի մը եւ տարածուած են լեռնակներ, որոնց դիրքն ու ձեւը կասկածիլ կու տան, թէ յանցելումն բնութիւնը հանգիստ դադար չէ գտած այս կողմերը՝ հրաբղխային զօրութեանց պատճառաւ։ Առաջակողմը կը տարածուի ընդարձակ դաշտ մը, որուն մեծագոյն մասը բռնած են լայնածաւալ թզաստաններ, իսկ հեռուն՝ ձիու ընթացքով մէկ ժամու չափ՝ կը սահի կ'անցնի Մէնդրէս (Mendres) օձապտոյտ եւ միշտ պղտոր գետն, որուն աջ ու ձախ կողմերը բռնած են բամպակի արտերն, այգեստանք եւ մրգատու ծառերը։ Հողն աղէկ բարեբեր է. գրեթէ ամէն տեսակ արմտիք եւ ամէն եղանակի յատուկ բանջարեղէն յառաջ կը բերէ, որով երկրագործին թափած քրտինքներն ապար-

դիւն չեն մնար. առատօրէն կը վարձատրուի ամէն աշխատութիւն եւ վաստակ։ Ունի նաեւ ձիթենւոյ անտառակներ, նարնջի եւ լիմոնի ծառեր եւ զանազան վայրենի թփեր։ Քաղքին մէջ ջուրը առատ է, սակայն կլիման ոչ այնչափ գովելի. օդը ծանր է եւ տենդային։

Զմիւռնիայէն Տինէր գացող երկաթուղին ճիշդ քաղքին առջեւէն կ'անցնի, որով 30 տարի յառաջ եղած երթեւեկութեան դժուարութիւնները բոլորովին վերցուած են եւ երկրին բերքն ու պտուղները Զմիւռնիա իջեցընել կարի դիւրինցած եւ վաճառականութիւնն օգտուած։

Դարեր յառաջ նախկին Այտընը կ'անուանուէր Տրալէս (Tralles). Հռոմայեցւոց կայսրութեան ժամանակ Տրալէսի՝ Կեսարիա անունն ալ տրուած է. ինչպէս կը տեսնուի արձանագրութենէ մը, զոր Պապակոնստանդինոս անուն յոյնի մը "Տրալէս"[1] անուն երկասիրութեան մէջ կը տեսնենք։ Ահաւասիկ արձանագրութեան օրինակը.

## Nr. 147.

*Αὐτοκράτορι Καίσαρι Τραϊανῷ*
*Ἀδριανῷ σεβαστῷ σωτῆρι καὶ*
*κτίστῃ Καισαρίνῃ σεβαστῇ*

Ժամանակն՝ եւ ըստ երեւութին սոսկալի երկրաշարժ մ'այս նախկին քաղաքն, որ ընդարձակ լեռնադաշտի մը վրայ շինուած էր, երկուքի բաժնուած է եւ միջավայրն օձակոր ձոր մը ձեւացուցած։ Երկուքի բաժնուած լեռնադաշտին վրայ՝ տակաւին կան ի հնումն նշանաւոր Տրալէսի աւերակներու մնացորդները. Հեռուէն՝ կառախումբին Այտըն հասնելուն քառորդ ժամ մնացած՝ կը տեսնուին

---

[1] *Συλλογὴ Τραλλιανῶν Ἐπιγραφῶν, Μιχαὴλ Παππακονσταντίνου· Ἐν Ἀθήναις* 1895.

*սոյն աւերակներուն գլխաւոր մասերը, ինչպէս այժմ տեղացիներէն Իւչ Կէօզ ըսուած բարձրաձեւ կամարակապ եւ հաստահիմն Ամֆիթէատրոնի մը երեք գռներն, որոնք բնութեան սաստիկ հարուածնե-*



ՏՐԱԼԷՍԻ ԱՒԵՐԱԿՆԵՐԷՆ:

*րուն յաղթած՝ կանգուն մնացած են, եւ որոնց շինուածքին հաստատութեան վրայ կը զարմանայ մարդս. կարծես թէ միակտուր քարէ յօրինուած են: Եւրոպացի հնախոյզներ, հնութեան բեկորները յարգողներ՝ ի մէջ այլոց Հուման գերմանացի*

*Հնախօսը 1890ին սոյն լեռնադաշտը տեղ տեղ պեղելով, գտած ու հանած է հնութեան թանկագին յիշատակներէն՝ արձաններ եւ կոթողներ, որոնցմէ ամենապատուական կտորներն Եւրոպայի թանգարանները փոխադրուած են։*

*Երկուքի բաժնուած սոյն նշանաւոր լեռնադաշտն այժմ ձիթենիներով ծածկուած է, որոնց բուներուն եւ ճիւղերուն մէջէն ի հեռուստ կը տեսնուին աւերակաց մնացորդները, տեղ տեղ ալ փորուած փոսեր եւ այլ ոչինչ։ Իսկ ձիթենեաց շարքը կ'ընդհատէ միայն վերոյիշեալ խորունկ ձորն, զոր բարձանց վրայէն մարդս չի նշմարեր, մինչեւ որ չմերձենայ եզերաց առջեւ։ Ձորին մէջ մտնողն՝ առանց հիանալու տեղւոյն գեղեցկութեան վրայ, չ'ելլէր անկից։ Բնութիւնը տակաւ տակաւ գեղեցկացուցած է այս ձորը, որուն մէջտեղէն կը սողոսկի լեռներէն վազող եւ ստորոտներէն բղխող ջուրն. աջն ու ձախը ձիթենիներն եւ հովանաւոր ծառերը տարածած են իրենց հաստ արմատներն եւ մրրկայոյզ հովերուն սաստիկ բռնութենէն ազատ՝ մեղմիկ երկրէն հիւթ ծծելով, ժամանակին իրենց շահաբեր պտուղները կը պարգեւեն իրենց տէրերուն։ Իսկ ձորին երկու կողմը բարձրացած, կարծես երկուքի ճեղքուած պատերուն վրայէն՝ կախուած են դալարագեղ տնկեր, հոտաւէտ թուփեր եւ նոյն իսկ արմատաւոր ծառեր։ Ձորն զառ ի վայր դիրք մ'ունենալով՝ մարդիկ օգտակարապէս գործածել աշխատուած են այս դիրքը. տեղ տեղ ջրաղացքներ շինած են, որոնց բարձունքէն թափուող աւելորդ ջրերը՝ փոքրիկ ջրվէժներու նման՝ իրենց կարկաջասահ անոյշ ձայնն երկանաքարին ժխոռ ձայնին հետ խառնած՝ ձորին լռութիւնը կը խանգարեն։*

*Ձորին բերանը բաւական լայն եւ ընդարձակ է. առաջակողմը կը գտնուի փոքրիկ դաշտավայր մը, ուր լայնատարած ճիւղերով հաստարմատ հինաւուրց ծառեր՝ մատաղատունկ ծառերու հետ միա-*

ցած, իրենց հովանւոյն ներքեւ կը հրաւիրեն ժողովուրդը եւ օտարական այցելուները՝ ձորին օդը ծծելու եւ զովարար ջուր խմելու։ Զբօսանաց այս հովանաւոր վայրը կը կոչուի Փունար Պաշը՝ հոն բղխող պաղ, անոյշ եւ յստակ ջրոյ ակունքէն առեալ. սակէ՝ ամրան տաք օրերը՝ Այտընցին իւր խմելու ջուրը կը տանի տունը՝ կուժերով եւ փարչերով։ Այս հովանաւոր սիրուն ձորին երկայնութիւնը՝ գրեթէ կէս ժամու ճամբայ է ձիով, որուն ծայրը կանգնած է բարձրագլուխ՝ մարմարիոն քարի հարուստ լեռ մը, ստորոտը Խալքա Քէօյ անուն փոքրիկ գիւղը։

Զորին բերանը՝ աջ ու ձախ կողմերը շինուած է այժմեան Այտընը, որ կ'ըսուի նաեւ Ալ-շէհր Չէ-ոայ։ Բնութիւնը տեղւոյն բաժանումն ընելով՝ մարդիկ ալ այս բաժանման համաձայն իրենց բնակութեան վայրը բաժնել պատշաճ տեսած են. ընդհանրապէս ձորին աջ կողմը կը գտնուին տաճկաց եւ հրէից թաղերն, իսկ ձախ կողմը յունաց, հայոց եւ օտար ազգաց բնակութիւնները։ Այսպէս երկու մասի բաժնուած քաղաքը կապուած է քարաշէն երկու կամուրջներով. որոնցմէ մին կ'անուանուի Գուրանլըք Քէօփրիւ, երկրորդը՝ Նալըն Քէօփրիւ։ Առաջինն իւր նախնական ձեւին համեմատ՝ վրան գոց շինուած եւ մթին ըլլալուն պատճառաւ՝ ըսուած է Գարանլըգ քէօփրիւ. սակայն այժմ վրան բոլորովին բացուած է եւ միայն դիմացէ դիմաց մնացած շէնքերը կը ցուցընեն կամուրջին ժամանակաւ ունեցած վիճակը։ Երկրորդ կամուրջը՝ Նալըլի քաղաքը տանող ճամբուն վրայ շինուած ըլլալուն՝ Նալըլի քէօփրիւսիւ ըսուած է։

Այտըն կը նստէր ժամանակ մը կուսակալը. յընթացս ժամանակաց կուսակալն իւր աթոռը փոխադրած է Զմիւռնիա, եւ Այտընի կառավարութիւնն եղած է Մութէսարրֆութիւն (գաւառապետ)։ Այտընի բնակչաց թիւն է՝ շրջակայքը

գտնուած գիւղերն ու գիւղակներն ալ առնելով՝ 40.000. իսկ բուն քաղքին մէջ կը համարուին 18.000[1], որոնց մեծագոյն մասը կը կազմեն Մահմետականք (Զէյպէք, Գնչու, Չերքեզ, Եուրիւկ), ապա կու գան Յոյնք, Հրեայք եւ Հայք, կան աննշան թուով Իտալացի, Գաղղիացի, Անգղիացի եւ Աւստրիացի ընտանիքներ։

Մահմետականք ունին 22 մզկիթ, 10 դպրոց (Մէտրէսէ), որոնց մէջ առաջին տեղին կը բռնէ Իտտափէ անուանեալ դպրոցը՝ որ Տրալէսի բարձանց վրայ եւ հին քաղքին քարերով շինուած է. դըպրոցս տեսքովն ու դիրքովն Այտընի շէնքերուն առաջինը կրնայ ըսուիլ։ Այս վարժարանը կը յաճախեն նաեւ յոյն եւ հայ աշակերտներ։

Յոյնք Այտըն գտնուող քրիստոնեայ ազգաց մէջ ամենէն բազմաթիւն են, 600 տուն կը հաշուին, ունին երկու եկեղեցի, հիւանդանոց մը եւ երկու դպրոց. մայր եկեղեցին կ՚անուանուի Ս. Եորկի. երկրորդն՝ որ կը գտնուի հիւանդանոցին մէջ, կ՚ըսուի Ս. Ղարալամպոս։ Ընդհանրապէս վաճառականութիւնն իրենց ձեռքն է։

Այտընի Հրեայք գրեթէ ամենն ալ աղքատ են. ունին սինակոկ մը եւ դպրոց մը. երեք տարի յառաջ իրենց թաղին կէսն ամբողջովին այրելով՝ սինակոկ մը եւ դպրոց մ՚ալ հրոյ ճարակ եղան. այս օրս յաջողած են վերստին շինել իրենց տները եւ

---

1 Այտընի շրջակայքն գտնուած գիւղերն են. Իմամ քէօյ, ուր կայ ծծմբոյ, երկաթի ջերմուկ, Գօճակիւր, Սէրչէ քէօյ, Ումուրլու, Թէփէճիք, Չերքեզ քէօյ, Էմիր քէօյ, Ենի քէօյ, Ըշըգլը, Գատը քէօյ, Արապ գույուսու, Օսման Պիւքիւ, Քիւրտլէր, Ապտալլար, Ախար քէօյ, Գըզըլճա, Էքիզ տէրէ, Արապլը, Ջէյթըն, Տաղ էմիրի, Խօրօզ քէօյ, Կէրէնիչ, Գապանտըշ, Խալֆա քէօյ, Տօմալան, Պունար տէրէսի՝ ուր կայ մէկ հատիկ խմելու ջուր, Գայաճըգ, Պագլաճըգ, Մուսլուճա։

փողոցներու կանոնաւոր բաժանմամբ՝ աւելի ձեւաւոր թաղի մը տէր եղած են, որմէ զուրկ էր մոխիր դարձած նախկին թաղը։

## 2.

Այտընի Հայերն, Եկեղեցին, Գերեզմանաքարերով շինուած պարտէզին աստիճանները, Եկեղեցւոյ Ներքինը, Պատկերաց յիշատակարանները. Ներսը գտնուած գերեզմանաքարեր, Վարժարանը, Ընթերցարան, Ձեռագիր մատեանք, Գերեզմանոցն եւ գերեզմանաքարերու արձանագրութիւնները:

Ա. Վերագոյն՝ քաղաքին բաժանման վրայ խօսած ատեն՝ յիշեցինք Հայոց թաղին ծովին ձախ կողմը գտնուիլը, մերձենանք ուրեմն այս կողմն եւ ի մօտոյ ակնարկ մը նետենք։

Այտընի Հայոց բնակութեան վայրը՝ գրեթէ Յունաց եւ ուրիշ թաղերէն ալ անջատեալ, իր եկեղեցւովն եւ դպրոցովն առանձին թաղ մը կը ձեւացընէ։ Արեւելեան կողմը՝ ձիթենիներով զարդարուած՝ լեռնաբլրակին ճիշդ ստորոտն է. իսկ եկեղեցին եւ դպրոցը տներէն ալ բաժնուած, աստիճանաւոր բլրակին՝ բարձրավանդակի մը վրայ շինուած է։

Հայք իբր 350 տարի յառաջ գաղթած են յԱյտըն, եւ ի սկզբան անդ բաւական բազմաթիւ եղած են, կրնանք ըսել թէ 4—500 տնէ կազմեալ պատկառելի հասարակութիւն մ'էին. բայց տակաւ տակաւ շրջակայ քաղաքները ցրուելով, գլխաւորաբար շատերը Զմիւռնիա իջնելով, այս օրս հազիւ 40—50 տուն մնացած է։ Ունեցած են յանցելումն եկեղեցի մը որուն տեղ 1833ին կառուցած են այժմեան եկեղեցին։ Եկեղեցիս իւր բարձր դրից մէջ՝ շքեղ տեսք մ'ունի ծովին աջ ու ձախ կողմերը կառուցուած բարձր ու ցած շէնքերուն, նարինջաւոր պարտէզներուն վրայ կարծես թէ կը տիրէ. կռնակն

*ալ իրեն հովանի ունի աստիճանաւոր բլրակին վրայ աճող խուղաբեր հինաւուրց ձիթենիները։ Այս գեղեցիկ տեսարանն ունեցող բարձրաւանդակին վրայ ելլելու եւ եկեղեցին մտնելու համար՝ վրան կիսաբոլորակ մարմարակուռ եւ երկաթապատ սիրուն դռնէ մը մտնելու եւ քարաշէն՝ բաւական բարձր* (25) *աստիճաններէ վեր բարձրանալու է։ Դրանս ճակտին վրայ ակնարկ մը նետելով՝ կը տեսնենք հետեւեալ քանդակագրութիւնը, զոր մարմարիոն սպիտակ քար մը կը կրէ իւր վրան։*

*Ողորմութեամբն Աստուծոյ 1874:*
*Ի յաւերժ յիշատակ եւ ի հաւաստիս բարեպաշտութեան իւրոյ Ակնեցի Ճիհանեան Նիկողոս Աղայի որդի բարեպաշտօն Յարութիւն աղայն ծախիւք իւրով կառոյց զդուռնս եւ զսանդուղն որ հանէ ի գաւիթ սուրբ Աստուածածնի Եկեղեցւոյն, Որոյ յիշատակն օրհնութեամբ եղիցի:*

*Բ. Քարաշէն սանդուխին աստիճանները, կամ թէ ըսենք դրան սեմոց առաջին քարէն սկսեալ մինչեւ վերինը, շինուած են հինաւուրց շիրիմներու քարերով, որոնք բնականապէս երկայնութենէն երկուքի բաժնուած՝ կոփուած եւ զետեղուած են, ելլելն ու իջնալն ալ մաշեցուցած են քարերու վրայ քանդակուածները|, միայն տեղ այս տեղ, մանաւանդ անկեանց կողմերը կը տեսնուին տակաւին ոմանց վրայ թուականն, ոմանց վրայ անունն։*

*Դրան առջեւ կը տեսնենք հետեւեալը*

*Այս է տապան Գար*
*միր Հաղորդեցի*
*իշխանի որդի Անդ*
*րիեասին թվին ՌՃՀ*
*Թ.*

*Իսկ աստիճաններուն վրայ ամբողջ կարդացուած գերեզմանաքարերու թուականները են՝*

| | | | |
|---|---|---|---|
| ՌՃԼԵ | կէս քար | ՌՃՁԲ | կէս քար |
| ՌՃԽԶ | „ „ | ՌՃՂԱ | „ „ |
| ՌՃԿԶ | „ „ | ԱՀէնէցի | „ „ |
| ՌՃՀԹ | „ „ | | |

Գերեզմանաքարերով զարդարուած սանդուխէս վեր ելլելով՝ մեր առջեւը բարձրացած կը տեսնենք եկեղեցին։ Եկեղեցիս նուիրեալ է Ս. Աստուածածնի. շուրջը պատած է բաւական ընդարձակ պարտէզ մը, ուր կ'աճին աննշան թուով ձիթենւոյ ծառեր։ Շէնքն է քարաշէն. աւագ դրան առջեւ երկու սիւներու վրայ բարձրացած է գմբեթաւոր ծածկ մը, որ իբր զանգակատուն կը գործածուի, եւ ետեւի կողմը կիսաբոլորակ դուրս ելած է։ Եկեղեցին ունի երկու դուռ. աւագ դուռն եւ ձախ կողմը երկրորդ դուռ մը, առնցմէ զատ՝ նոյնպէս ձախ կողմը ունի աստիճանաւոր դուռ մը, կանանց վերնատունը մտնելու համար։ Աւագ դրան ճակատը հաստատուած է մէկ մետր երկայնութեամբ մարմարիոն քար մը հետեւեալ արձանագրութեամբ։

*Ողորմութեամբն աստուծոյ թվին ՌՄՁԲ օգստսի Լ: ի*
*ժամանակըս՝ Զ*
*սրբոյ երուսաղէմա. պատրիարգի: միանգամայն. եւ Զմռ-*
*նույս վերատեսուչ*
*տեառն գաբրիէլի. արքեպիսկոպոսի եւ զմիւռնիացոց:*
*Ջատագովութեամբն*
*ընկըսեցաւ հիմնամբ նորոգիլ սուրբ աստուածածնա*
*տաճար*
*ըս: հինգ խորանաւ արդեամբ հասարակ ժողովրդոց*
*եւ վիճակաց արանց եւ կանանց աւարտ եղեւ թվին*
*ՌՄՁԳ:*

---

*Բնական էր եկեղեցի փոքր երկու խորանաւ թվին ՌՁԼ:*

Ինչպէս արձանագրութիւնէս կը տեսնուի՝ առաջին եկեղեցին 1638 թուականին կառուցուած է. իսկ վերջինս 1833ին: Նոր եկեղեցւոյս հիմերն եւ պատերը, կանանց վերնատունն ըլլալու՝ թէ պարտէզին մէջ գտնուած սանդուխին աստիճան-




Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ:

ներն եւ թէ եկեղեցւոյ մէջ գտնուած սանդուխի աստիճանները շինուած են հին գերեզմանաքարերով: Կը զարմանայ մարդս կանանց վերնատունը հանող աստիճաններուն վրայ ոտք կոխած ժամանակ. սանդուխին աջ ու ձախը բարձրացած պա-

տերն եւ նոյն իսկ յարկը ծածկուած է տապանաքարերով, որոնց վրայ ժամանակ ժամանակ սպիտակ կիր զարնուած ըլլալով բոլորովին գոցուած են քանդակները։

Գ. Եկեղեցւոյ ներքինը պարզ է, բայց իւր պարզութեան մէջ ունի գեղեցկութիւն մը. ներքին մեծութիւնն է 13.80 մետր երկայնութիւն եւ 10.20 մետր լայնութիւն։ Միջավայրն՝ իրարմէ չափաւորապէս հեռու կանգնուած են՝ երկու կտորէ յօրինեալ մարմարիոն քարերէ չորս սիւներ, որոնց վրայ հաստատուած է կամարակապ ձեղունը. ձեղունին միջավայրն աւելի բարձր է, քան աջ ու ձախ կողմերունը։ Աւագ դրան վրայ դէպ ի ներս ցցուած է կանանց վերնատունը, որուն տակ հաստատուած են երկու սիւներ, վերոյիշեալ չորս սիւներուն ուղղութեամբ։ Բեմն ունի իննսուն հարիւրամետր բարձրութիւն եւ ամբողջը մարմարակուռ քանդակուած, նոյնպէս դասն յատակուած է մարմարիոն քարերով, բայց դասէն վար՝ եկեղեցւոյ յատակը ծածկուած է փայտով։ Բեմին վրայ բարձրացած են փայտակերտ երեք խորան. աւագ խորանը նուիրուած է Ս. Աստուածածնի, աջակողմեանը Ս. Գրիգոր Լուսաւորչի, իսկ ձախակողմեանը Ս. Գլխադիր։ Դասին ձախ կողմը կայ աւանդատուն մը, առանձին խորանով, եկեղեցւոյ ձախ որմին վրայ կամարաւոր տեղ մ'ալ կայ, որ ժամանակին խորան եղած կ'երեւայ, այս եւս ի նկատի առնելով, եկեղեցւոյ արձանագրութեան մէջ յիշուած հինգ խորաններու թիւը ամբողջացած կ'ըլլայ։

Դ. Եկեղեցին ի ներքուստ չունի որ եւ իցէ արձանագրութիւն. միայն հոս հոն կախուած՝ մոմլաթի վրայ նկարեալ պատկերներու ոմանց եզերքը կը տեսնուին յիշատակարաններ, զորս կը դնենք հոս։

Պատկեր գլխադիր, յաւանդատան «յիշատակ է պատկերս տէվէճի օղլու ստեփան էհլի

կիրակի օղլու մահտեսի ծերունի էհլի մարգրիտ սուրբ Աստուածածին եկեղեցւոյն, ՌՄՁԷ։„

Ծնունդ Յիսուսի յաւանդատան “յիշատակ է պատկերս Պամամճի յվ...ն մահտեսի Գէորգ սուրբ Աստուածածնայ..յն ՌՄՁԷ։„

Ս. Գրիգոր Լուսաւորչայ Խորանին պատկերին վրայ “յիշատակ է պատկերս տէր Վարդանին եւ իրիցկինոջն սրբուհիին դստերն մահտեսի մարիամին որդին մահտեսի պօղոսին սուրբ աստուածածնայ եկեղեցին ՌՄՂԱի։„

Տպեալ աւետարանի մը կողին վրայ եղած արծաթեայ խաչին վրայ “յիշատակ է Զարպխանաճի պարոն Յօհաննէսին 1258։„

Կան ուրիշ պատկերներ ալ որոնց Թուականն է ՌՄՀԵ. ՌՄԾԳ։

Ինչպէս վերագոյն ըսինք, եկեղեցիս հին շիրիմներու պատկանող քարերով շինուած է. այսպիսի քարեր չէ թէ միայն պատերուն մէջ, սանդուխներուն վրայ, այլ եկեղեցւոյ ամէն կողմը կը տեսնուին, աւանդատունը, խորաններու ետեւը, կամանց վերնատունը՝ աջ ու ձախ. ասոնցմէ մաքուր մնացածներն օրինակած ենք եւ աւելորդ չենք համարիր հոս յառաջ բերել։

ա) Այս է տապան
Բխեցի . . .
որդի այտ
ՌՃՁԹ:

բ) Այս է տապան
Շվանի ծօր
էցի Պօղոսի ո
րդի Գրիգոր
ին Թվն ՌՃ
ՁՁ·

---

ա) Խորանին ետեւը, կէսը սեղանին տակ։ բ) Եկեղեցւոյ մէջ։

գ) Այս է տապան Եկառղ
եցի մահսի Ցարոթ
ինի՝ որդի Գրիգորին
թն ՌԾՂԴ:

դ) Այս է տապան ափ
իօն Ղարայիսար
ցի Սհակի որդի մահ
տեսի Գեւորքն թվն Ռ
Ծ Ղ Ծին:

ե) Այս է տապան Կե
(ր)ղաթաղեցի
ծաղուրի զողա
կից Սիմարին թվն
ՌԾՂՋ:

զ) Այս է տապան Կարբեցի
տէր Մարկոսին թվին
ՌՄՋ:

է) Այս է տապան Սրա
շէնցի Գաբրիէ
լի որդի Սահակն
թվն ՌՄԸ:

Ե. Եկեղեցւոյ առաջակողմը, պարտէզին մէկ անկեան վրայ կը տեսնուի շէնք մը, որ իբր Վարժարան կը գործածուի։ Վարէն փողոցին վրայէն գլուխնիս վեր վերցընելով իւր բարձրութեան վրայ ակնարկ մը նետած ժամանակն, ճակտին վրայ կը կարդանք՝ Վարժարան Ս. Գրիգորի։ Շէնքը թեթեւ՝ փայտաշէն է, բայց իւր դիրքովը գեղեցիկ տեսք մ'ունի, բաց եւ օդաւէտ է։ Շէնքը կառուցուած է 1874ին, ունի ընդարձակ սրահ մը, երկու խուց, որոնցմէ մին կը գործածուի իբր գրոց ատենակ, երկրորդը ժողովատեղի թաղականաց, առոնց կից կը գտնուի քահանային կամ վարժապետին

գ) Կանանց վերնատունը։ դ) Խորանին առեւը։ ե) Աւանդատան մէջ։ զ) Եկեղեցւոյ մէջ կողմնակի դրան առջեւ։ է) Խորանին առեւը։

բնակութեան վայրը։ Վարժարանին ընդարձակ սրահին մէջ կը ժողովին աննշան թուով մանչ ու աղջիկ զաւակներ, որոնք Վարժապետի մը հսկողութեանը ներքեւ կ'անցընեն իրենց դպրոցական օրերը[1]։

Զ. Այորնցիք ունեցած են յանցելումն ընթերցարան մը, զոր յընթացս ժամանակաց՝ Նիւթական պիտոյից պատճառաւ գոցած են. վերջին տարիներս (1897)՝ Յովհաննէս էֆ. Մըսըրեան (ծննդեամբ Գըրգաղաճցի) փաստաբանը մէկ քանի երիտասարդաց գլուխն անցած կը բանայ դարձեալ սոյն ընթերցարանը։ Վերոյիշեալ Գրոց սենեակն, որուն դրան ճակատը գրուած է Ընթերցարան, ընկերութեան մատեանները պահելու համար կը գործածուի, որոնք առանձին դրադարանի մը մէջ շարուած, ընթերցասէր անձանց տրամադրութեան ներքեւ դրուած են։ Նախկին ընկերութենէ մնացած գրքերու մէջ կան քանի մը կտոր ձեռագիր գրքեր եւս եւ տետրներ. տետրները վերջին տարիներուս մէջ գրուած՝ թատրներ եւ աննշան գրութիւններ են. իսկ ձեռագիրք՝ որոնք թուով չորս են, Գանձարան եւ Մաշտոց են։ Ասոնց ձեւն եւ յիշատակարանները կը դնենք հոս։

## ԹԻՒ 1, ԱԶԳ. ՄՏՆԴՐ. ԸՆԹ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

Գանձարան կամ Տաղարան:

**ԹՈՒՂԹՔ**՝ 224։ — **ՄԵԾՈՒԹԻՒՆ** 17×11։ — **ԳՐՈՒԹԻՒՆ** միասիւն։ — **Տողք** 20—22։ — **ՆԻՒԹ**՝ թուղթ միջակ հաստ եւ անողորկ։ — **ԿԱԶՄ** փայտեայ կաշեպատ. իսկ փայտերն վերէն վար ճեղքուած։ — **ՀԱՆԳԱՄԱՆՔ** լաւ, ետեւի մասէն 4—5 թուղթ պակաս։ — **ԳԻՐ**՝ Նօտրգիր, մաքուր եւ կանոնաւոր։ — **ԶԱՐԴԱԳԻՐՔ**՝ թռչ-

---

[1]. Դպրոցիս վրայ խօսած ենք "Հանդէս Ամսօրեայ" 1897 տարւոյ Սեպտեմբերի թուոյն մէջ, էջ 274։

նագրեր, բայց ոչ այնչափ արուեստական։ — ՍԿԶԲՆԱՏՈՂՔ գանձերու, ինչպէս նաեւ սկզբնատառք տանց մեծաւ մասամբ կարմիր գլխագիր։ — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ չունի։ — ԺԱՄԱՆԱԿ ԺԶրդ դարու վերջերը։ — ԳՐԻՉ, ՏԵՂԻ եւ ՏԷՐ անծանօթ, թէպէտ առաջի կողին վրայ գրուած է "յերգս յօրինողին Սարգիս Վանեցի, գրքիս յօրինողիս„ բայց այս գրութիւնք բովանդակութեան գրերուն չեն համապատասխաներ։ — ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ վերջին թղթին վրայ գրուած է. "Աստուծով ժամնեսցէ գնքեալ մարտեանս ի սուրբ քաղաքն ...սաղէմ Կարփրցի տէր յուհանէնց յուլուպէկի որդի տրացու յուհաննեսին ձեռն... ի բարին ամէն...ն։

## ԹԻՒ 2, ԱԶԳ. ՄՏՆԴՐ. ԸՆԹ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

*Մաշտոց:*

ԹՈՒՂԹՔ՝ 186։ — ՄԵԾՈՒԹԻՒՆ 20×14։ — ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն։ — ՏՈՂՔ 19—20։ — ՆԻՒԹ թուղթ հաստ եւ ողորկ։ — ԿԱԶՄ փայտեայ կաշեպատ. սկսած է քայքայիլ։ — ԳԻՐ՝ միջին երկաթագիր, մաքուր եւ կանոնաւոր. միայն 59 եւ 60րդ թղթերը նօտրգիր։ — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ շատ գէշ, առջեւէն 15—20 թուղթ պակաս, 25րդ թղթէն երկու թուղթ հանուած, 50րդ թղթէն սկսեալ կը տեսնուին 3—4 փոքր ծակեր, որոնք երթալով մեծցած են, մանաւանդ 139րդ թղթէն սկսեալ ծակերն այնչափ մեծցած են, որ վերջի թերթերուն մէկ երրորդ մասը բոլորովին ապականած է։ — ԶԱՐԴԱԳԻՐ՝ 21 հատ՝ կարմրագոյն թռչնագրեր։ — ՍԿԶԲՆԱՏՈՂՔ՝ մէկ երկու տող կարմիր թանաքով գրուած։ — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ՝ 18 բայց ոմանց կէսը մնացած է, կտրուած ըլլալուն պատճառաւ. ճակտին վրայ 2 զարդ։ — ԺԱՄԱՆԱԿ՝ ԺԵրդ դար։ — ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ վերջին

Թղթերուն վրայ՝ երկուք ու կէս երեսի մէջ կայ ողբ մը հիւանդի, որ մերձ է ի մահ, եւ ապա յիշատակարանն։

Ինձ ումէտ կայր եւ գուման վասն քո գալուն, ակն ունէր սիրտս ու մընար քո խընդալունդ շուկ բերին Թուխտ մի գըրած յանկարծ մահու, առ կարդայ եղբայր ու տես որ չեմ գալու։ Այս յետին գիրս ու խապարս որ չեմ գալու, ոչ ունիմ ձեռք ու մատունք գիր գրելոյ, Թէ ունիս դու ճար արա հասիր հոգւոյս, մահն եկեր զիս կու տանի աշխարհ հեռու։

Այ հոգի պահ մի կացիր մարդ կայ գալու. զէհար մէկ պահ լըռէ վասն Աստուծոյ. ինձ համբեր տուր եւ դադար մէկ գիշեր ըսա ինձ եղբայր կայ մի գայ խիստ է հեռու։ Այ հոգի յերես խըռովիր կամ վասն որոյ, միթէ հանէր յականջըս քո ձայն իմ լալու, որ լըլնում զաչս ու Թափեմ նըման գետոյ, շատ գանկատ կայ իմ սրտիս քեզ ասելոյ. Սար ու ձոր, ծով ու ցամաք դարցիք լալու, ողբային մարդ և անասուն, և ամէն լեզու, խիստ կարաւտ եմ ինձ հասիր վասն Աստուծոյ, հոգեւոր եւ մարմնաւոր եղբաւր տեսու։ Առաջին մարդն էր Ադամ մինչեւ ի Նոյ, ի Նոյէ մինչեւ ծընունդն Աբրահամու, չէր եղեալ զերդ զիս ողորմ և ոչ լինելոյ. կարաւտած եմ եւ մնամ եղբաւր տեսու. Թափեցաւ խելքս, ի գըլխուս չունիմ լեզու, քաղեցաւ գոյն երեսիս աչք ի լալու. Թուլացաւ բոլոր մարմինս զինչ մեռելոյ. կու մեռնիմ այլ ճար չունիմ ողջանալու. լըրջացիր անձն իմ Թափէ զքեզ ի գինոյ, Թէ հարբած ես Թէ ի քուն դու զքեզ զարթոյ. երբ որ գայ մարդն ու հանի աւրըն մահու. ոչ եղբայր եղբաւր աւգնէ, եւ ոչ հայր որդւոյ։

Յիշատակ է սուրբ մաշ..... հօրն տմելիտօնին մօր..... կողաքցին հերիքին եղբօրն լո..... պարոնին Աստուած զիւրեանց հոգ.....ն լու.....րէ խաչին լուսոյն գաբրիէ.....ոյն յերանաւէտ ձայնին ա..... դասուն դասակից եւ պսակ.....ասցէ բարեխօսուԹեամբ Տիրամայ.....ածնին եւ Յովհաննու Կարապետին.... որ ի տուր իւր հաշ..... առ զայս սուրբ մաշտոցս ես..... Տէր Պօղոսին. ով ոք հանդիպիք Աստուած ող.......ի ասացէ ամէն։ Գրեցաւ Թվին ՌՃԺԵ։

Յիշատակ է սուրբ մաշտոց... Կիւզէլ հիսարու
սուրբ Աստուածածնայ եկեղեցուն·
.... ողորմի ասասցէ ամէն
Թվին
ՌՃԺԵ

### ԹԻՒ 3, ԱԶԳ. ՄՏՆԴՐ. ԸՆԹ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

*Մաշտոց:*

ԹՈՒՂԹՔ՝ 255։ — ՄԵԾՈՒԹԻՒՆ 13×10։ — ԳՐՈՒԹԻՒՆ *միջին երկաթագիր, մաքուր միօրինակ (ծանօթութիւնք աւելի փոքր գրով գրուած)*։ — ՆԻՒԹ՝ *թուղթ հաստ*։ — ԿԱԶՄ *փայտեայ կաշեպատ, միայն ետեւի կողքն մնացած*։ — ՀԱՆԳԱՄԱՆՔ *լաւ, միայն առջեւէն կը պակսի* 8—10 *թուղթ*։ — ԶԱՐԴԱԳԻՐՔ՝ *քանի թռչնաձեւ եւ զարդաձեւ գրեր*։ — ՍԿԶԲՆԱՏՈՂՔ *գլուխներու սկիզբները մէկ երկու տող կարմիր թանաքով գրուած*։ — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ՝ 15 *ծաղիկ ու զարդ՝ սիրուն եւ արուեստական, սեւ թանաքով, իսկ լուսանցքին երկու կողմը կարմիր գիծ քաշուած. երկու տեղ ճակատը զարդ*։ — ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ 100*րդ թղթին վրայ գրուած է, "Գանձ ջրօրհնեացն, ասա եւ զմեղաւոր զանպիտան սարգիս դպիր, յիշեա„*։ 124*րդ երեսին վրայ, ոտնլուայի վերջին աղօթքին տակը գրուած է. "Յիշէցէք ի սուրբ յաղօթս ձեր ով սուրբ մանկունք եկեղեցոյ զանարժան գծօղս եւ զհայրն իմ հայր ուսէփն եւ զմայրն իմ վայրթիթերն ամէն։„* 168*րդ երեսին վրայ ժամատուն օրհնելոյ աղօթքին վերջին մասերուն մէջ կայ. "Աւրհնեսցէ տէր աստուած զգրող սորա = դպիր պետրոսն։„*

### ԹԻՒ 4, ԱԶԳ. ՄՏՆԴՐ. ԸՆԹ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

*Մաշտոց:*

ԹՈՒՂԹՔ՝ 120։ — ՄԵԾՈՒԹԻՒՆ 16×11։ — ՆԻՒԹ *թուղթ միջակ հաստութեամբ*։ — ԿԱԶՄ *փայտեայ կաշեպատ, կողքերուն առջեւ մէկ երկու թերթ մագաղաթեայ ձեռագիր աւետարանի մը թերթերէն*։ — ՀԱՆԳԱՄԱՆՔ, *սկիզբն ամբողջ, մէջէն թուղթ մը, ուրիշ տեղ* 3 *եւ ետեւէն*

Հինգ վեց թուղթ կը պակսի։ — ԳԻՐ փոքր երկաթագիր, մաքուր. 17 տող։ — ԶԱՐԴԱԳԻՐՔ 13 հատ կարմիր սեւախառն։ — ՍԿԶԲՆԱՏՈՂՔ, գլուխներու սկիզբը մէկ կամ երկու տող՝ կարմիր թանաքով գրուած։ — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴ՝ երեք. չորս ալ՝ ճակատին վրայ։ — ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ: Ոտնլուայի կանոնի մէկ աղօթքին տակը, գրքին լուսանցքին վրայ փետրագրչով գրուած է.

"Յիշատակ է մաշտոցս Մելքին եւ իւր կողակցուն Փիրվանդէ։ Եւ ..... եւ եդ ի ձեռն ղառայցի Տէր Ղազարի։ Յիշատակ անջնջելի եւ եղնեկին որ չունի ի ձեռացն հանելոյ։ Եթէ ոք անդքնի առնելոյ Յուդայ առնէ։ Թվին ՌՃԻԹ"

Զարմոխս օրհնելոյ կանոնին առջի երեսին վրայ գրուած է.

"Քրիստոս Աստուած որդի Աստուծոյ. բարեխաւսութեամբ սուրբ Աստուածածին եւ միշտ կուսի մաւր քո եւ աղաչանօք ամենայն սրբոց քոց, կամարարաց, երկնաւորաց եւ երկրաւորաց թող զյանցանս Ստեփանոսին եւ ծնաւղացն իւրոց Թաթարին եւ Գուլսուրափին եւ ազգականաց Հուդուպէկին ընդ նմին եւ երեսս անկեալ աղաչեմ զամենեսեանդ որ կարդայք եւ որ լսէք մեղաց թողութիւն խնդրեցէք Ստեփանոսին որ մանկութեամբ հանգուցեալ է առ Աստուած. յիշողացդ եւ յիշեցելոցս առ հասարակ ողորմեսցի ամէն։"

Աստնցմէ զատ մատենադարանին մէջ կը գտնուի հաստ թղթերով եւ մագաղաթեայ կողերով երկայնադիր գիրք մը, որուն մէջ զանազան ձեռքերէ գրուած նօտրգիր, երկաթագիր, ընթեռնլի եւ անընթեռնլի գրութիւններ կան։ Եկեղեցւոյ հաշուեգիրքն եղած կ'երեւայ, առջի երեսին վրայ գրուած է.

"1196 ես տիրացու Ովանէսըս, յառաջ քան զվէքիլ լինելն իմ եկեղեցւոյն, որ էր ի ժամանակս Պետրոս վարդապետին, որ եկեղեցւոյն հասոյն նորա ձեռացն էր թվին ՌՃՂԵ յուլիսի ԱԷն մինչեւ ի Մարտի Աըն գալ տարւոյն նորա ձեռացն մնաց։ Այս միջոցաւ իմ խարջած փողն եկեղեցւոյ յամենայնի այս է

մամի փող տվլի .... Ղ .... մգ
իւղի փող տվլի .... Ղ .... մգ"

Գրքին կէսը գրեթէ բռնած են այսպիսի հաշիւք. իսկ ետեւը 15 թերթի վրայ կայ ուրիշ գրութիւն մը, հետեւեալ նախաբանով.

“Աստուծով ի ՌՄԽԲ թուոջ մերում ի յունիսի ամսոյ ԻԴ, Նուաստ Իսահակ վարդապետս՝ Նուիրակ եւ Առաջնորդս Զմիւռնոյ, ի Մելէտոս դարձեալ աստ, ընդ իշխանացն տեղւոյն ի միասին, տեսաք զսրբոյ եկեղեցւոյն տեղւոյս զանօթսն, այսինքն Գէօզալ հիսարու քաղաքիս: Որոց գոյր դաւթար յաւուրց առաջնոց՝ աննշան եւ անկշիռ գրած: Վասն որոյ Նոր դաւթար արարաք կշռով եւ անուամբ. որք են այսոքիկ...:

Հոս կը դնէ կարգաւ եկեղեցւոյ անօթներուն եւ պատուական իրերուն կշիռներն ու անոնց գինը. ընդ ամէնը 75 կտոր արժէք ունեցող եւ այսչափ մ'ալ՝ նուազ արժէք ունեցող իրեր:

* * *

Այտըն հայ ընտանիքի մը քով կը գտնուի ձեռագիր Աւետարան մը, որուն վրայ տեղեկութիւն չտուած՝ համառօտիւ պատմենք թէ ինչպէս Աւետարանս եկած է հոս: Մելիքսելիմով (Սելօւմ Մելիք) երկու եղբարք՝ Յովհաննէս եւ Կարապետ՝ Հայաստանէն Զմիւռնիա կու գան եւ իրենց հաւերէն մնացած Աւետարանս ի միասին կը բերեն: Յընթացս ժամանակաց Յովհաննէսին որդին Պօղոս Մելիքսելիմով ժառանգ կ'ըլլայ Աւետարանին: Սա գործերու պատճառաւ Զմիւռնիայէն Այտըն կը փոխադրուի եւ վախճանելէ յետոյ՝ Աւետարանս կը մնայ ժառանգութիւն իւր կնոջ Աննա Մելիքսելիմովի (ծնեալ Ղօնճայեան): Տիկին Աննա ամենայն խնամով կը պահէ Աւետարանս, որուն մեծութիւնն եւ յիշատակարաններն են հետեւեալները:

*Աւետարան ձեռագիր:*

ԹՈՒՂԹՔ՝ 324: — ՄԵԾՈՒԹԻՒՆ 22×15: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ *երկսիւն*: — ՏՈՂՔ 17: — ՆԻՒԹ՝

թուղթ հաստ, ողորկութիւնը կորսնցուցած: — ԿԱԶՄ փայտեայ կաշեպատ, վրան ծակ ծակ զարդեր: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ գէշ. 70 թուղթ մէջ տեղէն վերէն ի վար պատռած, երկաթեան գրութեան մէկ սիւնը մնացած: — ԳԻՐ՝ երկաթագիր միջին Մեսրոպեան, տներն միշտ նոր տողով սկսած եւ գլխագիրները մեծ Մեսրոպեան: — ԶԱՐԴԱԳԻՐՔ Աւետարաններու սկիզբները գունաւոր զարդագրեր: — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ՝ բազմաթիւ կարմրագոյն զարդեր, բայց կազմելու ատեն զարդերու կէսը կտրուած է: Առջեւն հինգ թուղթ համաբարբառին ճակատն եւ եզրները գունաւոր զարդանձեւ գծուած. երեք աւետարանիչներն՝ բաց ի Մարկոսէ՝ գունաւոր նկարուած, իրենց յատուկ խորհրդանիշերովը: — ՅԻՇԱՏԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՔ. պատկերաց տակ գրուած են այլ եւ այլ յիշատակարաններ. նմանապէս գրքին ետեւը կայ ընդարձակ յիշատակարան մը: Այս յիշատակարանները կը դնենք կարգաւ:

Ա. յիշատակարան՝ Համաբարբառի տակ. "Քրիստոս Աստուած քո անարատ ծնողիտ բարեխօսութեամբ զվերջին ստացողի սուրբ աւետարանիս Պարոն Էրէմոին Պարոն Պապօին Եզգանին Ակօբին Խուդաբախշին Մուրատին ամէն":

Բ. յիշատակարան՝ Մատթէոսի պատկերին տակ. "Քրիստոս Աստուած քո անարատ ծնողիտ բարեխօսութեամբ ողորմեա ստացողի սուրբ աւետարանիս Պարոն Էրէմոնին, Պարոն Պապօին Եզգանին Ակօբին Խուդաբախշին Մուրատին, որ ստացանք մեք հալալ ընչից մերոց դրինք ի դուռն սուրբ Աստուածածնին ի ձեռն Յովանէս երիցին զոր Տէր Աստուած վայլել տացէ ամէն":

Գ. յիշատակարան՝ Ղուկասի պատկերին տակ. "Զվերջին ստացող սուրբ գրոյս ողորմեա Քրիստոս Աստուած. Բաբէրէցոց հին ու նոր ննջեցելոցն որ սուրբ աւետարանս գնեցին հալալ ընչից իւրեանց. Աստուած ողորմի ասացէք ամէն":

Դ. յիշատակարան՝ Ղուկասի վերջին գլխէն ետքը. "Անուամբ անեղին Աստուծոյ հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ, ես նուաստ եւ անպիտան ծառայս Աս-

տուծոյ, Թուրքմանդայս գուստր պարոն Մարգարին ստացայ զսուրբ աւետարանս ի հալալ արդեանց իմոց, յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց պարոն Մարգարին եւ մօրն իմոյ պարոն գոհար Մելիքին եւ եղբօրն իմ պարոն Բեկլարին եւ աւն իմոյ պարոն Ցօվանիսին եւ եսու Անդրիաս քահանային եւ իւր որդւոյն Մխիթարին. յիշատակ անջնջելի: Արդ որք ընթեռնուք զսուրբ աւետարանս յիշեցէք յաղաւթս ձեր զիս զԹուրքմանդէս եւ զպարոն Ցօվանէս եւ զվերոյգրեալ ծնողսն իմ եւ Աստուած զձեզ յիշէ. ի Թվին ՊԾԵ գրեցաւ„:

Ե. յիշատակարան՝ Ցովհաննու պատկերին տակ. "Քրիստոս Աստուած ողորմեա քո անարատ ծնողիս բարեխօսութեամբ. զվերջին ստացողին սուրբ աւետարանիս. պարոն Էրէմծին. պարոն Պապօին Եգանին Ակոբին. Խուդբախշուն Մուրատին ամէն„:

Զ. յիշատակարան. "Ես Նուաստոգի եւ ոկար ծերունի Դաւիթ վարդապետ գնեցի զսուրբ աւետարանս ի մերոց գոյից. եւ նուիրեցի սուրբ ուխտն միեղէնութենէ. ի վանս Կամեաց: ի ձեռն ծերունի հաւրն Խաչադուրին: սակս սիրոյ եւ միաբանութեան: եւ յիշատակ անջինջ մեզ եւ մերոց աշխարհի՝ եւ յաղագս մեծ յուսոյ մերոյ պարտին բնակիչք ուխտին անմոռաց զմեզ մերայաքն յիշել աղաւթիւք եւ պատարագաւ: եւ մի ոք իշխեսցէ իրիք պատճառաւ հանել զսա՝ ի սուրբ ուխտէն, եւ թէ ոք յանդգնի . . . . : Ստացեալ եղեւ ի Թուին Հայոց ՉԹ (քերուած ու վերջէն գրուած) յամս յորում բազում աշխար եւ աւար եհաս տանս արեւելեան. եւ առաւել տանն Գեղամայ: Ցիշեսցի եւ կրսեր որդիացեալս տրուպ Մարտիրոս: Արդ յիշեցէք ի Քրիստոս եւ ի սուրբ յաղաւթս ձեր զստացող սուրբ աւետարանիս զհնդուն եւ բարի կողակիցն իւր զաղճէն եւ հարազատ որդիքն իւր զմկրտիչն զաստուածատուրն զմունթիկն որ կամակից եղեն եւ ստացան զաւետարանս ի հալալ արդեանց եւ կազմել ետուն. եւ ետուն ընծա ի յեկեղեցիս ի սուրբն Գրիգոր որ շինել էին ինքեանք ի պահապան ինքեանց եւ բարեխաւս հոգոց եւ մարմնոց: Արդ որք կարդայք կամ աւրինակէք անմոռաց յիշմամբ ասել զԱստուած ողորմին ստացողի սորին հնդուին եւ ամէն արեան մերձաւորաց նորա ամէն: Այլ եւ յիշողք մեր եւ յիշեալք լիջին առաջի Քրիստոսի ամէն: Ջնուաստ եւ տրուպ զփծուն կազմող զսկոբ աբեղա յերես անկեալ աղաչեմ յիշել ի Տէր„:

Է. յիշատակարան. "Փառք ամենասուրբ Երրորդութեան հաւր եւ որդւոյ եւ սուրբ հոգւոյն յայժմ եւ զյաւ յաւիտեանս ամէն: Զվերջին ստացող սուրբ

ուխտարանիս յիշեցէք զՏէր Վարդանն որ մտաւ էած
զսէրն Աստուծոյ. եւ նորոգել ետուր զսուրբ ուխտա-
րանս. յիշատակ իւր եւ ծնաւղացն հաւրն իւրոյ: Տէր
Գալուստին եւ մաւրն իւրոյ Խանաշին: եւ եղբայրն
իւրոյ Մխիթարին եւ ամէն յարեան մերձաւորացն ամէն:
Դարձեալ յիշեցէք զՏէր Վարդանն եւ զկողակիցն իւր
Նարկիզն եւ որդիքն իւր Մովսէսն: Թ ՌՀՁ: կազմե-
ցաւ ձեռամբ Յովանիսի. որ զանունս միայն ունիմ եւ
ոչ գործս բարութեան„:

Ը. յիշատակարան. "Ով դասք լուսերամից որք
հան... քառաբուխ վտակիս. զվերջի... զՅովաննէս աբե-
ղայ բիւրակն... անուն աբիթարենց: յաղաւթ... որ
ստացաւ զաւետարանս յիշատ... ծնողաց իւրոց: եւ ի
վայելումն ձե... ունդ զաւակին իւրոյ Տիրատ... Տէր
Աստուած վայելել տացէ ամէն: ի Թվ ՊԸԾ եւ զեղ-
կելի կազմողակս մի մոռան... Ով դասք լուսերամից.
որք... իք այսմ քառաբուխ վտակիս... ացող սորայ
զպարոն Թարվանդէն զդ.... պարոն Մարգարին յա-
ղաւթս յիշեցէք որ առ զաւետարանս ի հալալ արդեան
... յիշատակ իւր եւ ծնողաց իւրոց պարոն Մուրադի
հոնար Մելիքին: եւ իւր եղբաւրն պարոն Բե... եա
զայ ի Յանդրիաս երէցն եւ իւր ս... ոսին: Աստուած
վայելել տացէ ամէն„:

Թ. յիշատակարան. "Շնորհօք բարերարին Աս-
տուծոյ եւ ողորմութեամբ ամենազօր սուրբ հոգւոյն
եւ կենդատու մարգասէր Փրկչին մերոյ Տեառն Յիսուսի
որ եղեւ քարոզ փրկութեան աշխարհի. եւ իւրում
նախագուշակ մարգարէիւն ձայնիւն յեսայեայ բանիւն
որ ասէ ըստ այնմ երանի որ ունիցի զաւակ ի Սիոն եւ
ընտանի յԵրուսաղէմ. եւ ի լուրն նորա լսելով, եւ ես
Սելում Մելիքս ի վերջացեալ ժամանակիս եւ եղէ փա-
փագող յայսմ սուրբ եւ աստուածախօս աւետարանիս
նաեւս այլ բազում գրեանց եւ այլ աղօթից ի սուրբ
եկեղեցւոյս որ եմ իշխող ի նահանգացս Շիրակայ եւ
Ղարապախանու եւ այլոցն, ի գիւղէն Անտոն կոչեցելոյն
որդի մեծի պարոն Խանբաբ Մելիքին որ վերըստին նո-
րոգող եղեւ յայսմ նահանգացս զոր յառաջմէ անմար-
դաբնակ եղեալն էր որ առ Աստուած փոխեցաւ ամե-
նեքեանքդ սասաջիք լի սրտիւ Աստուած իւր հոգւոյն
ողորմեսցի որ բազում աշխատանս կրեաց ի յերկրիս շի-
նութեան թէ յանօրինաց կողմանէ եւ թէ այլ կարեաց
պիտոյից յիշատակն օրհնութեամբ եղ՚ցի եւ աղօթիւք
ձերովք Տէր մեզ ողորմեսցի: Եւ էր ի թուականու-
թեանն արամեան տոհմի ՌՃԾԱ ամի եւ ես Սելում
Մելիքս որ տեսի զանցաւ. որ զկեանս աշխարհիս փափա-

գեցայ կենացն յաւիտենից ըզմիտս եւ զանձն իմ եդի ի սուրբ եկեղեցոյս թէ գրեանց եւ թէ այլ անօթից եւ ըօպասից սուրբ եկեղեցւոյս։ Նախ ա̄ ճաշոց գիրք. ա̄ սամաւուրք եւ զայս սուրբ աւետարանս ա̄ ատենի սաղմոսարան. ա̄ սկի բ̄ խաչ արծաթէ ա̄ սաղաւարտ ա̄ շուրջառ ղառպաղ. ա̄ Նափորդ ա̄ շուրջառ այլ չուլթնի գ̄ շապիք բ̄ ուրար բ̄ ջուխտ բազման. ա̄ մեծ ջահ բ̄ բուրվառ ա̄ ջուխտ քշոց. ա̄ զանկակ ա̄ ջուխտ ձնծղայ ե̄ շամոտան բ̄ լաւ պատկեր Աստուածածնի այս ամէն յեկեղեցական անօթս եդի ի սուրբ եկեղեցւոյս յիշատակ ինձ Սելօում Մելիքիս եւ ծնողացն իմոց պարոն Խանբաբ Մելիքին եւ մօրն իմոյ Հուռօփին եւ ամուսնոյն իմոյ Անթառամին եւ դեռափոյս որդւոյն իմոյ պարոն Խանբաբին։ Աղայ պապին եւ Աղայ մալին. եւ դըստերցն իմոց Շահզատին Թամամին Խանզատին Վառվառին եւ յամ. արեան մերձաւորացն իմոց յիշեցէք ի Քրիստոս եւ որք յիշէք յիշեալ լիջիք առ Ողորմածն յոյսն ամենեցուն Քրիստոս ամէն”։

Ե. Եկեղեցւոյ պարտէզը տարիներով գերեզմանոց էր. հանգստաւէտ ու խաղաղ բնակարան մը՝ այս անցաւոր կենաց ընթացքը կատարող Հայուն, ուր հանգչած են Այտընի հայ ժողովրդեան Նախնիքն, որդի հօր քով, մայր որդւոց քով։ Սակայն Այտընցին չունի այժմ այս բախտն հանգչելու եկեղեցւոյ պարտէզն իրեններուն կից. որովհետեւ 1893ին երբ Զմիւռնիոյ մէջ մաղձայոյզն աջ ու ձախ թեթեւ հարուածներ կու տար, Այտընի մէջ ալ մէկ երկու կասկածելի դէպքեր պատահելով՝ կառավարութեան կողմանէ արգիլուեցաւ եկեղեցեաց բակը ննջեցեալ թաղելն, որմէ հայերն ստիպեալ, ինչպէս նաեւ յոյները, բնակարաններէ հեռու վայրեր ընտրեցին իրենց ննջեցեալներուն համար։ Հայք կը թաղեն այժմ իրենց սիրելիներուն մնացորդները՝ եկեղեցւոյ կռնակը բարձրացող բլրակին վրայ։

Իսկ եկեղեցւոյ պարտէզը կամ թէ ընենք նախկին գերեզմանոցին մէջ կը գտնուին բազմաթիւ գերեզմանաքարեր, ոմանք հողին տակ գոցուած, ոմանք մաշած, ոմանց՝ հնագոյն արձանա-

գրութիւնը ջնջուած՝ նորագոյն քանդակուած եւ ոմանց տեղը փոխուած՝ հակառակ գրուած։ Ասոնցմէ զատ գրեթէ հարիւրէն աւելի գերեզմանաքարեր կրնանք համրել, որոնք կամ իբր սանդուխներու աստիճան գործածուած են եւ կամ եկեղեցւոյ մէջ հոս հոն դրուած։ Քանի որ ժամանակը դեռ ամբողջովին ապականած չէ, քանի որ մուրճին ծանր հարուածները դեռ չիրիմներուս յիշատակարաններր ջնջած չեն, կ՚օրինակենք խնամքով. գէթ թղթի վրայ թող յիշուին Այտընցւոց նախնիքը[1]։

Դամբարան.
ոՏ
անցաւոր. շա
ւիղ. Կեսարիա
ցի. Խայղանա
զործ. Գէորգն.
որ. Ննջեց ի Տէր.
Թվին
1561:

Այս է տապան
Ըվանիծորե
ցի Կիրակոսի
որդի Ավետիս
ին Թվին ՌՃԿԶ։

Այս է տապան
Կէրըռողէցյէ
Սօֆէ որդէ ոռ
անէն Թվէն ՌՃԿԳ։

---

1 Ընդհանրապէս գերեզմանաքարերու գրութեանց տակ երկու հատ սոճիի ծառ եւ զանազան զարդեր քանդակուած են։

*Այս է տապա*[1]
*ն Գերթա*
*թաղեցի Պե*
*տրոսի որդի*
*Ըստեփա*
*նոս Թվին ՌԾԺ:*

Այս է տապան օվան
էսին կողակից
զռմրութին Թվ ՌՃՀԶ:

Այս է տապան
Շխանձորեցի
տահանչի որ
դի Գրիգորի
ն Թվ ՌՃԶԲ

Այս է տ
ապան Գ
երթայ
թաղե
ցի Յակո
բի որդի
մանդ
եսի Ավ
ետիսին
Թվ ՌՃԶԲ

---

1 Եկեղեցւոյ պարտէզին պատին մէջ դրուած է տապանաքարս, փողոցին վրայ:

Այս է տապան
Ղայսարցի
մՀասի Կիրակ
ոսի որդի Խաչ
ատուրին Թվին
ՌՃՂ

Այս է տապան Նավսեց
ի Թաղէոսի դուստր
Խանումին Թ. ՌՃՂԸ

Այս է տապան Յլս
եցի Տէր Գէորքի
որդի Օվանէսին
Թվն ՌՃՂԹ սէ
կտմրի ԺԵ օրն

Այս է տապան
Կօշալէաարցի
մըհտեսի Եղլէսի
որդի մըհտեսի
Ըստեփանին
Ի ՌՄԺ

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՏԱ
ԹԵԻԷՑԻ ՏԷՐ ԳԷՈՐ
ԳԻ ՈՐԴԻ ՏԷՐ ՕՎԱՆ
ԷՍԻՆ ԹՎԻՆ ՌՄԺԲ

Այս է տապան Ղարա
Հէսարցէ Փրէնւ
որդի տէրացու
Խաչատուրէն
ԹՎին ՌՄԼԲ[1]

1813

ի Օգոստոսի 13

Ցայս անձուկ տապան
կայ այր գովա կան
էր Էրզէրում եան
կոչի Պաղտի եան
որդի Աղայ ճան
առուք գերպա րան
աստ ի խոր տա պան
կայ ի հանգըստ եան
որ թողեալ զայս կեան
յերկնից եւ կա եան

1831

Աստ է Ղոնճաեան
պարօն Պաղտասարին ո
ր ի նորոգ հիմնարկութեան
սրբոյ եկեղեցւոյս խնամ
ադաւ եւ երիտասար
դական հասակի ջեր
մեռանդութեամբ հանդե
աւ Մայիսի 31

1 1741 թուական ունեցող տապանագրին հետ (էջ 27)։

*Այս է տապան*
*հանգըստեան*
*Խարահիսար*
*ցի մահտէսի*
*Ծէրոնի կողա*
*կիցըն Մարգ*
*ըրիտըն որ քօ*
*խէցաւ ի կենսը*
*Թ ՌԸԼԷ ին*

1841

*Սոյն տապան*
*ըսմերոյ գըր*
*եպըս ի Մահրա*
*քեան տիրա*
*ցու Օվակեմի*
*քօզըր աղջիկը*
*Տուտուն որ ի*
*անգուցեալ է*

Այս է տապան Իսկէր
ցէ Գալէստար Սերգէ
ան որդէ ասկերէն
Մըկրտիչն որ հան
գեաւ Բըլլին
1843 Փետըրվար 4

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՅԱՆՔՍ
ՏԵԱՆ ՔԱՐԱՅԻՍԱՐՑԻ
ՄԱՀՏԵՍԻ ԾԵՐՈՒՆԻ
ՈՐ ՓՈԽԵՑԱՒ Ի ԿԱՆՍ
ՓԸՐԿՉԻՆ 1844
ՍԵՊՏԵՄԲԵՐ 1.

Այս է տապան
Այտընցի Լա
Ըիֆեան պարոն
Խաչատուրի որ
դէ տիրացու
Մկրտիչ որ հան
գեաւ Թըվին
1844 Սեպտեմ
բեր 1

Այս է տապան Այտընցի
Մազլըմ Օվակիմի կինը
Ն մուսի Զիւմրիւթ
որ հանգեաւ թվին
1844 Մայիսին 1.

Այս է տապան Մե
լեոցի Մերկերիօ
սի որդի տիրա
ցու Մարտիրոս
որ հանգեաւ
թըվին 1846
Օգոստոսի 4

Այս է տապան Վան
քաղաքացի. Մես
Սահակի որդի այ
րի — Օհաննես
որ հանգեաւ ի թը
վին 1848
Նոյեմբեր 15:

1848 *մայս* 11։
*Այս է տապան*
*Այտընցի Հաճի*
*Ավետիսի որդ*
*ի պարտագի Ը*
*ստեփանն. որ*
*հանգեաւ ի Տէր։*

*Այս է տապան էր*
*զէրումցի. չար*
*ուխճի Խաչատուր*
*որ հանգեաւ*
*թըվին 1849*
*Օգոստոս ի*

**ԱՅՍ Է ՏԱՊԱՆ**
**ԹՕԽԱԹՑԻ ԳԱ**
**ԼՈՒՍՏԵԱՆ ՕՀԱՆ**
**ՈՐ ՀԱՆԳԵԱՒ**
**Ի ԹՈՒԻՆ 1850 ՆՈ**
**ՅԵՄԲԵՐԻ 23**

1850
Այս է տա
պան Ղազա
րեանցի Ըս
տեփաննի.
դաստարակ
Տէրտէրի.
որ. հանգեա
ւ Օգոստ 22

Գըրեալ տապ
անըս ի Խարբայ
խարու ոսկէ
ըրիշ կումուշ
կէրտան ուստա
Կարապետըն .:.
որ Հանգուցեա
Լ է ի տր յս 1851

*Այս է տապան*
*հանգըստեան*
*Մէլէսցի Տէր*
*Վարդանի դուստրը*
*մահտեսի Մարիամ*
*որ հանգեաւ*
*յամի տեառն 1852*
*Ապրիլ 15.*

*Հանգիստ*
*Ամիրայեան Յարութիւն*
*աղայի Գասպարեան*
*յամի Տռն 1853. 19 օգ.*
*Ի կենցաղոյս գոյիւքըն*
*նեղ զիս կարծէի անսասան*
*մահուն խորշակ հար չար*
*աչար թաւալեցոյց ի տա*
*պան:*

**Մեծահաւատ Ստեփան աղայէ**
**Նայէլեան Ակնցւոյ վախճանելոյ**
**յամի Տն 1855 44 ամաց**
**Սեպ. 28.**

Ցընդանեկանդ քքոււանաց
կորզեալ մահուան քանաւթիան
Թէ յայս զմարմինս ամփոփեաց
Նժդեհաւէ դխոււր դուան
ոփրդ էմ է յեղ կեաց համակ
Թող լաւոցեն յեր լալք
մախոււր ոփրոյն յիշատակ
ոփոփանացդ էջէ կնէք։

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ
ՀԱՆԳՐՍՏԵԱՆ ՄԷ
ԼԷՍՑԻ ՀԱՃԻ ԿԱՐԱ
ՊԵՏԻ ՈՐԴԻ ՄՀՍԻ ՊՕ
ՂՈՍԻ ՈՐ ՀԱՆԳԵԱՒ
ՅԱՄԻ
ՏԵԱՌՆ 1856
ՄԱՐՏ 12

Մկրտիչեան տոհմին մեք հարազատք
Կարապետ Յովհան երկու եղբարք
մինչ ի վայելս բնութեան էաք
հասեալ անդէն՝ մահն անողորմ
կորզեաց զմեր փափուկ հասակ
արդ յայցելուաց մերոյ շիրմին
խնդրեմք մաղթել առ հայր յերկին
ընդ սուրբս իւր առնել արժան
անմահ փառաց արքայութեան

Կարապետ Յովհան
վախճանեալ
ի հնկի 45 ամաց ի հսկի 43 ամաց
1866 + 1873
Նոյեմբեր սեպտեմբեր

*Այս է տապան*
*Պոլսեցի Պետրոս Խօրասանճեանի*
*որ հանգեաւ ի տէր*
*ի հասակի վաթսուն ութ ամաց*
*1873 Նոյեմբեր 1.*

Աստ հանգչի մար
մին Թէպրիզցի Մա
նուկի որդի Մելքո
նի որ հանգեաւ
ի քրիստոս ի 25
նոյ. 1880.
*ΕΝΘΑΛΕ ΚΕΙΤΑΙ ΜΕΛΙΚΟΦ*
*ΥΙΟΣ ΤΟΥ ΜΑΝΟΥΚ*

Աստ հանգչի
Երանուհի Թօփալեան
ծնեալ 1851
վախճանեալ
1882. Յունվար 12
ի հասակի 31 ամաց

**ԱՍՏ ՀԱՆԳՉԻ ՄԱՐՄԻՆ**
**ՈՍԿԵՐԻՉ ՄՀԻ ՅԱՐՈՒԹԻ**
**ՆԷՐՍԷՍԵԱՆ ՈՐ ՅԱՆԳԵԱՒ**
**Ի ՅՈՅՍՆ ՅԱՐՈՒԹԵԱՆ**
1886 ՆՈՅ. 4.

*Աստ հանգչի Վանայ*
*Վանգի գիւղէն Մել*
*քոն Մուրատեան*
*ի հասակի 23 ամաց*
*1888 Յուլիս 9.*

*Աստ Խանճէի*
*Կեսարացի Յակոբ*
*Վարվառեան*
*ի հասակի 45 ամաց*
*1 Փետր. 1889.*

* * *

## ՅԱՒԵԼՈՒԱԾ

Այտընի Հայք, որ Հայաստանի այլ եւ այլ կողմերէ գաղթած են, երբեմն բազմաթիւ են եղեր եւ առ նուազն 500 տունէ կը բաղկանային, ինչպէս որ հին արձանագրութիւնները կը վկայեն։ Սակայն հետզհետէ նուազելով՝ այժմ հազիւ 71 տուն կայ. 61 այր, 77 կին, 18 երիտասարդ, 22 պատանի, 20 օրիորդ, 43 տղայ եւ 36 աղջիկ։ Ունին եկեղեցի մը Ս. Աստուածածին անուամբ, նորաշէն վարժարան մը յանուն Ս. Գրիգոր Լուսաւորչի ուր 21 տղայ եւ 16 աղջկունք կը յաճախեն, եւ այլ եւ այլ ազգային կալուածներ։ Ազգային արկղին մուտք է միամեայ ղրշ. 9262, ելքն՝ ղրշ. 12.388։ Դպրոցի շինութեան պատճառաւ մնացած պարտք, ղրշ. 12.056։ Դպրոցի եւ Վարժապետի համար ծախք, գրեթէ ղրշ. 5500։ Ժողովուրդին մեծ մասը Թուրքերէն կը խօսի, բայց մեծ եռանդ կը տեսնուի հիմակ հայերէն խօսիլ, կարդալ ու գրելու համար։

### 3.

*Այտընի Կաթողիկեայ Հայերը:*

Ա. Զմիւռնիոյ գաղթական կաթողիկեայ Հայոց վրայ խօսած ատեն՝ յիշած էինք թէ 1790ի վերջերը, Գաղատիայէն վաճառականներ իրենց բախտն այլուր փորձելու համար՝ դիմած են Զմիւռնիա եւ անտի անցած՝ յընթացս ժամանակաց՝ Այտըն։ Դարուս առաջին քառորդին մէջ տեղի ունեցած է այս գաղութը. քանի մը վաճառական-

ներ լսելով որ Այտըն աւելի շահաբեր է, կու գան եւ կը հաստատուին հոս։ Ասոնք բնականաբար չունէին մասնաւոր առաջնորդ կամ հովիւ մը, այլ ի պահանջել հարկին՝ ըստ սովորութեան ժամանակին չմիացեալ Հայոց քով կը կատարէին իրենց կրօնական պարտքերը։ Բայց 1830ին Ազգին բաժանումէն ետքն՝ այս կողմերը Լատին կղերին իրաւասութեան ներքեւն ըլլալով, Այտընի կաթոլիկեայ Հայոց հոգեւոր հոգը կը կատարուէր Զմիւռնիոյ Լատին Արքեպիսկոպոսին ձեռօք, որ տարին անգամ մը՝ Զատկի առթիւ՝ քահանայ կը ղրկէր այս կողմերն, որ թէ Լատին եւ թէ Հայ Կաթոլիկէից հոգեւոր պարտաւորութիւնները կատարելէ ետքը կը դառնար Զմիւռնիա։ Սակայն Լատին քահանայք տաճկերէն լեզուին քաջ տեղեակ չըլլալով՝ անօգուտ եւ ապարդիւն կը մնար իրենց Կաթոլիկեայ Հայոց ըրած քարոզութիւնն։ Վերջին ժամանակները այս կողմերն այցելող քահանայից մէջ կը յիշուին Տօն Ճուզէբբէ Սորպի եւ Տօն Բոլի Իսավերտենց։

Բ. Երբ 1840ին Հ. Մատթէոս Վ. Սաղաթիէլեան Զմիւռնիա եկաւ՝ Այտընի Գաղթական Հայերը լսելով, Զմիւռնիոյ Արքեպիսկոպոսին խընդրագիր մ'ուղղեցին, որ զՀ. Մատթէոս ղրկէ իրենց՝ փոխանակ Լատին քահանայի։ Գերապ. Անտոն Մուսապինի հաւանեցաւ ժողովրդեան խնդրանաց. որով վերոյիշեալ վարդապետը 1843էն սկսեալ՝ ամէն տարի գարնան վերջերը կու գար Այտըն եւ կ'երթար Մէլէռ, Գուշ-Ատասը, Սէօքէ, հոս հոն ցրուած ժողովրդեան հոգեւոր պիտոյքը հոգալու։ Այս ընթացքը տեւեց մինչեւ 1850. գրեթէ 1840էն յառաջ Կթղ. քահանայի ոտք չէր կոխած այս կողմերը. տեղացիք արտաքոյ կարգի գաղափար ունէին Կաթոլիկէի վրայ, ասոր համար ի սկզբան անդ ասոնք կամ Յոյն կը ձեւանային եւ կամ տաճկական տարազ կը կրէին։

1850ին Հ. Մատթէոս Վ. Սաղաթիէլեան՝ Միաբանութեան վանական ժողովքի մ՚առթիւ՝ Զմիւռնիան եւ Այտընը թողլով մեկնեցաւ Վիեննա։ Իւր ժամանակն Այտընի մէջ գտնուած կաթողիկեայ ժողովուրդը սկսած էր հաստատուն քահանայ մ՚ունենալու բաղձանք ցուցընել, եւ իւր փափաքն աղերսագրով մը յայտնած էր Զմիւռնիոյ Արքեպիսկոպոսին։ Վիեննական Մխիթարեան Միաբանութեան ընդհանրական Աբբահայրն՝ Գեր. Արիստակէս Վ. Ազարեան եւս կուզէր մնայուն առաքելութիւն մը հաստատել յԱյտըն։ Սաղաթիէլեանի յաջորդած էր՝ իբր մեծաւոր Զմիւռնիոյ վանատան՝ Հ. Միքայէլ Վ. Վեցմատեան։ Գեր. Մուսապինի՝ Արքեպիսկոպոս Զմիւռնիոյ, Միաբանութեան տրամադրութիւնը տեսնելով՝ Այտընի ժողովրդեան փափաքն իրագործելու համար՝ համաձայնելով Միաբանութեան հետ՝ ինչ ինչ պայմաններով Հ. Միքայէլի յանձնեց Այտընի առաքելութիւնը։

Սոյն պայմանագրութեան գլխաւոր կէտերն էին. նախ՝ Մխիթարեան Հարց առաքելութեան գլխաւոր վայրը պիտի ըլլար Այտըն, եւ սահման կը դրուէր՝ հիւսիսէն՝ Թիրէ, արեւելքէն՝ Տէնիզլի, հարաւէն՝ Մէլէս եւ արեւմուտքէն՝ Գուշ-Ատա։ Երկրորդ, հոգեւոր իշխանութեան իրաւասութիւնը պիտի մնար Զմիւռնիոյ Արքեպիսկոպոսին ձեռքը, առանց վանական ներքին գործոց միջամտելու։ Պայմանագրութեանս կնքումն եղած է 1850 Նոյեմբեր 15։

Գ. Յաջորդ տարւոյ Յունուարի 9ին՝ Հ. Միքայէլ Վ. առանց իւր անցուցած բազմամեայ շրջաններն ի նկատի առնլու՝ Զմիւռնիայէն մեկնեցաւ Այտըն եւ ի սկզբան անդ երբեմն այս, երբեմն այն անձին քով հիւր եղաւ. մինչեւ 1853 բնակութեան սեպհական վայր մը չունէր։ Սոյն թուականին ողորմութեամբ հաւաքուած դրամով Հ. Մի-

քայէլ Վ. տուն մը գնեց, որուն մէկ խուցը մատուռ կամ ժողովրդեան աղօթատեղի ըրաւ. եւ այսպէս ժողովուրդն ալ տակաւ կազմակերպուելու սկսաւ:

Ցոյնք եւ չմիացեալ Հայք ի սկզբան անդսատարիկ հակառակ էին այս բաներուս, ուստի գաղտնի՝ կառավարութիւնը գրգռելով, կ'ուզէին Վեցմատեանի այս ընթացքը խափանել: Վեցմատեան հակառակութիւնը չբորբոքելու համար՝ գնած տան պարզ տուն ըլլալը ցուցունելու համար՝ ընտանիք մը բնակեցուց. ժամանակ անցնելէ ետքը՝ սոյն ընտանիքը տնէն ելլելով՝ տեղը դարձեալ սկսաւ վանատուն նկատուիլ: Թշնամիք վերստին ոտք ելան եւ առիթ կը փնտռէին արգելք ըլլալու:

Մինչեւ նոյն ատեն հրապարակական կրօնի արարողութեան առիթ մը չէր պատահած. նոյն ժամանակներն Զմիւռնիայէն եկող կթղ. ընտանիքի մը տղան կը մեռնի. Վեցմատեան արդէն տներէն բաւական հեռու տեղ մը գնած էր, որ պիտի ըլլար գերեզմանատուն, ուստի պատրաստած էր ննջեցելին գերեզմանը. սակայն կառավարութիւնը թոյլ չէր տար հոն թաղելու, եւ ձայներ կը լսուէին թէ մարդ դրուած է այն կողմերն՝ մեռելակիրներն եւ քահանան քարկոծ ընելու: Վեցմատեան խնդիրը չգրգռելու համար ննջեցեալը վանատան պարտէզին մէջ կը թաղէ, մինչեւ Զմիւռնիոյ Աւստ. հիւպատոսին կը ծանուցուի, անկից ալ Պոլիս եւ ապա Բարձրագոյն Դուռը: Նոյն ժամանակն Այտընի կառավարիչը՝ Հիւսէյին փաշան պաշտօնէն վար առնուելով, տեղը դրուեցաւ Օսման պէյ: Սա ննջեցեալի թաղման խնդիրը քննելով համարձակ հրաման տուաւ կաթողիկէից իրենց կրօնն ազատօրէն պաշտելու: 1843 Հոկտ. 14ին Հ. Ղուկաս Վ. Տէրտէրեան իբր օգնական Վեցմատեանի առաքելութեամբ Այտըն եկած էր. այս երկու Հարք եւ ժողովուրդը ննջեցելոյն մարմինը պարտէզէն հանելով՝ հանդիսիւ թաղեցին գերեզ-

մանաւոր։ Այս մանուկն որ կ'ըսուէր Ալֆրէտ Տէլլադոլա, առաջինն էր որ կը թաղուէր Այտընի գերեզմանատան մէջ։

Դ. Ահա այսպէս Մխիթարեան Հարք կը հաստատուին Այտըն, կաթողիկեայ Հայք կ'ունենան փոքրիկ մատուռ մը եւ գերեզմանատուն մը։ Նոյն թուականին (1853), ժողովուրդը կը կազմուէր առանձնականներէ եւ 10—15 ընտանիքէ։ Այտընի վանատան դիւանատան մէջ պահուած է սոյն առաջին ընտանեաց անունները՝ գրուած հետեւեալ կերպով. "Առաջին ընտանիք հաստատեալ յԱյտըն յամին 1853 էր Նիքոլայի Տէլլադոլայ՝ Սախըզցոյ, որոյ կինն անուանէր Մարիկոյ եւ դուստրն Մադիլտէ եւ ուստրն Ալֆրէտ, որ եւ վախճանեցաւն ի նմին ամի։ Ցազգայնոց անտի առաջին ընտանիք Պօղոսի Քիւչիւքեան, որոյ կինն Սուրբիկ կոչեցեալ, եւ ուստրն ծնեալ յԱյտըն Գէորգ անուն, յետ նորա Ցակոբայ Քիւչիւքեան. որոյ կինն Թագուհի անուն ի տանէ Աւգերեանց, եւ ուստերքն Անտոնիկ, Ցովհաննէս, Ցովսէփ, յետ նորա գան ընտանիք Գէորգայ Աբէլ Խաչատուր օղլու, որոյ կինն Սիմա. Ցովհաննու Շիրին օղլու, որոյ կինն Թագուհի. Ցովհաննու Պալեան, որոյ կինն Մարիամ, եւ ուստերքն Վիչէն եւ Ռուբէն եւ դստերքն Թագուհի, Ագապի եւ Սոփիա. Աստուածատրոյ Թօրպաճեան, որ առ կին ի Զմիւռնիայ ի տանէ Պաքալ օղլուի Բերիացւոյ եւ անուն կնոջն Մարիանէ. Գրիգորի Տէվէճի օղլու որ առ կին Պապոյ (Եղիսաբէթ) անուն՝ յազգայնոց Զմիւռնիայ. Ցակոբայ Փալանճը օղլու, որ առ կին զքոյրն յիշատակեալ Եղիսաբէթի՝ Անճոլինա անուն. դարձեալ ընտանիք Սուսաննայ եւ Հաճի Էյուպի Բերիացւոյ. Ստեփանի Հարըն օղլու, որոյ կինն Ագապի անուն ի տանէ Մանավեանց. եւ ընտանիք Ցակոբայ Մանավ օղլու՝ որոյ կինն Ուրսուլա Փոչիացի յոյն որ եւ դարձաւ յուղղափառ հաւատս„։ Ասոնք էին Այտընի

կաթողիկէ հասարակութիւնը կազմող ընտանիքները։

Ե. Տարի մը ետքը՝ 1854ի գարնան Հ. Սահակ Վ. Թոռնեան առաքելութեամբ Այտըն եկաւ, նոյն տարւոյ Հոկտեմբերին Հ. Միքայէլ Վ. Վեցմատեան Այտընը թողլով մեկնեցաւ Զմիւռնիա, որով Այտըն մնացին երկու Հարք։ Հ. Ղուկաս եւ Հ. Սահակ իրենց նախորդին սկսածն աւելի եռանդեամբ սկսան յառաջ տանիլ, իբր մատուռ որոշուած սենեակը զարդարեցին, եւ 1855ին մերձակայ տեղերն ալ սկսան երթալ։ Հ. Սահակ գնաց Սէօքէ, ուր կային 4 ընտանիք եւ առանձնականներ, ամբողջն 27 հոգի, Գուշ-Ատա ուր կար երկու ընտանիք. Թիրէ եւ Պայընտըր ուր կը գտնուէին առանձնականներ։ Իսկ Հ. Ղուկաս գնաց արեւելեան կողմը մինչեւ Տէնիզլի։

Այս գործերէն զատ տղոց կրթութեան ալ պարապելով, վանատան խուցերէն մին իբր վարժարան յարդարեցին, ուր ի սկզբան անդ 6—10 աշակերտ միայն կը յաճախէր։ 1856ի սկիզբները Գաղատիայէն չորս նոր ընտանիք ալ եկան Այտըն, Զմիւռնիայէն երեք, Պիլէճիկէն մէկ, որոնցմով վերոյիշեալ ընտանեաց թիւն բազմանալ սկսաւ. 1857ին Զմիւռնիայէն դէպ ի Այտըն երկաթուղին սկսած էր շինուիլ եւ մեծ յոյս կար հասարակութեան բազմանալուն։ Կրթութեան մասին բաւական յառաջադիմութիւն կը ցուցընէր այս փոքրիկ հասարակութիւնն, այնպէս որ զգեստի եւ կրթութեան մասին Յոյները սկսան առնցմէ օրինակ առնել, իսկ կրօնական մասին ծուռ աչքով կը նայէին։ 1857ին աշնան ժողովուրդը տեղւոյն ջերմութեան վարժած չըլլալով կը հիւանդանար, այս հիւանդութեանց ժամանակ, վերջին հոգեւորական պարտքերը կատարել հարկ եղած ատեն, Մխիթարեան Հարք դրացի յոյներն ալ կը կանչէին ներկայ գտնուիլ հիւանդին քով, որովհետեւ

Ցոյները կ'ըսէին թէ կէթղ․ քահանայք վերջին ժամուն կը խղդեն հիւանդը, ուստի ի կշտամբանս Յունաց՝ ժամանակ մ'այսպէս ընել արժան դատած են։

Զ․ Տարիներու հետ ժողովրդեան թիւն ալ հետզհետէ կը բազմանար․ մատուռը շատ փոքր




ԵԿԵՂԵՑԻ ՄԽԻԹԱՐԵԱՆՑ, ՊԱՇՏՊԱՆՈՒԹԻՒՆ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ:

կու գար, նոյնպէս վարժարանի համար գործածուած սենեակն անյարմար։ Վերոյիշեալ Հարք տեսնելով այս ամէն բան, մատուռն ընդարձակել կը խորհէին, աջէն ձախէն 20 հազարի մօտ դահեկան ժողվելով, վանատան քովերը գտնուած երկու փոքր տները գնեցին եւ 1859ին վանատան հետ միացուցին, որով տեղը բաւական ընդարձակուեցաւ։ Նոյն ա-

կաթողիկէ հասարակութիւնը կազմող ընտանիքները։

Ե. Տարի մը ետքը՝ 1854ի գարնան Հ. Սահակ Վ. Թոռնեան առաքելութեամբ Այտըն եկաւ, նոյն տարւոյ Հոկտեմբերին Հ. Միքայէլ Վ. Վեցմատեան Այտընը թողլով մեկնեցաւ Զմիւռնիա, որով Այտըն մնացին երկու Հարք։ Հ. Ղուկաս եւ Հ. Սահակ իրենց նախորդին սկսածն աւելի եռանդեամբ սկսան յառաջ տանիլ, իբր մատուռ որոշուած սենեակը զարդարեցին, եւ 1855ին մերձակայ տեղերն ալ սկսան երթալ։ Հ. Սահակ գնաց Սէօքէ, ուր կային 4 ընտանիք եւ առանձնականներ, ամբողջն 27 հոգի, Գուշ-Ատա ուր կար երկու ընտանիք. Թիրէ եւ Պայընտըր ուր կը գտնուէին առանձնականներ։ Իսկ Հ. Ղուկաս գնաց արեւելեան կողմը մինչեւ Տէնիզլի։

Այս գործերէն զատ տղոց կրթութեան ալ պարապելով, վանատան խուցերէն մին իբր վարժարան յարդարեցին, ուր ի սկզբան անդ 6—10 աշակերտ միայն կը յաճախէր։ 1856ի սկիզբները Գաղատիայէն չորս նոր ընտանիք ալ եկան Այտըն, Զմիւռնիայէն երեք, Պիլէճիկէն մէկ, որոնցմով վերոյիշեալ ընտանեաց թիւն բազմանալ սկսաւ. 1857ին Զմիւռնիայէն դէպ ի Այտըն երկաթուղին սկսած էր շինուիլ եւ մեծ յոյս կար հասարակութեան բազմանալուն։ Կրթութեան մասին բաւական յառաջադիմութիւն կը ցուցընէր այս փոքրիկ հասարակութիւնն, այնպէս որ զգեստի եւ կրթութեան մասին Յոյները սկսան աստնցմէ օրինակ առնել, իսկ կրօնական մասին ծուռ աչքով կը նայէին։ 1857ին աշնան ժողովուրդը տեղւոյն ջերմութեան վարժած չըլլալով կը հիւանդանար, այս հիւանդութեանց ժամանակ, վերջին հոգեւորական պարտքերը կատարել հարկ եղածատեն, Մխիթարեան Հարք դրացի յոյներն ալ կը կանչէին ներկայ գտնուիլ հիւանդին քով, որովհետեւ

Ցոյները կ'ըսէին թէ կթղ. քահանայք վերջին ժամուն կը խղդեն հիւանդը, ուստի ի կշտամբանս Յունաց՝ ժամանակ մ'այսպէս ընել արժան դատած են։

Ջ. Տարիներու հետ ժողովրդեան թիւն ալ հետզհետէ կը բազմանար. մատուռը շատ փոքր




ԵԿԵՂԵՑԻ ՄԽԻԹԱՐԵԱՆՑ, ՊԱՇՏՊԱՆՈՒԹԻՒՆ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ:

կու գար, նոյնպէս վարժարանի համար գործածուած սենեակն անյարմար։ Վերոյիշեալ Հայրք տեսնելով այս ամէն բան, մատուռն ընդարձակել կը խորհէին, աջէն ձախէն 20 հազարի մօտ դահեկան ժողվելով, վանատան քովերը գտնուած երկու փոքր տները գնեցին եւ 1859ին վանատան հետ միացուցին, որով տեղը բաւական ընդարձակուեցաւ։ Նոյն ա-

տեսնները Հ. Սահակ Վ. Թոռնեան Վիեննա մեկնեցաւ եւ Հ. Ղուկաս միայն առանձին։ Նոյն տարւոյ (1859) Զմիւռնիոյ Մխիթարեանց մեծաւորը Հ. Քերովբէ Վ. Իսպէնեան Այտըն գալով, Հ. Ղուկասի հետ ժողովուրդէն քիչ մ'ալ նպաստ հաւաքելով, սկսան մատրան շինութիւնը։ Հ. Ղուկաս Զմիւռնիա իջաւ եւ կարեւոր առարկաները, յատակի մարմարիոն քարերը գնելով դարձաւ Այտըն. իսկ Հ. Քերովբէ վերադարձաւ Զմիւռնիա իւր պաշտօնատեղին։ Մատրան շինութիւնը լմնցաւ վեց ամսուան մէջ. վանատունն ընդարձակուեցաւ իւր կարեւոր բաժանումներով. սակայն այս աշխատութեանց մէջ Հ. Ղուկաս հիւանդացած էր, ուստի օդափոխութեան համար Զմիւռնիա իջաւ, իւր մեկնելէն քանի մ'օր յառաջ Հ. Սահակ դարձած էր Վիեննայէն, ուստի ինքը 1859 Դեկտ. 8ին, հանդիսութեամբ օրհնեց նոր մատուռն՝ ամբողջ ժողովրդեան ներկայութեամբը։

Նորակառոյց մատրանս շինութեան առթիւ փոքրիկ հասարակութեան կողմանէ նուիրուեցաւ 15 հազար դահեկան, Զմիւռնիոյ վաճառականները Պարիզէն երգիոն մը բերել տալով պարգեւեցին մատրան. Տիկին Թագուհի Քիւչիւքեան շինել տուաւ մարմարակուռ մկրտարանն եւ Այտընի տիկնայք իրենց մէջ ստակ հաւաքելով Վենետիկէն բերել տուին մեծ զանգակ մը։

Է. Այսպէս առաջին մատրան բացումէն վեց տարի ետքն, աւելի ընդարձակագոյն եւ կանոնաւորեալ մատուռ մը կ'ունենար Այտընի կաթողիկեայ հասարակութիւնը որ երթալով կը բազմանար եւ նշանաւոր դիրք մը կը բռնէր։ 1860ին Հ. Ղուկաս Զմիւռնիայէն վերադարձաւ Այտըն եւ երկու տարիէն մեկնեցաւ Վիեննա, այլ եւս Այտըն չդառնալու համար։ Սոյն ժամանակները (1862ին) Այտընի կաթողիկեայ հասարակութեան թիւը 40 ընտանիքի հասած կը գտնենք։ Ասոնք ընդհանրա-

պէս վաճառականութեամբ կը զբաղէին, ոմանք ալ երկրին բերքին տասանորդի գնմամբ՝ կառավարութեան եւ գիւղացւոց հետ գործ կը գործէին, այս վերջիններն ի սկզբան անդ բաւական շահ ունեցած են եւ երկրատէր եղած, սակայն հուսկ ուրեմն այդ գործով իրենց շահածը կորսնցուցած են. եթէ արուեստաւոր եղած ըլլային այսօրս աւելի հաստատուն եւ փայլուն դիրք եւ ապահով ապագայ մը կ'ունենային։

Ը. Կթղ. Հայ հասարակութեան եկեղեցի, վարժարան, գերեզմանատուն ունենալն ու կազմակերպութիւնը տեսնելէ ետքն՝ այլ եւս հետազօտութեան կարեւոր առարկայ մը չի մնար։ Նոյն մատուռն, վարժարանի վայրն, գերեզմանոցն եւ նոյն հասարակութեան սերունդը կը գտնենք այսօր, թէպէտ եւ նուազած. միայն ժամանակին հետ փոխուած են իրենց հոգեւոր առաջնորդները։ 1863 մինչեւ 1898 ժողովրդեան հետ ապրած եւ իբր մեծաւոր վանատան Այտընի կը յիշուին Հ. Գէորգ Ա., Հ. Մովսէս Վարդանեան, Հ. Պօղիկարպոս Թոռնեան, Հ. Փիլիպպոս Վասէլ, Հ. Աթանաս Սէֆէրչեան եւ Հ. Մկրտիչ Նորշուանեան վարդապետները։ Ասոնցմէ ամէնէն աւելի երկար տարիներ մնացած է Այտըն Հ. Փիլիպպոս Վ. Վասէլ, որ մինչեւ 1892՝ քսան տարւոյ չափ՝ մէջ ընդմէջ քանի մը տարի դուրս հանելով՝ մեծաւորութեան պաշտօն կատարած է. իւր ժամանակը վանատունն աւելի ընդարձակուած է, յարակից տեղերու գնմամբ. իւր ժամանակը միանգամայն՝ 1890ին Նազլըլի ժողովրդեան համար մատուռ մը բացուած է, ուր երկու շաբաթ անգամ մը՝ Այտընէն քահանայ մը երթալով՝ տեղւոյն ժողովրդեան՝ որ 10—12 ազգային եւ Լատին ընտանիքներէ կը կազմուէր, հոգեւորական պաշտամունքը կը կատարէր։ Այժմ Նազլըլիի ժողովուրդը ցրուած ըլլալով մատուռն ալ գոցուած է։

Թ. Ներկայիս Այտընի Հասարակութեան վրայ իբր ժողովրդապետ եւ վանատան մեծաւոր կարգուած կը գտնենք գՀ. Կիւրեղ Վ. Խոշաւեան որ իրեն ընկերակից ունի գՀ. Մանուէլ Վ. Մաշու-



Հ. ԿԻՒՐԵՂ Վ. ԽՈՇԱՒԵԱՆ:

րեան. իրենց յանձնուած է Այտընի եւ շրջակայից կաթոլիկեայ ժողովրդեան հոգը: Սակայն դժբախտաբար Հասարակութիւնը տարիներ յառաջ ունեցած դիրքն եւ բազմութիւնը 'չունի այժմ. արդէն

1890էն յառաջ գործոց անյաջողութեան պատճառաւ սկսած էին ցրուիլ, ոմանք Զմիւռնիա, ոմանք Նազիլլի եւ ոմանք Պոլիս մեկնած էին. Նոյն ընթացքը կը տեւէ ցայսօր, գրեթէ ամէն տարի ընտանիք մը կը պակսի եւ չ'աւելնար. այժմ 15 տուն կը հաշուին կաթողիկեայ Հայերն, որոնց գործն ընդհանրապէս վաճառականութիւն է, կան նաեւ լումայափոխներ, դերձակներ եւն: Ասոնցմէ զատ կան 10ի չափ Լատին ընտանիքներ եւ առանձնականներ ալ, որոնց հոգեւոր հոգն ինչպէս յանցելումն՝ նոյնպէս ներկայիս Մխիթարեան Հարց վրայ է:

Կան նաեւ Նազիլլիի մէջ եւ շրջակայ կողմերը 3—4 ընտանիք Կաթողիկեայ Հայք եւ քանի մը ընտանիք Լատին. Տէնիզլիի, Տինէրի երկաթուղւոյ գծին վրայ՝ կայարաններուն մէջ կը գտնուին պաշտօնեաներ ընտանիքով, կամ առանձնականներ. ինչպէս նաեւ Ազիզիէ, Թիրէի գծին վրայ եւ Էօտէմիշի մէջ կը գտնուին քանի մը ընտանիք եւ առանձնականներ ազգային կամ Լատին որոնց հոգեւոր հոգը կը նային Այտընի Մխիթարեան Հարք. տարին անգամ մը եւ ի պահանջել հարկին Այտընէն քահանայ մը կ'ելլէ այս կողմերն այցելութեան եւ անոնց Զատկական հոգեւոր պարտքերը կատարելէ ետքը կը դառնայ Այտըն:

Ժ. Այտընի Կթղ. Հայոց գերեզմանատան մէջ այցելութիւն մ'ընելով, կը տեսնենք միջավայրն կանգնուած մարմարիոն կոթող մը, որուն տակ կը հանգչին Այտըն վախճանող Մխիթարեան Հարց մնացորդները. Գաղատացւոց գերեզմանները եւ քանի մը լատին ընտանեաց շիրիմները: Գաղատացւոց գերեզմանաքարերուն վրայ քանդակուած կը կարդանք հետեւեալները:

---

*Ընկիւղլիւ. Մահիպալը. օղլու. Օհաննէս*

*էլլի — 50 — եաշնտա*

*Օքունեան տուստա զիեարէթ օլայ*
*Թաճիւպ պու հասրտալըղայ*
*Զալըշըլտը չարէ պուլմաղայ*
*էօլիւմ սառըլտը եաքամայ*
*քըյտը Թատլը ճանըմայ*
*աճապ մուքաթտէր մի օլայ*
*ալէմ կեօչէճէք պու եօլայ*
*չոք հասրեթ էթտիմ սիլամայ*
*քարա եազըլմըշ ալնըմայ*
*կիրտիք քարա թօփրաղայ*
*ողլուն հայր մեր րէճամ օլայ*
*սէօյլէին ունղաքար ճանլարայ*

*1855*

*սեպտեմբեր 7.*

*Էնկիւրիւտէ տողուլ քալքաքծը օղլու Բէտրի*
*Թարիխ 1793*
*Նայ տոստլար կեօրտիւնիւզ պու հալիմի*
*օֆ քիմնէեէ տէեէմէտիմ հասրէթիմի*
*հաստալըք խարապ էթտի ուծիթիմի*
*իքի ճիվան էվլատ իստէտիւլէր էյլիւմի*
*կէօրտիւքճէզ տեօքտիւմ կեօզ եաշիմի*
*էճէլէ պուլամատըմ չարէմի*
*քիմէ շիքաեէթ էտէիմ մուքաթտէրիմի*
*1861տէ կէօմտիւլէր նիհաեէթ հալիմի.*
*սիզէ էօմիւր ունուլթմայըն քէտէրլիւմի*
*տուայ սիզէ պօրճ պէն էթտիմ տուայըմի*
*եազ ազիզ տօստլար*
*կէլտիք կէչտիք պու ֆանի տիւնեաէտէն*
*ըէճայ իտէրիմ ունութմայըն պիզի տուաէտէն:*

Ici repose, dans la paix du Seigneur
Serpouhi Kutcik epouse de Paul Kutchuk
Décédée le 4 Octobre 187...

Թուրապիտիմ Թուրապատէն
մախլուգէ
Ցանի Ֆէլէքտէն էճէլ պէնի այըրըրպ
Վէրտի պու Թուրապէ եռնէ պիհէնկեամ.
Օլ Ֆէլէյին կէօրտիւմ կէօրտիւմ փէրթէվին
օն տօգուզ սէնէ
Պէն սըբուհի, Գլիպքէնտէգ գըզը
Ջէվճիմ Պօղոս Քիւչիւքեան
մէհզուն ու մէյուս գալպլէր
իտէր հալա ֆիրեաթ ու ֆիղան
լաքին ամմէլէ պիրտիկք վաթան
էյլուլ 22...

*Մէրհում Ցակոբ Քիւչիւքեան*
*Գապըը.*
*Նէ տիր պու հալիմ էյ Ֆէլէկ*
*Նէ տիր պու չէքտիյիմ հասրէթ.*
*Կիւճ տէյիլ մի պի չարէմէ.*
*Սէֆիլ եաթմազ գարա եէրտէ:*
*Հայիֆ, Ֆանի տիր պու տիւնեա*
*ծիւմլէ մալիք տիր Թիւրապա*
*Պէն տէ ալթմըշ տէօրթ եաշընտա*
*Մահֆուզ օլտում պու զապըրտա:*
*Անէլ զալիմ ճան չիքեար տըր*
*Փէնչէսինտէն խէլաս եօգ տըր.*
*Գափաճագ տիր օ էնճամի,*
*Պու կիւն պէնի եարըն սէնի:*
*1881 Յունիս 8:*

---

## ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

### *Նազիլի:*

### 1.

*Ընդհանուր Տեսութիւն:*

Զմիւռնիայէն Տինէր գացող շոգեկառքը՝ Այտընի կայարանէն ելլելով եւ արեւելք խոտո–

րելով՝ Թզենիներու, ձիթաստաններու, նարնջենեաց պարտէզներու եւ այգեստաններու մէջէն կ՚անցնի եւ մէկ ժամէն Նազիլլի կը հասնի։ Նազիլլի քաղաքը շինուած է դաշտագետնի մը վրայ. քաղքին շէնքերէն քիչ մը հեռու՝ հիւսիսային կողմը կը տեսնուին լեռներ, լեռնակներ, ձորեր ու ծործորներ. իսկ առջեւը կը տարածուի ընդարձակ դաշտ մը, որ կը հասցրնէ բամպակ, ձիթապտուղ, թուզ, կաղին, նարինջ, լիմոն, ծխախոտ եւ տեսակ տեսակ արմտիք. դաշտիս մէջէն կ՚անցնի Մէնդրէս գետը։

Քաղաքը բաժնուած է երկու մասի, Վարէ Նազլէ եւ Վէրէն Նազլէ անուամբ, որ երկաթուղւոյ գծին աջ ու ձախ կողմերը շինուած են եւ իրարմէ քառորդ ժամ հեռու կը գտնուին։ Վարի Նազիլլին էր ի սկզբան ընդքաղքին բուն տեղն, եւ այս օրս ալ Գայմագամը Վարի Նազիլլի կը նստի։ Վերին Նազիլլի թէպէտ եւ հնութեան կողմանէ ետ չի մնար նախկինէն, բայց հազիւ երեսուն տարի կայ որ սկսած է շէննալ եւ այժմ գերազանցած է Վարինը. փողոցները լայն եւ ընդարձակ են եւ քարայատակ հարթուած՝ բաց ի երկաթուղւոյ կայարանին մօտերը գտնուող մէկ քանի փողոց, որոնք ամառը փոշիով ծածկուած են, ձմեռն ալ ցեխով։

Քաղաքը ծառուղի չունի, թէպէտեւ տանց պարտէզներուն մէջ կը գտնուին նարնջենիք եւ ուրիշ ծառեր, բայց Այտընի կանանչութիւնը չունի Նազիլլի։ Իւր մէջը ջուրն այնչափ առատ չէ, իսկ օդը թեթեւ է եւ մաքուր։ Քաղքին բնակչաց զբօսանաց գլխաւոր վայրն է Մէնդրէս անուն ծառազարդ պարտէզը, համանուն պանդոկին դիմաց, ուր կը հաւաքուին ամէն ազգէ անձինք, մեծն ու փոքրն՝ օրուան մէկ մասն ուրախութեամբ անցընելու եւ զուարճանալու։ Քաղքին մէջ այլ եւ այլ շէնքերու հիմանց եւ որմերու վրայ կը տեսնուին՝ Հռոմայեցւոց ժամանակէն մնացած՝ հին շէնքերու մնացորդներն. օրինակի համար ալիւրաղացներու

Ս–Ն Օննա ընտուած յատուկ տեղը ծածկելու համար կանգնուած սիւները հաստատուած են այնպիսի խարիսխներու վրայ, որ կը պատկանին հին ձեւաց ճարտարութեան. Նմանապէս Յունաց եկեղեցւոյ գաւիթը զարդարող սիւները կանգնուած են հնու-







Ս. ՀՌԻՓՍԻՄԷ:

թեան վերաբերեալ գեղեցկաքանդակ խարիսխնե-րու վրայ. ուրիշ բազմաթիւ տեղեր ալ կը տես-նուին դարերու բեկորները: Նազիլլի օր քան զօր յառաջադէմ ըլլալու ցոյցեր կ'ընծայէ. բաւական վաճառաշահ քաղաք մը դարձած է. ունի բամ-

պակի եւ մատուտակի մասնաւոր գործատուններ եւ աշխատաւորներ։ Հինգշաբթի օրը Տօնավաճառի օր է։

## 2.

*Հայերն, Վարժարանը, եկեղեցին, եկեղեցւոյ մէջ գըտնուած գերեզմանաքարեր. Գերեզմանոցը եւ տապանաքարերու արձանագրութիւնները:*

Ա. Նազիլլիի Հայք՝ Այտընի գաղթականութեան մէկ ճիւղը կրնան համարուիլ. իբր 250 տարի յառաջ հաստատուած են այս տեղ։ Իրենց անցեալին վրայ որոշ տեղեկութիւն չկրցանք քաղել. այժմ 60 տուն կը հաշուին եւ ընդհանրապէս կը զբաղին տեղական արուեստներով, վերջին տարիներուս մէջ սկսած են վաճառականութեան ալ հետամուտ ըլլալ եւ մեծ ջանք կը ցուցընեն յառաջադիմութեան։ Իրենց թաղը կը գտնուի քաղքին հիւսիս արեւելեան կողմը, բայց տները ցրուած ըլլալով ամփոփ թաղ մը բռնած չեն։ Ունին եկեղեցի մը, վարժարան մը, զատ գերեզմանոց, թաղական խորհուրդ, քահանայ եւ ուսուցիչ մը։ Տներու մէջ տաճկերէն լեզուն կը տիրէ, նոր սերունդը հայերէնի մէջ աւելի վարժ է եւ մեծ յոյս կայ՝ քիչ ժամանակէն ընտանեկան լեզուին հայերէնի փոխուելուն։

Բ. Վարժարանն՝ որ կը գտնուի եկեղեցւոյ պարտէզին մէջ, ունի լայն եւ ընդարձակ սրահ մը, որուն ճակատը գրուած է Հոյլոզեան Վարժարան 1888։ Թուականէս ինչպէս կը տեսնուի՝ շէնքը նոր է, լուսաւոր եւ պայծառ. հոս կը ժողովին մանչ ու աղջիկ զաւակունք, թուով 30—40, եւ վարժապետի մը հսկողութեան ներքեւ կը սորվին՝ տեղւոյն կարեւոր եւ իրենց վիճակին հարկաւոր ուսմունքները[1]։

---

[1] Վարժարանիս վրայ խօսած ենք «Հանդէս Ամսօրէի» 1897 տարւոյ Սեպտեմբերի թուոյն մէջ, էջ 274։

Գ. Եկեղեցին նուիրեալ Ս. Հռիփսիմէի՝ կառուցուած է 1843ին հնոյն տեղը. քարէ է շէնքը՝ հաստատուն պատերով եւ պարտէզէ մը շրջապատեալ։ Եկեղեցւոյ առաջակողմը՝ աւագ դրան վրայ, դէպ ի պարտէզ դուրս ելած է կանանց վերնատունը՝ տասը սիւներու վրայ հաստատուած եւ կողմնակի սանդուխով մը զարդարուած։ Հիւսիսային կողմը կը տեսնուի զանգակատան աշտարակը՝ փայտաշէն, բայց սիրուն եւ ձեւաւոր։ Եկեղեցին ունի միակ դուռ մը, Աւագ դուռն. դրանս ճակատը հաստատուած է մարմարիոն քար մը հետեւեալ քանդակագրութեամբ.

"Ի հիմանց նորոգ շինեցաւ սուրբ եկեղեցիս յանուն սրբոյն Հռիփսիմեայ արդեամբ Նազիլու եւ Զմիւռնիոյ եւ բոլոր վիճակաց օրհնեալ ժողովրդոց Յառաջնորդութեամբ Տեառն Մատթէոսի սրբազան արքեպիսկոպոսին Պոլսեցւոյ Թվին փրկչին Տեառն մերոյ 1843 Մայիսի 24։"

Եկեղեցին ի ներքուստ ունի 11.50 մետր երկայնութիւն եւ 8.60 մէտր լայնութիւն. միջավայրն՝ իրարմէ չափաւորապէս հեռու կանգնուած են չորս սիւն, որոնց վրայ հաստատուած է ձեղունը։ Դասին վրայ կը տեսնուի աւանդատան դուռն, բեմն եւ բեմին վրայ մէկ կարգի մէջ երեք խորաններ։ Աւագ խորանին պատկերն է Ս. Յարութիւն, իսկ աջ ու ձախ խորաններու պատկերներն են Ս. Աստուածածին։

Եկեղեցիս ի ներքուստ չունի մասնաւոր արձանագրութիւն մը կամ յիշատակաց արժանի բան մը։ Բեմն շինուած է հին շիրիմներու քարերով, որոնց վրայ կը գտնենք հետեւեալ արձանագրութիւնները.

Այս է տապան Մանլեւեցի
Պապախանի որդի Գրի
զոլին Թվ ՌՃԿ.

Թվին ՌՄԱ
ի Քրի Ծյ քառասարը
Թորոսի որդի Գէոր
գ Ած ողորմի հոգին

Ի Թ Մայիս
ՌՄԽ ԺԵ
Այս է տապան հան-
գուցեալ Թախաթեցի
տիրացու՝ Օհաննէսի հող
ակից Մարքէտամն որ փոխեց
ի մահճէ կեանքս

*Թվ ՌՄԽ*
*Յունիս ամիս ԻԱ*
*Այս է տապան հ*
*անգուցեալ*
*ափքեսէցի մհի*
*Յակոբին որ փոխեցաւ*
*ի կեանս*

Թվ ՌՄԽ
ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՀԱՆԳՈՒՑԵԱԼ
ԱՓՔԵՍԷՑԻ ՄՀԻ ՍԷՐԳԻՍԻ
ՈՐԴԻ ՅԱՐՈՒԹԻՒՆԻ ՈՐ
ՓՈԽԵՑԱՒ Ի ՄԱՀՎՆԷ
Ի ԿԵԱՆՍ ՅՈՒՆԻՍ Ե·ԻՆ

*Այս է տապան հնգըսեն*
*Թոխաթցի տիրացու Օհաննէսի*
*դուստն Աննայի որ փո*
*խեցաւ ի մահճէ ի կեանս*
*Թվին ՌՄԽ Յունիս Ի*

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ
ՂԱՐԱ ՀԷՍԱՐՑԻ
ԾԽՐՈՆԻ ՈՐԴԻ ՂՈԿԱՍ
ՂՈԿԱՍԻ ՈՐԴԻ ՄՀԻ
ԹՈՐՈՍ ԹՎԻՆ
ՌՄԽԸ

Այս է տապան
Կէսարացէ
է Ղաաանճ
է Թօմաէ
ն որ եւ ջէր
մերանդ, և
անփէսա
Թվին ՌՄԽԹ.

Այս գերեզմանաքարերէն զատ՝ եկեղեցւոյ աւագ դրան առջեւը կամ թէ ըսենք գաւիթը քարայատակ ընելու համար գործածուած են հին գերեզմանաքարեր, որոնց քանդակագրութիւններն անցուդարձէն բոլորովին ջնջուած են, դժուարաւ կը կարդացուին հետեւեալները։

*Այս է տապան*
*Գումարեցի Բնեաթի*
*Կողակից Ոսկին Թվին*
*ՌՄԺԸ:*

*Այս է տապան տաշմոն*
*եցի † Առաքելի կող*
*ակից մհսի հեշն*
*Թվին* ՌՄԻ

Այս է տապան Աչուլշէ

ՄՀս Սահակ որդի մօր

. . . . . . . .

ՌՄԻ.

Դ. Ինչպէս վերագոյն յիշեցինք Նագըլըի Հայք ունին առանձին գերեզմանոց մը, այս գերեզմանոցը կը գտնուի քաղքին արեւելեան կողմը՝ տներէն բաւական հեռու։ Գերեզմանոցիս մէջ կը գտնուին հնագոյն գերեզմանաքարեր, որոնք կոտրած մաշած, կէս հողով ծածկուած եւ ապականած են. այս քարերն աւելի հնագոյն շէնքերու մնացորդներն եղած են, զորոնք Հայք առնելով շիրիմներու գործածած են. ընթեռնլի են տակաւին հետեւեալները։

*Այս է տապան Գոմարեցի*
*Աղիջանի որդի Սեւակի*
*Թվին ՌՃԽԷ.*

Այս է տապան
Ղափ . . . . .
ՌՃԿ.

Այս է տապան
Մանլը–եցէ Ա
Բրահամի որդէ Մարկ
ոսին Ռվէն ՌՃԿԲ.

*Այս է տապան Լճկցի*
*Մարգարի որդի*
*Բարսեղի Թվին ՌՃՀ.*

### ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ԿՐԹԵԹԱՂԵՑԻ ՄԱՀՏՍԻ ՊԱԼԻ ՈՐԴԻ ՕՀԱՆԻՆ ԹՎԻՆ ՌՃՂ.

*Աս է տապան Ղա*
*փանեցի ի գեղէն*
*որ գոչի . . . . . . .*
*. . . . . . . Տր Օվա*
*նէսի Թվին ՌՄԼ.*

Այս է տապան երե
վանցի կեղին ÷
որ կոչի Ալէթլովեցի
տր Եղիազարի որդի †
տր Գրիգոր Ած լու
սաւորեացէ հոգոյն
Թվին ՌՄԻ սեփտե
մբերի ԻԵ .

Մահարձան
Մուշեցի
Կիրակոս
1830 Մրտ
15

Դամբարան
Այս է տապան հանգստեան
Վանի Մօկայ գիւղէն
Յարութիւն Յովհաննէսեան
յանկարծակի մահուամբ
յամի տեառն
1888
Մայիս 15.

* * *

# ՅԱԽԵԼՈՒԱԾ

Այս տեղի Հայ գաղթականներն եկած են 400 տարի առաջ՝ Արեւանէն, Ագուլիսէն, Ղարապաղէն։ Առ հասարակ Հայք վաճառական, դերձակ, երկաթագործ, ոսկերիչ, ծխավաճառ, մաղագործ, սափրիչ են։ Ունին 53 տուն, 57 այր, 64 կին, 4 երիտասարդ, 27 պատանի, 13 օրիորդ, 54 տղայ, 55 աղջիկ։ Կայ եկեղեցի մը Ս. Հռիփսիմէ անուամբ, վարժատունը վարձու բռնուած տուն մըն է, ուր 38 աշակերտ ու աշակերտուհի կը յաճախեն։ Ազգային արկղին մուտքն է ղրշ. 11.300, ելքն է ղրշ. 10.445։ Այս գումարէն ղրշ. 5700 դպրոցի համար ծախք կ՚ընեն։

---

## ԳԼՈՒԽ ԵՐՐՈՐԴ

## Տէնիզլի։

### 1.

*Ընդհանուր Տեսութիւն։*

Տէնիզլի կը գտնուի Զմիւռնիոյ հարաւ-արեւելեան կողմը. Տաւրոսի լեռնաշղթային արեւմտեան թեւին հետ միացած եւ Պոզտաղ ըսուած լերան առջեւը շինուած է։ Քաղաքին արեւմտեան-հարաւ կողմը կիսաբոլորակ պատած է այս բարձրագլուխ լերան գօտին, իսկ հիւսիս-արեւելեան կողմը բաց է, կը տեսնուին միայն հոս հոն ցած բլրակներ եւ ընդարձակ դաշտ մը։

Զմիւռնիայէն Տինէր երկնցող երկաթուղւոյ գիծը՝ Նազիլլիէն մէկ ժամ հեռու Գոնճէլի ըսուած գիւղին առջեւէն երկրորդ ճիւղի մը բաժնուելով, կ՚անցնի ի հնումն նշանաւոր Լաւոդիկէի աւերակաց քովէն եւ կը վերջանայ Տէնիզլիի առջեւն։

Տէնիզլի անունը շատ կը յարմարի այս քաղաքին, վասն զի սոյգ ալ բազմաջուր եւ ջրաշատ քաղաք մ'է․ գրեթէ ամէն տուն ունի վազող ջուր․ ամէն փողոցին ծայրը յորդահոս աղբիւրներու կարկաջասահ ձայները կը լսուին։ Այս ջրերն ի մի գալով՝ տեղ տեղ առուակներ կը ձեւացընեն․ ի մասնաւորի տաճկաց թաղին կողմերը գտնուած պարտէզներուն մէջ՝ ջրոյ ինքնաբուղխ ակունքներ կը տեսնուին, որոնք պարտէզներու բերքերը ոռոգանելէ ետքը՝ կը վազեն կ'երթան ուրիշ նպատակի ալ օգտակար ըլլալու։

Ջրոյ առատութիւնը օգտակարապէս կը գործածէ տեղացին․ շոգւոյ եւ հովին կատարած պաշտօնը՝ հոս ջուրը կը կատարէ․ բազմաթիւ ջրաղացներ շինուած են, մին միւսէն բարձր, մէկին գործածած ջուրն երկրորդը վերստին կը գործածէ եւ որոնց անիւներուն հանած դղրդիւնը՝ ջրոյ կարկաջներուն հետ միացած՝ լսելեաց ախորժելի է․ իսկ՝ իւր ծառայութիւնը մատուցած ու փրփրալով անւոյ տակէն դուրս ելած ջրոյ տեսքը հիանալի է։

Տէնիզլիի ամէն տները պարտէզ մ'ունին՝ ծառերով եւ վազող աղբիւրով մը զարդարուած, մասնաւորապէս տաճկաց թաղին մէջ կան շատ տներ, որ նոյն իսկ քանի մ'արտավար ընդարձակութիւն ունեցող պարտէզով շրջապատուած են։ Բայց դժբախտաբար տեղացիք օգտակարապէս գործածելու եղանակը չեն գիտեր․ սոյն պարտէզներու մէջ կը գտնուին միայն անպտուղ ծառեր եւ թփեր (ի բաց առեալ քանի մը տեղ գտնուած աննշան թուով պտղատուները)․ որոնց տեղ կրնային տնկել պտղատու ծառեր եւ շահաբեր ընել իրենց ունեցած երկիրը․ կ'ըսուի թէ տեղացիք ծոյլ են, փոխանակ յոգնելու՝ բնութեան պարգեւածովը գոհ կ'ըլլան։ Օդը վատառողջ է եւ տենդն՝ անպակաս, ձմեռը ցուրտ կ'ընէ իւր կռնակը բարձրացած Պապաղին պատճառաւ․ չունի տաք կլիմայի յատուկ

պտուղներն, ինչպէս նարինջ ու լիմոն, որ Այտընի եւ Նազիլլիի զարդերն են, նշանաւոր է ցորեանը, ունի նաեւ զանազան արմտիք։

Քաղաքն երեք գլխաւոր վայրերու կրնանք բաժնել, բուն քաղաքը, երկրորդ շուկան եւ երրորդ երկաթուղւոյ կայարանը։ Շուկան տներէն հեռու առանձին տեղ մը շինուած է, խանութպան մը առտու կանուխ պիտի ելլէ եւ ամառ ատեն փոշիներու ու ձմեռը ցեխերու մէջէն՝ քառորդ ժամ կամ քսան վայրկեան քալելէ ետքը պիտի անցնի իր գործին գլուխը։ Երկաթուղւոյ կայարանը նոյնպէս բաւական հեռու է այս երկուքէն ալ. հետիոտն գրեթէ կէս ժամ կը տեւէ կայարանէն մինչեւ քաղաք։ Շաբթուան մէջ երկու օր, կիրակին եւ հինգշաբթին որոշուած է տօնավաճառի։

Տէնիզլի Մութասարըֆութիւն է. բնակիչք իրենց բազմութեան կարգաւ են Մահմետական, Յոյն, Հայ, Հրեայ։ Յոյնք ունին եկեղեցի մը եւ երկսեռ վարժարան. 400 տուն կը համարուին։ Հրեայք վերջին տարիներուս մէջ սկսած են բազմանալ, յառաջագոյն իրենց անունն անգամ չէր լսուեր։

## 2.

Հայերն, նախկին եկեղեցւոյ եւ գերեզմանոցի վայրը. այժմեան Թաղերնին, եկեղեցին, վարժարանը, գերեզմանոցը եւ գերեզմանաքարերու յիշատակարանները:

Ա. Տէնիզլիի Հայք կը համարուին Պարսկաստանի գաղթականներէն, որոնք քաղաքս գալով՝ ի սկզբան անդ իրենց բնակութեան վայր կ՚ընտրեն շուկայի մօտերը. տակաւին այս օրս կը տեսնուի իրենց նախկին գերեզմանոցն եւ նախկին եկեղեցւոյ վայրը, երկաթուղւոյ կայարանէն՝ քաղաք տանող հասարակաց ճամբուն աջ կողմը, շուկայի մօտ, որ յընթացս ժամանակաց մզկիթի դարձուած է եւ այժմ Գուրշունլու ճամի անուամբ ծանօթ է

ամէնուն։ Եկեղեցւոյս հիմնարկութեան եւ շինութեան, ինչպէս նաեւ իրենց տեղս հաստատուելուն որոշ թուական մը չենք կրնար նշանակել՝ արձանագրութեանց պակասութեան պատճառաւ։ Գերեզմանոցին մէջ կը տեսնուին քանի մը քարեր, բայց ասոնք ալ հակառակ դարձուած՝ կէս հողին տակ գոցուած են, պարագաները չեն ներեր այս քարերուն վրայ աշխատիլ եւ կամ եկեղեցւոյ ներսը մտնել, յիշատակարանի մը նշան գտնելու յուսով։

Բ. Անցեալ դարու կէսերը Հայք կը թողուն այս տեղը եւ կը փոխադրուին այժմեան քաղաքին վերին ծայրը, ուր առանձին թաղ մը կը կազմեն, յունաց եւ տաճկաց թաղերէն զատուած։ Այս թաղը բաժնուած է երկու մասի Վերին Թաղ եւ Վարի Թաղ անուններով եւ այս երկուքին մէջտեղը շինուած է եկեղեցին եւ դպրոցը։ Թուով 80 տուն կը հաշուին, որոնցմէ 10ի չափ մերձակայ գիւղերը ցրուած են. ընդհանրապէս կը զբաղին վաճառականութեամբ եւ տեղական արուեստներով[1]։ Տներուն մէջ տաճկերէն կը խօսին. կը յիշուին ալեւոր տիկիններ, որոնք հայերէն կը խօսին եղեր, ասոնցմէ մնացած մէկ երկուքն ալ, ասկէ քանի մը տարի յառաջ կնքած են իրենց կեանքը, որով չկրցանք լսել անձամբ Տէնիզլիի նախկին Հայոց խօսած հայերէնը։ Վերջին նոր սերունդը սորված է իւր լեզուն եւ վարժ կը խօսի. կը յուսացուի որ քիչ ժամանակէն ընտանեկան լեզուն ալ պիտի փոխուի հայերէնի, շնորհիւ դպրոցներու յարատեւութեան։

Գ. Եկեղեցին նուիրեալ է Աստուածածնի. արեւելեան եւ հիւսիսային կողմերը նեղ, իսկ առաջակողմն եւ հարաւային կողմը բաւական ընդար-

---

1 Նշանաւոր են այժմ՝ Հաճի Խաչիկ Գէորգեան, Սարգիս Գուշագճեան, Ստեփան Գէորգեան, Յօհաննիկ Փէշտիմալճեան, Հաճի Ստեփան Ղազարեան, Գազէզեան, որոնցմէ ոմանք տէրութեան պաշտօններու մէջ եւս գործ ունին։

ձակ պարտէզով շրջապատեալ են։ Արտաքուստ՝ աւագ դրան առջեւն եւ հարաւային կողմը շարուած են տասներկու սիւն, որոնց վրայ աւագ դրան առջեւը հաստատուած է կանանց վերնատան մէկ մասը, իսկ կողմնակի սիւներուն վրայ պարզապէս հովանաւոր ծածկ մը։ Ետեւն՝ աջ ու ձախ դուրս ելած են երկու թեւեր, որոնք կը գործածուին իբր աւանդատուն։ Շէնքը քարաշէն է, բայց ցած, ունի երկու դուռ եւ երկուքին ճակատն ալ կը գտնուին զատ զատ արձանագրութիւններ։

Աւագ դրան վրայ հաստատուած մարմարիոն քարին վրայ քանդակուած է հետեւեալը.

“1831 Նոյեմբրի 1.

Ուրախ լեր սուրբ Սիոն որ ի սուգ էիր ցարդ-
երիւք տասն ամօք ի հրոյ աւերակ։ Արդ ողորմու-
թեամբ Տեառն յոյժ պայծառ շինեցար հաստա-
տուն նոր հիմամբ գեղեցիկ կառուցաւ· ի յառաջ-
նորդութեան սրբազան մեր վեհի Գաբրիէլ պարգ-
սուրբ Երուսաղէ . . . մի ի վերատեսչութեան Տեառն
Կարապե . . . տի Կոստանդնուպոլսի իսկ աշխատեալ
վանքս Ջանիկ ամիրայի հանեալ շինմանդ ֆերման
հոգւոր առգինի։ Որով եւ մահտեսի Խաչիկ վեհ
աղա . . . յի· շինեաց զայս սուրբ տունդ յանուն
Աստուածածնի։ Սեփհական իւր արդեամբ յոյժ
զարմանալի ի յիշատակ հոգւոց իւր օրհնեալ ծնո-
ղի Աստուած պահեսցէ զնա միշտ պայծառ յայս
կենի վարձատրեսցէ փառօք ի հանդիս(տ)արանի։„

Իսկ կողմնակի՝ հարաւային դրան ճակատը հաստատուած քարին յիշատակարանը կը կարդանք այսպէս.

Ի բարի յարմատոց տունկ բարի ըխ   եալ
Ջերախտիս ծնողին զմտաւ պահ   եալ
Բարեհամբաւ   աղայ   Խաչիկ   առձայնեալ
Զայս տաճար փառաւոր իւր արդեամբք շինեալ
Յիշատակել զհայրն՝ մահտես Առա   քել

Յարթին Կոզմաս Ցակոբ՝ զեղբարսն հոգեսէր
ԶՏիրուհի դուստրն՝ կոյս պարկեշտասէր
Եւ մահտես Գաբրիէլ փեսայն բարեսէր
Եւ եւս ի յիշատակ կենդանի ցեղին
Մահտեսի Աննա Մարիամ քերց տոհմականին
Եւ իւր իսկ փեսայ մահտես Ցակոբին
Եւ բարեպաշտ դստերն՝ մահտես Կիւլիւմին
Եւ մահտես Գէորգ օրհնեալ զաւակին
Եւ քեռառն Ցովակիմ՝ փեսայ պարոնին
Եւ կողակցոյն իւրոյ՝ տիկին Մարգարտին
Եւ դստերցն Սրբուհի Թագուհի Մարկիւլին
Քեռ որդւոցն Օհաննէս՝ Ցարթին Ցակոբին
Անթառամ Սրբուհի՝ Սանդուխտ իւր ազին։

Եկեղեցին ի Ներքուստ ունի 14·20 մետր երկայնութիւն եւ 9 մետր լայնութիւն. միջավայրն չորս փայտաշէն սիւն կանգնուած են, որոնց վրայ հաստատուած է փայտածածկ ձեղունը. աւագ դրան վրայ կանանց վերնատան մէկ մասը դուրս երկնցած է, մէկ մասն ալ դէպ ի պարտէզ, ինչպէս վերագոյն յիշեցինք. բեմին վրայ փայտակերտ երեք խորան կը տեսնուին, որոնցմէ աւագ խորանին պատկերն նուիրեալ է Ս. Աստուածածնի. աջակողմեանը Լուսաւորչի, ձախ կողմինը Ս. Գլխադիր. իսկ ձախակողմեան աւանդատան փոքրիկ սեղանին պատկերն է Ս. Գէորգ։ Եկեղեցին ի Ներքուստ չունի արձանագրութիւն եւ յիշատակարան. միայն ձախակողմեան աւանդատան դրան վրայ հաստատուած է քար մը հետեւեալ արձանագրութեամբ, որ եկեղեցւոյ դրանց վրայ եղած յիշատակարանաց շարունակութիւնն է։

“Բարեծնունդ իշխան մեծազգի մհտես Խաչիկ աղայ սիրելի շինեաց մատուռս սրբոյն Գէորգի ի յիշատակ հանգուցեալ ծնողի մօրն իւրոյ մհտես Կիւլիւմի եւ քաղցր որդւոյն մհտես Սիմօնի եւ կողակցոյն տիկնոջ Թագուհի եւ քեռորդւոցն Միքայէլ դպրի եւ Տէր Եսայի յոյժ երախտաւորի ույր կողակից Մարիանի։„

Բաց ի այս արձանագրութիւններէն ուրիշ երկու պատկերաց եզերքը կը կարդանք հետեւեալ երկու յիշատակարանները.

"Յիշատակ է պատկերս Ըսայէի որդի մահտեսի Ավէտիսին մօրն Սանդուխտի Ս. Աստուածածնայ եկեղեցւոյն թվին ՌՄՁԳ„

"Յշտկէ պատկերս Տէնիզլի հանգուցեալցի







Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ:

Առաքելին եւ կողակցուն մահտեսի Մարգրտին Ս. Աստուածածնայ եկեղեցւոյ թվին 1830„:

Դ. Եկեղեցւոյ առաջակողմն՝ պարտէզին մէջ, կը գտնուի բաւական ընդարձակ շէնք մը՝ կրկնայարկ, որուն վարի յարկին վրայ դիմացէ դիմաց եղած խուցերէն մին որոշուած է իբր ժողովատեղի թաղականաց, միւսն եկեղեցւոյ պաշտօնէին համար է: Երկրորդ յարկը կը գործածուի իբր վարժարան, որուն դիմացէ դիմաց շինուած սրահներուն մին

մանչերու, երկրորդն աղջկանց սեպհականուած է։
Մանչերու թիւն կը հասնի 50ի, որոնք ունին առ-
անձին վարժապետ մը. կը սորվին հայերէն, տաճ-
կերէն լեզուները եւ երկրորդական ուսումներ։
Աղջկանց թիւն է 28—30. ունին առանձին վար-
ժուհի մը. կը սորվին ձեռագործ, հայերէն եւ
նախնական ուսումներ[1]։

Ե. Տէնիզլիի Հայք ժամանակ մ'ունէին եր-
կու գերեզմանոց, մին եկեղեցւոյ պարտէզը, միւսն
յունաց թաղին մօտ՝ ընդարձակ վայր մը։ Եկեղե-
ցւոյ պարտէզը կը թաղուէին միայն հարուստ դա-
սակարգէ ընտանեաց ննջեցեալները, երկրորդին
մէջ աղքատները։ Քանի մը տարի յառաջ, 1893
թուականին հիւանդութեանց պատճառաւ, երբ
եկեղեցւոյ պարտէզը ննջեցեալ թաղելն արգիլուե-
ցաւ, Հայք երկրորդ գերեզմանին վայրը կարգաւո-
րելով, շուրջը հաստատուն քարաշէն պատեր բար-
ձրացուցին եւ սկսան այնուհետեւ թէ հարուստն
եւ թէ աղքատը հոն թաղել։ Գերեզմանոցիս դրան
ճակատը քանդակեալ կը կարդանք հետեւեալը.

"Դարուց ի վեր եղող սեպհական ագգիս
Հայոց այս դանբանական, նպաստեցին որմոց շինու-
թեան, տեղացիք եւ ագգս համայն 1894 Սեպտ. 1."

Եկեղեցւոյ պարտէզին մէջ կը գտնուին ան-
նշան թուով գերեզմանաքարեր, իսկ վերջնոյս մէջ
հազիւ մէկ երկու հատ. ասոնց վրայ քանդակուած
յիշատակարաններն են հետեւեալներն, զորս յա-
ռաջ կը բերենք տարւոյ կարգաւ։

*Այս է տապան Սիվրին
սարցի ճէնատէրէճ
մՆի Յակոբ աղայ որ

---

1 Վարժարանիս վրայ ընդարձակագոյն խօսած ենք
"Հանդէս Ամսօրէի" 1897 տարւոյ Սեպտեմբերի թուոյն մէջ.
էջ 274։

* Տապանաքարս գերեզմանոցին մէջն է։

Հանգեաւ մ՚հի Տոնաւի
յին. որ փոխեցաւ
... Ած ող
... մի ա 1817
Օգոստոսի.

## Մահարձան խաչիկ աղայ Աստուածատրեան

Ով նիւթական պատճառ մարդկան հող երկրի.
Զով հրաւիրեալ՝ պարագրեցեր քում ծոցի.
այր երկիւղած եւ բարեպաշտ հոգելի
խաչիկ աղայ՝ իշխանապետ պանծալի։
խոհեմութեամբ կառավարիչ գաւառաց
մեծ գթութեամբ խնամօղ տածիչ աղքատաց.
ոսկեայ պսակ եղեալ ի գլուխ հայկազանց.
խաչիկ աղայ իշխանապետ բաղձալի.
երիցս ելեալ յԵրուսաղէմ սուրբ տեղին.
երկրպագեալ սրբոյ շիրմի մեր փրկչին.
սերտ հաւատով յուսով առ օղխնդրելին.
մահտեսի խաչիկ իշխանապետ ցանկալի։
Հիւպատոսաց եւ բդեշխից իշխանաց.
խորհրդատու գոլ ըստ ծիսի օրինաց.
որով եղեալ յոյժ սիրելի այլ ազանց.
մահտեսի խաչիկ իշխանապետ տենչալի.
ընչիւք իւրովք վեկեղեցին կառուցեալ.
ի մէջ ազգիս որպէս արփին գերփայլեալ.
բարի համբաւն ընդ ոլորտըս հռչակեալ.
մահտեսի խաչիկ իշխանապետ գովելի։
Սա հետամուտ բանից գործոց հոգեւոր.
տիւ եւ գիշեր աղօթարար ճրգնաւոր.
զէտ հրեշտակ հոգւով մտօք լուսաւոր.
մահտեսի խաչիկ իշխանապետ պանծալի.
մահտեսի խաչիկս հայցեմ ի ձէն զապա բան.
Ով սիրելիք որք տեսանէք զայս տապան.
ընդ իմ մաղթել առ Տէր Յիսուս գթութեան
առնել իւրում արքայութեան զիս արժան։
Հազար ութ հարիւր երեսուն եւ եօթ փրկչական,
ի Նոյեմբեր ամսոյ օրհասականխական.
եղեւ հանդէս սորին փոխման եւ թաղման.
թողեալ մեզ սուգ ազգիս հայոց տրտմական։
1837 ի 14 Նոյեմբերի։

Է.

Յօղեցէք յականցդ զցօղ արտասուաց,
այցելուք շիրմիս հոգիք բարեզգաց.

աստեղք ի բարձանց լերին ընդ սա հաշտ այր հեզահամբոյր հոգւով բարեպաշտ Աւետիս աղայն Գասպարեան զարմին բուսեալ ու ի սիք սընեալ ի յակին ճոխ սեղանաւոր կացեալ աստ յերկիր ի քառասուն յեւթն տիո եհաս իւր վճ. ու վախճանեալ 1857 Փետրվար 4.

*Աստ հանգչի մարմին*
*Գէորգ աղայի Մ.* (Խաչէկ)
*եւն որ հանգեաւ ի Տէր*
*1867 Մայ. 17ին.*

Աստ հանգչի մարմին՝ Մ.
Աստուածատուր աղա Սար
գիսեան որ հանգեաւ ի
Տէր 1871 Դեկ. 21ին

*Մահարձանըս
Սիմէօն աղայի Երազեան Ախըլցխեցւոյ
հանգեաւ
1872 Յուլիս 16
Մինչ ամոլքըս ի հայրենին առ
նէաք դարձ
մանգաղ մահուն ըղհա
բազատըս ո՜հ յինէն բարձ
նժդեհութեանն արկ տա
բաժամ այսըր տապաստ
մեկնիմ ահա մարմնով եւ
եմ սրտիւքս աստ
ողբերգեալ
երէց յեղբօրմէն Ստե
փան աղայէ Երազեան
Վանըը.

* Յապանաքարս գերեզմանոցին մէջն է։

Այս հանգչի մարմին տի
կին Մ. Աննա Յ. Ծերունեան
որ հանգեաւ ի Տէր 1873
Ապրիլ 29

Զմիւռնացի Խաչատուր
որդի Յովհաննու
Տէր Խաչատուրեան
ծաղկեալ
հրիւք եւ շնորհօք
ի հասակի երեսուն եւ վեց ամաց
աստ ընդ օտար աստեղօք
հանգեաւ ի Քս
ի 29 Յուլիս 1878

Այս հանգչի մարմին
տիկին Մ. Թագուհւոյ Մ.
Խաչիկեան որ հանգեաւ
ի Տէր 1881 Օգոս. 1ին

* *
*

# ՅԱՒԵԼՈԱՒԾ

Տէնիզլիի Հայոց թաղը քաղքին վերի ծայրն է, իր Ս. Աստուածածին անուն եկեղեցիով: Հայք, որ Պարսկաստանէն գաղթած են, ունին 82 տուն. կան 86 այր, 107 կին, 14 երիտասարդ, 24 պատանի, 17 օրիորդ, 73 տղայ եւ 78 աղջիկ: Քաղքին ծերերն իրենց մայրենի լեզուն աւելի լաւ գիտեն քան թէ պատանիները: Հայք առ հասարակ առուտրով ու այլ եւ այլ արուեստներով կը պարապին: Աշխատասէր, տնտես են եւ քիչ շատ

բարեկեցիկ։ Ունին վարժատուն մը, զոր բարեկարգելու կ'աշխատին. Եկեղեցւոյ մուտքն է ղրշ. 9100. ելքն ղրշ. 9290։ Վարժատան համար 3000 ղրշ.ի մօտ ծախք կ'ընեն.

---

## ԳԼՈՒԽ ՉՈՐՐՈՐԴ

### *Էօտէմիշ։*

### 1.

*Ընդհանուր տեսութիւն։*

Էօտէմիշ՝ Զմիւռնիոյ հարաւ-արեւելեան կողմը կը գտնուի եւ Այտընի հիւսիսային դին։ Երկաթուղին որ ինը տարիէ ի վեր կապած է քաղաքս Զմիւռնիոյ հետ եւ երթեւեկութիւնը մեծապէս դիւրացուցած, գրեթէ չորս ժամուան մէջ կը հասնի Էօտէմիշի առջեւը։

Քաղաքս շինուած է դաշտի մը վրայ, հիւսիս-արեւելեան կռնակը բարձրացած է լերանց շղթայ մը, որուն ամենաբարձր գագաթը կ'անուանուի Պօզ տաղը եւ 5000 ոտք բարձր է. իսկ առջեւը կը տարածուի երկայն դաշտ մը, որուն դիմացի կողմը կը տեսնուի Թիրէի լեռնագօտին եւ Թիրէ քաղաքը։ Էօտէմիշի առաջակողմը տարածուած դաշտագետինը կը հասցընէ ցորեն, գարի, կանեփ, բամպակ, ծխախոտ, ունի ձիթենի, թզենի, խնձորի, տանձի եւ ուրիշ պտղատու ծառեր. նաեւ խօզկաղին (ֆօլամօ–փ) եւ ընդարձակ այգեստանեայց յառաջ բերած չամիչը. մերձակայ լերանց մէջէն կը հանուի ծարրաքար (Antimoine) որ վաճառականութեան աղբիւր մըն է տեղւոյն համար։ Դաշտագետնոյս մէջէն կ'անցնի փոքր Մէնդրէս գետը, որ կ'երթայ կը թափի Գուշ-Ատայի ծոցը։ Կլիման բարեխառն եւ մեղմ է. չունի առատ ջուր. Պօզ տաղն՝ երբեմն երբեմն կը ցուցընէ իւր

բարձրութեան հետեւութիւնը, ցուրտ սառնամանիք կը սփռէ քաղքին վրայ։ Քաղքին նշանաւոր վայրերն են՝ շուկան, Մեզար պաշը անուանեալ լայն եւ ընդարձակ՝ երկու կողմը ծառերով զարդարուած փողոցը եւ Ուզուն սօգագ անուանեալ փողոցը։

Էօտէմիշ գայմագամանիստն է. բնակիչք իրենց բազմամարդութեան կարգաւ են Մահմետական, Յոյն, Հայ եւ աննշան թուով Հրեայ։ Յոյները 550 տուն կը հաշուին, ունին երկու եկեղեցի, հիւանդանոց մը եւ երկու վարժարան. վաճառականութիւնը ընդհանրապէս իրենց ձեռքն է, բայց կրթութեան մասին այնչափ յառաջադէմ չեն։

## 2.

*Էօտէմիշի հայոց նախկին վայրն՝ Պերկի եւ Պերկիի գերեզմանաքարերը. այժմեան եկեղեցին, արտաքին երեսին վրայ գտնուած քանդակագրութիւններ, ներքինը, ներսը տեսնուած խաչքարերու, պատկերաց եւ սուրբ անօթից վրայ քանդակուած, գրուած եւ փորագրուած յիշատակարաններ. վարժարանները, ընթերցարանն, իրենց վիճակը, խօսակցութիւնը, ձեռագիր մատեանք, գերեզմանատուն եւ գերեզմանաքարեր:*

Ա. Հայերը կը հաշուին 210 տուն. ունին եկեղեցի մը, երկու վարժարան, առանձին գերեզմանոց մը եւ բաւական կալուածք։ Ի սկզբան անդ Հայք՝ իբր 300 տարի յառաջ, իրենց բնիկ երկրէն գաղթած են Պերկի անուանեալ քաղաքն, որ Էօտէմիշէն $2\frac{1}{2}$ ժամ հեռու վայր մը կը գտնուի, եւ վերջէն Պերկին թողլով՝ եկած հաստատուած են յԷօտէմիշ, գրեթէ 150 տարի յառաջ։ Տակաւին այսօրս Պերկիի մէջ կը տեսնուին Հայոց թողուցած յիշատակարանները, գերեզմանոցն՝ ուր կը գտնուին հայերէն գրերով գերեզմանաքարեր։ Պերկիի Հայոց թողուցած յիշատակներէն կը գտնենք նաեւ արծաթեայ սկիհ մը, Էօտէմիշի եկեղեցւոյ մէջ

պահուած, շատ սիրուն եւ բարակ զարդերով գործուած եւ վրան հետեւեալ յիշատակարանը փորագրուած.

"Յշտկ է սուրբ սկիհս Կառաւեցի մահտեսի Մկրտումին, որ Պերկիու ժամատանն ետ անուն սրբոյ Յոհաննիսի օծեալ վիմի համօրէն ննջեցելոցն թուին ՌՄ."

Իսկ գերեզմանատան մէջ մնացած քարերու ընդօրինակութիւնը՝ որ կը գտնենք յԷօտէմիշ Յովհան էֆ. Տէտէեանի քով, զորս գրած է 1878 Դեկտ. 3 հետեւեալ կերպով.

"Գեր. Ծ. Մակար վարդապետն, Տէտէեան Յովհան եւ Կարապետեան Աւագին հետ Պերկի երթալով տեսաւ մեր նախկի գերեզմանատունն, գրի առաւ գրուած քարերուն արձանագրութիւնները, նոյնպէս 8 հատ ձիթենի ծառերն որ են գերեզմանատան մէջ։ Որովհետեւ յիշեալ վարդապետը այն տեղ մնալու քննելու եւ տեղեկանալու ժամանակ չունէր, խնդրեց Մեծ. Սիմէօն էֆէնտիէն որ Հայոց սեփհականութիւնը եղող այս գերեզմանատան համար աշխատի եւ դարձեալ Հայոց վերադարձնէ։

Ա. թուին ՌՃԻ այս է տապան շաշկետեցի Պօղոսին

Բ. թուին ՌՃԾԹ շաշկետեցի

Գ. թուին ՌՃԿԹ կալերցի

Դ. թուին ՌՃԿԷ սավալանի որդի մահտէսի Օհաննէսի ադուլեցի

Ե. թուին ՌՃԾԵ մաղրեցի Մովսիսի որդի Փիրանոս

Զ. թուին ՌՃԻԷ Գրիգոր կալերցի

" Անտոն կալերցի

Է. թուին ՌՃԺԵ կալերցի Աբգարին

Ը. թուին ՌՃՁԶ կալերցի Սիմօնի որդի Ղաբանցի Օհաննէս

Թ. թուին ՌՃԿ կալերցի

Ժ. Թուին ՌՃԿ աւնդրեցի Միրզան
ԺԱ. Թուին ՌՃԿ Մազրեցի
ԺԲ. Թուին ՌՃ Մազրեցի




Ս. ՀՌԻՓՍԻՄԷ:

Գերեզմանատունը Պերկրի արեւմտեան կողմը կ'իյնայ զառիվայր եւ գլորակ դիրք ունի պատէ ներսէն չափելով 400 քայլ է։ »

Բ. Հայք Պերկրիէն անցնելով եւ Էօտէմիշ

հաստատուելով կառուցած են եկեղեցի մը, այժմեան եկեղեցւոյ պարտէզին մէկ կողմը, զոր դարուս սկիզբները բոլորովին քանդելով նորագոյն մը կանգնած են։ Նոր եկեղեցիս, նուիրեալ Ս. Հռիփսիմէի, կը գտնուի Ուզուն սօգագ անուանեալ փողոցին ծայրը. քարաշէն, 15·80 մետր երկայնութեամբ եւ 11 մետր լայնութեամբ. արտաքուստ՝ հիւսիսային կողմը, չորս սիւնակներու վրայ հաստատուած ծածկով մը՝ մասնաւոր գաւիթ մը ձեւացուցած է, արեւելեան կողմը առանձին խորանով մը, որով եկեղեցին արտաքուստ ընդարձակ կ՚երեւայ։ Ունի երկու դուռ, Աւագ դուռ եւ կողմնակի դուռ մը։ Աւագ դրան ճակատը, հաստատուած է մարմարիոն քար մը հետեւեալ արձանագրութեամբ[1].

"Շնորհիւ մեծին Աստուծոյ եւ ձեռնտուութեամբ սրբազան Յօհաննու պատրիարգի եւ Կիւլապեան Յակոբ ամիրային առ արքունականն հրովարտակ շինեցաւ եկեղեցիս Հռիփսիմեայ շքեղապէս արդեամբք բոլոր ժողովրդեան յՕտամիշու։ Մասնաւորեալ եւ օտարաց ի Թուականիս Հայոց՝ ՌՄԾԴ փ 1805„

Հիւսիսային կողմը՝ երկրորդ դրան ճակատը նմանապէս հաստատուած է մարմարիոն քար մը, կարմրախառն գրերով խառն՝ հետեւեալ արձանագրութեամբ.

1 Շնորհակալութեամբ կը յիշենք հոս Էօտէմիշի քահանան՝ Տէր Յարութիւն Տէր Սարգիսեան Սեվերեկցի, որ մեր այցելութեան ժամանակ ամենայն պատրաստակամութեամբ եւ եռանդեամբ աշխատեցաւ յիշատակներն եւ տապանաքարերն մաքրելու եւ ընդօրինակութեան օգնելու. մեր մեկնելէն յետոյ գրաւոր ինչ ինչ տեղեկութիւններ եւս հաղորդեց մեզի։ Եթէ ամէն տեղ այսպիսի ազնիւ անձանց հանդիպէինք, հետազօտութեան շատ բան պիտի կարենայինք գտնել։

Սխրալի այս զարդ փրկանաց։
Զոր զգեցոյց Տէր իմ գըթած։
Տուք ինձ պատճառս ցնծալ ապա։
Ծոցոյ իմ դուք մանկունք շնորհաց։
Եղէ զէտ հարսն՝ նոր զարդարած.
Յօր մեծ Դաւթի վեհին փառաց։
Փառաշուք իմ՝ ձեռամբ դիտոս.
Տեառն Մարտիրոս բազմերախտիս։
Այլ եւ մահտեսն՝ այն Յօհաննէս,
Մահու փոխեալ՝ յերկինս յերկրէս։
Նորափթիթ որդին Գալուստ.
Ոյք շնորհեցին՝ զտեղւոյս հանդէս։
Նա իսկ հայորդ՝ ազգ հայկազեան
Յէօտէմիշցիք եւ հիւրական։
Որոց գոյիւք՝ կանգնիմ արձան.
Լիցի հրճուիլ յերկնից կայան։
Սոփեստ թուով (առի թագ իմ).[1]
Հաիփոիձեա՝ փրկչին կուսան.
Վարդ գեղեցիկ անեղծական։
Պսակ եդաւ տանս էական։

Գ. Եկեղեցւոյ շինութեան պատկանող, դրանց ճակատը հաստատուած այս արձանագրութիւններէն զատ, արտաքուստ՝ աւագ դրան երկու կողմն, ինչպէս նաեւ կողմնակի դրան աջ ու ձախն եւ վերոյիշեալ եկեղեցւոյ գաւթին վրայ գտնուած խորանին քովերն, պատին մէջ հաստատուած են գեղեցիկ բարձրաքանդակ խաչքարեր, իւրաքանչիւրին տակը փորագրուած յիշատակարանով մը. զանց չենք ըներ ընդօրինակել ասոնք ալ, սկսելով աւագ դրան քով գրուածներէն։

---

[1] «Առի թագ իմ» գրերը թուական նշանակութեամբ կարդալով կ'ունենանք հայկական թուական 1254=1805։

ՅԻՇԱՏԱԿ Է ՍՈՒՐԲ ԽԱՉՍ
ՊԱԼԵԱՆ ՄԱՀՏԵՍԻ ՍԱՐԳՍԻ
1805.

Յիշատակ է սուրբ խաչս Իւզմիրցի
մահդեսի Սելովմեան մահ
դեսի Սարգսին եւ իւրայնո
ցըն ՌՄԾԴ

*Բարեխօս է սուրբ խա*
*չըս Թէսէլեան մահտեսի Գրի*
*գորին եւ ծնողացն եւ հ*
*ամայն զարմիցն* 1254

Յիշատակ է սուրբ խաչս լուսահոգի Տէր
Սահակեան Ոսկանին, հանգուցեալ
Յօհաննէսին, Յովսէփին եւ Աստափելին
եւ համայն զարմիցն։

*Յիշատակ Մէլացի*
*մահտեսի Կարապետ* 1805.

ԲԱՐԵ ✝ ԽՕՍ Է
ՄՀԻ ԲՐ ՍՂԻՆ
ՂԱՍԱ ՊԱՑԻ

Յիշատակ է սուրբ խաչս Մաւ
սեցի պարոն Մարդիրոս
ին եւ իւրայնոցն
1805

Սխրալի այս զարդ փրկանաց։
Զոր զգեցոյց Տէր իմ գըթած։
Տուք ինձ պատճառս ցնծալ ապա։
Ծոցոյ իմ դուք մանկունք շնորհաց։
Եղե զէտ հարսն՝ նոր զարդարած.
Յօր մեծ Դաւիթի վէհէին փառաց։
Փառաշուք իմ՝ ձեռամբ գիտիս.
Տեառն Մօրփէյոս բազմերախտիս։
Այլ եւ մահտեսն՝ այն Յօհաննէս,
Մահու փոխեալ՝ յերկինս յերկրէս։
Նորափթիթ որդին Գալուստ.
Ոյք շնորհեցին՝ զտեղւոյս հանդէս։
Նա իսկ հաղորդ՝ ազգ հայկազեան
Ցէօտէմիշցիք եւ հիւրական։
Որոց գոյիւք՝ կանգնիմ արձան.
Լիցի հրճուիլ յերկնից կայան։
Սոփեստ Թուով (առի Թագ իմ).[1]
Հաէֆոէծէօ՝ փրկչին կուսան.
Վարդ գեղեցիկ անեղծական։
Պսակ եդաւ տանս էական։

Գ. Եկեղեցւոյ շինութեան պատկանող, գրանց ճակատը հաստատուած այս արձանագրութիւններէն զատ, արտաքուստ աւագ դրան երկու կողմն, ինչպէս նաեւ կողմնակի դրան աջ ու ձախն եւ վերոյիշեալ եկեղեցւոյ գաւթին վրայ գտնուած խորանին քովերն, պատին մէջ հաստատուած են գեղեցիկ բարձրաքանդակ խաչքարեր, իւրաքանչիւրին տակը փորագրուած յիշատակարանով մը. զանց չենք ըներ ընդօրինակել անոնք ալ, սկսելով աւագ դրան քով գրուածներէն։

---

[1] "Առի Թագ իմ" գրերը թուական նշանակութեամբ կարդալով կ'ունենանք հայկական թուական 1254=1805։

## ՅԻՇԱՏԱԿ Է ՍՈՒՐԲ ԽԱՉՍ
## ՊԱԼԵԱՆ ՄԱՀՏԵՍԻ ՍԱՐԳՍԻ
## 1805.

Յիշատակ է սուրբ խաչս Իզմիրցի
մահդեսի Սելվիճեան մահ
դեսի Սարգսին եւ եղբայրնո
ցըն ՌՄԾԴ

*Բարեխօս է սուրբ խա*
*չըս Թեսէլեան մահտեսի Գրի*
*գորին եւ ծնողացն եւ հ*
*ամայն զարմիցն* 1254

Յիշատակ է սուրբ խաչս լուսահոգի Տէր
Սահակեան Ոսկանին, հանգուցեալ
Յօհաննէսին, Յակոբին եւ Առաքելին
եւ համայն զարմիցն:

*Յիշատակ Մէլացի*
*մահտեսի Կարապետ* 1805.

| | |
|---|---|
| ԲԱՐԵ | ԽՕՍ Է |
| ՄՀԻ ԲՐ | Ս Ղ Ի Ն |
| Ղ.ԱՍԱ | ՊԱՑԻ |

Յիշատակ է սուրբ խաչս Մալ
ոեցի պարոն Մարտիրոս
ին եւ եղբայրնոցն
1805

## ՅԻՇԱՏԱԿ Է
## ՍՈՒՐԲ ԽԱՉՍ ԸՆԴ
## ՍԵՂԱՆՈՅՍ
## ՄԱՀՏԵՍԻ ՅԱՐՈՒԹԵԱՆ

*Դ. Ասոնք են եկեղեցւոյ արտաքին կողմը տեսնուած եւ մեր մտադրութիւնը գրաւող առարկաները: Ներքուստ եկեղեցին ունի վեց սիւն, որ ձեղունը վեր բռնելու պաշտօնը կը կատարեն. աւագ դրան վրայ բարձրացած է կանանց վերնատունը. այստեղ ելլելու համար՝ արտաքուստ պարտէզին մէջ հաստատուած սանդուխը կը գործածուի: Կը տեսնուին փայտակերտ յօրինուած, մէկ կարգի վրայ երեք խորան. եւ դասին վրայ աւանդատան դուռը: Աւագ խորանը նուիրեալ է Ս. Հռիփսիմէի. աջակողմեանը Ս. Լուսաւորչի, եւ ձախակողմեանը Ս. Ստեփաննոսի: Խորաններուս աջ ու ձախ կողմերը, վերով պատին մէջ հաստատուած են եկեղեցւոյ արտաքին երեսին վրայ տեսնուած խաչքարերուն նման գեղեցիկ քանդակուած խաչքարեր, զատ զատ յիշատակարաններով, շարժական սանդուխի մը օգնութեամբ կը կարդանք ասոնք ալ այսպէս.*

*ա. "Յիշատակ է սուրբ խաչս ընդ Ս. Լուսաւորչի սեղանուս շավէքիլ Յօհաննիսին եւ որդւոցն Գրիգորին եւ Կարապետին եւ հմիյնց"[1]:*

*բ. "Յիշադակ մեղաւցի մահդէսի Սիմօնին* 1805":

---

[1] *Կ'ըսուի թէ այս ամէն սիրուն խաչքարերն՝ հանդերձ յիշատակներով՝ քանդակած է Մարտիրոսեան Տէր Յօհան քահանան (տես տապանաքարը էջ* 94). *ա. ու բ. կը գտնուին աւագ խորանին աջ կողմը: գ. ու դ. ձախ կողմն. իսկ ե. աւանդատան մէջ արեւելեան պատին վրայ: գին թուականը կը կարդանք այսպէս* 1200 *(առ յոբելեանն կ'ուզէ ըսել* 50) *(զքառ ան թուոյ՝ չորս աւելցուր՝* 4) — 1254=1805:

Գ. “Յիշատակէ սուրբ խաչս Ս. Ստեփաննոսի սեղանովս հանդերձ. Հայրապետեան պարոն Մարտիրոսին„։

Դ. “Դրոշմեալ իւղով խաչիս սրբոյ, արհի դիտին մեծ Զմիւռնոյ. տեառն Մարտիրոս պերճ րաբունոյ վասն իւր արձան եւ իւրայնոց։ ցամս հազար երկ հարիւրոյ. առ յոբելեանն գքառ ամ թուոյ„։

Ե. “Յիշատակէ սուրբ խաչս հանդերձ Ս. Սարգսի սեղանովս Գրիգորեան մահտեսի Ատոմի եւ հանգուցեալ Օհանին եւ համայն զարմիցն 1805„։

Ե. Չտեսանք եկեղեցի մը, որ Էօտէմիշի Ս. Հռիփսիմեան եկեղեցւոյս չափ ունենայ քանդակեալ յիշատակարաններ. Թէպէտ եւ Մանիսայի Վէրին Բաղի եկեղեցւոյ մէջ եւս կը գտնենք այսպիսի քանդակեալ քարեր, բայց թուով նուազ։ Այս քանդակագրութիւններէն զատ՝ եկեղեցւոյս մէջ հոս հոն կախուած պատկերաց վրայ գրուած կը գտնենք զանազան յիշատակարաններ, զորս տարւոյ կարգաւ կը դնենք հոս։

Ա. Ս. Լուսաւորչի պատկերին վրայ՝ “Պատկերս է յիշատակ մահտեսի յոհաննիսեան մահտեսի գալստին 1820։„

Բ. Նարեկացւոյ գեղեցիկ պատկերին վրայ՝ “յիշատակ է մահտեսի յօհաննէսեան մահտեսի գալստին 1822։„

Գ. Քրիստոսի մկրտութեան պատկերին վրայ՝ “յիշատակ է կէնճեցի մահտեսի Հօսէբեան տիրացու սարգսին. որ է Էօտէմիշու եկեղեցւոյն 1825։„

Դ. Ս. Աստուածածնի պատկերին վրայ՝ “յիշատակ է Ջուլֆայեան հանգուցեալ յարութիւննի որդի մահտեսի Խաչատուրին որ ետ ի դուռն սուրբ Հռիփսիմէ յեկեղեցուն ի թւին Ռ. Մ. Ձ. Գ.։„

Ե. Որոտման Որդւոց պատկերին վրայ՝ “Ղարահիսարցեան մահտեսի յակոբ աղայն եւ կողակիցն մահտեսի Մարիամ խաթունն ընծայեցին

էօտէմիշու Հռիփսիմէ եկեղեցւոյ ի յիշատակ Հոգւոյ կենդանեաց եւ ննջեցելոց յերաղմ 1862 ապրիլ 8։

Զ. Եկեղեցիս ունի բաւական կալուած. Հասոյթը կը համարուի հազար մէճիտէն աւելի։ Ունի գեղեցիկ եւ սիրուն գործուածով բաւական սուրբ անօթներ, արծաթեայ սպասներ եւ զարդեր. ատոնց մէկ քանիին վրայ միայն փորագրուած են յիշատակարաններ զորս կ՚ընդօրինակենք։

ա. “Յիշատակ է ծածկոցս կեսարացի ոսկերիչ աբրահամին եւ իւր կողակից շահզէտէին ի դուռն էօտէմիշու սուրբ աստուածածնայ. ՌՄԺԲ Նոյեմբեր Աին։”

բ. “Յիշատակ է սաղաւարտս էօտէմիշու եկեղեցին ի դուռն սուրբ Հռիփսիմայի արդեամբ եւ գոյիւք հաւասար ժողովրդեան առանց եւ կանանց եկաց եւ բնակաց ձեռամբ երեցփոխնա. գանձապետ մահտեսի մկրտչին եւ որդոյն տիրացու յովաննէսին Թվ. ՌՄԺԳ. Օգոստոս։”

գ. “Յիշատակ է սուրբ Հռբսիմէ եկեղեցին յասարակաց. Թ. ՌՄԽԴ։”

դ. “Յիշատակէ սուրբ աւդարս Հօվակիմի կողակից աննային որ ետ օտամիշ եկեղեցուն. ՌՄԼ։”

ե. “Յիշատակէ է էքիզեանց խաչատուրի կողակից մահտեսի մարիամին ի էօտէմիշի սուրբ Հռիփսիմէ եկեղեցին Թվ. ՌՄԾԴ։”

---

ա. Սկիհի մետաքսեայ ծածկոց մը, գեղեցիկ բանուածքով, յիշատակարանս նոյնպէս բանուած։

բ. Արծաթաձոյլ ծանր սաղաւարտ մը. վրան սիրուն զարդեր փորագրուած, յիշատակարանս ալ եզերքին վրայ գրուած է։

գ. Արծաթեայ սկիհի մը եզերքը։

դ. Աւետարանի մը արծաթեայ կողերուն վրայ։

ե. Արծաթեայ սկիհի մը պատուանդանին շուրջը։

Դ. "Յիշատակ է մելքսեթի մահտեսի կարապետին ի դուռն էօտէմիշ սուրբ Հռիփսիմէ եկեղ. 1805:„

Ե. "Յիշատակ է վարագուրըս Հայրապետի որդւոյ պարոն Մարտիրոսին եւ ամենայն զարմիցն 1254:„

Զ. "Յիշատակ է վարագոյրս էքիզեան պարոն խաչատուրի որդւոյ յարութիւնի. 1254:„

Ը. "Յիշատակ է յօտէմիշու սուրբ Հռիփսիմէ եկեղեցւոյն արդեամբք Նորին հասարակ ժողովրդեան ՌՄԿԱ:„

Ժ. "Յիշատակ է վարագուրս տէր սահակեան ոսկանի որդւոյ մահտեսի ... եւ համայն զարմիցն 1835:„

Ի. Եկեղեցւոյ պարտէզին մէջ՝ առաջակողմը կը գտնուի շէնք մը, որուն ճակատը գրուած է միայն 1881 թուականը. այս շէնքը կը գործածուի իբր Վարժարան աղջկանց: Վարժարանիս անունն է Վարդուհեան, ուր կը յաճախեն 100ի չափ աշակերտուհիներ, ունին մասնաւոր վարժուհիներ եւ կը սորվին իրենց վիճակին կարեւոր համարուած ուսմունքները.

Մանչերու դպրոցը կը գտնուի Ուզուն սօգագ անուանեալ փողոցին գրեթէ միջավայրը: Վարժարանիս սրահին դրան ճակատը, ներքին կողմը կը կարդանք հետեւեալը: "Յիշատակ է Վարժարանս ամենայն պարագայիւք մահտեսի յօհան բարերջանկի եւ ծնողացն:„

"Որդոցն ազնիւ մահտեսի յարութիւնին եւ թագուհւոյն եւ յարութիւն աղային մահտեսի Ստեփանին ամենայն արեան առու մերձաւոր հին նոր

---

Դ. Արծաթաձոյլ գմբեթաձեւ զարդ մը (կաթողիկէ):

Ը. Ս. Սեղանոյն առջեւ կախուելիք ծածկոց մը. միջավայրն եւ անկիւնները թանձր եւ լայն արծաթաձոյլ զարդերով, վրան յիշատակարանս փորագրուած:

Տ̄ր Յ̄ս Ք̄ս Ա̄ծ

Պճնիմ սուրբ Սիոնս արդ հարսնանմա՛ն՝ գիմ որդւոց լնուլ զբազձ բազմամեան.
յերկուցն վեհից պատրիարգութեան՝ որքոյն Սաղիմայ եւ տան Կոստանդեան.
Տեառն Գաբրիէլի վեհին սրբազան՝ որ արդ եւ Զմիւռնոյ դէտ բարձրաստիճան
եւ Կարապետի արհւոյն բարեջան՝ տեսչին հայազանց ի մարզս օսմանեան.
պերճ վառօդապետ Սիմոն ամիրայն՝ զիմ շինման հոգաց զարքունի հրաման.
հոգեւանդն ըղձիւ ի խնդրոյ հայցեան՝ Բազմամեայ բաղձանք մեր ահա լցան։
արդիւնք եւ վաստակք իմ ժողովրդեան՝ Նա եւ որք հաղորդ նպաստից գտան.
ճոխ պսակեցին զիս վայելչապա՛ն՝ Նորաաքանչ շինուած տուն տէրունական.
տացէ Տէր վայելել յաւէտ անսասան՝ եւ աշխատողաց վարձս անանցական.
Զմիւռնիացեց Էքիզեանց անձինք ամենայն՝ զի վասն փէրմանին շատ աշխատեցան։

դրան ճակատը հաստատուած է մարմարիոն մը՝ նախընթաց էջին վրայ դրուած արձանագրութեամբ։

Արձանագրութեանս մէջ եկեղեցւոյ շինման թուականն եւ զայն կառուցանելու աշխատող անձանց անուններն յայտնի կը կարդանք․ զանգակատունն եկեղեցւոյ չափ հին չէ, 1874ին ծախիւք Գասպար աղա Փափազեանի շինուած է։ Զանգակատանս վարի մասին վրայ հաստատուած է քար մը՝ հետեւեալ արձանագրութեամբ։

Օրհնեալ ըլլայ յիշատակներն բարեպաշտիդ
Հոս մեծանայ անուն նոցա այլ եւ յերկինս.
Այս օրհնութեան արժանի է տոհմ Փափազեան
Նոյն իսկ ցեղէն՝ մեծ բարեպաշտն Գասպար աղայն
Նա ինքն է թոռն Պաղտասարի մեծ իշխանին.
Եւ իւր տիկին Բրաբիոն համեստուհին։
Սոքա եղեն օրինակ բարի տալ համայնից,
Վայելելու զանվախճան կեանքն յաւիտենից։
Բախճանապէս շինեն զայս յարկ զանգակատան,
Ժամանակիս ազգասիրաց տալ փոյթ ու ջան։
Պարգեւատուն այց արասցէ նոցա տանը,
Տացէ բարիս յետ կենցաղոյս անանց փառքը։
ի 14 Մայիս 1873[1]։

Եկեղեցին ի ներքուստ ունի 30 մետր երկայնութիւն եւ 15·50 մետր լայնութիւն․ վայելչապէս զարդարուած է սիւներով, սիւնակներով։ Միջավայրն՝ երկայնութեան մինչեւ դաս՝ երկու կարգ տասը սիւներ բարձրացած են դէպ ի վեր, որոնց վրայ յեցած է եկեղեցւոյ՝ երեք մասի բաժնուած կամարակապ ձեղունը․ առաջակողմն՝ աւագ դրան դին նոյնպէս տասը հատ սիւնակներ կանգնուած են, որոնց վրայ հաստատուած է կանանց վերնատունը։ Մարմարակուռ բարձր բեմն եւ մէկ կարգի վրայ յօրինուած փայտակերտ երեք խորանները կը զարդարեն տաճարս։ Աւագ խորանը նուիրեալ է

1) Յովհաննէս Կարապետեան՝ Պարտիզակցի վարժապետն շարագրած է արձանագրութեանս տողերն. ինչպէս տողերուն առջի գրերը կը մատնեն իւր անունն։

Ս. Յարութեան, ձախակողմեանը Աստուածածնի, աջակողմեանը Ս. Կարապետի։ Եկեղեցին ի ներ-







Ս. ՍԻՕՆ։

քուստ չունի քանդակեալ գրութիւններ. Հոս հոն՝ մանաւանդ կանանց վերնատունը կախուած կան

մոմլաթի վրայ նկարեալ պատկերներ, որոնցմէ մէկ երկուքին վրայ միայն յիշատակարան կը տեսնուի, ոմանցը ջնջուած է եւ շատերուն վրայ չկայ։ Ասոնցմէ մին հոս փոխադրուած է Զմիւռնիայէն եւ ունի հետեւեալ յիշատակարանը։

“Եգաւ. պատկերս. Իզմիւռնիոյ. սուրբ ստեփանոս եկեղեցին. ի պաշտպանութիւն. զմիւռնակես. մահտեսի ստեփան աղայի որդւոյ. մահտեսի օհաննէս. մահտեսի Սարգիս։ մահտեսի յարութիւն իշխանազուն. աղայից նկարեալ, յերուսաղէմ. ձեռամբ մարկոսեան օհաննէսի 1817 մարտի Լի։„

Պատկերս է խաչելութիւն, շուրջը 16 բաժանումներու մէջ Քրիստոսի Տեառն մերոյ չարչարանքները նկարուած։ Պատկերիս մեծութեամբ՝ կայ Ս. Գրիգոր Լուսաւորչի պատկեր մ'ալ, որուն թուականն է 1811։

Բ. Ինչպէս յիշեցինք վերագոյն՝ եկեղեցւոյ պարտէզին մէջ կը գտնուի աղջկանց դպրոցն. իսկ իբր մանչերու վարժարան՝ թաղին կռնակը՝ վերջին տարիներս հիւանդանոցի նպատակաւ կառուցուած շէնքը կը գործածուի։ Այս շէնքն է, քարուկիր ու կրկնայարկ, շրջապատեալ պարտէզէ մը, ուր տնկուած մատաղ ծառերն՝ ապագային հովանաւոր վայր մը դարձընելու յոյս կու տան։

Շէնքը գեղեցիկ տեսք մ'ունի, շուրջը բաց եւ հովասուն։ Տակաւին մասնաւոր յիշատակարան մը չէ հաստատուած, որ պատմէ իւր հիմնարկութիւնը։ Հոս կը հաւաքուին բաւական թուով աշակերտներ եւ մասնաւոր ուսուցիչներու խնամոցներքեւ կը սորվին իրենց դասերը։

Աղջկանց դպրոցի շէնքն է կրկնայարկ եւ ընդարձակ, վերն ու վարը դասարաններու բաժնուած։ Դրան ճակատը զետեղուած են իրարու կից երկու մարմարիոն քարեր, որոնց վրայ քանդակուած է հետեւեալը։

Ի 4 Յուլիս

1876

Խարիսխ կենաց ազգաց — Համայն է վարժարան,
Ընդին ուսմամբ սընանի — Ընդ միտք մանկան.
Չէք կըրթութեան մեզ — Յայլ ուստեք դեղ եւ դարման.
Ընդ միայն կայ բըժիշկ — Բակերտ ազատութեան:
Տենչալով յայս ի քաղաքիս — Ազգ Արամեան
Ողջ առ թողլոյ զինքեանց — Պատիւ միշտ յաւիտեան.
Իւրեանց արդեամբ — Եղեն շինողք զայս յարկ ուսման.
Բարունապետ Լուսաւորչին — Տուեալ անուն:[1]

---

1 Արձանագրութեանս տողերն յօրինողը՝ մատնանիշ կ'ընէ իւր անունն, ինչպէս թանձր գրերէ կը տեսնուի:

Վարժարանս Թէպէտ եւ Լուսաւորչի անուամբ կառուցուած է եւ ժամանակին իբր երկսեռ վարժարան գործածուած, բայց այժմ աղջիկներու միայն յատկացուած ըլլալով, մասնաւոր անուամբ Գայիանեանց վարժարան կ'ըսուի։ Վարժարանիս վերին յարկը բարձրագոյն կարգի աշակերտուհիներու համար որոշուած է, ուր կը յաճախեն 60—70ի չափ աղջիկներ, որոնք բաժնուած են զատ զատ դասերու եւ կը սորվին հայերէն լեզուն իրեն ընկերակից գիտութիւններով եւ ձեռագործ։ Վարի յարկը փոքրներու համար որոշուած է, որոնք թուով 80—100ի կը հասնին։ Կայ նաեւ առանձին դասարան մը Ընթելարան Մանկանց անուամբ, ուր կը յաճախէ երկսեռ մանկտին, նախապատրաստողական տարիներն անցնելու[1]։

Գ. Եկեղեցւոյ պարտէզը ժամանակ մը եղած է գերեզմանատուն, ուր կը տեսնուին հոս հոն դրուած գերեզմանաքարեր ու շիրիմներ։ Այժմ Թաղին արեւմտեան կողմն ունին ընդարձակ գերեզմանոց մը, շրջապատեալ քարաշէն որմով, ծառուղիներով զարդարուած եւ շիտկուած։ Տեղը բաւական ընդարձակ ըլլալուն համար՝ մէկ մասը բանջարեղինաց մշակութեան յատկացուած է, մեծագոյն մասը ննջեցեալներու Թաղման։ Նորագոյն գերեզմանոցիս մէջ չկան յիշատակութեան արժանի մահարձաններ եւ շիրիմներ, այլ պարզ քարեր եւ հոս հոն բարձրացած հողակոյտեր կը տեսնուին միայն։ Իսկ եկեղեցւոյ պարտէզը գտնուած գերեզմանաքարերու արձանագրութիւններն են հետեւեալները։

Այս է տապան հանգս
տի . . . . . . . . . . .
Թվ. ՌՃՁԵ.

---

1 Վարժարանի մէջ բաւական երկայն տարիներ՝ վարժուհւոյ պաշտօն կատարած են Օր. Եղիսաբէթ Սաղաթիէլ, Թագուհի Էօլմէզեան, Նունիա Վարդանեան, Նեկտար Ճանիկեան, տեղացիք։

Այս է տապան. Մանկոցի
մնկ. Գասպարէ. որդէ. Բա
րեպաշտ. մնկ. պաշտաւար
ապայն. որ եւ հանգեաւ Թվէն.
1801 օգոստ. 13.

Այս է տպն. տր. Աւ
րահամ հնգեաւ ԹՆ.
այս է տպն. տր. Աւ
րահամի կողակից
Մարիեամն հնգեաւ Մայ
սի 1. 1818ին:

Այս է տապն. զէյթուն օ
ղլու մահսի. խաչատուրին
որ եւ հանգեաւ Թվին 1823 յվրի.

Այս է տապան. Մանի
սացի. մհի. Պաղտ
ասար. աղայի. կող
ակից. Թուրֆանտն
հանգեաւ Թվին 1824
Օգոսի 7:

Այս է տապան իզմ
իրցի. տէմիրպաշեն
Սարգսի. կողակից
սրբուհին. հնգեւ
Թվին 1827. նուեմբր 3:

18 † 33

Տեառն զօրութեամբ արիաց եալ
սբ. Նահատակս որ սաստ գանձեալ
Մալղարայու յերկրին ծն եալ
եւ Յարութիւն անուն կոչ եալ
որոյ չարի ինչ հանդպ եալ
զհաւատ իւր այլափոխ եալ
քան ամեայ ի տիսն հաս եալ
իբր զՊետրոս անդ զղջաց եալ
սրտի մտօք առ Տէր դարձ եալ
գլորեալ անձն անդէն կանկն եալ

*եւ վերստին խոստովան եալ*
*ի նոյն վիմին անշարժ կաց եալ*
*զԱստուածորդին տէր դաւան եալ*
*ի Մանիսա քաղաքս էկ եալ*
*եւ յումէմնէ սաստ ծանուց եալ*
*յանօրինաց ձեռամն մատն եալ*
*յարգելանոց չորս օր բանտ եալ*
*չարչարանօք յոյժ վշտաց եալ*
*յետոյ սրով գլխատուա եալ*
*լոյսն ի յերկնից վկայ իջ եալ*
*թէ ի տեառնէ իւր պսակն առեալ*
*որ յաստուծոյ զայս էր խնդր եալ*
*եւ խնդիրք հաճոյաց եալ*
*թէ յախտ ջերման ոք հանդպեալ*
*լիցի տէրամբ փոյթ բժշկ եալ*
*եւ յամենից չարաց զերծ եալ*
*թվին հազարերկու հարիւր չորսին։*

*1836*

*Ամի Տեառն*

*այսմ. տպնի. եղել. կա տրց.*
*կպտ. մրտրսի եւ տրցի հնքր.*
*ցմի յլիսի 8.*

**Աստ կայ մարմին**
**անփոփեալ խանե-**
**ւը մոմճի. Մովսէսի**
**որդի Յարութիւնն փո-**
**խեցաւ աստէն ի վերին**
**կայեանան յամի 1848**
**Օգոստոսի 11։**

| | |
|---|---|
| *1851*<br>*Դամբարան*<br>*առաքելեց*<br>*Տէր*<br>*Պաղտասար*<br>*քահանայի*<br>*մարտի 22:* | *Այս է տապն: Կօզաբեան*<br>*մանսի. Մօվսէսի որդի*<br>*մանսի Ցակոբն. որ եւ նան*<br>*զեաւ 1854:* |

Տապանաքարերուս մէջ՝ ինչպէս կը տեսնուի, ամենահինն է առաջինն, որ ունի ՌՃՁԵ (1736) թուականը: Եկեղեցւոյ պարտէզն շրջապատող որմերուն վրայ տեղ տեղ զետեղուած են խաչքարեր, քանդակեալ զարդի բեկորներ՝ նախկին շինութեանց մնացորդներ. ասոնց մէջ կը տեսնուի խաչքար մը արձանագրութեամբ, որուն յիշատակատուին անունը թէպէտ եւ անընթեռնլի է, բայց թուականն յայտնի. այս է հետեւեալն.

Յիշատակ է խաչքարս

. . . . . . . .

. . . . . . . .

ՌՃՁ

Դ. Մալթայի Հայերն բաւական երկայն ժամանակ ներքին յուզումներու եւ անմիաբանութեանց ենթակայ եղած կը գտնենք: Թաղականի, քահանայի, վարժապետի խնդիրները շատ ժամանակ կորսընցնել տուած են իրենց. այս պատճառաւ Տաճկաստանի մեծագոյն քաղքին՝ Զմիւռնիոյ այսչափ մօտ ըլլալուն իսկ, Մալթայի Հայերն չեն կրցած ըստ արժանւոյն յառաջադիմական քայլեր առնուլ: Կ'ըսուի թէ այժմ արտաքսած է իւր մէջէն անմիաբանութեան ոգին եւ հանդարտօրէն իւր կորուստը լեցընելու կ'աշխատի:

Ցանցելումն ունեցած են այլ եւ այլ կրթական ընկերութիւններ, բայց երկայն կեանք եւ արդիւնք չեն ունեցած: Այժմ կազմած են նոյնպէս

քանի մը կրթական եւ բարեգործական ընկերութիւններ, որոնց մէջ կը յիշուին Ազգ. Գերեզմանոցի յանձնաժողովը, որ քանի մը տարիէ ի վեր հաստատուած է, որուն պաշտօնն է գերեզմանատունը զարդարել. եւ արդարեւ շնորհիւ այս յանձնաժողովին պաշտօնէից՝ գերեզմանատունը գեղեցիկ տեղ մը դարձած է ծառուղիներով եւ համաչափ բաժանումներով: Երկրորդ, Աղքատախնամ կամ Հիւանդախնամ ընկերութիւն, որ նորագոյն հաստատութիւն մ'է, ունի իրեն նպատակ կարօտեալներու օգնութեան ձեռն կարկառել: Հայուհեաց ընկերութիւն, որ կազմուած է երեք տարի յառաջ՝ դպրոցասէր օրիորդներէ, որոնց գլխաւորներն եղած են վարժուհիներն, այժմ ունի 50ի չափ անդամակից. իրենց նպատակն է աղքատ օրիորդները Զմիւռնիա ղրկել եւ վարժուհի պատրաստել եւ երկրորդ երկսեռ մանկանց ընտելարանը՝ Մանկապարտիզի վերածել: Որբախնամ ընկերութիւն՝ բարեսէր տիկիններէ կազմուած, որուն վախճանն է որբերու նպաստ հայթայթել, նիւթական կամ բարոյական կերպով զանոնք մխիթարել: Երանի թէ այս բարի նպատակաւ հաստատեալ ընկերութիւնները յանցելումն երեւան ելած ընկերութեանց նման վաղանցուկ չըլլան:

Ե. Մանիսայի Հայոց մէջ ամէն կարգի եւ արուեստի անձ կը գտնուի. կան վաճառականներ եւ տեղական արուեստներով զբաղողներ: Գլխաւորաբար իրենց ապրուստի աղբիւրն է ոստայնանկութիւն (մանուսա գործելը): Գրեթէ ամէն տան բակին մէջ կը տեսնուին ջուլհակի գործիներ, նահապետական դրութեան եւ վիճակի մէջ, որոնց առջեւը նստած են կանայք եւ օրիորդք եւ կը գործեն օրն ի բուն մեծ եռանդեամբ[1]:

---

[1] Մանիսացւոց ունեցած այս արուեստին կամ մանուսայագործութեան վրայ տես Արեւելեան Մամուլ, 1894 Դեկտ. էջ 707:

*Այգեգործութիւնն ալ իւր շահն ունեցած է ժամանակին. շատերն ունեցած են ընդարձակ այգեստաններ. բայց որթալուծին յառաջ բերած աւերները մեծ վնաս հասցուցին այգետէր եղողնե֊րուն, որոնք այժմ իրենց ըրած ծախքին փոխարէնն անգամ չեն կրնար հանել։*

*Վերին Թաղի բնակիչք աւելի հանգիստ կեանք մը վայելած են. անմիաբանութիւնը չէ կրցած իրենց մէջ մուտք գտնել: Ժողովրդեան մեծագոյն մասը ջուլհակ է եւ շատ գոհ իւր ունե֊ցած վիճակէն։*

*Վարի Թաղի եւ Վերին Թաղի եկեղեցւոյ եւ վարժարանաց մէջ կը գտնուին ձեռագիր մատեան֊ներ՝* 12 *հատ, երկուքը Վերին Թաղի եւ տասը հատն ալ Վարի Թաղին մէջ։ Ձեռագիրներս են Յայսմաւուրք, Մաշտոց, Ոսկեփորիկ, Հաւաքածոյ, Աւետարան, Աստուածաբանութիւն. ասոնց բո֊վանդակութեան, մեծութեան, յիշատակարանաց վրայ մի առ մի գրած է Տ. Վ. Պալեան "Արեւելեան Մամլոյ* 1897 *տարւոյ Թուէքուն մէջ*[1]*։"*

* *
*

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

*Մանիսայի մէջ* 390 *տուն կայ Հայոց, որոնցմէ* 386 *այր,* 488 *կին,* 83 *երիտասարդ,* 171 *պատանի,* 99 *օրիորդ,* 284 *տղայ,* 255 *աղջիկ։ Մէկ տարուան մէջ* 62 *մկրտութիւն,* 10 *հարսանիք,* 56 *ննջե֊ցեալ եղած են։ Աս հասարակ Հայք գործունեայ, պարզասէր եւ տնտես են։ Արուեստիւ դերձակ, ժամագործ, խոհարար, սափրիչ, ձկնորս, հիւսն, դարբին, պայտար, վաճառական են։*

---

*[1] Որ եւ յետոյ հետեւեալ անուամբ "Ցուցակ Հայ֊երէն ձեռագրաց Ս. Սիոն եւ Ս. Լուսաւորիչ եկեղեցեաց ի Մաղնիսա". Տրդատ Վարդ. Պալեան. Զմիւռնիա, տպ. Մա֊մուրեան,* 1898 *լոյս տեսած է իբրեւ առանձինն տետրակ։*

Մանիսայի մէջ Հայք ունին երկու եկեղեցի. մին Ս. Սիօն, միւսն Ս. Լուսաւորիչ: Ունին տղոց եւ աղջկանց վարժարան Ս. Լուսաւորչեան, որոյ տեսուչն է Պ. Աւետիս Կարապետեան: 146 աշակերտ եւ 64 աշակերտուհի կը յաճախեն վարժարանն: Եկեղեցւոյ եկամուտն է մօտ 30 հազար ղրշ. որոյ մեծ մասն վարժարանի ծախուց յատկացած է:

Մանիսայի մէջ ալ կան ազգային ընկերութիւններ, որոց նպատակն է անշուշտ ազգին յառաջադիմութիւնը: Աղքատասիրաց ընկերութիւն, որ աղքատ աշակերտներու ուսումնական պիտոյքը կը հոգայ եւ տարին 2500 ղրուշ արդիւնք ունի. Կրթասէր ընկերութիւն, որ ընթերցարան բացած է եւ 1500 ղրուշ արդիւնք ունի. Դերձակներու ընկերութիւն, Սափրիչներու ընկերութիւն, որոց նպատակն է ազգային կալուածոց թիւն աւելցընել:

## 3.

*Վերին Թաղ: Թաղիս Հայերն, հին եկեղեցւոյ արձանագրութիւնները, նորագոյն եկեղեցին, աւելի հնագոյն երրորդ եկեղեցւոյ մը մնացորդները, նոր եկեղեցւոյ ներքինը, եւ օծեալ խաչերու քանդակագրութիւնները, պատկերաց եւ աւետարանաց վրայ գրուած յիշատակարանները, վարժարանը, գերեզմանոցը:*

Ա. Մանիսա քաղաքին արեւելեան կողմը՝ բարձրադիր ձորի մը մէջ կը գտնուի գիւղ մը, որ կ'անուանուի Վէրին գիւղ կամ Վէրին Խող: Տեղս աքանչելի տեսք մը եւ գեղեցիկ դիրք մ'ունի, օդը զովասուն եւ ջուրն ընտիր, Թաղին վրան եւ երկու կողմերը ձորին մէջ զմայլելի տեղեր կան: Տեղւոյն բարձրութեան վրայէն Մանիսայի դաշտավայրը գեղեցկապէս կը տեսնուի: Հայաբնակ է այս գիւղն, ունի իւր եկեղեցին, երկսեռ վարժարանը, առանձին քահանայ մը եւ ուղղակի Զմիւռնիոյ Առաջնորդարանի հետ կը կարգադրէ իւր խնդիրներն:

Գիւղիս Հայերն 100—120 տուն կը համարուին. քաղաքէն բոլորովին անջատեալ, այսու Թէպէտ եւ յարաբերութիւնները դժուարցած են, բայց իւր ունեցած դիրից պատճառաւ նախանձելի է քաղաքին բնակչաց։

Կ'երեւայ Թէ Հայերն իրենց գաղԹականութեան սկիզբները նախ այս ձորամէջն ընտրած են իրենց բնակութեան վայր եւ ապա իջած են Վարի Թաղն. եւ արդարեւ տեղւոյս եկեղեցին աւելի հնագոյն արձանագրութիւններ ունի քան Վարի Թաղի եկեղեցին։

Բ. ԳմբեԹաւոր գեղեցիկ եկեղեցի մը Թաղին մէջ տեղը բարձրացած է, որ հեռուէն՝ երկաԹուղին իւր կայարանը չհասած՝ քառորդ ժամու հեռաւորութեամբ՝ կ'երեւայ իւր բարձրութեան մէջ։ Այս չքեղատեսիլ եկեղեցին 1875ին կառուցուած է. իսկ նախկին եկեղեցին որ նորագոյնին պարտէզին մէջն էր, այժմ կը գործածուի իբր վարժարան։ Տակաւին խորաններու վայրը, փայտակերտ սիւներուն խարիսխներուն եւ քովԹարներուն վրայ հաւկԹաձեւ նկարուած պատկերները մնացած են, որոնք կը վկայեն Թէ տեղն ժամանակ մը իբր Տաճար Աստուծոյ գործածուած է։ Թէպէտ եւ բեմին քարերն եւ ուրիշ խաչքարեր փոխադրուած են նորակառոյց եկեղեցւոյ մէջ. սակայն կան նոյն իսկ քանդակեալ գրութեանց մնացորդներ՝ մաքուր եւ ընԹեռնլի։ Շէնքին փայտաշէն դրան կրկին փեղկերուն վրայ գեղեցկապէս փորագրուած է հետեւեալ յիշատակարանը, կէսը մէկ փեղկին՝ կէսն ալ երկրորդ փեղկին վրայ.

Դուռանս շինել իւրովք սա Րօք յարդեան Բաբեաց
Յակոբ ազնիւ պէրճ աղայի Որ Ագրօյե անց
Արդ ընդ սորին շնանց Բարին՝ ՌՃԺ փառաց
Ընկալցի ինքն՝ եւ որք իւր Եւ՝ մահմէ աղանց։

Իսկ դրան ճակատը չորեքանկիւն մեծկակ մարմարիոն քար մը կը տեսնուի, որուն վրայ կարմրախառն գրերով արձանագրութիւն մը քանդակուած է, որ կը պատմէ եկեղեցւոյս շինութիւնն այսպէս․

Թվին ՌՄԽԸ † Մ՟ր՟ի ԼԱ։

Զոյն քաղցրաբարբառ տամ ձեզ բերկրանաց
Լ՟՟՟՟փ՟՟ի յանուն Տըրշխոյ կառուցած
Զի յօր Ղ՟՟կ՟՟՟՟ վէհէն վեհազանց,
Նորոգիմ Տիտիս Հարսնածիլ փառաց,
Տեառըն Մ՟րտիր՟՟ի յարհիս գերազանց,
Ում յարդիւն ի ջան կամ արդ զարդարած,
Ջանակից առ այս՝ տոհմին Ապրօյեան,
Նախ Ա՟՟փ՟՟՟ծատուր հոգելոյս աղային,
Եւ Նոր կատարիչ սրտի փափագման,
Պերճ Մարգար աղայ Մեծազգի Իշխան։
Հաղորդեալ ի սոյն բարելից խըն ճոյս,
Համայն լուսակրօն՝ հայկեան երամոյս
Ըստ անձնիւր կարի ըզպիտանեաց գոյս
Զօնմամբ պաճուճել ղառագաստ պատուոյս։
Արդ լիցի ցընծալ նոցին յանճառ լոյս,
Հրճուիլ յանվախճան՝ փառացն բաշխոյս։
Թիւն ղժամ մի Տէղ[1] եռ պըսակե լոյս,
Ի վախճան Մարտի լըման շինուածոյս։

Գ․ Նորակառոյց եկեղեցին նուիրեալ յանուն Ս․ Գրիգոր Լուսաւորչի՝ շատ սիրուն տեսք եւ ձեւաւոր յօրինուածութիւն մ՚ունի։ Արտաքուստ՝ առաջակողմն չորս քառանկիւն քարաշէն սիւներ վեր կը բռնեն դէպ ի դուրս ելած կանանց վերնատունը․ սիւներուս քով, եկեղեցւոյ արեւմտեան անկեան վրայ բարձրացած է զանգակատան աշտարակն եւ վերնատան յատուկ սանդուխը։ Հիւսի-

[1] Ջժամ մի Տէղ գրերու Թուական արժողութիւնն գումարելով՝ կ՚ելլէ 1248 = 1799։

սային եւ հարաւային դռներուն առջեւ կանգնուած են զոյգ զոյգ սիւներ, որոնք դրանց վրայ հաստատուած հովանաւոր ծածկը օդին մէջ բռնելու կը ծառայեն։ Իսկ ետեւն՝ նոյնպէս աջ ու ձախ կողմերն երկու աւանդատանց մասերն դուրս ելած են, որոնք իբր երկու թեւեր, աւագ խորանին կռնակը շինուած աւանդատան հետ մարմին մը կը ձեւացնեն։

Եկեղեցւոյս աւագ դրան ճակատը հաստատուած է մարմարիոն քար մը, հետեւեալ արձանագրութեամբ.

"Նորոգ կառուցաւ սուրբ տաճարս յանուն Սրբոյ Հօրն մերոյ Գրիգորի Լուսաւորչին արդեամբք բարեպաշտ ժողովրդոց ազգիս, եւ օծեալ սրբեցաւ ձեռամբ գերապատիւ Պետրոս Ծ. Վարդապետի Ներկարարեան յամի Տեառն 1875 յիշեցի եւ ձրի ճարտարապետ սորին Բալուցի Թովմաս աղայ Մանուկեան։"

Դ. Եկեղեցւոյ զանգակատան առաջին կամարին որմին մէջ զետեղուած է ուրիշ քար մը, որ շատ աւելի հնագոյն եկեղեցւոյ մը գոյութիւնը կը պատմէ։ Այս քարը շատ հին եւ մաշած է, գրութիւնը խառնեալ գրերով եւ դժուարաւ կը կարդացուի, մէկ ծայրն ալ կոտրած է։

"Շնորհաւքն այ̄ եւ օժանդակութեամբ հոգւոյն սրբոյ վեհմարկեալ հիմնաւորեալ, շինեալ կանգնեալ եւ հաստատեալ յանուն սրբոյ Լուսաւորչի՝ հայկ(ա)զնեայց եկեղեցի՝ ի աստուածապահ քաղաքի՝ որ եւ մանիսայ վերաձայնի։ Եւ վերելե... ակ մասն ի պռէ՝ բարձրաւանդակի մահլայի։ Ծախիւք գոյիւք համայն առհասարակ ժողովրդի։ եւ աշխատասիրութեամբ յումեմնի՝ յովսէփ պիտակ վարդապետի։ որ ի թուի ՌՃԺերորդի եւ ՄՌ յամի։ Սկիզբն սորայս մայիս ամսոյ ըոկան։ յանգեաւ յաւարտ... իսկ դուռնս այս է յիշատակ աստապոցի մարգար որդւոյ բարեպաշտօն մկրտչի՝ եւ..."

Զանգակատան տակն իբր պատուանդան կառուցուած քառանկիւն քարուկիր սեան երկու երեսին վրայ՝ զետեղուած են նոյնպէս երկու քանդակեալ քարեր, որոնցմէ միոյն Թուականը բաւական հին է. ասոնք են հետեւեալները.

օծ † եալ

կանգնեաց յիշատակ սուրբ Խաչս այս արձան
մանիսացի տէր ղազար քահանայն
զի յիւրն յիշատակ յաւիտենական
եւ վասն իւրայնոցըն միայնգամայն.

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

Այս է տապան տէր
պօղոսին տէր մո
վսեսին մեծի մ
ովսեսին եւ որդոյն
յակոբին որ փոխեց
ան ի մանկութեան ի կե
անս թվն ՌՄԻԱ մահս:

Ասոնցմէ զատ եկեղեցւոյ մէջ կը գտնուին ուրիշ յիշատակարաններ ալ՝ պատկերաց եզերքը կամ աւետարաններու կողին վրայ գրուած (տես էջ 138), որոնք նոյնպէս աւելի հնագոյն եկեղեցւոյ մը գոյութիւնը կ'ապացուցանեն։ Ըստ հետեւորդի 1799ի կառուցուած եկեղեցիէն աւելի հնագոյն եկեղեցի մ'ունեցած են Վերին Թաղի Հայերն, եւ այս վերջինն՝ 1875ին շինուածն՝ երրորդ եկեղեցին է։

Ե. Եկեղեցիս ի ներքուստ ունի 18.70 մետր երկայնութիւն եւ 10.30 մետր լայնութիւն, առանց սեան՝ կամարակապ ձեղունը զարդարուած է գոյնզգոյն բոլորակ զարդերով, լայն եւ բարձր լու-

սատու պատուհաններն պայծառութիւն մը կու-
տան տեղւոյն (1880ին պատահած երկրաշարժը







Ս. ԼՈՒՍԱՒՈՐԻՉ։

տեղ տեղ ճեղքեր բացած է, մանաւանդ կանանց վերնատան անկիւններուն վրայ)։ Դասին վրայ բար-

ձրացած է բոլորակ գմբեթ մը, որ իւր լուսամուտներովն եւ զարդերովն գեղեցիկ տեսք մը կ'ընծայէ եւ դասն, բեմն ու խորաններն կը լուսաւորէ։ Մէկ կարգի վրայ բարձրացած խորաններուն՝ Աւագ խորանը նուիրեալ է Ս. Յարութեան, երկրորդը Ս. Ստեփաննոսի եւ երրորդը Մկրտութեան։ Աւագ խորանին կամարակապ ճակտին վրայ գրուած է հետեւեալ բառերը. "Այս է հանգիստ իմ յաւիտեանս ի սմա բնակեցայց զի հաճեցայ ընդ սա։„

Եկեղեցին իւր ամէն պատուհաններուն վրայ ունի քանդակեալ քարեր եւ օծեալ խաչեր, իւրաքանչիւրն յատուկ արձանագրութեամբ։ Բեմին առջեւն հաստատուած մարմարիոն քարերուն վրայ եւս քանդակուած է յիշատակարան մը, որուն ոսկեխառն զարդերով քանդակուած գրերը կը շքեղացընեն դասը։ Այս ամէն քանդակեալ գրութիւնները կը դնենք հոս կարգաւ։

Բեմին առջեւն՝ "յիշատակք են համայն օծեալ սուրբ բեմս խաչիւք հետեւեցելօքս մնիացի մահտեսի բարսղի որդի մահտեսի յակոբ մեծաշխատ Սարգսին եւ նորայոց ի փառս մեծին այ։ Թվին ՌՄԾ։ Ի մայիսի Լին։„

Աւագ խորանին աջ կողմը՝ պատին մէջ. "կանգնեցաւ սուրբ Խաչս օծողն տաճարիս, գերապատիւ Պետրոս Ծ. Վարդապետն Ներկարարեան։ 1876 Սեպ. 12։„

Աւագ խորանին ձախ կողմը՝ պատին մէջ.

Օծեալս Խաչ սուրբ արյան չանգ նէ
յաղթանէյ դէմ ըներհաղար դէ
Տէառն Մարտիրոս արհիապէ տէ
յոր տուարք ի Ջանս էր նպաստ տէ
ի Հիմանէն նոր շինս ղէ
զեկեղեցիս սուրբ պանթա սէ
յիւրն յիշատակ ես Համայ նէ
որք ենն ի տէր աս Հանգըս տէ

կողմնակի դրան ճակատն՝ ի ներքուստ

օծ † եալ է

Երբ տիրուհւոյս կանգէ խորան
ընտրեալ սերունդըն ապրօեան
որդի պետրոս մեծ աղաին
առաքէլ զգօն ազնիւ աղայն
ի յիշատակ իւրոցն համայն
եւ կոյս եղբարցն ազնուական
մարգար գալուստ հանգուցելոց
ոյց փոխարէն յինձ անվախճան
ի թուին 1797 մարտի 30։

Պատուահանին ճակատը՝ "օծ † եալ է. յիշատակ է սուրբ Խաչս Իզմիր զաքեան կարապետ աղայն եւ հանգուցեալ որդւոյն իւրոյ յակոբին եւ ամենայն ննջեցելոցն։"

Պատուհանին ճակատը՝ վերջին տողերը որմին մէջ.

օծ † եալ է

Յանուն սրբոյն ստեփանոսի
կանգնեալ խորանս այս հրաշալի
գոյիւք երկուց գեր գովանի
որք յզմիւռնոյն ապարանի
զդրոշակիրն ասեմ նորին
ստեփանոս աղայն յարգին
ընդ մահտեսի հայրապետին
ի սէր աշխոյժ իւր մտակըցին
տաց ըզպըսակ ասէ նոցին
զերկուց կենաց անեզր խընդին
որ ի հայկեան մեր շրջանին
զթագ . . . . ինձ ձօնին

Աւանդատան մէջ՝ Մկրտարանի ճակատն՝
"Եդին յիշատակ սուրբ այս աւազան.
պարոն յարութիւն թոռն տէր յարութեան.
մահտեսի կարապետ՝ տէր գաբրիէլեան.
աւետիք դըպիր սատաթ յակոբեան.
ջանիւք մանսացի՝ զգօն տէր յարութեան.
որոց տուրք բարեաց լուսարփին խորան.
ի թուին ՌՄԽԸ մարտի Լա.„

Զ. Այս քանդակեալ արձանագրութիւններէն զատ՝ կան եկեղեցւոյ մէջ ուրիշ յիշատակարաններ, հոս հոն կախուած պատկերաց եզերքը գրուած, կամ աւետարանի արծաթեայ կողերուն վրայ փորագրուած։ Այս յիշատակարանները կը կարդանք այսպէս՝

Աւետարանի մը արծաթեայ կողին վրայ՝ "յիշատակ է մանիսացի բխոյենք ստեփանին թուրվանդային վարդէրին կատարին եւ մուրատին մանիսա սուրբ Լուսաւորչին ՌՄԻԲ.„

Աւետարանի մը արծաթեայ կողին վրայ՝ "թվին ՌՄԻԴ յիշատակ է մանիսացի տէր պօղոսի որդի մահտեսի մօսէսին՝ եւ իւր որդի յակոբին ի դուռն սուրբ Լուսաւորչին։„

Ս. Լուսաւորչի պատկերի մը եզերքը՝ "յիշատակ է պատկերս մանիսացի լուսահոգի սիմավօնի որդի լուսահոգի ըստեփաննն որ ետ ձեռամբ ճէրմակին իւր անցին ի յիշատակ ի դուռն սուրբ լուսաւորչին թվին ՌՄԻԵ։„

Ս. Գրիգոր Նարեկացւոյ պատկերի մը եզերքը՝ "սուրբն Գրիգոր Նարեկացին յիշատակ է հանգուցեալ յակոբի կողակից հեղինէին ի դուռն սուրբ Լուսաւորչի եկեղեցոյն որ ի մանիսայ † թվին 1809.„

Մետաքսէ վայրագոյրի մը վրայ, սակայն վարագոյրն ամբողջովին մաշած կտրուած է, միայն այս գրութիւնը մնացած. "յիշատակ է վարագոյրս ընդ այլ եւս երկու վարագոյր. եւ երկու շուրջառ

ի սոյն կերպաւ. մանիսացի գրիգոր վարդապետին, եւ եղբարցն մահտեսի սիմէօնին եւ մահտեսի մկրտչին, եւ հանգուցեալ հօր իւրեանց ստեփանին, եւ կենդանի մօրն մարիամին. եւ իւրեանցայնոց համայն կենդանեացն, եւ ննջեցելոցն. ի մանիսայու սուրբ Լուսաւորիչ նորապանծ եկեղեցին. յամի Տեառն 1801. եւ ապրիլի 1ին.„

Է. Ինչպէս յիշեցինք վերագոյն՝ նախկին եկեղեցւոյ վայրը կը գործածուի իբր վարժարան։ Բնականաբար տեղը չունի մասնաւոր բաժանումներ եւ դասարաններ, այլ ընդարձակ սրահ մ'է, ուր կը հաւաքուին աշակերտք՝ ուսմանց պատաղելու։ Աշակերտաց թիւը կը հասնի 40—50ի մինչ եւ 20—30 չափ աղջիկ. որոնք մասնաւոր ուսուցիչներու հսկողութեան ներքեւ կը սորվին իրենց վիճակին կարեւոր ուսմունքները։

Վերին թաղի բնակիչք իրենց ննջեցեալները կը թաղեն՝ թաղէն դուրս լերան բարձանց վրայ. սակայն չկայ յիշատակութեան արժանի մահարձան մը կամ արձանագրութիւն մը։ Եկեղեցւոյ պարտէզն՝ որ ժամանակ մը իբր գերեզմանոց գործածուած է, կը գտնուին քանի մը շիրիմներ, բայց հնագոյն թուական ունեցող գերեզմանաքարեր չեն տեսնուիր. կ'երեւայ թէ եկեղեցւոյ շինութեան գործածուած են, ինչպէս տեսանք հատ մ'ալ զանգակատան սորին քառանկիւն սեան վրայ զետեղուած (տես էջ 134)։ Պարտէզին մէջ գտնուածներէն կ'օրինակենք միայն երկու գերեզմանաքարերու գրութիւնները։

Տեառն
յամի 1841
Այս է տապան տէկրէչ
օղլու Ստէփանի որդի Խա
չատուրի որդի Մատի յո
Հաննէսի որ փոխեցաւ
ի կեանս։

Աւանդատան մէջ՝ Մկրտարանի ճակատն՝
“Եդին յիշատակ սուրբ այս աւազան.
պարոն յարութիւն Թոռն տէր յարութեան.
մահտեսի կարապետ՝ տէր գաբրիէլեան.
աւետիք դըպիր սատաթ յակոբեան.
ջանիւք մանասցի՝ զգօն տէր յարութեան.
որոց տուրք բարեաց լուսարփին խորան.
ի Թուին ՌՄԽԸ մարտի Լա.”

Զ. Այս քանդակեալ արձանագրութիւններէն զատ՝ կան եկեղեցւոյ մէջ ուրիշ յիշատակարաններ, հոս հոն կախուած պատկերաց եզերքը գրուած, կամ աւետարանի արծաթեայ կողերուն վրայ փորագրուած: Այս յիշատակարանները կը կարդանք այսպէս՝

Աւետարանի մը արծաթեայ կողին վրայ՝ “յիշատակ է մանիսացի բխոյենք ստեփանին Թուրվանդային վարդէրին կատարին եւ մուրատին մանիսա սուրբ Լուսաւորչին ՌՄԻԲ.”

Աւետարանի մը արծաթեայ կողին վրայ՝ “Թվին ՌՄԻԴ յիշատակ է մանիսացի տէր պօղոսի որդի մահտեսի մօսէսին՝ եւ իւր որդի յակոբին ի դուռն սուրբ Լուսաւորչին:”

Ս. Լուսաւորչի պատկերի մը եզերքը՝ “յիշատակ է պատկերս մանիսացի լուսահոգի սիմավօնի որդի լուսահոգի ըստեփանն որ ետ ձեռամբ ճէրմակին իւր անցին ի յիշատակ ի դուռն սուրբ լուսաւորչին Թվին ՌՄԻԵ:”

Ս. Գրիգոր Նարեկացւոյ պատկերի մը եզերքը՝ “սուրբն Գրիգոր Նարեկացին յիշատակ է հանգուցեալ յակոբի կողակից հեղինէին ի դուռն սուրբ Լուսաւորչի եկեղեցոյն որ ի մանիսայ † Թվին 1809.”

Մետաքսէ վայրագոյրի մը վրայ, սակայն վարագոյրն ամբողջովին մաշած կտրուած է, միայն այս գրութիւնը մնացած. “յիշատակ է վարագոյրս ընդ այլ եւս երկու վարագոյր. եւ երկու շուրջառ

ի սոյն կերպաւ. մանիսացի գրիգոր վարդապետին, եւ եղբարցն մահտեսի սիմէօնին եւ մահտեսի մկրտչին, եւ հանգուցեալ հօր իւրեանց ստեփանին, եւ կենդանի մօրն մարիամին. եւ իւրեանցայնոց համայն կենդանեացն, եւ ննջեցելոցն. ի մանիսայու սուրբ Լուսաւորիչ նորապանծ եկեղեցին. յամի Տեառն 1801. եւ ապրիլի 1ին.„

Է. Ինչպէս յիշեցինք վերագոյն՝ նախկին եկեղեցւոյ վայրը կը գործածուի իբր վարժարան։ Բնականաբար տեղը չունի մասնաւոր բաժանումներ եւ դասարաններ, այլ ընդարձակ սրահ մ'է, ուր կը հաւաքուին աշակերտք՝ ուսմանց պատաղելու։ Աշակերտաց թիւը կը հասնի 40—50ի մինչ եւ 20—30 չափ աղջիկ. որոնք մասնաւոր ուսուցիչներու հսկողութեան ներքեւ կը սորվին իրենց վիճակին կարեւոր ուսմունքները։

Վերին թաղի բնակիչք իրենց ննջեցեալները կը թաղեն՝ թաղէն դուրս լերան բարձանց վրայ. սակայն չկայ յիշատակութեան արժանի մահարձան մը կամ արձանագրութիւն մը։ Եկեղեցւոյ պարտէզն՝ որ ժամանակ մը իբր գերեզմանոց գործածուած է, կը գտնուին քանի մը շիրիմներ, բայց հնագոյն թուական ունեցող գերեզմանաքարեր չեն տեսնուիր. կ'երեւայ թէ եկեղեցւոյ շինութեան գործածուած են, ինչպէս տեսանք հատ մ'ալ զանգակատան ստորին քառանկիւն սեան վրայ զետեղուած (տես էջ 134)։ Պարտէզին մէջ գտնուածներէն կ'օրինակենք միայն երկու գերեզմանաքարերու գրութիւնները։

Տէառն
յամի 1841
Այս է տապան տէքլէչ
օղլու բարթէֆանի որդի խա
չատուրի որդի մարթի յա
Հաննէսի որ փոխեցաւ
ի կեանս։

Տեառն
1848
Ցայսմ տապանի հանգուցե
ալ Թիլավեան մհի մարտի
րոսի որդի ։ մհի յակոբ որ
փոխեցաւ ի կեանս

* * *

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

Վերին ու ստորին Մանիսա իրարմէ կը զատուին ձորով մը՝ որու երկու կողմը շինուած են Հայոց տուները։ Օդը մաքուր է, պաղ ջուրեր ունի Վերին—Մանիսա, եւ ժողովուրդը մեծ մասամբ ջուլհակ է։ Հայք Պարսկաստանէ գաղթած կ'երեւին. շատերն այգիներ ունին. աղքատ գրեթէ չկայ. ժիր, չարքաշ, աշխատասէր են։ Հայք 103 տուն ունին, կան 110 այր, 140 կին, 40 պատանի, 31 օրիորդ, 94 տղայ, 98 աղջիկ։ Մէկ տարուան մէջ պատահած է 14 մկրտութիւն, 5 պսակ, եւ 11 ննջեցեալ։

Վերին—Մանիսա ունի նորաշէն եկեղեցի մը Ս. Լուսաւորիչ անուամբ, եւ ասոր կից դպրոց մը, ուր 35 աշակերտուհի կը յաճախեն։ Վերին—Մանիսայի եկեղեցւոյ շինութեան առթիւ 40 հազար ղրշ. ի մօտ պարտուց տակ ընկած են։ Առհասարակ մուտքն է 360 արծաթ մէճիտիէ, իսկ ելքն 200 մէճիտիէ։ Դպրոցի համար միայն 80 մէճիտիէ ծախք կ'երեւի։

# ԳԼՈՒԽ ԻՆՆԵՐՈՐԴ

## *Գըրգաղաճ:*

## 1.

*Ընդհանուր տեսութիւն:*

Գըրգաղաճ Զմիւռնիոյ հիւսիս-արեւելեան կողմը կ'իյնայ. երկաթուղւոյ գծին վրայէն չափելով՝ Զմիւռնիոյ կայարանէն 146 հազարամետր (Kilometer) հեռաւորութիւն ունի: Զմիւռնիայէն դէպ ի Ուշագ երկնցող երկաթուղւոյ գիծը՝ Մանիսայի առջեւն երկրորդ ճիւղի կամ գծի մը կը բաժնուի, որ դէպ ի հիւսիս յառաջանալով կ'երթայ Ագհիսար, Գըրգաղաճ, Սոմա, անցնելով մէջ ընդ մէջ ութի չափ երկրորդական կայարաններու կամ գիւղերու առջեւէն:

Մանիսայէն Ագհիսար ու Գըրգաղաճ գացող երկաթուղւոյ գիծը չունի այնչափ դժուարին անցքեր. ուղիղ դաշտագետիններու, Քէտիս գետին մէկ ճիւղին վրայ ձգուած քանի մը կամուրջներու եւ ոչ այնչափ զառիվեր բլրակներու վրայէն յառաջ կը շարժի շոգեշարժ կառախումբը: Մանիսայէն մինչեւ Գըրգաղաճ 3¹/₂ ժամու ճամբայ է շոգեկառքով:

Գըրգաղաճի երկաթուղւոյ կայարանը քաղքէն բաւական հեռու շինուած է, առնուազն քսան վայրկեան քալելու է՝ մինչեւ քաղքին առաջին շէնքը: Գըրգաղաճի դիրքն եւ տեսարանը շատ գեղեցիկ է, բարձր լերան մը զառիվայր կողին վրայ շինուած ըլլալով՝ հեռուէն աստիճանաձեւ ու վրայէ վրայ շինուած տները գեղեցիկ կ'երեւան: Այս բարձր լեռներու շղթան, որ կը տարածուի քաղաքին արեւմտեան կողմը՝ հարաւէն հիւսիս, կարծես թէ ժամանակը կը կարճեցընէ, ամառ ատեն՝ ժամը 5—5¹/₂ին (ըստ Ե.) լերան շուքը քաղքին վրայ տարածուած, արեւը լերան ետեւն

իւր մարը մնած կը տեմնուի։ Սոյն լերան մէկ գագաթը տեղացիներէն Սօըը․Գօյա անուամբ կը յիշուի։

Քաղաքին առջեւն՝ արեւելեան կողմը կը տարածուին ընդարձակ դաշտագետիններ, նոյնպէս հարաւային կողմը․ իսկ հիւսիսային կողմը՝ բաւական հեռուն՝ կը տեմնուին ցած բլրակներ ու լեռներ, որոնց մէջ գտնուած կիրճ մը, զոր տեղացիք Պօղօղ կը կոչեն, նշանաւոր է․ այս կիրճէն ձմեռը ցրտաշունչ սառն կը շնչէ Գըրգաղաճի դաշտերուն եւ քաղաքին վրայ, ամառն ալ քաղցրասիւք հով մը՝ հաճելի կ'ընէ տեղւոյն կլիման։

Գըրգաղաճի երեք կողմերն՝ մօտն եւ հեռուն գտնուած գիւղերուն մէջ կը յիշուին՝ Պագըր, Գայատիպի, Սէլէտիք Թէփէսի, Կէլէմպէք, Գատըն քէօյ, Պօղազ գահվէ, Չիֆթէ քէօյ, Էվէճլի, Տէլի Իմամլար, այս վերջնոյս քովը կայ քարածխոյ հանք (վերջին հինգ գիւղերը կը պատկանին Սոմայի)։

Գըրգաղաճի դաշտագետնոյն վրայ կը բուսնին զանազան եւ տեսակ տեսակ արմտիք․ մեծագոյն մասը բռնած են այգեստաններն եւ որոնց առաւելագոյն մասը յառաջ կը բերէ անկուտ խաղող (Սուլթանիէ կամ չէքիրտէքսիզ անուանեալ խաղողն)։ Ունի ցորենի, գարիի, բամպակի, սիսռան, բակլայի ընդարձակ արտեր․ նշանաւոր է համեղ սեխն, որ ուրիշ քաղաքներ՝ ինչպէս Զմիւռնիա եւս՝ Գըրգաղաճի սեխ անուամբ կը ծախուի։

Այգեստանեայց, ագարակներու եւ դաշտերու վրայ աճող ծառերուն մէջ կը տեմնուին ընկուզենի, կեռասենի, թթենի, թզենի, ձիթենի եւ ուրիշ ծառեր։

Քաղաքին հիւսիսային կողմը՝ հետի $1/2$—$3/4$ ժամ հեռուն՝ լերան ստորոտը կը տարածուի սօճի ծառերու անտառակ մը, որ տեղացիներէն Չամլըք կը կոչուի։ Այս անտառակին յարգը մեծ է՝ ժողո-

վուրդն երբեմն երբեմն խմբովին այստեղ կը դիմէ՝ առճիներու առողջարար եւ անուշ օդին ներքեւ զուարճանալու եւ ուրախանալու։

Գըրգաղաճի անունն կամ շինութիւնն երկու իրարմէ տարբեր կերպով կը պատմեն տեղացիք զորս փակագծի մէջ յառաջ կը բերենք։ “Ոմանք կ'ըսեն թէ քաղաքին նախկին հիմնարկողները՝ տեղւոյն վրայ քառասուն ծառ գտնելով, անոնց շքոյն ներքեւ բնակիլ շատ սիրած են, ուստի շինած են խրճիթներ ու տնակներ, որ երթալով ընդարձակուած եւ այժմեան դիրքն ստացած է։„

“Ոմանք ալ կը պատմեն թէ լերան ստորոտը քառասունի չափ խրճիթներ կային ժամանակաւ. ճանապարհորդին մէկն իջեւանելով, անօթի ծարաւ, տեղւոյն բնակիչներէն քիչ մը հաց խնդրած է, որոնք զլացած են՝ ըսելով թէ մենք ամենքնիս ալ հացի կարօտ եւ անօթի ենք, քեզի ինչ տանք։ Օտարականը զարմանալով բացագանչած է, ուրեմն քառասուն տունն ալ անօթի՞ են, Գըրգը տա ա՞ճ ըսելով։ Գըրգը տա ա՞ճ բառը յընթացս ժամանակաց ժողովրդեան բերանը՝ տակաւ եղած է Գըրգաղաճ։„

Գըրգաղաճի կառավարութիւնը փոխ-կուսակալութիւն է. ունի իբր 15.000 բնակիչ (3000 տուն). 17 մզկիթ, մէկ եկեղեցի Հայոց եւ մէկ եկեղեցի Յունաց՝ իրենց յատուկ դպրոցներով։

## 2.

*Հայոց նախկին եկեղեցւոյ վայրը. այժմեան եկեղեցին, պատկերաց յիշատակարանները, վարժարանները, նշանաւոր վաճառականները. գերեզմանոցներն եւ գերեզմանագրութիւնք:*

Ա. Գըրգաղաճի Հայերն նշանաւոր հասարակութիւն մը կը կազմեն քաղաքին մէջ։ Հաւանակա-

նաքար ԺԸ դարու կէսերը գաղթած են հոս եւ տակաւ բազմացած։ Հնագոյն յիշատակարաններու պակասութեան պատճառաւ՝ որոշ թուական մը չենք կրնար նշանակել, սակայն եկեղեցւոյ մէջ գտնուած պատկերաց վրայ գրուած յիշատակարաններն, որոնցմէ ամենահինն անցեալ դարու վերջերը գրուած է, միացընելով ժողովրդական աւանդութեանց հետ, կրնանք ըսել թէ մէկ ու կէս դարու գաղթականութեան սերունդներն են տեղւոյս Հայերն։

Իրենց գաղթականութեան սկիզբը՝ քաղքին միջավայրը հաստատած կ՚երեւան իրենց բնակութիւնն, ուր կը կառուցանեն եկեղեցի մը. ծերագոյնները կը յիշեն նոյն եկեղեցւոյն վայրը, այսօր Աճէմ խան անուանեալ տեղւոյն վրայ շինուած է եղեր, որ այժմ իբր վարժոց (Մէքթէպ) կը գործածուի։ Ընթացս ժամանակաց քաղքին հիւսիսային կողմը քաշուած եւ հոն կազմած են իրենց առանձին թաղ մը, ուր կը գտնուին այսօր։ Այն թաղը քաղքին ամենագեղեցիկ վայրը կրնայ ըսուիլ. թաղին երեք կողմերը բաց, այգեստաններ եւ արտեր պատած են, հարաւային կողմը միայն տաճկաց տներուն հետ միացած է։

Բ. Հայք կը համրուին 160—170 տուն (800 հոգի), ամէնն ալ կը գտնուին իրենց թաղին մէջ, ինչպէս նաեւ եկեղեցին եւ դպրոցները շինուած են հոն։ Եկեղեցին՝ նուիրեալ Ս. Աստուածածնի՝ քաղքին շէնքերուն մէջ առաջինը կրնայ համարուիլ. երկաթուղւոյ կայարանէն եւ աւելի հեռուէն, քաղքին հիւսիսային կողմը ակնարկ մը նետելով՝ եկեղեցւոյ բարձր շէնքը իւր շուրջը գտնուած տներուն ու շէնքերու վրայ բարձրացած՝ գեղեցկապէս կը տեսնուի։ Եկեղեցին շրջապատեալ է պարտէզով մը, որուն մէջ կը գտնուին նաեւ դպրոցները։ Եկեղեցւոյ արտաքին գաւիթը շինուած է Զմիւռնիոյ Ս. Ստեփանոս եկեղեցւոյ գաւթին

նման. երեք կողմը 14 քառաշէն սիւն կարգաւ շարուած են, որոնցմէ առաջակողմեան սիւները վեր






Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ:

կը բռնեն դէպ ի դուրս կառուցուած կանանց վերնատունը. իսկ աջ ու ձախ կողմանց սիւներուն վրայ

հաստատուած է գաւթին հովանաւոր ծածկը։ Շէնքին եռեւն, աջ ու ձախ՝ հաւասարապէս դուրս ելած են երկու աւանդատանց մասերը, որոնք թէ արտաքուստ գաւթին վրայ եւ թէ ներքուստ՝ դասին վրայ ունին իրենց յատուկ դռներն։ Աջակողմեան աւանդատան վրայ շինուած է զանգակատան աշտարակը։

Եկեղեցին ներքուստ պարզ եւ լուսաւոր է. աւագ դրան կողմը կը տեսնուին զոյգ մը սիւներու, որոնք հաստատուած են վերնատան տակը։ Փայտաշէն կամարաձեւ ձեղունը հաստատուած է կողմնակի որմերուն վրայ. կամարին փայտաշէն ըլլալովն՝ շէնքը կարող եղած է դէմ դնել վերջին տարիներուս մէջ պատահած երկրաշարժի ցնցումներուն։ Մարմարակուռ բեմին վրայ բարձրացած են խորաններն, որոնցմէ աւագ խորանը նուիրեալ է Ս. Աստուածածնի, աջակողմեանն է Գլխադիր, ձախակողմեանը՝ Պայծառակերպութիւն։ Աւանդատանց մէջ եւս շինուած են խորաններ, արեւելեան պատերուն վրայ, աջակողմեան աւանդատան խորանը նուիրեալ է Լուսաւորչի, ձախակողմեանը Որդւոյն Որոտման։

Եկեղեցւոյ մեծութիւնն է իբր 23·50 մետր երկայնութիւն եւ 11·50 մետր լայնութիւն, քարաշէն հաստ եւ հաստատուն պատերով։ Շէնքը հիմնարկուած է 1871ին. թէպէտ եւ աւագ դրան ճակատը հաստատուած է մարմարիոն քար մը յիշատակարանի համար, բայց տակաւին գիր մ'անգամ չէ քանդակուած։ Կ'երեւայ թէ Գըրգաղածցիք չեն հաճիր իրենց բարերարաց յիշատակը թողուլ յաջորդաց, կամ մոռացութեան կ'ուզեն դատապարտել այն բարերար անձանց անուններն, որոնք նպաստած են եկեղեցւոյս շինութեան։ Այս բարերարաց մէջ կը յիշուի Աբրահամ փաշա Երամեան, որ նուիրած է 500 օսմ. ոսկի։

Եկեղեցին ունի քանի մը կտոր կալուած,

որոնք առատաձեռն անձանց նուէրներն են, ունի երեք տուն, երեք խանութ, երեք ձիթատան եւ եօթն այգեստան, ամբողջին տարեկան հասոյթը կը հանի 200—250 մէճիտ, որ կը գործածուի եկեղեցւոյ պիտոյից եւ դպրոցներու. պակասը կը լեցընէ ազգը։

Եկեղեցին ունի իրեն յատուկ դրամ մը, որ ժողովրդեան դիւրութիւն մատակարարելու համար շինուած է. այս դրամն թիթեղէ բոլորակաձեւ կըտրուած եւ վրան Եկ (= եկեղեցւոյ) գրուած է. ժողովուրդն ի փոխարէն մէկ Մէթէլիկի (10 փարայի) երեք հատ կ'առնու այս ստակներէն եւ յետոյ գանձանակներու կամ պնակներու մէջ կը ձգէ։

Գ. Եկեղեցին չունի որ եւ է արձանագրութիւն, ոչ ներքին եւ ոչ արտաքին որմերուն վրայ. իր ունեցած հնագոյն յիշատակարաններն են՝ հոս հոն կախուած պատկերաց եզերքը գրուածներն եւ ասոնք են հետեւեալները.

Աստուածածնի պատկերի մ'եզերքը՝ "Յիշատակ է պատկերս պարօն Սղոմոնին . . . աղային եւ համայն զարմիցն որ ետ Գրգաղաճու եկեղեցին թվին ՌՄԽԸ„։

Ս. Յակոբ Մծբնայ հայրապետի պատկերի մ'եզերքը՝ "Յիշատակ է պատկերս Իզմիրցի եօրղանճի Յովանէսին վասն հոգւոյ ծնողացն Կեսարացի մահտեսի Պօղոսին եւ . . . եւ ամեն արեան . . . . . . . . . . . . ի դուռն Քըքաղաճու սուրբ եկեղեցոյն թվին ՌՄԾԱ„։

Որդւոց Որոտման պատկերի մ'եզերքը՝ "Յիշատակ է հանգուցեալ մահտէսի Յօսէփին կողակցին մահտեսի Թագուհին եւ որդւոյն մահտեսի Յվհաննէսին Թաթէոսին եւ մահտեսի Խաչատուրին որ ետ ի դուռն Ս. Աստուածածնայ տաճարին. թվին ՌՄՀԵ„։

Յիսուսի Ծննդեան պատկերի մ'եզերքը՝ "յիշատակ է պատկերս հանգուցեալ Մառուտին. հան-

գուցեալ կողակցուն սառային որդւոյն, ուսէբին ար-թինին. որ ետ մահտեսի սահակին ՛.՛ վասն հոգւոյն սուրբ աստուածածնայ. թվին ՌՄՀԵին:

Ս. կուսի Թաղման պատկերի մ՚եզերքը՝ « յի-շատակ է պատկերս վասն փրկութեան հոգոյ մահ-տեսի կարապետին Թուսդրըն մարիեամին եւ որդո-ցըն հանգուցեալ մինուշակ մարգրիտ սառայ եւ ագարիաին որ ետ ի դուռն սուրբ Աստուածածնայ տաճարին Թուին ՌՄՀԵ:»

Դ. Եկեղեցւոյ պարտէզին մէջ՝ առաջակողմը շինուած է երկսեռ վարժարանը, մէկ շէնք՝ բայց առանձին դռներով եւ սանդուխներով երկու մասի բաժնուած: Ամբողջ շէնքն է կրկնայարկ եւ բար-ձրադիր, սակայն միայն վերի յարկը կը գործածուի իբր վարժարան: Եկեղեցւոյ եւ վարժարանիս մէջ-տեղն կը տեսնուի ջրոյ բարձրաշէն աւազան մը, որուն ծորակներէն վազած ջուրը կը զովացընէ վայրն եւ կը մեղմացընէ մանկանց ծարաւը:

Շէնքին երկու մասի բաժնուածներէն առա-ջինը կը գործածուի իբր վարժարան մանչերու, որուն ճակատը գրուած է Ներսէսեան վարժարան. ունի մեծ եւ փոքր սրահներ. աշակերտներն ալ բաժնուած են երկու կարգի. առաջին կարգին մէջ կը գտնուի 16—20 աշակերտ. երկրորդին մէջ 40—50 ի չափ տղաքներ: Առաջին դասարանի աշակերտք կը սորվին հայ. գղղ. տաճկ. լեզուները եւ սովորական գիտութիւնները. իսկ երկրորդին մէջ կը սորվին միայն հայ. լեզուն եւ նախապա-տրաստողական ուսմունքներ[1]:

Շէնքին երկրորդ մասն որ կը գործածուի իբր վարժարան աղջկանց, իւր ճակտին վրայ գրուած ունի Վարդուհեան վարժարան. ի ներքուստ բաժ-նուած է նմանապէս կրկին դասարաններու, ուր կը

---

1 Ուսուցիչներն են՝ Գարեգին Խնճեան՝ Իւսկիւտարի դպրոցաւարտներէն, եւ Յովհաննէս Մըսրեան՝ բնիկ տեղացի:

յաճախէ 60ի չափ աղջիկ եւ կը սորվին հայերէն եւ ինչ ինչ գիտութիւններ ու ձեռագործ[1]։ Առաջին կարգի աշակերտուհիները բաւական յառաջացեր են ձեռագործի մէջ, գործած զանազան սիրուն առարկաները ցվերջ դպրոցական տարւոյ կը տրուին վիճակահանութեան։

Գըրգաղաճի երիտասարդաց եւ օրիորդաց մէջ կը տեսնուի յառաջադիմութեան փափաք մը. վերջին տարիներուս մէջ կազմած են ընկերութիւններ. Ուսումնասիրաց՝ երիտասարդաց համար, եւ Հոգատար՝ օրիորդաց կողմանէ. որոնց նպատակն է՝ կրթական եւ մարդասիրական սկզբանց համեմատ ուսմանց պարապիլ եւ կարօտեալներուն օգնել։

Ժողովրդեան մէջէն ծերերը տաճկախօս են, բայց նոր սերունդը կը խօսի իւր մայրենի լեզուն եւ տաճկերէնը կը սորվի միայն գիտութեան համար։

Ե. Ժողովրդեան մեծագոյն մասը կը զբաղի տեղական արուեստներով, ինչպէս կօշկակարութեամբ, դարբնութեամբ եւն. կան վաճառականներ ալ որոնք բաւական յաջողութիւն գտած են, ասոնց մէջ կը յիշուին Արթին Սիվրիսարեան (Զմիւռնիացի), Թադէոս Հաճի Յովսէփեան, Միհրան Սահակեան, Կիրակոս Չիվիճեան, Հաճի Գէորգ Եաղճըեան, վերջինս իբր խոզկաղինի (փալամուտ) վաճառական նշանաւոր է։

Գըրգաղաճի մէջ կան գործարաններ, որոնք Հայոց կը վերաբերին. քաղքին հարաւային կողմը՝ ընդարձակ գետնի վրայ հաստատուած է գործատուն մը ալիւրի, բամպակի եւ ձիթոյ, շոգեշարժ մեքենաներով, որ կը պատկանի Հայազգի Գարեգին Գուիլթեանի. ինքը թէպէտ Զմիւռնիացի է, բայց տարիներէ ի վեր ընկերակցութեամբ ուրիշ-

1 Վարժուհիներն են՝ Երանուհի Խանճեան եւ Վառվառ Չագմագճեան, տեղացիք եւ տեղւոյն վարժարանին ուսումնաւարտներէն։

ներու յաջողութեամբ յառաջ կը վարէ սոյն գործառունը:

Նոյնպէս Յովհաննէս Գարախաչատուրեան (տեղացի) ունի բամպակի եւ ալիւրի գործատուն մը եւ կը գործէ յարատեւութեամբ:

Գըրգաղաճի Հայոց մէջ կան նաեւ փաստաբաններ, որոնց մէջ կը յիշուին Յովհաննէս էֆ. Մըսրեան եւ Յարութիւն էֆ. Տայեան:

Զ. Վերոյիշեալ եկեղեցին շրջապատող պարտէզին մէկ մասը կը գործածուի իբր գերեզմանոց, ուր նորատունկ սոճիներն իրենց հովանւոյն ներքեւ կը պահեն հոն թաղուողներուն մնացորդները: Այս գերեզմանոցին մէջ կը թաղուին անոնք միայն, որոնց ծնողք կամ ազգականք կարող են վճարել 15 մէճիտ՝ իբր տուրք եկեղեցւոյ: Ունին երկրորդ եւ աւելի ընդարձակ գերեզմանոց մըն ալ թաղին կռնակը, շրջապատեալ հաստատուն որմերով եւ ծառերով զարդարուած: Հոս կը թաղուին այնպիսիներն, որոնց վիճակը չի ներեր՝ վճարմամբ եկեղեցւոյ պարտէզը գերեզման մը գնել: Այս երկու գերեզմանոցներու մէջը չի տեսնուիր յիշատակաց արժանի շիրիմ կամ արձանագրութիւն մը: Աննշան թուով քանի մը քարեր եւ հողակոյտով ծածկուած գերեզմաններ են տեսնուածները: Գտնուած գերեզմանաքարերու քանդակագրութիւններն են հետեւեալները, որոնցմէ առաջին երեքն եկեղեցւոյ պարտէզին մէջ, երեքն ալ մեծ գերեզմանոցին մէջն են:

Յայս ի խոր տապան
ի քուն հանգստեան
ննջէ ծերունին
Մինաս Ղազարեան
հանգեաւ ի Տէր
1860.

Այս
է տապան հանգստեան
Գրիգորի
Շահնազարեան Ջիւանեա-
ցւոյ որ է հասակի եօ
թանասուն եւ հինգ ամաց
հանգեաւ ի Տէր
1872 Յունիս 25.

Տապան հանգստեան
Եղիսաբեթի
դստեր Գասպարեան հանգուցեալ
Յովհաննէս աղայի որ եւ կողակից
Պագըրճը Համբարձում աղայի.
Զինչ անողորմ քան զմահ անկուշտ
որում երբեք չէք գոլով գութ
մինչ ընդ ծնող եւ ազգական
վայելէաք կեանս բախական
ի 44 ամս համայն
յանկարծ հասոյց անգութ մահն այն
մահահրաւէր զնետ բաղդին
որք իմ կենաց զարեւ շիջին
ի սուգ թախիծ թողին զհամայն
զմեր ծնող եւ զազգական
ահա այսպէս մահն երբեք
ոչ ակնառէ եւ ոչ ումեք.
1874 Օգոստոս 28:

Այս է դիր հան
գստեան Յովսէփ
ճայ Թորոսեան որ
ննջեաց ի Տէր իւր
40ամենի. 1871 յն. 10.

Տապան հանգստեան
Յովակիմեան կարապետ չքնաղ
ղաձիր մանկան ի բնութեան ամեն
հաճոյք գըրգանք գորով խնամք
սէր եւ բերկրանք
իմ մանկութեան անմեղ օրեր
մինչ կայտառէին ինձ առընթեր
բաղձին խօժոռ ակնարկն աւաղ
նախանձագին զինեաց զմահ
ուր հայր ուր մայր եւ ուր ազգական
զամեն լքի հինգ ի կէս ամեան
1876 Հոկ. 26.

Այս
է տապան հանգստեան
Յովհաննէս
աղայի Սիմոնեան
Գասապացւոյ
որ ննջեաց ի Տէր իւր
75 ամենի. 1879 յնվ. 7.

* *
*

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

Այս քաղաքը Եունտ լերան արեւելեան կողմը կ'իյնայ եւ Գրնրգէն 8 ժամ հեռու է։ Օդն բարեխառն է, ջուրերը թեթեւ եւ բարեհամ։ Գըրգ-Աղաճի բերքերն են ցորեն, բակլայ, ոսեռն, կորեկ, խաշխաշ։ Նշանաւոր են սեխը, թուզը, նուռը, սերկեւիլն, տորոնն ու խաղողը։

Գըրգ-Աղաճի բնակիչներն են հայ, յոյն, տաճիկ։ 159 հայու տուն կայ. մարդոց թիւն է 214, կանանց՝ 226, պատանիներու՝ 78, օրիորդներու՝ 63, տղայոց՝ 127, փոքր աղջկանց՝ 103։ Մէկ տարուան մէջ՝ 26 մկրտութիւն, 3 պսակ եւ 17 ննջեցեալ պատահած են։ Հայք դաղթած են

Դավրէժէն, Խոյէն, Սալամաստէն, Ղափանէն, Ղարապաղէն եւ Երեւանէն։

Ժողովուրդը բնաւորութեամբ ժիր, գործունեայ, եռանդուն է եւ աշխատասէր։ Առ հասարակ հայերը արուեստիւ վաճառական, դերձակ, ոսկերիչ, կօշկակար, դարբին, սափրիչ ու երկրագործ են։ Ամէն տուն այգի ու ագարակ ունի, որ լաւ մշակուած են։ Գէրգ-Աղաճի հայք ունին մէկ եկեղեցի, Ս. Աստուածածին, երկու դպրոց, մի նորաշէն՝ աղջկանց համար, միւսն տղայոց։ Բոլորն 77 աշակերտ կան։ Դպրոցներու տարեկան ծախքն 350 մէճիտիէի կը հանի։ Կան քանի մ'ընկերութիւններ, որ են Խնամակալ ընկերութիւն եւ Զիթենեաց ընկերութիւն։

---

# ԳԼՈՒԽ ՏԱՍՆԵՐՈՐԴ

## *Կասապա:*

## 1.

*Ընդհանուր տեսութիւն:*

Կասապա կ'իյնայ Զմիւռնիոյ հիւսիսային կողմը. Ալաշէհիր եւ Ուշագ գացող երկաթուղւոյ գիծը կ'անցնի իր առջեւէն եւ ունի $93\,^1/_4$ հազարամետր հեռաւորութիւն Զմիւռնիայէն. շոգեշարժ կառախումբը $4\,^1/_2$—5 ժամու մէջ կը հանի քաղքիս կայարանը։ Այտըն—Տինէր շինուած երկաթուղին եւ Մանիսա-Կասապա երկնցած երկաթուղւոյ գիծը՝ բոլորովին իրարու հակառակ տեսքեր կ'ընծայեն։ Այտըն—Տինէրի ճամբուն վրայ գիւղերն աւելի են քան Մանիսա—Կասապայի ճամբուն վրայ. բերքի նկատմամբ նմանապէս Այտըն—Տինէրի կողմերն աւելի պտղաբեր եւ հարուստ են քան Մանիսա—Կասապայի կողմերը։ Զիթաստաններն ու թզաստաններն, որոնք աւքատ

դասուն գործ կը բանան եւ հարաւին քսակը կը ծանրացընեն, Այտընի կողմերն ընդարձակ դաշտեր ու լեռներ բռնած են, իսկ Գասապայի կողմերը ցանցառ կը տեսնուին։ Այսու ամենայնիւ Մանիսա—Գասապայի կողմերու դաշտերն ալ բարեբեր եւ լաւ մշակուած են. ընդարձակ այգեստաններ եւ բամպակի ու ծխախոտի արտեր բռնած են երկաթուղւոյ երկու կողմն ալ՝ մօտն եւ հեռուն։ Գասապա ունի նաեւ առատ բանջարեղէն. Նշանաւոր է սեխն։

Գասապայի արեւելեան կողմը կը տեսնուի՝ ոչ այնչափ բարձր լերանց շղթայ մը եւ այս շղթային առջեւն կը գտնուին փոքրիկ բլրակներ, որոնց տեղացիք Պին պիր Թէփէ անունը կու տան. այս բլրակներուն ստորոտը շինուած է քաղաքն. իսկ երեք կողմը տարածուած են ընդարձակ դաշտագետիններ ու մարգեր։

Երկաթուղւոյ կայարանը՝ գրեթէ քառորդ ժամ հետիոտն հեռու շինուած է քաղաքէն։ Քաղաքին փողոցները թէպէտ եւ քարայատակ՝ բայց անմաքուր են, աղբիւրներէ վազած ջուրը՝ փողոցները տեղ տեղ ժողուած՝ փոշւոյ հետ խառնուած՝ ցեխ կազմուած է, որ ընդհակառակը ջրոյ առատութեան պատճառաւ կրնար մաքուր ըլլալ, եթէ հոգ տարուէր։ Շէնքերն ընդհանրապէս միայարկ են, քանի մը տուն դուրս հանելով, որոնք կրկին յարկ ունին. տներու մեծագոյն մասն ունի պարտէզ եւ մէջն աղբիւր մը։

Գասապան չունի ճարտարապետական կամ հնութեան վերաբերեալ շէնքերու մնացորդներ, միայն Պին պիր Թէփէ ըսուած բլրակներուն կողմերը կան այրեր եւ ծածկուած հնութիւններ, իմանաւորի այդ Պին պիր Թեփէներուն միոյն տակ, որուն տեղացիք Էրմէնի Թէփէ-ի կ'ըսեն, գտնուած է վերջերս քանի մը կտոր հին քար ու արձան։ Ասոնցմէ երկու կտորը կը գտնուի Հայոց Եկեղեցւոյ

պարտէզը, հատ մ'ալ Ցունաց հիւանդանոցին պարտէզը։ Հայոց Եկեղեցւոյ պարտէզը գտնուածներն են մարմարիոն քարէ բնական մեծութեամբ առիւծ մը՝ փորին վրայ պառկած, թաթերն երկնցուցած, բայց դժբախտաբար ամենակարեւոր մասը գլուխը՝ կոտրած է։

Երկրորդն՝ որ վերջին տարիներս շինուած զանգակատան վարի կողմը պատին մէջ զետեղուած է, կը ներկայացընէ երեք դիւցազունք, բարձրաքանդակ, սակայն ասոնց կերպարանքներն ալ մաշած կամ կոտրտած են։ Իսկ Ցունաց հիւանդանոցին պարտէզին մէջ գտնուածն է միակտուր մարմարիոն քար մը, վրան բարձրաքանդակ քանդակուած են մարդու կերպարանքներ, ոսկներ ու խոյակներ՝ մաքուր եւ սիրուն. քարին կռնակը հրէերէն քանդակուած է, կ'երեւայ թէ ժամանակ մը Հրեայք իբր գերեզմանաքար գործածած են։

Տեղացւոց վկայութեան համաձայն, վերոյիշեալ Էրձնիրեքէօյ ըսուած բլրակին տակ կան հնութիւններ, որոնք ծածկուած են հողով, հանելն ալ արգելուած է։

Գասապայի կառավարութիւնն փոխ-կուսակալութիւն է. ժողովուրդն է Մահմէտական, Հրեայ, Ցոյն եւ Հայ։

## 2.

Հայերն, եկեղեցին. վարժարանները, գերեզմանոցը, եւ գերեզմանաքարերու արձանագրութիւնները:

Ա. Գասապայի Հայերն յանցեալում բաւական նշանաւոր դիրք մ'ունեցած են, բայց այժմ ինկած են։ Թուով 100 տուն կը համրուին. չունին եւ չեն կազմած մասնաւոր թաղ մը, այլ քանի մը տուն մէկ կողմը, քանի մը տուն ուրիշ տեղ մը՝ ցրուած են իրարմէ, բայց մեծամասնութիւնը կը գտնուի եկեղեցւոյ մօտերը։

Եկեղեցին նուիրեալ յանուն Ս. Աստուածածնի՝ շրջապատեալ է պարտէզով մը. շէնքը ամուր եւ մէկ մետր հաստութիւն ունեցող պատերով շինուած է։ Արտաքուստ աւագ դրան առջեւն երկու սիւն կանգնուած են, որոնք դրան վրայ բարձրացած գմբեթաւոր ծածկը վեր կը բռնեն։ Ետեւի կողմը աջ ու ձախ շինուած են աւանդատանց մասերը, կոնակն ալ կիսաբոլորակ դուրս ելած է՝ աւագ խորանին վայրը, որով եկեղեցւոյ շէնքը խաչաձեւ յօրինուածութիւն մ'ունի։

Աւագ դրան սեամքը զարդարուած է մարմարիոն քարերով, ճակատը հաստատուած է քար մը հետեւեալ արձանագրութեամբ։

“1840. Զքնաղ կառուցաւ Սուրբ Եկեղեցիս Տեառննագրեալ յանուն ամենօրհնեալ սուրբ Աստուածածնի ի հայրապետութեանն սուրբ Էջմիածնի Տեառն Յովհաննու սրբազան կաթողիկոսի ամենայն Հայոց եւ յառաջնորդութեան Զմիւռնիոյ Տն. Պօղոսի աստուածիմաստ արքեպիսկոպոսի . . . վերակացութեամբ յարգոյ մահտեսի Աւետիս աղայի Զմիւռնացւոյ էքիզեանց արդեամբք եւ աշխատանօք բարեպաշտօն իշխանաց եւ առհասարակ օրհնեալ ժողովրդոց տեղւոյս. Օգոստոսի 18։„

Եկեղեցին ի ներքուստ չունի պաճուճեալ զարդեր. մեծութիւնն է 17·50 մետր երկայն եւ 10·50 մետր լայն. կամարակապ ձեղունը հաստատուած է որմերուն վրայ. միայն աւագ դրան կողմը կը գտնուին երկու սիւնակներ, որոնք վերնատունը հաստատուն կը բռնեն։ Բեմն ամբողջ մարմարակուռ՝ ունի մէկ մետր բարձրութիւն. մէկ կարգի վրայ շինուած խորաններէն՝ աւագ խորանը նուիրեալ է Աստուածածնի, աջ կողմի խորանն ունի Ս. Գրիգոր Լուսաւորչի պատկերն, իսկ ձախակողմեանն ալ Ս. Ստեփանոսի։

Եկեղեցին ի ներքուստ չունի ո եւ է արձանագրութիւն կամ յիշատակարան։ Աւելի հնագոյն եկեղեցի մը ունեցած են Գատապացիք, որուն նկատ-




Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ։

մամբ չկրցանք գտնել արձանագրութիւն մը. միայն նորակառոյց դպրոցին պատին մէջ դրուած է քար մը, որ հին եկեղեցւոյ կը պատկանի, սակայն ասոր վրայ քանդակուածն ալ անընթեռնլի դարձած է վրան քսուած կրի պատճառաւ, մէկ մասն ալ պա-

տին մէջ թաղուած է. կը կարդացուին միայն հետեւեալ տողերը։

"... Ձեռնտուութեամբ Պալթազարէ Պարոն Աստուածատուրի ի Հայրպ... Տեառն Ղուկասի Սրբազան կաթողիկոսին ամենայն Հայոց եւ յառաջնորդութեան... լուսո արքեպիսկոպոսին արդեամբ եւ ծախիւք մեծահաւատ Մէնէքշէզատէ... հաննէսին եւ եղբօրն իւրոյ մահտեսի Պօղոսին եւ համայն ննջեցելոց...։"

Եկեղեցւոյ առաջակողմը՝ պարտէզին դրան կից շինուած է վերջին տարիներս՝ զանգակատան աշտարակը, որ գեղեցիկ տեսք մը կու տայ տեղւոյն։

Եկեղեցին ունի իրեն սեպհական դրամը, որ ժողովրդեան մեծ դիւրութիւն կու տայ՝ միշտ իւր բնիոնը գանձանակներու եւ պնակներու մէջ ձգելու. ժողովուրդը եկեղեցին եկած ժամանակ՝ ի փոխարէն մէկ Ճէրալէկէ (10 փարայի)՝ կ'առնու տասնցմէ երկու երեք հատ եւ ի հարկին կը գործածէ. այս դրամն է կապարեայ՝ բոլորակ կտրուած, մէկ կողմը խաչ, երկրորդ կողմը՝ գրութիւն մը։

Բ. Եկեղեցւոյ պարտէզին մէջ՝ հարաւային կողմը շինուած է երկսեռ վարժարանը, քարուկիր եւ կրկնայարկ, բայց միայն վերին յարկը կը գործածուի իբր վարժարան[1]։ Ամբողջ շէնքը մարմին մը կը կազմէ, միայն զատ զատ դռներով երկու մասի բաժնուած է, մին մանչերու եւ միւսն աղջկանց համար։ Իւրաքանչիւր բաժանում ունի մի միայն սրահ մը, որ կը գործածուի ամէն դասի համար։ Վարժարանացս՝ դրանց ճակատն հաստատուած են մարմարիոն քարեր զատ զատ արձանագրութեամբ. առնք են հետեւեալները, առաջինը մանչերու, երկրորդն աղջկանց վարժարանին կը պատկանի։

---

1 Յակոբ էֆ. Ճէվահիրճեան 500 օսմ. ոսկի նուիրած է վարժարանիս շինութեան։

„Ճէվահիրճեան դպրոցս կառուցաւ արդեամբ եւ ծախիւք ազնուաշուք Յակոբ էֆէնտի Ճէվահիրճիեանի Զմիւռնացւոյ մեծահամբաւ վաճառականի. ի Հայրապետութեան Ս. Էջմիածնի Տ. Տ. Մկրտչի Խրիմեան վեհափառ Սրբազան կաթողիկոսի, եւ յառաջնորդութեան Զմիւռնիոյ Գեր. Տ. Ներսէս Ծ. Վարդապետի Արսլանեան. ի 18 Մայիսի 1893:„

“Տիգրանուհեան դպրոցս կառուցաւ արդեամբք եւ ծախիւք ազնուափայլ Տիգրանուհի տիկնոջ Յակոբ Ճէվահիրճիեանի, ի Հայրապետութեան սուրբ Էջմիածնի Տ. Տ. Մկրտչի Խրիմեան Վեհափառ Սրբազան կաթողիկոսի եւ Յառաջնորդութեան Զմիւռնիոյ Գեր. Տ. Ներսէսի Ծ. Վարդապետի Արսլանեան ի 18 Մայիսի 1893:„

Գ. Եկեղեցւոյ շուրջը գտնուող պարտէզը կը գործածուի իբր գերեզմանատուն, ուր կը գտնուին աննշան թուով գերեզմանաքարեր՝ նորագոյն թուականով եւ արձանագրութեամբ: Միայն գերեզմանաքար մը կայ որուն թուականն եկեղեցւոյ շինութեան թուականէն յառաջ է, մնացածներն ամէնն ալ 40էն ասդին ննջեցեալները կը յիշեցընեն: Ասոնք են հետեւեալները.

Այս է տապ
ան Ղասաղացի
Տէր Կիրակոսի Երէ
ցանցին Թօքատէցին
որ էա հանգեաւ Ըլին
1838 Մարտի 1.
Վերայիշեալ Տէր
Կիրակոսի որդի
Տիրացու Բարունէշն
հանգեաւ 1848:

Դամբարան Քէօթահեալը Գէորգի որդի Յարու-
թիւն 1841։

Իզմիրցի Պրն. Գեորգի որդի մհի. Ղուկաս 1847.

Քէմահացի Ալօշ օղլու Տէօյիւճիւ Թովմաս. 1857.

Ղասապացի մհի. Յարուի. դուստր Մարգրիտ 1858.

Ղասապացի մհի. Յարուի. դուստր Աննա. 1861.

Ղասապացի Տէր Կիրակոսի որդի մհի. Յարու-
թիւն 1861.

Մըսըրցի մհի. Մարկոսի կողակից Աննա. 1863.

*Վաղամեռիկ մայր սորին*
*զրկաթառանձա դիր որդին*
*ննջէ յայս դիր սրբակրօն*
*պարկեշտուհին Մարիամ*
*Տէր Վրթանէս սրբակրօն*
*Քահանային դուստր զգօն*
*կողակիցն եւ զորդիս*
*լքեալ եմուտ ի յերկինս*
*Յամի 1847. Հոկ. 25:*

[illegible]
[illegible] Յովսէփ Քէօսէեան,
[illegible]
[illegible]
[illegible]
[illegible]
[illegible]
[illegible] Յակոբ Հրեշտակեանց
Յամի 1859. Մարտ. 18.

Իւնեա քաղաքէն էր
ի Գասապա բնակէր
ի (18)65 ամի
ի 12 Յունիսի
Հանգեայ վառագրծ

*եմ մհտի. Ղազարոս.*
*ես ալ էի քեզի պէս*
*դուն ալ կ'ըլլաս ինծի պէս*
*առիկա միշտ մտածես,*
*եւ եղիցի Տէր ընդ քեզ։*

*   *
*

# ՅԱԽԵԼՈՒԱԾ

*Գ. առապա. Այս քաղաքը շինուած է գեղեցիկ դաշտի մը վրայ եւ Մանիսայէն երկաթուղիով կէս ժամու չափ հեռու է։ Կլիման բարեխառն է, ջուրն ու պտղատու ծառերն առատ։ Անուանի են Գասապայի սեխը, կարագը, մեղրը, սեխը եւ ձմերուկը։*

*Հոյք ունին* 105 *տուն. կան* 105 *այր,* 128 *կին,* 34 *երիտասարդ,* 36 *պատանի,* 35 *օրիորդ,* 70 *տղայ,* 78 *աղջիկ։ Հայերը վաճառական, պտղավաճառ, դերձակ, ոսկերիչ, կօշկակար, երկաթագործ, պայտար, հացագործ են արուեստիւ։ Շատերն ունին այգիներ, արտեր, որ աւելի շահաւոր են։ Գործունեայ, աշխատասէր ու հանդարտ են Հոյք ու Պարսկաստանէն գաղթած։*

*Ունին եկեղեցի մը քարաշէն Ս. Աստուածածին անուամբ, վարժարան մը միայարկ* 20 *աշակերտով, եւ զանազան ազգային կալուածքներ։ Տարեկան մուտքն է* 180 *մէճիտիէ. իսկ ելքն* 160 *մէճիտ է։*



# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

*Ա. Գալէմքեարեան Հ. Գրիգորիս Վ., Ուսումնասիրութիւնք Լեհահայոց դատաստանագրոյն. 1. Պիշոֆ, Լեհահայոց հին իրաւունքը: 2. Գոլէր. Իրաւունք Հայոց: 1890: 8° Երես՝ 85+59: Ֆր. 1.25*

*Բ. Մէնէվիշեան Հ. Գաբրիէլ, Ազգաբանութիւն ազնուական զարմին Տիւզեանց: 1890: 8° Երես՝ 50 (պատկերազարդ:)* *Ֆր. 1.—*

*Գ. Տաշեան Հ. Յակովբոս, Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին եւ ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց: 1891: 8° Երես՝ ԺԱ+159:* *Ֆր. 1.25*

*Դ. Դեմետրիոս Տանի Արեւելեան Հայք ի Պուքովինա: Թրգմ. Հ. Գ. Վ. Գալէմքեարեան: 1891: 8° Երես՝ 79:* *Ֆր. —.85*

*Ե. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ վարուց Աղեքսանդրի: 1892: 8° Երես՝ Դ+272:* *Ֆր. 3.—*

*Զ. Ալպէր Տըվլէ եւ Գ. Փիսոն, Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1892: 8° Երես՝ 82:* *Ֆր. 1.—*

*Է. Մառ Նիկ., Ամառնային ուղեւորութիւնից դէպ ի Հայս: Թրգմ. Ոնուփրիոս Անոփեան: 1892: 8° Երես՝ 89:* *Ֆր. 1.25*

*Ը. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ: Հտ. Ա.: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: 8° Երես՝ Ժ+51:* *Ֆր. 1.—*

*Թ. Գալէմքեարեան Հ. Գրիգորիս Վ., Պատմութիւն հայ լրագրութեան: Հտ. Ա. 1794—1860: 1893: 8° Երես՝ 232. (1 լուսանկարով:)* *Ֆր. 2.50*

